The Writings
of
Ephraim, Khoren, Assyrian, St.
Volume IV.
Sermons and Prayers
Venice
Monastery of St. Lazarus.
1836

ՍՐԲՈՅՆ

# ԵՓՐԵՄԻ

## ՄԱՏԵՆԱԳՐՈՒԹԻՒՆՔ

ՀԱՏՈՐ ՉՈՐՐՈՐԴ

ՃԱՌՔ ԵՒ ԱՂՕԹՔ



Ի ՎԵՆԵՏԻԿ

Ի ՏՊԱՐԱՆԻ ՍՐԲՈՅՆ ՂԱԶԱՐՈՒ

ՅԱՄԻ 1836 ՌՄՁԵ

ԵՐԱՆԵԼՈՅՆ

# ՍՐԲՈՅ ԵՓՐԵՄԻ

ԽՈՐԻՆ ԱՍՈՐՒՈՅ

## ՃԱՌԻՔ

---

### Ի ԾՆՆԴԵԱՆ ՔՐԻՍՏՈՍԻ ԱՍՏՈՒԾՈՅ ՄԵՐՈՅ *

Որ էրն 'ի սկզբանէ առ Ած՝ Ած Բանն, կենդանի, զօրաւոր, աթոռակից Հօր, ահաւոր, բարձրեալ, հզօր, անչարչարելի, անկարօտ, փառաւորեալ Որդի Այ: Աստուած Բանն էր առ Ած, ծնեալ 'ի Հօրէ մշտնջենաւորէ, միածին Որդի Հօր, լոյս և ամենայն յաւիտենից արարիչ: Աստուած յԱյ Բան, կամօք յարգանդի կուսին մարմնացաւ. Ածն ահաւոր և անչարչարելի 'ի յղացումն և 'ի ծննդեանն. Ածն անկարօտ և փառաւոր յաղքատութիւն եկն. Ած՝ որոյ քերովբէք աթոռ են նորա, յանարգ մսուր եդաւ:
Զարհուրի և երկնչի սիրտ իմ. միանգամայն և դողայ մարմին իմ, սակս զահաւոր զանմահ զերկնայինն յարգանդի կուսին բնակեալ. ոչ բոցակիզեաց հուրն ահաւոր զորովայնն: Մեծ սքանչելիք և ահաւոր խորհուրդ. ոչ եկեղ, այլ մարմնացաւ 'ի նմա. քանզի գթութեամբ եմուտ, և սիրով ել. Ածն Ած՝ որ եմուտ

* Օրինակ Ճառիս 'ի ԺԳ. Ճառընտրէն:

յարգանդին, և մարմին ունելով մարդ եղ: Որ ոչն ուրեք բովանդակի, յարգանդի կուսին բովանդակեցաւ. որ ծնեալն է 'ի Հօրէ առանց ժամանակի, ծնաւ և 'ի կուսէ զկնի ժամանակի. անմահն մարմնացաւ յարգանդի, ճաշակեաց մարմնով զմահ: Ծնունդն եղև 'ի Բեթղահէմ, և երկնային զօրքն օրհնէին. հովիւքն յերկրի պարէին: Ի մսուր եդեալ լինի մանուկն սուրբ, և հրեշտակք սպասաւորէին տղայոյն. 'ի մսուր եդեալ կայր իբրև զտղայ, և Հօր յերկինս էր խօսակից. 'ի մսուր եդեալ կայր իբրև զտղայ, և հրեշտակք ընդունէին զհրամանս նորա: Մանուկ ծնաւ մեզ Քրիստոս փրկիչ. Որդի պարգևեցաւ մեզ օգնական: Ի գիրկս բարձեալ եղև իբրև զտղայ, որ հրամանաւ բարձեալ ունի զամենայն արարածս: Բառնայր Մարիամ զմանուկն, և հրեշտակք երկիր պագէին նմա աներևութապէս: Ի հրապարակս նստէր իբրև զմանուկ, և հրեշտակք մերձ կային իբրև տ̃ն: Ի տաճարն եմուտ իբրև յընծայումն, և քահանայն բառնայր զնա իբրև պատարագ. 'ի նմին իսկ պատարագելով մատոյց զաղաւնիսն, զի արձակեսցի ինքն: Ամենայն արարածք երևելիք և աներևելիք երանէին զգրկաց կուսի. նոյնպէս և գիրկ քահանային սրբեցաւ յընդունելն զնա: Տեսին զնա ա̃մ արարածք և զըւարճացան, և հրեշտակք երանէին մարդկան. յերկրի բառնային զնա իբրև զմանուկ, և յերկինս հրամայէր իբրև զտէր:

Քանզի Բան ա̃յ էր որ մարմնացաւ. Որդի Հօր երկնաւորի ծնեալն: Վասն այնորիկ Հայր յերկնից աղաղակէր. Դա է որդի իմ սիրելի: Վկայէր Յորդանան, զի զմարմինն մկրտեաց 'ի ջուրն: Մայր յերկրի կոյս ծնաւ առանց առն զանարատն. յերկնից իջոյց զշնորհս. յերկրէ բուսոյց զպտուղս: Ձայնն Հօր վըկայեաց վասն Որդւոյ 'ի Յորդանան, և Յովաննէս ցուցանէր ձեռամբ զմարմինն որ մկրտեցաւ 'ի ջուրն: Աստուածութիւն վկայեցաւ յերկնաւոր Հօրէն, և մարդկութիւն ցուցաւ 'ի Յովաննէ՝ մկրտեալ առանց աղտոյ 'ի ջուրսն: Տեսին զնա ամենայն արարածք, և ծանեան փրկիչ և տէր: Տեսին զնա մեղք և փախեան, և դրօշեալք և ձուլածոյք՝ և խորտակեցան:

Ետես ծով զտէրն գնացեալ 'ի վերայ լնքեան, և բարձրացոյց զալիսն երկիր պագանելով զարշապարաց արարչին. զի դարձեալ քնարաւն նուագելով կարասցէ զթագաւորն ցածուցանել: Ծովն յարոյց զալիսն իբրև զաղիս քնարի քաջապինդ: Հողմք իբրև մատամբք հնչեցուցանէին զալիսն իբրև զաղիս քնարի, զի դադարեսցէ երկնաւոր թագաւորն զուարճանալով նուագօք ալեացն: Տեսին մեղք զտէրն գնալով 'ի վերայ երկրի զոր արար. և տարածեցան 'ի ներքոյ ոտից նորա վկայելով զնա արարիչ ամենայնի: Ետես զնա մահ և դողացաւ, և վաղվաղակի հնազանդեցաւ հրամանին: Զպատանի որդի այրւոյն ետ 'ի բաց հանդերձ ահիւ. հրամայեալ տեառն, դարձեալ նմա հնազանդեցաւ երկիւղիւ. և ետ զդուստրն Յայրոսի, միւսանգամ հրամայեալ տալ նմա: Ի գերեզմանէն զՂազար ետ չորեքօրեայ: Մեծ սքանչելիք և հրաշափառագոյնք և հիացումն յոյժ. տեսանել յանկարծակի զմեռեալ այնպէս գնալ շրջեալ, կապեալ պընդեալ ձեռօք և ոտիւք համդերձ ընթանալով 'ի գերեզմանէն արտաքս ելանել: Զարհուրեցաւ զմտաւ ածելով զսքանչելիսն զայնոսիկ՝ զի մարդ ընթացաւ կապեալն և պնդեալն, յանդիմանութի՝ որք լուծին զկապանսն, ուրացողացն զզօրութի փրկչին Քրիստոսի:

Ետես զնա չարն մարմնով գնալով 'ի վերայ երկրի՝ և լքաւ, զի զնշան զանկարծելիս և զսքանչելիս իւրով իշխանուք̃ կատարէր: Ասէ իւրոց զօրականացն. Ոչ գիտեմ զայրս զայս ուստի իցէ. եթէ ասեմ զսա ա̃ծ, մարմին զգեցեալ է. և եթէ մարդ ասացից, լքեալ եմ 'ի նմանէ: Պարծելով ասացից առ ձեզ, զօրք իմ. զամենայն արդարս փորձեցի և գտի 'ի նոսա ախտս ինչ, քաղց և ծարաւ, սրտմտութի և բարկութի, և որ ինչ 'ի կարգին է: Բայց զսա տեսանեմ գեր 'ի վերոյ քան զամենայն ախտս, քան զմեղս և զանօրէնութ̃ե խորհուրդս: Աստուած իցէ արդեւք. այլ ահա մարմին ունի: Մարդ ասել զարհուրիմ: Տեսի զնա 'ի քուն 'ի ծովուն, և մարդ կարծեցի. տեսի դարձեալ իշխանուք̃ հրամայեալ ծովուն. տեսի զնա նստեալ 'ի վերայ երկրի, և խնդացի. տեսի զնա վաստակեալ, և զուարթացայ: Զաշակերտսն իւր

առաքեաց 'ի քաղաքն գնել ինչ 'ի պէտս մարմնոյ, և զմտաւ ածէի ես՝ ընդէ՞ր միայն նստիցի 'ի վերայ երկրի։ Զարի իմոյ կէին մի 'ի քաղաքէն ջուր առնուլ գայր յաղբեւրն. մերձենալով ընուլ զջուրն, ետես զնա նստեալ 'ի վերայ երկրին։ Ասէ ցկինն. Տուր ինձ ջուր զի արբից, տալով նմա համարձակութիւն խօսելոյ. և գտեալ պատճառ պատասխանեաց՝ յաճախեաց 'ի նա զբանսն. և ընթացեալ 'ի քաղաքն՝ եած զամենեսեան, զի հաւատասցեն 'ի նա։ Եւ 'ի գալն նոցա և հաւատալ, հալածեցայ 'ի քաղաքէն, և 'ի տեղւոյն գերեալ եղէ։ Ամենայն ուստեք հալածիմ իբրև ըղձուկն։ Տեսի զնա արտասուեալ զՂազարոս և խնդացի. կարծեցի եթէ մարդ է, զկնի սուղ ինչ տեսի զնա ձայնիւ զի զմեռեալն 'ի շիրմէն եհան կենդանի։ Կապեալն և պնդեալն և վախճանեալն արտաքս գայր։ Ցաղթիմ ամենայն ուրեք, և ոչ կարեմ ընդդիմանալ և ոչ փոքր մի Յիսուսիս այսորիկ։ Զամենեսեան խրատեաց. զմաքսաւորս առաքեալս եցոյց. զմեղաւորս և զամպարիշտս սրբէ. զպարկեշտութիւն և զսըրբութիւն օրինադրէ։ Լքին զիս ամենեքեան և փախեան. արհամարհեցին զիմ իշխանութիւնս։ Կին մի աշակերտ հնազանդ ունէի, որ հանապազ կատարէր զկամս իմ, շիշ բազմապատիկ եւղոյ յոտս Յիսուսիս այսորիկ թափեալ՝ եթող նմա զամենայն մեղս նորա. թշնամանս զիս կացոյց ամենեցուն միանգամայն։ Ի տուն Զաքէի եմուտ, և ցրուեաց զամենայն ինչս նորա։ Ամենայն մարդ զնա սիրէ, և ընթանայ առ նա փափագելով։ Զի՞նչ արարից, կամ ո՞ւր թագեայց. ամենեքեան միանգամայն 'ի բնաւ տեղիս ատեան զիս։ Յանապատ փախեայց և հեռացայց արդեւք. ահա և անդ տեղաց նահատակութիւն նորա։ Ի վերայ դալար խոտոյ պարք և դասք ուտեն զհաց օրհնութեան նորա։ Պարտեալ եմ . . . . . . . . . . . . . . [1]։

1 Յաջորդն պակասի յօրինակին։

## ՆԵՐԲՈՂԵԱՆ
## ԱՍԱՑԵԱԼ Ի ԾՆՈՒՆԴՆ ՔՐԻՍՏՈՍԻ *

Սքանչելի է ծնունդ քո, Որդի ա͞յ. և դըժուարին է բերանոյ իմոյ խօսել զմեծ խորհուրդս նուաստ լեզուաւ: Բարձր է յայտնութիւն քո քան զամենայն բանաւորս, և անհնարին է տկարութեան իմոյ ասել յաղագս ծննդեան քո: Ոչ է բաւական ամենայն աշխարհ ճառել զփառս քո, Տէր. և արդ ես տկարս որպէս համարձակեցայց պատմել զքէն: Հայրն քո միայն գիտէ զօրպիսութիւն ծննդեան քո. և ո՞ր բերանով խօսեսցի ոք զքէն, հող և մոխիր: Ի ծածուկ է մարդկօրէն յայտնութիւն քո և 'ի մօրէն քումմէ. և արդ ո՞ ոք համբառնայ առ ա͞ծային ծնունդըն քո: Ոչ ոք է բաւական քեզ, եթէ ոչ Հայրն քո. իսկ ես ևս երկայնացուցից զլեզու իմ առ ծածուկս քո: Անծանօթ է խորհուրդ քո և 'ի հրեշտակաց. և որպիսի՞ ձայնիւ ընծայեցուցից քեզ զարդիւնս դուդնաքեայ բանից իմոց: Քերովբէքն լծեալք 'ի կառս քո ոչ երբէք ծանեան զտեղի քո. և այժմ յո՞ր կողմ ընթասցին միտք իմ պատմել զքէն: Ո՞ւր ծանեայց զքեզ, որ 'ի ծածուկդ ես. և կամ որպէս ճառեցից զքէն, զի անիմանալի է խորհուրդ քո: Յո՞ր երկիր թռուցից զգայարանս իմ որսալ զքեզ. և կամ յո՞ր սահմանս նայեցայց տեսանել զանտեսանելիդ: Ո՞րչափ ամբարձցին միտք գտանել զանհասանելիդ. և կամ յո՞ր շաւեղս ընթասցի բան՝ պատմել զանպատմելւոյդ:

Ո՞ւր գտանիցիս. 'ի կա՞ռս քերովբէական, եթէ առ Մարիամ. ընդ ծնողի՞ն քո, եթէ առ Յովսէփ յերկիրն հրէաստանի. 'ի հայրակա՞նն ծոց, եթէ 'ի յարկսն Մարիամու. 'ի հողեղինի՞ արգանդին, եթէ

* Ի ճառից Ս. Եփրեմի զերկուս եւեթ՝ զսա և զԱստուածածնայն՝ Յակոբայ Սրճոյ եպիսկոպոսի ասէ լինել Ասորեստանի յարևելեան մատենագրութիւնս իւր. այլ որ առ մեզ կան գրչագիր օրինակք՝ չորս առաջիկայ ճառիդ 'ի ՃՃ. Բ. Գ. և յՏօնակերպորն ԺԲ. և այլ չորրորդմի. և երկու այլ միւսոյն՝ Եփրեմի ունին զանուն:

յաթոռն շափիւղայ․ ՚ի վերայ հրեղէն թեւոցն, եթէ ՚ի բազուկսն Տալխթայի մօր քո․ ՚ի վերայ ուսոց քե-րովբէից ես՝ զի տեսից զքեզ անդ, եթէ ՚ի գիրկս սրբուհւոյն բնակեալ է մեծութին քո․ ՚ի մէջ լուսա-փայլից է պայծառութիւն քո, եթէ ՚ի խանձարուրս պատեալ ես և եդեալ ՚ի մսուր աղքատապէս։ Ուր ոչ հասանին իմաստք զուարթնոցն՝ բնակեալ ես էու-թե՞, եթէ նուաստ ստեամբն կերակրիս իբրև զստըն-դիայ․ ՚ի սոսկալի շարժմամբ կառացն օրհնաբանիս, եթէ գգուանք աղքատ մօրն քո հաճոյ եղեն քեզ․ ՚ի հրեղէն երեքսրբեան լեզուացն սրբաբանիս, եթէ կուսական սուրբ բերանոյն գովիս․ ՚ի վերայ բանաւոր անուոց ձոխանաս, եթէ ձեռամբ դստերն Դաւթի շօշափիս․ ՚ի հրեղէն կառս անմարմին երիւարօքն բարձրանաս, եթէ ՚ի գիրկս դստերն աղքատի իցես խոնարհեալ․ ՚ի կամարս անծանօթից ՚ի վեր քան զպետութիւնս զուարճանաս, եթէ յայրին Կապպա-թայ իջեալ է [1] մեծութին քո․ սերովբէքն մեծաձայն սրբասացութիւն առաքեն քեզ, եթէ ճշմարտապէս զկուսական կաթն ջամբեն քեզ։ Արդ յորո՞ւմ վայրի նայեցայց խնդրել զքեզ՝ որ յամիդ ես․ ՚ի Բեթղահէմ Եփրաթայ, եթէ յերկինս, եթէ յամ ծագս երկրի։

Յաղթեցայ, տէր, քանզի սքանչելի ես, և ճառ-քո մեծատուն․ և ես տկար, և լեզու իմ աղքատ, զիա՞րդ բաւեցից պատմել զքեզ։ Սուրբ է ամենեւին կոչումն քո, և միտք իմ խռովեալ․ լոյս են խորհուրդ-քո, և զի մթագոյն է իմանալի աչք իմ, և ոչ են կարող տեսանել զքեզ։ Իսկ արդ եթէ զլռութին ըն-տրեցից, գայթակղութին չար պատահէ [2], վասն զի զծուլութիւն ծնանի․ և համարձակել և ասել, եր-կիւղ մեծ է․ գուցէ ոչ կարիցեմ։ Նեղեալ եմ ՚ի մէջ երկոցունց․ և զի՞նչ գործեցից։ Քեզ տաց զքնարս ձայնի իմոյ․ շարժեա զմատունս քո, և շնորհօք հո-գւոյդ զարթո զբանս իմ հոգևոր եղանակօք պատմել զփառաց քոց։ Եւ զի ես ոչ եմ արժանի․ դու, տէր, խօսեա յիս վասն քո։ Ես փող, և շնորհք քո ձայն․

1 Մի օր․ իջեալ ՚ի մեծութէ փառացն [illegible] սերովբէքն սրբասաց յօյնս առաքին։

2 Օրինակ մի փոխանակ և ի՛ յա-ճախս վասն զձայնս [illegible] [illegible]

դու ազդեալ յիս, զի քեւ երգեցից զքոյս: Զօրութիւն քո բղխեսցեն միտք իմ զպատմութիւնս քո. եւ պարգեւօք քո երգեցից զփառս ծննդեան քո: Առաջին ծնունդն անճառելի է եւ հրեղինացն. արժանացո զիս փառաբանել զերկրորդս՝ որ 'ի կուսէն: Ցայն ոչ համարձակին միտք իմ մերձենալ. յայս սիրով քո հպիմ խօսել: Այն անճառելի է եւ 'ի հոգեղէն լեզուացն. յայս փափաքէ բերան իմ ասել, քանզի շընորհօք է: Զմշտնջենաւորն եւ ոչ սերովբէքն իշխեն քննել. եւ որ յայսմ աւուր եղեւ, եւ հովիւքն մերձեցան: Զառաջինն թէ որպէս եղեւ, Հայր միայն գիտէ. եւ զայսր աւուր ամենայն աշխարհ հնչեաց լրիւ իւրով: Այն օտար է եւ 'ի դասուցն երկնաւորաց. եւ այս մօտակաց է եւ 'ի մոգուցն արեւելեան: Անծանօթ է առաջինն 'ի քերովբէիցն. մերձաւոր է երկրորդս, քանզի ողորմութիւն եհեղ 'ի վերայ մեր: Եւ զի այս ոչ է ստուգապէս յայտնի քննողաց, ապա զառաջինն ո՞ իշխեսցէ պատմել: Ոչ մարթէ զննել, ոչ զհայրականն, եւ ոչ զկուսականն. վասն զի մի է զարմացումն եւ անպատումն: Առաջին ծնունդն 'ի վեր է քան զժամանակս. ծածուկ է յամէ՝ եւ վերջինս, պատրուակեալ է ընդ կուսական մատանեաւն: Վասն առաջնոյն ոչ գոյ տեղի ասելոյ եւ ոչ խորհելոյ. բայց երկրորդիս հրաշք եւ զդպիրսն ապշեցուցանէ: Եւ արդ լռեցից 'ի հեռաւորէն, որ ոչ պատմի. եւ եկից առ մերձակայս, որ ոչ թարգմանի:

Այլ արդ մի վասն անարժանութեան իմոյ արհամարհեր զիս, զի փափաքեմ. եւ մի զի չեմ բաւական՝ խոտեր զիս, զի փառաբանեմ: Ի կամս իմ նայեաց, տէր, թէ որպէս է պատրաստ փառաց քոց. զի ոչ ընդունայնութիւն պարծի լեզու իմ պատմել զքեն: Եւ թէ ոչ է գեղեցկադիր պսակ ճառիս, ոչ է յիմոց. զի զամենայն պատուական ակունս զոր առի 'ի քէն, ընդելուզից 'ի սմա: Եւ թէ ոչ են հաճոյ կարգբանից իմոց, դու ես շնորհեալ. եւ ոչ փոքրկանայ խորհուրդ քո մեծ 'ի նուաստ բերանոյ իմոյ: Եթէ թոթովախօս ոք զանուն թագաւորի շաղփաղփէ[1],

1 Երկու օրինակք շաղախէ . . . Թագաւորին 'ի նորա շաղփաղփ բանից:

միթէ պակասէ՞ր արդեւք անուն թագաւորին 'ի յախուռն բանից ։ Նոյնպէս և զպատմութիւն ա̃ծութեան եթէ ձայնէ տգէտ, ոչ վնասի ա̃ծութին 'ի նորա տգիտութենէն ։ Եւ այժմ ես այսու դաշնամբք մերձենամ առ քեզ, տէր. ոչ եթէ սահմանել զձայնս քո, այլ զյօժարութի̃ սրտի իմոյ յայտնել պատգամօք իմովք ։ Ասացից փոքր 'ի շատէ յաղագս շնորհացն՝ որ տուան Ադամայ ։ Քանզի իջեալ տէրն նորոգել զանկեալ և զկործանեալ պատկերն իւր, հիւսեցից բանիւք իմովք պսակս գովելի, և մատուցից նմա՝ որ հաճեցաւ ծնանել 'ի կուսէն վասն մերոյ փրկութե̃ ։ Արարից թագս արքունական, և մատուցից թագաւորին թագաւորաց՝ որ խոնարհեցոյց զմեծութի̃ իւր, և էջ յարկս աղքատաց ։ Առից զարդիւնս ձայնի իմում, և մտից առաջի այնմիկ՝ որ զգեցեալ էր զանձառ լոյսն, և յանձն առ զգենուլ զմարմին 'ի դստերէն Դաւթի ։ Մատուցից զպատարագս բանից իմոց երկրպագութե̃ քահանայապետին՝ որ եկն լինել պատարագ վասն մեղաւորացս ։ Արկից զլումայս իմ ընտրողապէս 'ի վերայ սեղանոյ քաջ հովուապետին, որ եկն լինել գառն 'ի Հօրէ իւրմէ ։ Կրկնեցից զբանս իմ իմաստասիրաբար, պատմել զԲանն ա̃ծ՝ որ եղև մարմին անփոփոխելի, և բնակեցաւ 'ի մեզ ։

Բղխեաց գո̃ւթն առատ 'ի քրայէն ողորմութե̃, որ դրօշեացն [1] զԱդամ առնուլ զմարմին նորա, զի վերստին նորոգեսցէ զնա ։ Ելեալ վտակն շնորհաց յանսահման ծովէն, այն որ ստեղծ զպատկերն, որպէս զի մաքրափայլ սրբեսցէ զնա յաղտոյ յանցանացն ։ Կամեցաւ արքայն մեծ առաքել զՈրդին իւր փրկել զաշխարհս 'ի գերութենէ չարին և 'ի մոլորութենէ կռապաշտութե̃ ։ Բազմացան կարապետքն յառաջ քան զգալուստ նորա, և աւետարանեցին զհամբաւս բարիս ա̃մ տիեզերաց ։ Սպառնացան քարոզիչքն հալածչին, և ոչ երկեաւ 'ի նոցանէ. հարին 'ի նա զնետս իւրեանց, և ոչ եթող զգերութին ։ Տեսեալ ողորմածին զի տկարանայր աշխարհ և զօրանայր թշնամին, առաքեաց զՈրդին իւր դարձուցանել զա-

1 Երկու օրինակք դրօշեաց. որպէս և այլուր 'ի սոյնպիսի իմաստս ։

ւարն 'ի գերոզէն ։ Հրամայեաց հրեշտակապետին տեառն հրեշտակաց պատրաստել զճանապարհս իւր, զի իջցէ և բնակեսցէ 'ի կոյսն ։ Անմեկնելին 'ի Հօրէ հրամանն ետ նմա 'ի փառաց աթոռոյն, և առաքեաց առ պատուանդան ոտից իւրոց․ որպէս ասէ, թէ "Երկինք աթոռ իմ են, և երկիրս պատուանդան ոտից իմոց„ ։ Արդ ուստի՞ ել, կամ ու՞ր գնաց, կամ զի՞նչ հարկ էր հրեշտակ գալ առաջի նորա, և զի՞նչ պատճառաւ առաքեաց զնա ։ Զի ոչ եթէ հոգեղէնքն երթան ընդ նմա փութանակի, և կամ հրեղէնքն արարեալ 'ի հուր կիզելոյ՝ հասանեն նմա ։ Սուր են ընթացք նորա առաւել քան զքերովբէիցն, և արագ են թռիչք նորա քան զսերովբէիցն ։ Ասպատակէ փայլակն և ոչ հասանէ նմա․ և հնչէ հողմն և ոչ կարէ յառաջել զնա․ սուր է [1] բնութ̃բ և արագ ընթացիւք ։ Եւ արդ վասն է՞ր առաքեաց զհրեշտակն առաջի իւր ողջունել և աւետարանել կուսին զգալուստն իւր ։ Թերևս զի մի՛ զարհուրեսցի օրիորդ մայրն, յորժամ տեսցէ առանց սերման զմանուկն յորովայնին ։ Եւ դարձեալ վասն այնորիկ առաքեաց զհրեշտակն, զի խելամուտ լիցի Մարիամ՝ թէ ո՛ է բնակեալ 'ի նմա ։ Եւ կամ զո՛ է բարձեալ կուսութ̃ն իւրով ։

Հասեալ հրամանին առ հրեշտակն, և նորա փութացեալ զի մի՛ յապաղեսցէ 'ի գնացիցն ։ Զբանսն զոր լուաւ Գաբրիէլ՝ ոչ ոք իմացաւ, քանզի ծածուկ տուաւ 'ի բարձրելոյն ։ Զառաքումն միայն լուաք 'ի սուրբ գրոց․ և զորպիսութ̃ին չիք մեր լուեալ, զի անհաս է ։ Բայց զայս գիտեմք հաստատութ̃բ, եթէ զոր լուաւ՝ զնոյն ասաց կուսին․ և զոր ուսաւ՝ զայն աւետարանեաց մ̃ծամօրն ։ Ընկալեալ ծառային զհրովարտակ մեծ թագաւորին, և թռուցեալ վաղվաղակի ընդ մէջ դասուց երկնաւորացն՝ քայլեաց 'ի վերայ գնդիցն, և ոչ ափշեցաւ 'ի դասապետացն ։ Անց ընդ հոյլսն, և ոչ զարհուրեցաւ 'ի լէգէոնացն ։ Յեղեաց զհուրն․ պատառեաց զհողմն․ կոխեաց զկայծակունսն․ ել 'ի մէգն, և գնայր ընդ ճանապարհս լուսեղէնս ։ Եթող զհրեշտակսն 'ի գաւառս իւրեանց,

1 Երկու օրինակք սուրբ է ։

և անց վնդքօք. Ելին զզուարթութեանն 'ի կայանս իւրեանց և մեկնեցաւ 'ի նոցանէն: Սլացեալ յերկնից՝ և էջ յերկիր, և եհաս առ Մարիամ: Տեսեալ ծառային զմայր Թագաւորին, և կորացուցեալ զգլուխն առաջի նորա, եւ զհրովարտակն ողջունալի՝ գրեալ 'ի բարձրելոյն: Եւ սկսաւ ընթեռնուլ իմաստուն բանաւորն. Ողջոյն ընդ քեզ, օրհնեալդ 'ի կանայս, տէր ընդ քեզ: Իսկ 'ի տեսանել աղաւնոյն զԹագաւորական Թռչունն՝ զարհուրեցաւ յոյժ. քանզի ոչ գիտէր եթէ ո՛վ իցէ, և զի՞նչ խնդրէ, կամ ո՛ր է գաւառ նորա, և կամ ո՛վ է առաքիչ նորա: Ցախմանէ զոր ասացն՝ եթէ տէ՛ր ընդ քեզ, ծանեաւ՝ եթէ ծառայ իցէ. բայց զտէր նորա ոչ գիտէր թէ ո՛ իցէ:

Ասէ Մարիամ ցհրեշտակն. Ասա ինձ, այր դու, ո՞վ է տէրն քո, կամ ո՞ր է աշխարհ նորա. դուցէ յայլ ոք կերպարանեցեր զիս. քանզի անտեղեակ եմ տեառն քո. ուրեմն բանքդ քո ունայն են: Տեսի՞ երբեմն զնա, և կամ զի՞նչ խօսեցայ ընդ նմա՝ որ առաքեացն զքեզ առ իս: Լուեա՞լ է իմ արդեւք զձայն նորա, և կամ խաբե՞լ եկեալ ես. զի՞նչ խորհրդով առաքեցար, և կամ որպիսի՞ է կերպարան նորա, զի դու սքանչելիդ՝ տէր կոչես զնա: Նմա՞ն է քեզ, եթէ առաւել է քան զքեզ. երևելի՞ է իբրև զքեզ, եթէ պայծառագոյն քան զքեզ. փառաւո՞ր որպէս դու, եթէ անպատում են փառք նորա: Եթէ ծառայդ զգեցեալ ես զլոյս որպէս զօթոց, ապաքէն տէրն քո ամենևին հուր է անմերձենալի. եթէ տեսիլդ քո քան զարեգակն ճառագայթէ, ապա արեգակնն թէ նայի 'ի տէրն քո՝ խաւարի: Եթէ 'ի փայլատականց քոց ծխեցաւ տաճարս, տէրն քո եթէ մերձի 'ի լերինս՝ հալէ զնոսա: Եթէ 'ի գնացից քոց կայծակունք հատանին, տէրն քո և զապառաժ քարինս կիզու՝ եթէ կոխէ 'ի նոսա: Եթէ պատմուճան քո զհուր ցօղէ՝ թէպէտ և ծառայ ես, տէրն քո և զանշիջանելի հուրն ծախէ զօրութեամբն իւրով: Եթէ ձայն քո իբրև զձայն զօրուեց անկաւ 'ի լսելիս իմ, ապա յայտ է, թէ առաքիչն քո խօսի՝ դողայ երկիր: Եթէ 'ի շրթանց քոց որոտումն ելանէ, ապա ձայն տեառն քո և զվէմս պատառէ: Ծառա՞յ ես դու, եթէ տէրն ծառայից. մի՞ ծածկեր

յինէն, զի զարմացեալ եմ յաղագս քո ։ Ո՞վ է տէրն քո, և զի՞նչ է անուն նորա, և յորմէ՞ ազգէ է, կամ աշխարհէ ։ Գաւառակի՞ց մեր է, եթէ հեռաւոր աք․ զամենայն ինչ ծանո ինձ ։

Պատասխանի ետ հրեշտակն․ Ով սրբուհի, կատարեա զբանս քո ։ Տէրն իմ անտեսանելի է, և երկիր նորա անծանօթ, և անուն նորա սքանչելի է ։ Բարձր է 'ի մէնջ և ծածուկ, և գերազանց քան ըզմիտս և զխորհուրդս ։ Է 'ի հայրականն ծոց, և այժմ իջեալ է 'ի քեզ ։ Ընդէ՞ր քննես զնա․ յինէն անտես է, բայց քեզ թերևս տեսանի՝ ծնողիդ իւրոյ ։ Հեռաւոր է 'ի տոհմէս մերմէ․ և որպէս ասացի, ոչ գիտեմ զնա ։ Ձայնին միայն լուայ, այլ տեսլեանն ոչ բաւեմ․ զգալուստն իւր առ քեզ լուայ և աւետարանեցի․ տես, ահաւասիկ առ քեզ է․ յիւրմէ ուսիր զճշմարիտն ։

Հիացաւ Մարիամ ընդ սքանչելի բանս հրեշտակին, և ոչ հաւանեցաւ լռել․ քանզի իմաստուն էր, յաճախեաց հարցանել իմաստութք, և ուսանել 'ի հրեշտակէն զճշմարտութիւն․ Ով զուարթուն, եթէ մեկնութի ոչ առնես բանից քոց, ոչ ընդունիմ զոր ասացեր յականջս իմ ։ Ոչ եմ արագալուր իբրև ըզմայրն Եւայ, որ միոյ բանի հաւատաց, և զմահ ճաշակեաց ։ Ոչ եհարց ցխրատուն իւր եթէ զիա՞րդ ա͞ծանամ վասն պտղոյ ծառոյն․ զի թէ հարցեալ էր՝ յաղթեալ էր, և ոչ էր մերկացեալ 'ի շնորհացն ։ Արդ տուր ինձ տեղի հարցուածոյ, և մի ձանձրանար յինէն ։ Չէր ինչ աւետիք օձին սքանչելի քան զքոյդ․ բայց եթէ մեկնութի քան զնորայն արասցես ։ Ոչ եմ տղայաբարոյ որպէս զնա, որ եղև որոգայթ առն իւրում ։ Եթէ ոչ յայտնես զճշմարտութիւն, ոչ արձակեցից զքեզ ։ Նա ա͞ծանալ կամեցաւ բնութք. և ինձ աւետարանեցեր ծնանել առանց ամուսնութե ։ Անհնար է լինել այդմ զոր 'ի քէն լուայ․ քանզի անփորձ եմ առն զա͞մ աւուրս իմ ։ Ցո՞ր ժամանակս ծնաւ արգանդ առանց ամուսնութե, և կամ ե՞րբ եղև այդյազգս կանանց ։ Ո՞ր երկիր բուսոյց զարդիւնս առանց սերման, և կամ ո՞ր որթ ետ ողկոյզս առանց գործելոյ․ ո՞ր ծառ աճեցոյց զպտուղս առանց ջրոյ, և կամ

ո՞ր որայ եկ 'ի կալ առանց հողագործի ։ Ո՞վ ետես կին յղացեալ առանց մերձաւորութեան առն, և ո՞ եկաց 'ի կարգս ծննդականի առանց զուգաւորութեան ։ Ո՞յր իցէ տեսեալ մանուկ յարգանդի կուսի, և կամ ո՞ւմ են պահեալ կնիք յետ յղութեան ։ Եթէ Թարգմանեսցես ոչ, դժուարին է ինձ հաւատալ ։

Իսկ 'ի լսել հրեշտակին զխօսին հարցուածոյն, զարմացաւ յոյժ, և սկսաւ ասել զոր ինչ լինելոց էր ։ Համձարեղ դպիրն նայեցեալ 'ի կոյսն՝ եթէ յօժարութեամբ լսէ զճշմարիտն, պատրաստեցաւ մեկնել զուղիղն ։ Տեսեալ զնա եթէ անվեհեր է 'ի պատասխանիսն, սրբեաց զհրեղէն լեզուն պատմել զօգտակարսն. Մի՛ կարծեր եթէ խաբեմ զքեզ, դուստր Դաւթի. Ճշմարիտ են պատգամք իմ. ընկալ զբանս իմ ընտրողապէս ։ Ոչ եթէ կարապետ եմ ես նենգաւոր, զի երկրայս լիցիս յաղագս իմ. հաւատա ինձ, ուղիղ են բանք իմ ։ Ոչ եմ նման օձին՝ որ խաբեաց զմայրն քո յեդեմ ։ Թէ զմտաւ ածցես զզօրութիւն բանից իմոց, ուսուցանէ զքեզ ։ Ոչ եթէ յափշտակել քեզ աստուածութիւն՝ խաբեմ զքեզ, այլ զտէրն իմ մեծացուցանեմ, և զողջոյնն իւր պարգևեմ քեզ ։ Ոչ եթէ իբրև զօձն զտէրն իմ չարախօսեմ առ քեզ. և ոչ ըզլոյսն մերկացուցանել 'ի քէն, որպէս 'ի դրախտին ։ Ոչ եթէ հանդերձ անարգ 'ի տերևոյ զգեցուցանեմ քեզ. այլ զանապական զգեստն բերի, զի ագուսցես հօրն քում Ադամայ ։ Տէրն իմ Ճշմարիտ է, և ես ըզճշմարտութիւն քարոզեմ քեզ ։ Եւ զի հարցեր՝ թէ որպէս լիցի, լուր և 'ի միտ առ. Հոգին սուրբ եկեսցէ 'ի քեզ ճշմարտապէս, և զօրութիւն բարձրելոյն հովանի լիցի 'ի վերայ քո ։ Ստեղծիչն մանկանց գոյացուցանէ իւր մարմին 'ի քէն և զգենու ։ և Որդի անծնին 'ի կուսութենէ քումմէ ծնանի ։ Ճարտարապետն աշխարհի իջեալ 'ի սուրբ արգանդ քո և յոստայնս որովայնի քում՝ հենու զհողեղէն ձորձս իւր և զգենու ։ Զօրութիւն բարձրելոյն մարմնանայ 'ի քէն և ոչ փոփոխի. և 'ի սրբութենէդ քումմէ թանձրանայ անեղ բանն և մարդանայ ։ Ի մաքուր բովս քո ձուլէ և դրօշէ զպատկերն Ադամայ, և 'ի քէն խոնարհի ծնանել աստուածն ամենակալ ։ Զնկարագիրն զոր եղծեաց չարն,

նորոգէ և միաւորէ ընդ իւրում էութեանն․ և նովաւ գնէ զաշխարհ 'ի ծառայութենէ բռնաւորին ։ Այն ժամանակն սկսանի յորովայնի քում, և մարդկապէս մարմնացեալ ելանէ յաշխարհ ։ Ահաւասիկ բնակեալ է 'ի քեզ, և ոչ մեկնեալ 'ի Հօրէն․ եկեալ է առ քեզ, և լի են երկինք և երկիր նովաւ ։ Ոչ է պիտոյ քեզ մերձաւորիլ, և ապա յղանալ․ զի դա է սահմանեալ զամուսնութիւն, որ 'ի քեզ է ։ Ոչ գայցես 'ի հաղորդութեան և ապա լինիցիս մայր․ զի Որդիդ քո լծեաց զհաղորդութիւն զայն յամենայն տոհմս ։ Ոչ մերձենայ 'ի քեզ այր՝ պտղաբերիլ 'ի նմանէ․ քանզի զօրութեան բարձրելոյն է պտուղ կուսութեանդ քո ։ Ոչ լուծանի կնիք կուսութեանդ քո, զի ճառագայթ լուսափայլ ծագէ և բնակէ 'ի քեզ ։ Լոյծ զմարմնական խորհուրդս 'ի մտաց քոց, զի մանուկդ քո Որդի է Աստուծոյ․ և այլ մի՛ ևս քններ և մի՛ խորհիր, եթէ զիա՞րդ և ո՞ւր և ո՞րպէս և վասն որո՞յ․ զի ծնեալն 'ի Հօրէ՝ անքննելին և անհասանելի է ։ Եւ զի յայտնապէս հաւատասցես բանից իմոց, ցուցից քեզ նշան 'ի հաստատութեան սրտի քո ։ Ահաւանիկ Եղիսաբեթ ազգական քո՝ ծերունի ամուլն յղի է, և 'ի վախճան աւուրց իւրոց մանուկ ծնանի․ և այս վեցերորդ ամիս է կոչեցելոյն ամուլ, վասն զի ոչ տկարասցի առ 'ի յԱստուծոյ ամենայն բան ։ Եւ նա վկայեսցէ քեզ բանից իմոց, զի Աստուծոյ ամենայն ինչ դիւրին է ։ Եթէ ամուլ որթն գօսացեալ զպտուղ տայ, ընդէ՞ր է անհնարին կուսութեանդ քում յղանալ ։ Անքննելի է զաւակդ քո և առանց զննելոյ․ և ոչ իւիք խնդրելի է յաղագս նորա, բայց միայն սիրով ։ Եւ յորժամ առաքեցայ բերել զաւետիս նորա, ոչ համարձակեցայ հետազօտել․ այլ առանց հակառակութեան զոր ինչ լուայ 'ի նմանէ, աւետարանեցի քեզ ։ Ոչ իշխեցի հարցանել՝ թէ զիա՞րդ կամ ո՞րպէս․ այլ լռութեամբ ընկալայ զհրամանս ահաւորին ։

Տեսէք, ընտրողք․ զի գոյ հարցուած՝ որ օգտակար է, և գոյ հարցուած՝ որ չարիս գործէ ։ Է ոք որ քննէ և ոչ պակասէ, զի ճշմարիտ է․ և է ոք որ քըննէ, և 'ի տարակուսանս վարի գործ նորա ։ Երկու պատկեր են բանից հարցուածոյ․ մինն սիրոյ, և միւսն հակառակութեան ։ Մարիամ որ եհարցն սիրով ոչ մե-

ղադրեցաւ, քանզի իմաստութիւն զճշմարտութիւն կամեցաւ ուսանել. և Զաքարիաս զի եհարց երկմտութեամբ, զդատապարտութիւն ընկալաւ պապանձմամբն։ Ընդ միում վարդապետի երկոքին միապէս հարցին, և ոչ ետ պատասխանի միապէս երկոցունցն։ Դատապարտեաց հրեշտակն զքահանայն, զի ասաց՝ թէ ի՞ւ գիտացից զայդ. և ետ կուսին զմեկնութիւն պսակս առանց մեղադրանաց։ Եւ դարձեալ Թովմաս որ ոչն հաւատաց, գովեցաւ հաւատ նորա. քանզի որովայնն անհաւատութիւն նորա զճշմարտութիւն ծնաւ։ Եւայ որ ոչ երկմտեաց՝ զմահ ճաշակեաց, զի եհարց և ոչ քննեաց. և զի հաւատաց և ոչ եհարց, կործանեցաւ։ Ծերն Զաքարիաս քանզի եհարց՝ համրացաւ. զի գոյ տեղի որ չէ պարտ հարցանել։ Մարիամ որ քննեաց, արգել զքննութիւն 'ի հերձուածողաց. զի եթէ ոչ էր խուզեալ նորա, բազում գայթագղութիւն էր լեալ յաշխարհս վասն զաւակի նորա։ Յորժամ լուաւն՝ եթէ տէր ընդ քեզ, և լռեալ էր, իբրև ալիք ծովու հեղձուցանէին զաշխարհս հայհոյութիւնք։ Եթէ վասն զի հրեշտակն մեկնեաց յայտնապէս, և տակաւին բազումք են գայթագղեալ, ապա եթէ կուսին ոչ էր հարցեալ և ոչ հրեշտակին թարգմանեալ, զի՞նչ ոչ գործէին։

Օրհնեալ 'ի կանայս Մարիամ՝ որ քննեաց զճշմարտութիւն, և ուսաւ 'ի հրեշտակէն զկատարեալ ստուգութիւն։ Առանց հարցման լռեալ է պատասխանի, և առանց քննողի ոչ յայտնեցի մեկնութիւն։ Յորժամ ասաց՝ եթէ զիա՞րդ լինիցի ինձ այդ, լուաւ՝ եթէ Հոգին սուրբ եկեսցէ 'ի քեզ, և զօրութիւն բարձրելոյն հովանի լիցի քեզ։ Եւ արդ եթէ Հոգին սուրբ և զօրութիւն բարձրելոյն բնակեցաւ 'ի կոյսն, ո՞ իշխեսցէ կրսեր ասել զնա քան զՀայր. զի զօրութիւն բարձրելոյն սիրելի Որդին է, և ինքն իսկ է իմաստութիւն և բազուկ Աստուծոյ։ Ո՞վ ներբողեսցէ զճշմարտութիւն առաւել քան զԳաբրիէլ. և կամ ո՞վ կշռեսցէ բանիւք ըզստուգութիւն իբրև զհրեշտակապետն։ Ո՞ էր բաւական ծածուկ խորհրդոցն իբրև զհոգեղէնն. և կամ ո՞ լուղայր 'ի խորս կայծականցն, եթէ ոչ հրեղէնն։ Ո՞վ կարող էր պատմել զՈրդին Աստուծոյ իբրև զկարապետն

իւր․ և կամ ո՞չ էր հաւատարիմ իբրև զպաստաւորն Հօր իւրոյ։ Եթէ խորհրդակիցն իւր յայտնեաց զնա՝ եթէ զօրութի̃ բարձրելոյն է, և տակաւին ժպրհեցան ոմանք նաւաստացուցանել զծնունդ նորա, զորպիսի՞ չարիս չէր գործեալ հերեսիովտացն՝ եթէ լըռեալ էր։ Տես զհարցուածսն Մարիամու՝ թէ որպիսի բարի է․ զի թէ լռեալ էր, ոչ էր այնպիսւոյ ճշմարտութե̃ ծագեալ յերկիր։ Եհարց և ուսաւ, և այնուհետև ոչ թերացաւ։ Մաքրեաց[1] զգայարանս, և սրբեաց զբերանս հարցողաց, և կնքեաց զբանսն՝ զի մի՛ ոք քննեսցէ զանքննելին։ Արտաքս եհան զամ խորհուրդս ՚ի սրտէ իւրմէ․ և ցօղարկեաց սիրով ըզսենեակս իւր առաջի ս̃ին։ Ելից զտուն իւր սրբութե̃ և առաքինութե̃, և զարդարեաց զորմս նորա գործովք արդարութե̃։ Կապեաց ՚ի նա զլուսաւոր մարգարիտս խոնարհութե̃, և զամ քարինս հեզութե̃, և զանուշահոտ ծաղիկս լռութե̃։ Դիւրեաց զերկիրն արքունական կուսական պատմուճանօքն, և սփռեաց ՚ի նա զպայծառ ձորձս ճշմարտութե̃։ Արկ ՚ի լապտերս իւր զգովելի ձէթս ողորմածութե̃, և լուսաւորեաց զտաճարն իւր ա̃ծային իմաստութե̃ն։ Վառեաց ջերմ հաւատով զբուրուառ իւր, և բուրեաց անուշահոտութե̃[2] զաղօթս իւր։ Եդ ՚ի նմա խունկ ընդունելի զձայնս օրհնութե̃, և անդադար ելանէր հնչումն փառաբանութե̃ ՚ի տաճարէն իւրմէ։

Ելեալ հրամանն ՚ի մեծ թագաւորէն, և զկնի նորա եմուտ Որդի թագաւորին ընդ դրունս լսելեացն։ Յորժամ ասաց կոյսն ցհրեշտակն՝ եթէ «Ահաւասիկ կամ աղախին տեառն, եղիցի ինձ ըստ բանի քում», ետ զբանն, և ընկալաւ զմանուկն ՚ի ծոց իւր։ Ոչ է այնպէս՝ որպէս ոմանք ասեն, թէ յառաջ քան զգալ հրեշտակին էջ ՚ի կոյսն․ զի թէ և այդպէս էր լեալ, չեն ինչ զարմանք։ Բայց պարտ էր յառաջ աւետարանել կուսին, և նորա բարի կամօք և ն̃ք ազատութ̃ ընդունել զնա։ Ոչ եթէ պարծանք ինչ էին ա̃յ՝ յառաջել զհրեշտակն․ այլ գովելի այն է, զի խոնար-

1 Մի օր․ Կարկեաց զբերանսն հերձուածողացն, և կնքեաց։

2 Մի օր․ անուշահոտութեամբն։

հուԹե եղեւ գալուստ Նորա ։ Զոր օրինակ Մովսէս՝ զի աւետարանեաց ժողովրդեանն՝ Թէ իջանէ բարձրեալն, եւ յորժամ սրբեցան ծերքն եւ Մովսէս՝ ապա էջ բարձրեալն 'ի լեառն սինէական, սոյնպէս աւետեաց Գաբրիէլ, եւ Նա մաքրեցաւ Հոգւով սրբով, եւ եղեւ տաճար ա՟ծայնակ ։ Ծագեաց 'ի Մարիամ ճառագայԹն լուսափայլ, եւ ոչ բաժանեցաւ յէուԹէն Հօր ։ Իջեալ եւ բնակեալ 'ի սրբուհի անարատն, եւ ճոխանայր ընդ աջմէ Հօր իւրոյ 'ի բարձունս ։ Եմուտ յարգանդն հողեղէն, եւ լի են երկինք 'ի փառաց Նորա ․ 'ի ծոց կուսին, եւ 'ի կառս քերովբէականս ․ ամենեւին առ Մարիամ, եւ ամենեւին առ Հայրն իւր, եւ ընդ ամենեսեան ։ Նստեալ 'ի քերովբէս, եւ զգեցեալ զմարմին, եւ գտանի յա՟մ սահմանս ։ Զարհուրին դասքն, հիանան հոյլքն, սքանչանան զօրուԹիւքն, դողան լեգէոնքն, գոչեն գունդքն, բարբառեն հրեշտակքն, օրհնեն քերովբէքն, սերովբէքն սրբասաց [1] 'ի վեր առաքեն զփառաբանուԹի մեծուԹե Նորա ․ եւ Ինքն բնակեալ է յորովայն կուսին յերկրորդ յերկինս՝ զոր հաճեցաւ առնել յերկրի [2] ։ Կալեալ ձեռամբ իւրով զդանդանաւանդս աշխարհի, եւ տնտեսէ զնոսա ․ եղեւ մանուկ 'ի մարմնեղէն արգանդ կուսին ։ Զափեալ է զա՟մ երկիր քլաւ, եւ տարեալ է զնա դոյզն տեղի ծոցն Մարիամու ։ Սփռեալ է իշխանուԹի Նորա յերկինս եւ յերկիր, եւ Ինքն բազմեալ է յարգանդի աղախնոյ եւ մօր իւրոյ ։ Ինքն ստեղծանէ զպատկերս մարդկան յորովայնի արամբոց, եւ Նոյն Ինքն Նկարէ զպատկեր մարդեղուԹե իւրոյ ։ Ինքն ձուլէ զանձինս բանաւորաց յորովայնի իգաց, եւ Ինքն ՆիւԹէ զմարմին իւր 'ի Մարիամայ եւ ընդ իւր միաւորէ, եւ դրոշմէ զանդամս եւ զզայարանս անձին իւրոյ 'ի կուսէն ։ Փչէ զկենդանուԹի յա՟մ մարմինս, եւ Ինքն առեալ մարմին շնչաւոր 'ի մարդկային ազգէ ։

Լուսաւորեցան միտք եւ խորհուրդք սրբուհոյն յաղագս ա՟ծորդւոյն զոր էր բարձեալ ։ Պայծառացաւ եւ փայլէր գեղեցկուԹի Նորա ․ ցնծայր եւ ուրախա-

1 Մի օրինակ ուշաղան ։

2 Ի հնագոյն օրինակէն պակասին երեք Թուղթք ։

նայր 'ի տէրն Թագաւորաց՝ որ բնակեալ էր 'ի Նմա ։ Եւ առաւել զարմանայր և զարհուրէր, ամաչէր երկընչէր և դարձեալ քաջալերէր . զուարճանայր, մեծանայր, պայծառանայր ։ Զուեաց գնաց առ Եղիսաբէթ, և ողջունեաց զամուսն 'ի տան իւրում ։ Բարձեալ կուսին զտէր խաշինն, և ել տեսանել զոչխարն ամուլ՝ որ հանդերձեալ էր ծնանել զգառն գեղեցիկ ։ Թռուցեալ ամբիծ աղաւնին Թևօք զօրութ͞ Հոգւոյն, և եհաս 'ի քաղաքն Յուդայ՝ տեսանել զձագն ծեր արծուոյն, և ուրախանալ 'ի Նմա ։ Ընթացեալ եղն տեսանել զամուսն՝ որ բարձեալ էր զգեղեցիկ եղջերուն, և գնաց տեսանել զմանուկ որթ՝ դստերն Ահարոնի ։ Նստեալ Թագաւորն 'ի փառաց կառան իւր, և գնաց տեսանել և ողջունել ողորմածութ͞ զծառայն իւր ։ Գնաց հետիոտս [1] տաճարն ա͞ծարնակ, զի լուսաւորեսցէ զկարապետն որդի աղքատի 'ի տան հօր իւրոյ ։ Եւ յորժամ ետես ծառայն մերձ զԹագաւորն՝ զարհուրեցաւ յոյժ, և դողալով երկիր եպագ Նմա ։ Փայլեաց զօրութ͞ արարչին, և խաղաց մանուկն յորովայնի, և խայտայր և ցնծայր յարգանդի մօր իւրոյ ։ Գոչեաց ծածկաբար կորիւն առիւծուն զոր գրեաց Յակոբ, և երկեաւ 'ի ձայնէ նորա որթն զևտացի ։ Խայտայր ուրախութ͞ մանուկն առաջի Որդւոյ Թագաւորին . զոր օրինակ խայտաց հայր նորա Դաւիթ առաջի տապանակին ։ Նեղեաց զմայրն իւր վաղվաղակի ելանել, և երկիր պագանել Թագաւորին և մօրն իւրոյ ։

Յայնժամ պարգևեաց Եղիսաբէթի զշնորհս Հոգւոյն որդոյ՝ քարոզել և յայտնել մօր իւրոյ զճշմարտութիւն ։ Շարժեցաւ մատն մարգարէութե͞ 'ի քնարս դստերն Ահարոնի, և սկսաւ երգել 'ի ձայն մեծ ըզհանդերձեալսն . Ուստի՞ է ինձ այս, զի եկեսցէ մայր Տ͞ն իմոյ առ իս . և Որդիդ հզօրին՝ գալ առ որդիս աղքատաց ։ Ո՞րչափ երանի է ինձ, զի տեսի զքեզ զերանելիդ զնոր երկինսդ՝ որ եղեր յերկրի և եկիր առ իս ։ Նուաղ է քան զքեզ կառքն քերովբէականն . զի Նա Նմանութ͞ եբարձ զՈրդիդ քո, և դու Ճշմար-

1 Մի օրինակ հետեւանաւք տաճարն ա͞ծունակ ։

տութե : Պայծառ են զգայարանք քո առաւել քան զբոցեղէն անիւքն . զի որ բնակեալդ է 'ի քեզ, դա ինքնին շարժէ զնոսա և վարէ : Ահաւոր ես դու քան զամպն և զմէգն՝ որ 'ի սինեական լերինն . զի ահաւասիկ 'ի քեզ է իջեալ՝ որ էրն և է, որպէս ասաց Մովսէս : Ահա իբրև անկաւ ձայն ողջունի քո յականջս իմ, խաղաց ցնծալով մանուկս յորովայնի իմում, և մեծապէս նեղեաց զիս ելանել, եթէ ոչ էր զօրութի Որդւոյ քո արգելեալ զիս : Ուրախացաւ Մարիամ յոյժ, զի և ամուլն վկայեաց յղութե նորա : Եկաց Մարիամ առ նմա իբրև ամիսս երիս :

Իսկ Եղիսաբեթի լցան աւուրք ծնանելոյ զքարոզն Ճշմարտութե : Եկն անկաւ առաջի Մարիամու . աղաչէր զնա և ասէր . Եկիր ողջունիւ . երթ 'ի խաղաղութե, մայր Թագաւորին մեծի . զի ոչ է պատշաճ զծառայ պաշտել արքայի : Ոչ է բարիոք ծառայի բազմել, և տն առաջի կալ նմա . և անհնարին է հրոյ զխռիւ ծառայել : Արի առ և զնա զարեգակնդ արդարութե . զի թէ տեսանիցէ զդա փոքր ճրագս, նուաղի 'ի լուսոյ դորա : Դարձաւ Թագաւորն 'ի տանէ ծառային, և եկն 'ի տուն մօր իւրոյ :

Իսկ եկեալ առ Յովսէփ կոյսն՝ որ բարձեալ էր ըզբազմօրեայ մանուկն : Տեսեալ զնա արդարն Յովսէփ՝ և զարմացաւ յոյժ : Նայէր 'ի հեզութի և յամօթխածութի նորա, և հիանայր մեծապէս վասն յղութե նորա : Գիտէր զի նա էր անձամբ և մաքուր սրտիւ, և ոչ գիտէր եթէ զինչ գործեսցէ, վասն զի խաղայր մանուկն յորովայնի նորա : Պայծառ էր տեսլեամբ և պարկեշտ կերպարանօք . և զի բարձեալ էր զմանուկն, ոչ հանդատէր արդարն : Տեսանէր զհրաշալի վարս առաքինութե նորա և զարհուրէր . և նայէր 'ի գործս յղութեն և խռովէր : Եւ որչափ Յովսէփ երկայնամիտ լինէր իրացն և անտես առնէր, որովայնն ինքնին աղաղակէր վասն մանկանն : Եւ որչափ նա կամէր պահել զխորհուրդն՝ զի մի յանդիմանեսցի, տեսանէր զայլսն զի ակնարկէին միմեանց : Եւ որչափ խորհէր չյանդիմանել զսրբուհին, տեսանէր զբազումս զի մատնացոյց առնէին զնա : Նեղեալ էր Յովսէփ վասն յղութեն Մարիամու . և 'ի սրբութեն

խօսել երկնչէր, և լռել ոչ համբերէր ։ Եկն հեղուք̃ և սկսաւ խօսել խանդարհութեամբ ։ Ասա ինձ, Տալիթա, զի՞նչ է պատուհասդ [1] քո անգիտուք̃ ։ Երևելի նաւ, ո՞ւր ընկղմեցաւ արդարագնացութիւն քո, և կամ ո՞ր ծով խորասոյզ արար զծանրագին վաճառականութիւնդ քո ։ Ամբիծ աղաւնի, ո՞վ եհարթ զգեղեցիկ թևս քո, և կամ ո՞վ փետեաց զծաղկագոյն փետուր մանկութեան քո ։ Հեզ և ցած ծով, ո՞վ գողացաւ զմարգարիտս քո, և կամ ո՞ր աւազակ յափշտակեաց զկնիք մատանեաց քոց ։ Ամուր քաղաք, ո՞վ կործանեաց զպարիսպ քո, և վարեաց զզօրս [2] քո ընդ օտարաց ։ Երկիր բարի, ո՞վ սերմանեաց 'ի քեզ զնենգութեան սերմն. զի որայդ այդ ոչ է 'ի մերոց ։

Պատասխանի ետ Մարիամ և ասէ. Հաստ է քեզ, Յովսէփ. կատարեա զբանս քո. տէրս իմ վկայ է, զի յայդմ ամենայնի ոչ եմ սխալեալ ։ Պահեալ է առ իս մարգարիտն, և ոչ է գողացեալ. և կնքեալ են մատանիքն, և ոչ ոք լուծեալ զնոսա ։ Ոչ ոք էառ զմարգարիտն [3] պայծառ՝ որ խօսեցեալ է քեզ ։ Ոչ է բեկեալ քարն պատուական՝ որ աւանդեցաւ քեզ ։ Հաստատուն է առ իս պսակն օրիորդութեան իմոյ, և ոչ է կողոպտեալ մեծագին զարդն ։

Ասէ Յովսէփ. Մինչև ցայժմ ճշմարիտ էիր, և զսրբունէ̃ քումմէ ես առաւել քան զամենայն մարդ վկայէի, և 'ի ճշմարտութեան քում յամ ժամ ուրախանայի. և զի ոչ էիր ստախօս, հաւաստեաւ գիտէի ։ Բայց այժմ անհնարին է ինձ հաւատալ բանից քոց. զի առաւել քան զբան՝ գործքն են ընդունելի ։ Զիա՞րդ ընկալայց զառասպել բանս քո. վասն զի անխաբելի տեսանեմ զմանուկդ 'ի ծոց քո ։ Հանապազ կցորդիցի ստութիւն պոռնկութեան, և խաբէութիւն լծակից է գողութեան ։ Որ շնայ, թէպէտ և երդնու, չէ ճշմարիտ. զի մի չարիք կարող է զբազումս ծնանել ։ Բանի՞ց քոց լուայց, եթէ հաստատուն գործոյդ հաւատացից ։

1 Մի օրինակ պատճառ քո անգիտութէդ . . . ընկղմեցաւ արդարագնացութիւն քո ։

2 Մի օր. 'ի գերութիւն զաւարս քո ։

3 Մի օրինակ զուռն ։

Պատասխանի եւ կոյսն և ասէ. Բանից իմոց կուսութիւնս իմ վկայէ. և զոր յղացեալս եմ, ոչ է յիմոց և ոչ 'ի քոյոց։ Եւ զի ոչ եմ մերձեալ յայր, ճշմարիտ է. և զամուսնութի երբէք ոչ եմ տեսեալ, հաւատա ինձ։ Եւ եթէ զիս սուտ առնես, են յազգս մեր իմաստունն կանայք. մինթէ առ իս միայն են կնիք կուսութեն դասու կանանց։ Եւ դարձեալ տուր ինձ ըմպել զջուրն փորձութեան ըստ օրինացն Մովսէսի։ Արդ զի՞նչ այլ հաւատարիմ վկայ բերից քեզ քան զկուսութիւնս և զջուրն փորձութե։ Եւ եթէ զիս և զնոսա սուտ առնես, Որդիս իմ՝ որ է զօրութի բարձրելոյն՝ վկայէ զի զայր ոչ գիտեմ։

Ասէ Յովսէփ. Ո՞ կարիցէ հաւատալ այդպիսի բանից, քանզի ոչ գոյ օրինակ նման դորա։ Ո՞ է տեսեալ զկուսութի և զմանուկ 'ի միում որովայնի. և կամ ո՞ լուեալ լցեալ ստինսն, և զկնիք մատանեաց 'ի միում մարմնի։ Յաւիտենից ոչ է լեալ այդ յազգս կանանց, եթէ յղացաւ կոյս առանց առն։ Դժուարին է ինձ հաւատալ նոր և օտար գործոյդ՝ որում ոչ բնութիւք և ոչ գիրք վկայեն։

Ասէ Մարիամ. Եթէ վկայս խնդրես բանից իմոց, դիւրաւ ուսանիս 'ի գրոց և 'ի բնութենց։ Ո՞վ ամուսնացաւ ընդ երկիր կոյս՝ որ ծնաւ զԱդամ. և ինքն Ադամ ո՞յր մերձաւորութբ ծնաւ զԵւայ։ Ո՞ ամուսնացաւ ընդ ծառոյն՝ որ ծնաւ զխոյն. և կամ ո՞ մերձաւորեցաւ ընդ վիմին՝ որ բղխեաց զվտակսն։ Ո՞ր հող յղացոյց զգաւազանն 'ի մէջ տապանակին, և կամ յո՞յր զօրութէ բղխեաց ջուր 'ի ծնօտէ իշոյն։ Ո՞ սերմանեաց յայսքան որովայնս զայսպիսի զաւակս, զի դու զիմս միայն համարիս անհնարին։ Եւ եթէ բնութեցդ ոչ հաւատաս՝ զի ճշմարիտ են, լուր սուրբ գրոց և հոգեշունչ մարգարէից։ Զիցէ՞ ընթերցեալ քո՝ զինչ ասէ Եսայիաս. "Ահա կոյս յղասցի և ծնցի զԷմմանուէլն"։ Ճշմարիտ թուի քեզ մարգարէս այս, թէ սուտ. հաւատարիմ արդեւք, եթէ այլ ևս երկմտութի գոյ 'ի սրտի քում։

Ասէ Յովսէփ. Ահ մեծ է ինձ վասն երկոցունց, և պարտ է ինձ փախչել 'ի քէն ստուգապէս։ Զի թէ յամուսնութէ է մանուկդ քո, քաւ լիցի ինձ միաւ-

րել զսրբութիւն իմ ընդ անձին՝ որ յօտարս մերձեցաւ. և եթէ 'ի Հոգւոյն սրբոյ է, նոյնպէս ոչ եմ արժանի բնակել առ քեզ։ Եւ այլ ոչ ես քննեցից՝ թէ ո՛ կամ ուստի. վասն զի յայսմ հետէ զայդ պարտ է ինձ գործել։ Զայս ասաց Յովսէփ և լռեաց. վասն զի խորհէր արձակել զՄարիամ։ Եւ նա վշտացաւ յոյժ վասն տրտմութեան նորա. աղաչեաց զՈրդին իւր մայրաբար, և աղօթեաց առ նա իբրև առ Ած. Հառաչեաց աղախնապէս, և խնդրեաց 'ի նմանէ ծնողաբար. հայցեաց 'ի նմանէ ծածկապէս, և խօսեցաւ ընդ նմա սրտիւ. խորհեցաւ ընդ միտս իւր իմաստութեամբ՝ զի յուսացեալ էր յՈրդին իւր կարողապէս։ Ով ճշմարիտ Որդի իմ և Բան Հօր, վասն որոյ բազում զրպարտեցայ. ծագեա զլոյս քո և լուսաւորեա զմթութիւն մտացն Յովսէփայ։ Քանզի հայր անուանեցաւ քեզ կարծեօք յերկրի, յայտնեա նմա զստուգութիւն մօր քո։ Գթա, ողորմած, յարդարութիւն և յամբծութիւն նորա, և մի՛ օտարացուցաներ զնա յԱծայինն յայտնութենէ քումմէ. մի՛ թագուցաներ 'ի նմանէ զխորհուրդս քո, զի մի՛ կորիցէ. այլ ծանո նմա զյայտնութիւն քո և ուրախացո զնա, զի մոռասցի զտրտմութիւն իւր։

Եւ զի արժանի եղէ ես խօսեցեալ նորա բառնալ զմեծութիւն քո, մի՛ թողուր զնա հեղձնուլ յալեաց հերձուածոյ. այլ հանգո զնա յուսալից հաւատով քո։ Այր, տէր իմ, վկայ մօր քո, քանզի շատ զրպարտեցին զիս. և հաւատացո զՅովսէփ, որպէս զի նա զբազում հաւատացուսցէ։ Եւ մինչ յայսպիսի խորհրդոց տագնապէր Յովսէփ 'ի քուն եմուտ, և հանգեաւ արդարն յանկողինսն իւր։

Յայնժամ Որդի կուսին հրամայեաց հասանել առ նա հրեշտակապետին։ Էջ կարապետն՝ որ եբեր զաւետիս մօր թագաւորին, յայտնել զխորհուրդն Յովսէփայ Ածահօրն։ Թռուցեալ հոգեղինին և եհաս առ նա փութանակի, զի զխորհուրդս երկբայութեան կորզեսցէ 'ի սրտէ նորա տեսլեամբ գիշերոյ։ Ահաւոր փառօք երևեցաւ նմա, զի յերկիւղէն ստուգապէս ընկալցի զբանս նորա։ Շնչեաց իբրև զհողմն, ցոլացաւ իբրև զփայլակն, թօթափեաց զկայծակունս 'ի թևոց իւրոց. ծագեաց իբրև զարեգակն, և ելից զտունն

'ի շառաւիղաց ուրոց. փայլեաց հրաշալի լուսն, և զարհուրեցոյց զՅովսէփ ։ Խօսել սկսաւ և ասէ ցնա. Մի՛ երկնչիր, Յովսէփ որդի Դաւթի ։ Ի սկզբան բանիցն մխիթարեաց զնա. վասն զի որդի Դաւթի էր, և հմուտ արար զնա՝ եթէ 'ի տանէ Դաւթի ծագէ արքայն զոր գրեաց Յակոբ ։ Եւ եթէ յազգէ Ռուբենի կամ Շմաւոնի կամ Ղեւեայ իցէ խօսեցեալն քեզ Մարիամ, յայտ է՝ թէ 'ի դմանէ ոչ ծնանի իշխանն որ գալոցն էր. ապա եթէ 'ի Յուդայէ և 'ի Դաւթայ իցէ տոհմն նորա, 'ի նմանէ ծագէ ճշմարտապէս՝ որ տէրն է թագաւորութեանց ։ Արդ դու մի՛ երկնչիր առնուլ առ քեզ զՄարիամ, զի ծնեալն 'ի նմանէ Որդի բարձրելոյն կոչեսցի. ոչ է 'ի պոռնկութենէ, որպէս կարծեցէքն. վասն զի Որդի նորա լուծեալ է զպոռնկութիւն աշխարհիս ։ Այլ այս է զոր գրեաց Եսայի մարգարէ. "Ահա կոյս յղասցի և ծնցի Որդի, և կոչեսցեն զանուն նորա Էմմանուէլ, որ թարգմանի ընդ մեզ Ա՟ծ" ։ Եւ եթէ այս ոչ էր լեալ, սուտ էր լեալ մարգարէութիւն Եսայեայ ։ Ահաւասիկ խառնեցաւ Ա՟ծ ընդ մարդկան, որպէս և գրեալ է. "Ելի 'ի Հօրէ, և եկի յաշխարհ" ։ Եւ զայս ասացեալ հրեշտակին՝ գնաց ։

Իսկ Յովսէփ զարթուցեալ՝ զահի հարաւ դողացեալ ափշեալ զարմացեալ. և փութապէս խոնարհեցուցեալ զգլուխն երկիր պագանէր կուսին, խոստովանէր փառաբանէր և ասէր. Ողջոյն ընդ քեզ, սրբուհի, մայր թագաւորին մեծի. երկիր պագանեմ քեզ, զի եղեր բարձող տեառնդ տերանց՝ որ 'ի քեզ է բնակեալ ։ Ստուգապէս Տ՟ր է հրեշտակաց, և նմա ծառայեն հրեղինացն դասք, և նոքին է արարիչ ամ՟ հոգեղինաց ։ Եւ կարծեմ եթէ ոչ գիտես զզօրութիւն նորա, զի ծածուկ է 'ի քէն. բայց ես 'ի մերձակայ ծառայէն իւրմէ 'ի հրեշտակէն ուսայ զմեծութիւն գորա ։ Եւ արդ այժմ զի ծանեայ, ոչ դադարեցից 'ի փառաբանելոյ և 'ի քարոզելոյ զճշմարտութիւն նորա՝ զրպարտողացն ։ Եւ փոխանակ զի երկմտեցի վասն յղութեան քո, ոչ մեկնեսցէ զիս 'ի սիրոյ նորա՝ ոչ հուր, ոչ սուր և ոչ մահ ։ Եւ վասն զի կամէի արձակել զքեզ իբրև զմահապարտ[1], քաւ լիցի ինձ թողուլ զսրբութիւն

1 Մի օրինակ զպարտաւոր ։

քո մինչև ցմահ. այլ որպէս ա̃ծաբնակ տաճար սրբա-խութ̃ք և օրհնութ̃ք ծառայեցից զմեծութ̃իդ քո:

Ընկալաւ Յովսէփ զՄարիամ, և բնակէր ընդ սըր-բոյն պահպանութ̃ք. հնազանդէր, հաւանէր, պա-տուէր, երկիր պագանէր, մեծացուցանէր, պաշտա-ւորէր, երկնչէր, լսէր նմա մեծաւ դողութ̃ք: Սուրբ էր անձամբ, և մաքուր սրտիւ և խորհրդով: Քերով-բէ մարմնաւոր եղև հիւսն ճարտարապետին աշ-խարհի: Սերովբէք թևաքօղեալ երգեն զսրբասաց փառաբանութի̃ նորա, և յարկս աղքատին բարձեալ է զնա կոյսն իբրև զա̃մ մանուկ: Երկինք նեղի տանել զմեծութի̃ նորա, և դուստր աղքատաց տարեալ է զնա 'ի ծոց իւր: Եւ որոյ հրամանաւ [1] սնանին ա̃մ մանկունք յորովայնս մարց իւրեանց, սնանէր յար-գանդի կուսին:

Իսկ յորժամ կատարեցաւ սահման ժամանակի մարդեղութե̃ իւրոյ, և հաստատեցաւ պսակ անդա-մոցն անձնաւորութե̃ իւրում, և ելից զմարմինն ըղ-գայարանօք բանաւորութե̃, և նկարեաց զպատկերն իմաստութե̃ան իւրով, և միաւորեաց զմարմինն զոր ե-առ 'ի կուսէն ընդ ա̃ծութե̃ան իւրում, և իբրև լցան ինն ամիս յղութե̃ իւրոյ, եկն 'ի ծնունդ ճշմարտա-պէս՝ որ գոյացոյցն զԱդամ. և ծննդեամբն իւրով ազատեաց զարարածս 'ի գերողէն: Եւ յորժամ կա-մէր ձեռնագրել զԱդամ 'ի կենաց գիրս, ել հրա-մանն՝ որ գրէր զմարդիկ յաշխարհագիրն: Համդի-պեալ հրամանաց երկուց թագաւորացն միմեանց, երկնաւորին և երկրաւորիս, կայսրն գրէր զմարդիկ՝ տալ նմա հարկս, և Որդին ա̃յ գրէր զորդիսն Ադա-մայ 'ի դպրութի̃ կենաց: Մին թագաւորն հնարէր պարտականս իւր առնել զմարդիկ, և միւսն ողորմի և զպարտականս ազատէ 'ի պարտուց: Առաջին և նոր էր աշխարհագիրն այն. և նախնի և նոր էր փըր-կական ազատութի̃ն՝ որ եղև մեզ: Արտաքնովքն օ-րինակէին զծածուկսն, և երկրաւորօքս գուշակէին զերկնաւորսն: Ելեալ հրամանացն, և զիւրաքանչիւր ոք 'ի գաւառն իւր գրէին. և զԱդամ յեդեմ գրե-

1 Աստի մինչև ցկատարած ճառիս անթերի է հնագոյն օրինակն:

ցին, զի այն է գաւառ նորա. 'ի դրախտն փափկութ. և 'ի քաղաքն մեծ գրեաց զնա տէրն իւր, յառաջին բնակութիւն և 'ի մէջ ծանօթիցն, անդ պատուեաց զնա։ Եւ յորժամ հրամայեաց կայսրն գրել զիւրաքանչիւր ոք յիւրում աշխարհին, եկին և առ Յովսէփ՝ զի եկեսցէ գրել զանուն իւր 'ի քաղաքն Դաւթի։ Եւ նորա առեալ զՄարիամ գնաց 'ի Բեթղահէմ։

Ունէր Մարիամ զԹագաւորն և գնայր 'ի քաղաքն թագաւորաց, զի ծնանիցի զայն՝ որ զմարդիկ 'ի դրախտութեն կենաց գրեսցէ յայտնութ. իւրով։ Եկեալ նոցա յԵփրաթայ 'ի քաղաքն Դաւթի, և երկուինք ծնընդեանն հասին ժամանակ կուսին։ Եւ զի ոչ գոյր նոցա տուն իջանելոյ 'ի Բեթղահէմ, մեկուսացեալ նոցա յայրն 'ի տուն քարափոր՝ և անդ իջին։ Իջեալ մեծատունն ընդ աղքատս 'ի դատարկ տունս, և հզօրն ընդ տառապեալսն 'ի ծերպս վիմին, նեղեաց զմայրն յերկունս և 'ի ցաւս 'ի ծնանելն իւրում *. զի մի կարծեսցէ ոուրք կոյսն եթէ հոգի միայն ծնաւ։ Ծնաւ ոչխարն ստերդ զկորիւն առիւծուն՝ զհզօրն զօրութեց զոր գրեացն Յակոբ. յօրհնութիւն իւր։ Դադարեաց ամբիծ աղաւնին, և եհան զձագն երիտասարդ՝ զԹագաւորն Թռչնոց 'ի բոյնս փոքր։ Բազմեցաւ ծնանել երինջն կուսութ. զեզն պարարակ, որ եկն լինել ողջակէզ վասն մեղաւորաց։ Ծնոյց զանձն իւր ստեղծիչն մանկանց մարմնապէս. եւ յորովայնէն, և ամբողջ մնաց կնիք կուսութեն։

Ծնային և մարդկային է ծնունդ նորա և ոչ բաժանի, զի 'ի վեր է քան զսահմանս։ Աստուածային է, զի 'ի կուսէ ծնաւ անհասանելին. և մարդկային, զի մարմնացեալ ծնաւ անքննելին։ Մի է մի ծնունդ միածնի Որդւոյն, կատարեալ, բովանդակ, երևելի, աքանչելի, տեսանելի, իմանալի։ Ծնեալ 'ի Հօրէ, անտես 'ի զուարթնոց, երկրպագելի մարդկան. յէութենէ և 'ի մարդկութէ. մին միածին 'ի մեծութէ և 'ի փոքրութենէ. մին փրկիչ՝ 'ի բարձրելոյն և 'ի կուսէ. մի զօրաւոր՝ 'ի հրեղինացն և 'ի հողեղինացս։

* Իմա, ոչ ըստ այլոց ծննդականաց թեամբ կուսական ծննդեան ըստ նոցա, այլ աղգամամբ և պատշաճապատու անճառահրաշ խորհրդոյն.

Մի ամենակալ՝ ծածուկ է էութ̃բ և յայտնի մարդկութ̃բ, և ո՞ իշխեսցէ քննել զնա. անծանօթ է բընութ̃բ և ճշմարիտ մարդեղութ̃բ, և ո՞ համարձակեսցի զննել զնա. զգեցեալ է զլոյս և պատեալ 'ի խանձարուրս, և ո՞ սահմանեսցէ զնա. բազմեալ յաթոռ փառաց և եդեալ 'ի մսուր յանբանից, և ո՞ կարասցէ իմանալ զնա. դողացուցանէ զքերովբէս և ըզգեցեալ է մարմին, և ո՞ պատմեսցէ զնա. շարժէ զբանաւոր անիւսն և բարձեալ 'ի գիրկս Մարիամու, և ո՞ ճառեսցէ զնա. յագեցուցանէ[1] զտոհմս և ջամբէ զկաթն, և ո՞ տեղեակ է նորա. ճոխանայ 'ի քերովբէական կառսն և նստի 'ի բարձսն Մարիամու, և ո՞ հասու լինի նորա. զարհուրեցուցանէ զսերովբէսն և յանձն առեալ է զաղքատութի̃, և ահա զարմացումն մեծ. բղխէ զանձրևս և կալեալ է զստինսն, և ահա հիացումն. որոտայ յերկինս և սարսափեն զօրութիւնքն և գգուի 'ի մօրէն, և ահա սքանչացումն[2]: Զուարթունքն ծածկին, և Յովսէփ երկըրպագէ, և ահաւասիկ շնորհք: Դասքն երգեն և մարդիկ փառաբանեն, և ահաւասիկ խոնարհութի̃:

Օրհնեցին քերովբէքն և օրթաբանեցին սերովբէքն. գովեցին հրեշտակքն. բարեբանեցին իշխանութի̃քն. փառաբանեցին պետութիւնքն. գոչեցին դունդքն: Ժողովեցան լեգէոնքն, և իջին յերկիր: Փայլեցին հրեղէնքն. ճնչեցին հոգեղէնքն. երգեցին հազարք և բեւրք զնոր օրհնութի̃ս նորածին արքային: Դղրդայր անապատն 'ի հնչմանէ երկնաւորացն. և փայլատակումն զուարթնոցն ցնծեալ զգիշերն, վառեցան կայծակունք հրոյ և պաշարեցին զքաղաքըն. ծագեցին ճառագայթք լուսոյ և նուաղեցաւ խաւարն: Իջին զօրքն վերինք, և արարին զերկիրս երկինք. խառնեցան ընդ իրեարս վերինքն և ներքինքս, և զփառաբանութի̃ պսակս մատուցին մեծ Թագաւորին: Աւետարանեցին զաբրիելեանքն առաջեանցս՝ թէ զարթիք և ուսիք զնոր օրհնութի̃ս: Քաղցրաձայն եզանակօք բարբառեցան դասքն Միքայէլի, և ուսուցին մարդկան զերգս օրհնութե̃ իւրեանց:

1 Հնագոյն օրինակն յագեցանէ: 2 Երկու օրինակք սքանչանան:

Գոչեաց զօրութե̃ զձայն օրհնութեան քերովբէիցն, զի բացցին խցեալ բերանք մարդկան 'ի փառաբանութ̃ի: Երբեւ զքաղցրաձայն փողս հնչեաց սրբասացուի̃ սերովբէիցն, զի զարթուսցէ 'ի քնոյ զորդիս մարդկան: Պար յօրինեցին զօրուի̃քն երկնից քնարօք իւրեանց եւ ասէին. Փառք 'ի բարձունս ա̃յ եւ յերկիր խաղաղութ̃ի եւ Ադամայ մեծ յոյս հաշտութ̃ե:

Ընթացեալ հրեշտակացն աւետարանէին հովուացըն՝ թէ եկն քաջ հովուապետն, ժողովել զցրուեալ բանաւոր խաշինս իւր: Աւետարանեմք ձեզ ուրախութ̃ի մեծ, զի ծնաւ ձեզ այսօր փրկիչ՝ տէր օծեալ, 'ի քաղաքի Դաւթի: Նա է փրկիչն՝ որ յափշտակէ զգերութ̃ին 'ի ձեռաց բռնաւորին, եւ արձակէ զկապեալսն 'ի խաւարային կապանացն: Նա է հզօրն՝ որ դարձուցանէ զաւարն սպանմամբ իւրով, եւ չարչարանօքն յաղթէ թշնամոյն եւ հալածչին: Ընդէ՞ր կայք լռեալ, ով մարդիկ. քանզի եկեալ է թագաւորն ձեր. գնացէք տեսէք եւ երկրպագեցէք նմա: Ձեզ է եւ խանարհ, եւ ոչ ունի փառաւորութ̃ի իշխանի: Սուսեր եւ վահանակ ոչ գոյ 'ի ձեռին նորա ըստ պատերազմողի, եւ ոչ զարդարեալ հեծանելիս 'ի ներքոյ նորա: Ձիս եւ զջորիս ոչ ունի՝ եւ թագաւոր է. եւ ոչ զերագագնաց երիվարս՝ եւ իշխան է: Ի խանձարուրս պատեալ եւ 'ի մսուր եդեալ գտանիցէք զնա. եւ մի երկբայիք վասն աղքատաբար տեսլեան նորա:

Ընթացին հովիւքն յաւետիսն խաշամբք իւրեանց, եւ հաւատացին ամբիծքն, եւ առեալ զընծայսն ընթացան առ նա: Ընտրեցին արդարքն եւ տասանորդեցին "ուղիղքն, եւ մատուցին զպատարագս իւրեանց՝ զգառն իբրեւ քահանայի, եւ զկաթն իբրեւ տընդեցւոյ, եւ զփառսն իբրեւ ա̃յ: Զառաջին ընծայսն հովիւքն մատուցին նմա. մտին յայրն պատարագօքն իւրեանց, եւ երկիր պագին նմա: Զգառն մաքեաց մատուցին գառինն ա̃յ, որ եկն լինել զենումն եւ պատարագ ա̃յ, եւ դադարեցուցանել զգառինս 'ի զոհելոյ: Խառնեցան ընդ հրեշտակս հովիւքն եւ փառաբանեցին զնա: Մեծ սքանչելիք եղեն, զի միաւորեցան ձայնք երկնաւորացն ընդ երկրաւորացս, եւ եղանակք անմարմնոցն ընդ մարմնաւորացս: Եւ եղեալ

փառաբանութեան յամբերանոց՝ միաբանեցան երկինք և երկիր երգել զօրհնութիւն միոյ միջնորդի՝ որ հաշտեցոյց զնոսա ծննդեամբն իւրով ։ Մանուկն լուեալ կայր, և հոյլքն զարհուրին ․ ձայնքն բարձրանան, զուարթունքն բարբառին, մարդիկ գոհանան ․ այրն փոքր, մսուրն աղքատապէս ․ Յովսէփ ուրախացեալ, Մարիամ զարմացեալ և Որդին աղքատացեալ ։

Իսկ Մարիամու տեսեալ զայս սքանչելիս՝ քաջալերեալ զինքն, և փախուցեալ երկանցն և ցաւոցն 'ի նմանէ՝ յոտն կացեալ առաջի որդւոյն իւրոյ և խոնարհեալ երկիր պագանէր, անկեալ առաջի նորա աղօթէր ծնողական սիրով և ասէր ․ Տէր իմ և Որդի, հրամայեա աղախնոյ և մօր քոյ խօսել ընդ քեզ ։ Արձակեա զլէգէոնսդ յերկիւրն քո, վասն զի անդ եմ ։ Սաստեա հրեղինացդ, զի տեղի տացեն ինձ մերձենալ առ քեզ ։ Ասա սերովբէիցն ամբառնալ զթեւս իւրեանց՝ տալ ինձ առ քեզ ։ Տուր կուսական կաթինս հասանել 'ի բերան քո ․ շնորհեա ստեանցս զոր սնուցեր, զի սոքա զքեզ սնուսցեն ։ Պատառեցաւ երկիր 'ի գոչմանէ երկնաւորացն, հրամայեա նոցա հաւաքել 'ի լուսեղէն առագաստն բարձանց ։ Տուր ձեռաց իմոց զզօրութիւն քերովբէիցն, զի կարող լիցին իբրև թևօք ամբառնալ զքեզ ։ Պարգևեա լեզուի իմոյ զսրբասացութիւն սերովբէից, որպէս զի անդադար երգեսցէ քեզ բերան իմ զսրբութիւն ։ Տուր բարձից իմոց զժուժկալութիւն բանաւոր անուոցն, զի կարող լինիցին շարժել զմեծութիւնդ քո ։ Տուր ինձ զօրութիւն, քանզի զօրութեանդ քո չեմ բաւական ։ Եւ դու զքեզ պատուեա, զի և երկինք ոչ բաւեն տանել զքեզ ։ Յայսմ աւուր մեծի ծննդեան քո ցնծասցէ երկիր լրիւ իւրով, և փոխանակ փշոցն բուսուսցէ զբարի արդիւնս ։ Այսօր ուրախ լիցի Ադամ նախահայրն տոհմից, զի զա̃ծ ընկալաւ 'ի ծննդենէ իւրմէ, որպէս ցանկացաւ ։ Այսօր Եւայ ցնծասցէ առաւել քան զԱդամ, վասն զի ծնաւ 'ի նմանէ մանուկ՝ որ եղյծ զցաւս անիծից նորա ։ Այսօր ուրախ լիցի դրախտն համօրէն ծառովքըն ․ քանզի դարձաւ որոշեալ դրախտապանն 'ի ժառանգութիւն իւր ։ Այսօր ցնծասցեն ա̃մ հեթանոսք՝ որ ցրուեալ էին ընդ ա̃մ երկիր, զի քեւ ժողովեցան ։

Այսօր բուսաւ բարունակ յարմատոյն Յեսսեայ, որ արբուցանէ քաղցր գինւովն զծարաւեալ հեթանոսս։ Այսօր հաստատեցաւ տուն մանրեալ, և զօրացաւ գարշապարն տկարացեալ։ Այսօր գերութիւն հեթանոսաց խաղաղութեամբ դարձաւ, և ամուլն բազմածնունդ եղև։ Այսօր ուրախացին գունդք մարգարէիցն, զի կատարեցան բանք նոցա 'ի ծննդեան քո։ Այսօր Դաւիթ հայրն քո յօրինեսցէ քնարս տասնաղւոյն իւրոյ, և երգեսցէ զերգս նոր ծննդեանս քո։ Այսօր ազդումն լինի Եսայեայ 'ի գերեզմանն իւր, զի ահաւասիկ առաջի իմ է Էմմանուէլն, որպէս մարգարէացաւ։ Այսօր փառաւորեսցէ որդին Ամովսայ, զի ծնայ զմանուկն և կոյս մնացի, որպէս գրեացըն։ Այսօր ցնծասցէ ևս առաւել մարգարէն Զաքարիաս, զի դու ես այրն՝ որոյ անուն իւր ծագումն, որպէս ասացն։ Այսօր ծագեսցէ լոյս քո 'ի գերեզմանս մարգարէիցն, և զարթուսցէ զնոսա փառաւորեալ քնարօքն իւրեանց։ Այսօր ուրախանայ Յովսէփ՝ անուանեալ հայր քո, որ բազում նախատեցաւ վասն քո, և արժանի եղև տեսանել զփառս քո։ Յայսմ աւուր յորժամ ծնայ զքեզ, բազմացաւ փառաբանութիւն քո. զի երկնայինքն և երկրայինքս երգեցին զնոր օրհնութիւնս։

Այսօր երգեաց Մարիամ զայսպիսի բարբառս ամբիծ աղաւնին սիրելի Որդւոյն իւրոյ. և միաւորեցաւ ձայն գգուանաց նորա՝ երգոցն հրեշտակաց։ Խառնեցաւ բարբառ նորա ընդ սրբասացութիւն սերովբէիցն, և յաղթեաց եղանակ նորա ոստոմանն բոցեղինաց. զի գովալի օրհնաբանէր զՈրդին իւր սիրելի։ Գոչեաց քնարն կուսութեան միաւորեալ ընդ հրեշտակաց, զի հաղորդ էր նոցա կուսութեամբ և սրբութեամբ։ Նորոգեցաւ երկիր որ հնացեալ էր մեղօք, և վերստին ստեղծաւ ծննդեամբ Որդւոյն այ։ Մեծ են փառք այսմ աւուր քան զամ աւուրց. և հրաշալի է պայծառութիւն տօնիս այսմ քան զամ տօնից։

Զարթիր, եկեղեցի, գեղեցկազարդ երգովք քո, և մատո զպատարագս օրհնութեան տեառն քո յաւուր ծննդեան նորա։ Այսօր ելանէ Սիոնն, և մտանէ եկեղեցի հեթանոսաց, և բարձրանայ խոնարհեալ

գլուխ նորա զաւակին ։ Այսօր ուրախանայ հարսնացեալ եկեղեցի 'ի դառնալն 'ի տուն փեսային․ զի թողեալ էր զնա և գնացեալ զհետ դիւամոլ կռապաշտութե՛ ։ Այսօր ցնծայ վշտացեալն 'ի վաղնջուց, զի եկն փեսայն հանել զնա 'ի խաւարային մոլորութէ դիւացն ։ Այսօր գոհանայ կապեալն կապանօք բռնաւորին, զի եկեալ ազատիչն ելոյծ զկապանսն անգիտութե՛, և ազատեաց զնա ։ Այսօր նկարագրեաց ստեղծիչն վերստին զապականեալ զպատկերն իւր, և խառնեաց 'ի նա զդեղս անմահութե՛, զի այլ մի ևս եղծցի յաւիտեան ։ Այսօր շինեաց տաճարապետն իմաստութե՛ զանկեալ տունն, և եդ 'ի նմա զա՛ծային զանդրդուելի սիւնն ։ Այսօր հաշտեցաւ տէրն ընդ Ադամայ, զի Որդին որ ծնաւ՝ արար զխաղաղութի՛ ընդ Հայր և ընդ Ադամ ։ Այսօր եգիտ տէրն զմոլորեալ ոչխարն, և բարձեալ 'ի վերայ ուսոցն դարձոյց 'ի դրախտն յեդեմ ։ Այսօր դարձան հօտք հեթանոսաց, քանզի հովիւն քաջ հալածեաց զգայլն ապականիչս, և ապրեցոյց զնոսա ։ Այսօր արտաքինքն եղեն ներքինք, և մերձաւորքն խռովեցան և ելին 'ի տանէ թագաւորին ։ Այսօր իջեալ տէրն սաբաւովթ կործանեաց զմեհեանս, և եբարձ 'ի նոցանէ զանունն աստուածոց ։ Այսօր յայտնեցաւ հզօր պատերազմողն գերութե՛ աշխարհի․ զի զապստամբ գերիչն կապեաց, և դարձոյց զգերութի՛ն զօրութեամբ իւրով ։ Այսօր եկեալ բժիշկն հիւանդաց և վիրաւորելոց՝ որ ձրի բժշկէ և ողջացուցանէ, և դարձեալ ինքն վարձս տայ բժշկեցելոցն ։ Այսօր թաքոյց կինն ըզխմորն կենաց 'ի զանգուածս մեր, մինչև ա՛մն խմորեցաւ․ վասն զի ունայնացեալ էր ազգ մարդկան յա՛ծային գիտութե՛նն ։ Այսօր իջեալ կենդանի ա՛ղն 'ի բարձրելոյն, և համեմեաց զանհամութի՛ս մեր ըստ առակին Եղիսէի ։ Այսօր ելեալ հրաման 'ի Հօրէն առհաւատչեայ կենացն․ վասն զի ծննդեամբ Որդւոյն 'ի վեր հրաւիրեաց զազգս մարդկան ։ Այսօր որ է ամիս առանց արդեանց, առաքեցաւ մեզ պտուղն կենաց յերկնաւորէն ։ Յայսմ ամսեան՝ որ է դատարկ յա՛մ մտից, առաքեցաւ մեզ որայն կենաց և յագեցոյց զմեզ ։ Յայսմ ամսեան՝ յորում աղքատանան ա՛մ տառապեալքն, էջ մեծատունն և բաշխեաց զգանձս

իւր ա̃մ տնանկաց ։ Յայսմ ամսեան՝ յորում դատարկ է այգի ՚ի խաղողոյ, պարգեւեաց մեզ ուղխն կոյս զողկոյզն յարգանդէ իւրմէ ։ Յայսմ ամսեան՝ յորում թօթափին տերեւք ՚ի ծառոց, փոխեցան տերեւքն Ադամայ ՚ի զգեստս լուսեղէնս ։ Յայսմ ամսեան՝ յորում կապէ զսերմանիս սառամանեօք իւրովք, տուաւ մեզ սերմն բարի ՚ի ծարաւուտ երկրէ և յանվաստակ ։ Յայսմ ամսեան՝ յորում սպառի երկիր ՚ի բարութեց, առաքեցաւ մեզ երկնաւոր բարութիւնն հոգւոց մերոց ։ Յայսմ ամսեան՝ յորում բարձրանայ արեգակն յաշտիճանս լուսոյ, ծագեցաւ մեզ արեգակն արդարութե և լուսաւորեաց զմեզ ։ Յայսմ ամսեան՝ յորում տեղի տայ խաւարն և յետս դառնայ, վասն զի յաղթի ՚ի լուսոյ, պարտեցաւ չարն և յետս դարձաւ և անկաւ յիշխանութենէ իւրմէ ։ Յայսմ ամսեան՝ յորում կարճի գիշեր և պակասի ՚ի լիութէ, և աճէ առաւօտ, կարճեցան հաղըք և որոգայթք չարին ՚ի մարդկանէ ։ Յայսմ ամսեան՝ յորում պարտաւորի խաւար ՚ի լուսոյ, պարտաւորեցաւ իշխանութի խաւարին յանեղ լուսոյն ։ Յայսմ ամսեան՝ յորում նորոգին յինքեանս հնացեալքն, ՚ի սմա նորոգեաց տէր մեր զառաջինսն ։ Յայսմ ամսեան՝ յորում տան թագաւորք զհրամանս նորս, ել հրամանն խաղաղութե երկրի ՚ի թագաւորէն մեծէ ։ Յայսմ տօնի՝ յորում երգեցին հրեշտակք գոչմամբն իւրեանց, գոհանան և ժողովք սեպհականք հեթանոսաց ովսաննայիւք իւրեանց ։ Յայսմ տօնի՝ որ սպասաւորեցաւ յերկնաւորաց, պաշտի և երկրպագի ծընեալն ա̃ծ յերկրաւորացս ։ Յայսմ տօնի երգեցի ըզփառաբանութի ծննդեան քո. յաւուր յահեղի քո տեսից զողորմութի ա̃ծութե քո ։ Յառաւօտիս յայսմ օրհնեցի զքեզ սակաւ բանիւք. արժանի արա զիս ՚ի մեծի առաւօտին անսպառ օրհնել զքեզ ։ Յառաւօտիս յայսմ մատուցի եկեղեցւոյ քում զպատարագս ձայնի իմոյ. յառաւօտին յաւիտենից դասեցո զիս ընդ հրաւիրեալսն յառագաստին քում ։ Յառաւօտիս յայսմ Հօրն քում փառաբանութի, և քեզ անդադար օրհնութի, և Ս̃րյ Հոգւոյն երկրպագութի, և մեզ հաւատացելոցս ողորմութի այժմ և միշտ և յաւիտեանս յաւիտենից. ամէն ։

## Ի ԳԱԼՈՒՍՏՆ ՏԵԱՌՆ Ի ՏԱՃԱՐՆ ՔԱՌԱՍՆՕՐԵԱՑ ԵՒ Ի ԾԵՐՈՒՆԻՆ ՍԻՄԵՈՆ *

Որ անսկիզբն ես յէութեան անպարագրելի Բանդ Հօր՝ յառաջ քան զյաւիտեանս հաճեցար լինել տղայ 'ի կուսէն, բաց զշրթունս իմ գովել զանծայինն ծնունդ քո։ Որ ստեղծիչդ ես մանկանց և յաղթեցար 'ի սիրոյ քումմէ լինել մանուկ, ստեղծ յիս բան գեղեցիկ՝ պատմել զտնօրէնութիւնդ քո։ Որդի կուսուն՝ որ ծնար 'ի նմանէ 'ի վեր քան զբնութիս, իմաստացո զլեզու իմ ճառել զսքանչելի գործս քո։ Որ անծանօթդ ես 'ի հրեղինաց և զգեցար մարմին 'ի հողեղինաց, տուր ինձ լինել մշակ յայգի ճառիս քո իմաստութք։ Ո՜ զարմացումն։ Որ անպատմելիդ ես 'ի բանաւորաց, ծանո ինձ զսէր քո. որպէս զի առանց քննելոյ երգեցից զզօրութիս քո։ Տուր ինձ փառաբանել զքեզ սքանչելեօք և սիրով. զի առանց սիրոյ ոչ ոք կարէ պատմել յաղագս քո։ Եկեղեցի հեթանոսաց, գոհացիր և գովեա յիմ լեզուս քո զծեր մանուկն՝ որ ծննդեամբն իւրով ազատեաց զքեզ 'ի կապանաց քոց։ Զարմացումն է ասել և հիացումն է լսել՝ թէ մարդ եղև, և տէրն ժամանակաց եղև ընդ սահմանաւ ժամանակի։

Որ զգեցեալն է զլոյս անտանելի, զգեցաւ զմարմին հողեղինի 'ի դստերէ Դաւթի։ Որ ծածկեալն է յանիմանալի ծոցն հայրական, եկն 'ի ծնունդ, և եղև մարդկան տեսանելի։ Հինաւուրց մանուկն՝ որ 'ի խանձարուրս պատեցաւ, եղև բառնալի ձեռօք ծերունւոյն Սիմէոնի։ Մշտնջենաւոր քահանայապետն՝ որ ետ զքաւութի որդւոցն Ղևեայ, ձագօք աղաւնեաց ելանէր այսօր 'ի տաճարն։ Տէրն քահանայից՝ որ ընդ Հօրն իւրում ընդունի զպատարագս աշխարհի; զոյգս տատրակաց մատոյց Յովսէփ վասն նորա ըստ օրինացն Մովսէսի։ Որ ետ զօրէնս ընդ

* Ի ճառընտրացն Բ. Ե. ԺԵ։

Ծնողին իւրում 'ի լեառն Սինեայ, եկն կատարել զօրէնսն և զմարգարէսն յիւրում մարմնի ։ Եկն 'ի Թլփատութի̃, զի զմարդեղութի̃ն իւր հաստատուն արասցէ. և մատոյց զպատարագս, զի ցուցցէ՝ եթէ ոչ օտար է 'ի Հօրէն ։ Ինքն հրամանս ետ Ջուրց, և ըղխեցին զԹռչունս. և ինքն մատնէր պատարագօք յանդիման լինել առաջի տեառն ։ Առեալ զնա Մարիամ հանդերձ պատարագօքն զընդունիչն պատարագաց՝ եւ 'ի տաճարն ըստ օրինացն մատուցանել զպատարագսն. առեալ զձագսն զոր եբեր Յովսէփ յաղագս մանկանն, և եկին 'ի տուն տեառն ըստ հրամանի մարգարէին ։

Տեսեալ Հոգւոյն Սրբոյ զմիջնորդ ա̃ծութե̃ն՝ և կոչեաց զծերունին Սիմէոն, զի վկայեսցէ վասն մանկանն ։ Արդար էր վկայն զոր եբեր Հոգին, և հաւատարիմ. և բազմութի̃ ամաց իւրոց վկայէր զճշմարտութի̃ն իւրմէ ։ Վասն այնորիկ էր պահեալ զնա կենդանի յայնչափ ժամանակս, զի տեսցէ զօծեալն տեառն 'ի մարմնի. և արժան և յիրաւի էր ծերունւոյն վկայել զանսկզբնականէն, որ հաճեցաւ լինել մանուկ 'ի վախճան ժամանակի ։ Լայնեաց և բազմացոյց զչափ աւուրց նորա, զի վկայութի̃ նորա յանդիմանեսցէ զմանուկն՝ եթէ յառաջ է քան զյաւիտեանս ։ Արգել 'ի նմանէ զմահ, զի յայսմ պատճառէ յայտնի լիցի իշխանութի̃ն Որդւոյ ։ Կապեաց զնա ընդերկայն ամօք. զի յորժամ աղաչեսցէ զՈրդի, ծանիցէ աշխարհ ըզմեծութի̃ նորա ։ Անցանէին դարքն, և ծերն պահեալ կայր. զի լիցի վկայ՝ թէ ո՛վ է տէրն ժամանակաց ։ Ննջէին ազգքն, և Սիմէոն կենդանի մնայր և ակն ունէր մշտնջենաւորին՝ որ գայր 'ի ծնունդ մարդկապէս ։ Բնակէր յաշխարհի ծերունին, համբերելով տեառն աշխարհի՝ եթէ ե՞րբ յայտնեսցի յաշխարհի, որպէս և խոստացաւն ։ Անցանէր մահ յայս կոյս յայն կոյս շուրջ զնովաւ և ոչ մերձենայր 'ի նա. անցուցանէր առաջի նորա զնահապետսն, և 'ի նա ոչ իշխէր մերձենալ ։ Իբրև զարձան էր եդեալ զՍիմէոն 'ի ճանապարհի. եթէ որ փոխէ զնա 'ի կենացս, նա է կենդանարար ։ Անհնարին կապանօք կապեալ էր զնա ա̃ծապէս. եթէ որ ոք եկեալ արձակեսցէ զնա, նա

է տն ճշմարիտ: Բազում օծեալք և քահանայապետք կացին յերկրի, և զմի ոք ոչ ընտրեաց Սիմէոն. բայց միայն զտէրն ամենեցուն: Զայս էր նշան եդեալ հնացեալ բազմամեայն՝ եթէ որ ոք հանգուսցէ զծերութիւն նորա, նա է տէրն իւր: Աշխատեցաւ ծերն նայել յամ ծնունդս՝ եթէ ո՛վ տացէ ներումն ծերութեան նորա: Եւ մինչ նա յայսպիսի համբերութեան էր, եհաս ժամանակ՝ զի հանգիցէ 'ի հալածանաց իւրոց. եկն նախախնամողն արարածոց արձակել զկենդանակապ նաւն և կապել 'ի նաւահանգիստն մահու, մինչև եկեսցէ միւսանգամ:

Դարձեալ կուսին զծեր մանուկն և եկեալ 'ի տաճարն, զայն որ եկեալն էր նորոգել զհնութիւն տմ աշխարհի: Բերին զպատարագսն ըստ սովորութեան օրինացն. և կոչեաց Հոգին սբ զՍիմէոն՝ եթէ ընկալ զնա. արձակիչն կապելոց եկեալ է, հայցեա 'ի նմանէ արձակել զքեզ, որպէս և կապեցան: Արի ծեր, և առ զկատարումն 'ի տղայէդ. մշակ զոհիցն՝ ահա քահանայապետն եկն հանգուցանել զքեզ: Իսկ Սիմէոն զօրացաւ Հոգւովն զոր զգեցեալն էր, և սկսաւ խօսել զճշմարտութիւն: Տեսեալ զկոյսն զի բարձեալ էր զնա, երկիր եպագ երկիւղիւ. և կարկառեալ զձեռն՝ ընկալաւ սիրելաբար: Աղաչէր զնա և ասէր. Արձակեա զիս, տէր, այժմ յորժամ տեսի զքեզ՝ երթալ ինձ հանգչել մինչև ցկատարումն: Ահա տեսին աչք իմ զողորմութիւս քո: Լոյծ յինէն զկապանս իմ ըստ խոստման քում: Քեզ մնայի, զի եկեալ արձակեսցես զիս ծննդեամբ քո. կատարեա զխնդրուածս զոր հայցեմս 'ի քէն: Դաշինս էր եդեալ քո և Հօր և Հոգւոյդ սբյ՝ մի՛ ճաշակել ինձ զմահ, մինչև եկեացես. այժմ կատարեցաւ դաշինքն խորհրդաւոր. հրամայեա մահուն հանգուցանել զիս, որպէս խոստացար: Արգելեր զիս մինչև ցայժմ յաշխարհ տեսանել զքեզ. արդ բաց ինձ ելանել, զի արժանի եղէ տեսանել զտծային ծնունդդ: Առ հաւատչեայ ետուր ինձ զհրամանն քո յառաջագոյն, զի կապեալ կայցեմ մինչև յաշխարհ գայցես և մարմին զգեցցիս. այժմ եհաս կատարած դատապարտի քում. արձակեա զկապեալս, զի ժամ է ինձ ննջել 'ի հող: Հրա-

մայեա հողմոյն մահու չնչել առ իս, որպէս զի երթեալ յօթեվանս՝ մնացից քեզ մինչև եկեսցես: Առաքեա և դիր զիս իբրև զպահեստ 'ի տուն մահու, մինչև եկեսցես և առցես անտի յաւուրն յետնում: Հրամայեա մարմնոյս երթալ 'ի հող իւր դառնալ. զի յորժամ գայցես, ընդ բազումս յարուսցես զսա: Բազում տքնեցայ մնալով քեզ 'ի Ճանապարհի աշխարհիս. տուր ինձ ննջել, զի յաւուր յարութեան զարթուսցէ զիս ձայն քո: Սերմանեա զիս 'ի գերեզման իբրև զբազումս. և յորժամ անցանէ ձմեռն աշխարհի, հրամայեա ինձ բուսանել: Թաղեա զիս 'ի մէջ ակօսի իբրև զհատ ցորենոյ. և յորժամ բղխես զանձրևն կենաց, բերցես զիս բազում արդեամբք:

Արդ ասա ինձ, ծերունիդ Սիմէոն, որպէս ասես զայդ առ մանուկդ. զայդպիսի բանս ընդ կատարեալ մարդ ոք ասէ: Քառասնօրեայ է յորմէ հետէ ծնեալ է զդա Մարիամ. և զիա՞րդ կարէ իմանալ տղայուն դորա զոր ինչ ասասցեր. կամ բանք քո ոչ են լսելի դմա, և կամ այլանման է զգօնութիւն գործոյ քո. կամ ծերութիւն քո կրսեր է քան զտղայութիւն դորա, և կամ մանկութիւն դորա երիցագոյն է քան զծերութիւն քո. կամ անցանէ զբազմութբ ամովք քովք ժամանակ դորա, և կամ ժամանակք քո 'ի դմանէ է սկիզբն առեալ: Ի խանձարրաւորէ արձակել զքեզ յաշխարհէ աղաչես. ապա յայտ իսկ է՝ եթէ դա է տէր աշխարհի Ճշմարտապէս:

Աղաչանք Սիմէոնի յայտնապէս վկայեն զՈրդւոյն Մարիամու՝ եթէ ածային [1] անուն նորա յառաջ է քան զարեգակն. պաղատանքն հինաւուրցն առաջի մանկանն խորհրդաբար՝ ցուցանեն ծածկապէս եթէ նա է ած յաւիտենից: Ասաց՝ եթէ “Յառաջ քան ըզլինելն Աբրահամու եմ ես„. ապա բարւոք աղաչէր Սիմէոն: Բարձեալ էր զնա ձեռամբ, և հաւատայր եթէ 'ի կառս հրեղինաց է: Տեսանէր զմարդեղութիւն, և ոչ երկմտէր յածուէն. տեսանէր պատեալ զնա կտաւովք, և խնդրէր արձակումն 'ի նմանէն. ընկալեալ էր զնա 'ի գիրկսն, և քարոզէր եթէ տէր

1 Հին օրինակ մի ածային է ծնունդն. և յաջորդն անընթեռնլի:

է բարձանց ։ Տեսեալ զձագսն զոր եբեր մատուցանել ըստ օրինացն, և զաՀի Հարաւ Հոգւոյն ։ Սկսաւ խօսել ընդ մանկանն. և այսպէս ասէր Հին քաՀանայն. Զիա՞րդ առից զպատարագս 'ի քէն, և կամ ո՞ւմ մատուցից, տէր պատարագաց. քեզ Համդերձ Հարբ ընծայլին պատարագք և բաժակք, և առանց քո ոչ ընդունի և ոչ ինչ ։ Դու ես առիթ[1] շնորՀաց և սրբութի քաՀանայից՝, և 'ի քէն առնուցուն զՀոգին Սբ 'ի քաՀանայանալն իւրեանց ։ Դու Հոտոտիս 'ի պատարագսն ընդ Հօր քո, և քև կատարեցան ողջակէզք որդւոցն Ղևեայ ։ Քեզ մատուցին զուխտս և զգոՀս յաւիտենից. և 'ի ձեռն քո ետ Հայրն քո ըղքաւութի ա՛մ աշխարՀի ։ Քեզ մատոյց Աբէլ զանարատ պատարագս իւր, և անուան քում եբեր զանդրանիկս և զընտիրս 'ի Հօտից իւրոց ։ Եւ պատարագք արդարոյն Նոյի քեզ նուիրեցան ։ Զմեծ կերպարանս քո զգեցաւ Մելքիսեդեկ. զմշտնջենաւոր քաՀանայութիւդ քո օրինակեաց Հոգևոր պատարագօքն ։ Քեզ ԱբրաՀամ կանգնեաց զխորանն 'ի վերայ լերինն. և խորՀուրդ քո ապրեցուցին զԻսաՀակ 'ի զոՀելոյ ։ Քեզ ուխտեաց Յակովբ զուխտսն յորժամ փախստական լինէր. և յորժամ բազմացուցանէր զխաշինս իւր, քեզ մատուցանէր զտասանորդսն ։ Եւ ոչ գոյ ժամանակ՝ եթէ[2] էր երբէք Հայր առանց քո. և քև ընդունէր զպատարագս որդւոցն Ղևեայ ։ Եւ այժմ եթէ առից զպատարագս, դարձեալ քեզ մատուցանեմ. և դու ընկալ զքոյս, որպէս և Հաճոյ եղև քեզ ։ Ոչ եթէ առանց քո ընդունի Հայրն զպատարագս մարդկան. զի դու անդ ընդ աջմէ Նորա ես, և Նա ընդ քեզ է ։ ԱՀաւասիկ առնում զերկուս ձագս աղաւնեացս զոր եբեր Յովսէփ. և քև[3] նուիրեմ Հօր և սրբոյ Հոգւոյն ։

Հիացաւ Սիմէոն 'ի տեսանել զՈրդի, և 'ի զարմացման մեծի եղև վասն Նորա ։ Բարձեալ էր Հողն զանտանելի ծոցն ձեռամբ իւրով. և ժողովեալ զխորան մեծ 'ի Հողեղէն գիրկսն, և ոչ նեղէր[4] ։ Չօշափէր

1 Մի օրինակ ընդունող ։

2 Մի օր. Եթէ Երբէք Հայր առանց քո ընդունի ։

3 Հնագոյն օրինակն քեզ ։

4 Երկու օրինակք նեղէր ։

ռէզն զհուրն անշիջանելի, և ոչ ծախէր. և եդեալ զկայծակունսն 'ի փայտն փտեալ, և ոչ այրէր: Բարձեալ ծերն անզօր զկորիւն առիւծուն 'ի ձեռս իւր, և ոչ զարհուրէր յահաւորութենէ նորա: Քերոբէ հողեղէն եղև Սիմէոն Որդւոյն Տմ, և փոխանակ անուոցն գրկօքն եբարձ զանպարագրելին: Լցեալն Հոգւովն 'ի ծածուկ խելամուտ եղև. վասն այնորիկ ոչ ամաչէր զտղայն աղաչել. Արձակեա զիս երթալ հանգչել առ ննջեցեալսն. վասն զի ծերացեալ եմ, և Ճանապարհդ քո աշխատութիւն է: Մեծ պատերազմ հանդերձեալ ես առնել 'ի շաւիղս քո. և ծերոյ ոչ վայել է ուղեկցել ընդ քեզ: Զարթուցանես և կանգնես զկողմ արդարութե. վասն այնորիկ մարդիկ երիտասարդք վայելեն 'ի Ճանապարհի քում: Ճակատամարտ կայ քո ընդ հզօրին՝ որ գլորեաց զԱդամ, և ես անժոյժ՝ ոչ կարեմ մարտնչել ընդ նմա: Զբարձրաբերձ պարիսպսն կամիս խլել զոր կանգնեաց մոլորեցուցիչն. զպատանիս ընտրեա քեզ, քանզի անցեալ եմ զաւուրբք: Զչորս կողմանս երկրի ես հնազանդեցուցանելոց 'ի ներքոյ ոտից քոց. ոտք ժուժկալք պիտոյ են ընթանալ ընդ քեզ: Գործս նորս հանդերձեալ ես գործել. խնայեա 'ի ծերութիւս իմ, վասն զի ոչ եմ բաւական: Զկործանումն աշխարհի եկիր նորոգել քաջութբ քով. և ես հնացեալ՝ ոչ եմ կարող շինուածոյ քում: Սպանմանն և մահաբեր է Ճանապարհ քո. արձակեա զիս խաղաղութբ, զի մի թաթաւեցի արեամբ ծերութիւս իմ: Վիրաւորելոց ես մարմնով 'ի գերողէն աշխարհի. թոյլ արա ինձ, քանզի տկարացան թիկունք իմ, և ոչ կարեմ կրել վէրս: Զգերութիւն հեթանոսաց ես դարձուցանելոց. զարս [1] զօրականս առցես ընդ քեզ, զի ես անկարող եմ: Ծանր է գործդ քո. և զի ես պակասեցի ամենևին 'ի զօրութենէ, աղաչեմ զքեզ արձակեա զիս 'ի կենացս:

Սարմացեալ էր Մարիամ ընդ այսպիսի բանս Սիմէոնի, և ընտրողապէս 'ի խորհրդոցն տագնապէր, և թերևս այսպիսի ասէր իմաստուն խոհեմն Սիմէոնի, եթէ զիարդ արձակէ զքեզ մանուկս իմ, և կամ երբ

1 Մի օր. զօրս զօրականաց.. զի ես անկարացեալ եմ.. զիս 'ի կենաց:

իցէ կապեալ. ո՞ւր իցէ տեսեալ քո զսա, զի դու հին ես, և սա տղայ. և կամ յո՞րում ժամանակի եդ ընդ քեզ զդաշինս, զոր այժմ ասես: Խորհուրդ քո այնպիսի երևի՝ եթէ յաւիտենից է. և Որդիս իմ դեռածին է, զիա՞րդ գիտէ զոր ինչ ասեսդ: Ո՞ւր է տեսեալ քո զսա, յերկինս եթէ յերկրի, մեկնեա ինձ. զի յորմէ հետէ ծնայ զսա, մինչև ցայսօր ոչ եմ տեսեալ զքեզ: Խորհուրդդ այդ զոր պատմես դու, յառաջ է քան զիս. վասն զի դու ծեր գոլով բազմօրեայ[1], և ես տալիթայ, եթէ մայր սորա ոչ գիտեմ զոր ասացերդ, մանուկս զոր ծնայ՝ ուստի՞ կարիցէ գիտել: Ի տղայկս արձակումն զիա՞րդ խնդրես. զի կապանքդ քո, որպէս և ասացեր, բազում ժամանակաց է. որո՞վ զօրութեամբ կապեաց զքեզ քառասնօրեայ մանուկս, և կամ զիա՞րդ կարիցէ արձակել զքեզ:

Ասէ Սիմէոն. տէր է զօրութեանց. և դիւրին է դմա ա̃մ ինչ. և զօրպիսութեան դորա անհնարին է հասու լինել ինձ և կամ քեզ: Այնչափ կրսեր է քան զդա մայրն քո Եւայ. և հեռի են ժամանակք դորա 'ի լինելութենէ արարածոց: Ձեռամբ Որդւոյդ քո հաստատեցան արարածք. և հանդերձ Հարբն իւրով հաստատեաց զաշխարհ: Դա գոյացոյց զա̃մ ինչ յանգոյից. և լայնութիւք ծագաց 'ի դա սահմանեցան: Դովաւ ձգեցաւ կամարն երկնից 'ի սկզբանէ. զընականութի̃ն[2] տոհմիցդ դա հաստատեաց լրիւ իւրով: Դա ընդ Հօր իւրում ստեղծ զդասս զօրութեանց երկնից, և դմա հնազանդին լէգէոնք լուսեղինացն. 'ի դմանէ իշխեն գունդքն Գաբրիէլի, և դմա լսեն բոցեղէն դասքն Միքայէլի. զդա օրհնաբանեն քերովբէքն բազմաչեայք, և եդեալ է զլուծ իւր անխախտելի 'ի վերայ ուսոց նոցա: Առաջի դորա կան հազարք հազարաց և բիւք բիւրուց, և դմա գոչեն սերովբէքն զսրբասաց ձայնս իւրեանց, և սարսեալ տէր կոչեն զանուն դորա: Աստ յայտնի է վասն մարմնոյն զոր ըզգեցաւ. 'ի վեր ծածուկ է, զի հաւասարակից է ծնողին իւրում: Աստ խոնարհ է վասն հաստման մարդե-

1 Երկու օրինակք բազմամեայ:

2 Մի օրինակ ընծայութիւն. այլ օր. ընծութիւն. միւս այլ ըղձականութիւն:

ղութեն . 'ի վեր ձոխ է վասն անձառելի մեծութեն ։ Աստ տեսակք զսա վասն կամաւոր տնօրէնութեն . 'ի վեր անծանօթ է որպիսութի դորա 'ի քերոբէից ։ Մեծ է Որդիդ քո , Մարիամ , և արարիչ ամ արարածոց . որպէս զի թէ կամեցեալ էր ցուցանել զփառս ածութեն , կիզեալ էր աշխարհ ամենայն ։ Հոյլքն բոցեղէնք սարսեն 'ի ձայնէ դորա 'ի բարձունս . և յորժամ հրաման տայ նոցա , սարսափեն 'ի զօրութէ նորա ։ Դա է կապեալ զծով աւազով , և սահման եդեալ նմա . և իբրև 'ի տիկս արգելեալ , զի մի անցցէ 'ի ծածկել զերկիր ։ Ի ձեռին դորա են կապանք ամ ծնելոց . վասն այնորիկ աղաչեմ զդա , զի արձակեսցէ զիս 'ի կենացս ։

Ասէ Մարիամ ցՍիմէոն . Զայդ ամ Յովսէփայ պատմեա , ես 'ի հրեշտակէն եմ ուսեալ յառաջագոյն , յորժամ զաւետիսն եբեր ինձ 'ի Հօրէ . զայդ ամ զոր այժմ պատմեցեր , յայնժամ հաստատուն ընկալայ 'ի նմանէ . և ոչ գոյ երկբայութի աղաչանաց վասն մանկանս զոր ծնայ , և ես կոյս մնացի յետ ծնանելոյն ։ Բարիոք է քեզ լինել վկայ առ ուրացողսն ։ Բարձրացո զձայն քո , որպէս զի ամենեքեան լուիցեն բանից քոց ։ Հնչեցո զքնար քո և երգեա նմա , զի ծանիցէ աշխարհ՟ եթէ նա է կապեալ զքեզ , և ինքն արձակեսցէ զքեզ ։ Բարձրացո իբրև փողոյ զձայն քո , ծերդ բազմօրեայ . զի գիտասցէ աշխարհ՟ եթէ Որդիս իմ տէր է ժամանակաց ։ Գոչեա , Սիմէոն , և վկայեա Հրէիցդ վասն մանկանս՝ որ յաւիտենից է . զի իբրև զանցաւոր համարէին զիս վասն դորա ։ Քարոզեա մեծապէս և մի լռեր . սաստեա զրպարտողացըն , զի բազում բամբասեցին զիս վասն տեառնս քո ։ Լեր աւետարանիչ 'ի մէջ հերձուածողացն և յանդիմանեա զնոսա , զի շատ հայհոյեցին զիս յաղագս ածորդւոյս ։ Հայցեա 'ի տղայոյս և ուսո ամ աշխարհի , զի զսա աղաչեսցէ ամ ոք՝ որ պէտս ունի խնդրուածաց ։ Սկիզբն արա առաքելական ճանապարհին , և զկնի գարշապարաց քոց եկեսցեն հեթանոսք առ լոյսն քո ։ Ուրախացո զՅովսէփ հրաշալի բանիւքդ զոր պատմեցեր . զի բազում նախատինս կրեաց վն մանկանս ։

Աղաչէր Սիմէոն զՈրդին այ արձակել զնա , որպէս

և կապեալն էր. և 'ի լսելն Մարիամու զարմանայր վասն Նորա: Լուաւ զՈրդւոյն իւրոյ զի ասէր՝ եթէ արարիչ է Նորա. և մխիթարեցաւ հոգւովն, և մոռացաւ զտրտմութի՟: Ցնծայր որոշն կոյս 'ի գովելն Նորա զկորիւն առիւծուն զոր բարձեալն էր: Բարի և վայելուչ էր ծերոյն Սիմէոնի, զի աղաչէր զՈրդի 'ի տուն Հօր իւրոյ: Եւ արժան էր ծեր քահանային վկայել զքահանայապետէն՝ որ եկն քաւել զաշխարհ արեամբ իւրով. Արձակեա զիս 'ի կենացս՝ երթալ քարոզել ննջեցելոցն զյոյս փրկութե՟ս, որ եղև յայտնութե՟ քով: Երթայց առաջի քո, և քարոզեցից առաջին հարցն և դարապետացն զփրկութիս քո: Ճանապարհ քո 'ի գերեզմանս է ուղղեալ. առաքեա երթալ աւետարանել անյուսիցն զգալուստ քո: Երթամ պատմեմ զխնդութի՟ քո 'ի դժոխս, և ուրախացուցանեմ զնոսա՝ եթէ ահաւասիկ գայ Թագաւորն ազատիչն ձեր: Թերևս խօսեցայց յականջսն Ադամայ՝ թէ եկն տէրն մարմնով քո, զկործանումն քո կանգնել: Ասացից Եւայի զյայտնութենէ քումմէ՝ թէ դուստրն քո ծնաւ Որդի, և Նա փրկէ զքեզ. մխիթարեմ, զի վշտացեալ էր վասն Աբէլի և դրախտին. և յորժամ լսէ զծնունդ քո, ուրախանայ յոյժ: Ասեմ ցԱդամ՝ թէ դարձիր 'ի ժառանգութի՟ քո, զի եբաց տէրն ծննդեամբ իւրով զդուռն դրախտին: Իջից սերմանել զհամբաւս բարիս՝ եթէ կործանեցաւ մահ և անկաւ յիշխանութէ՟: Երթամ աղաղակել առաջի դարուցն մահացելոցն՝ եթէ զարթիք փառաբանեցէք, զի եհաս փրկիչն ձեր: Երթամ պատմեմ Աբէլի անդրանկին մեռելոց՝ թէ գայ տէրն քո յարեան ճանապարհս զոր ուսուցեր. ասացից տարապարտ արեան Նորա՝ թէ այլ մի ևս գոչեր, զի կատարեցաւ պարագրութի՟ [1] սպանմանն քո: Թոյլ տուր ինձ երթալ տեսանել զՍէթն գեղեցիկ, և թարգմանեցից Նմա զգեղեցկութենէդ քումմէ՝ որ 'ի Նա կերպարանէր: Տուր ինձ տեսանել զԵնովս և զՆոյ, և անուամբ քով սրբեցից զփոշի երեսաց Նոցա. երթալ մատնել ինձ առ Աբրահամ՝ որ սպասէր աւուր քո, և ետես

1 Երկու օրինակք Նկարագրութի՟:

զխորհուրդ քո, այլ ես տեսի զծնունդ քո։ Գնացից աւետեալ[1] խաչակայ բանաւոր պատարագին՝ եթէ զխորհրդակից տէրն քո ձեռամբ իմով ընկալայ, զայն՝ որ փրկեաց զքեզ 'ի սուսերէն։ Պատմեցից Յակովբայ՝ որ փոքր էր, և մեծ եղև քոյին կերպարանաւ. և պարծեցայց նմա՝ եթէ 'ի գիրկս իմ բարձի զՏէրն քո։ Ծառեցից սրբասիրին Յովսեփայ՝ որ ջանայր յագեցուցանել զքաղցեալսն, եթէ էջ հացն կենաց յերկնից՝ որով կերակրին ամ քաղցեալք երկրի։ Արձակեա զիս երթալ տեսանել զՄովսէս, և ասացից նմա՝ եթէ զոր դու քարոզեցեր նշանօք և արուեստիւք, ձեռամբ իմով շօշափեցաւ. տեսանել ինձ զՅեսուն Նաւեայ և զՍամուէլ, և ուրախացուցից զնոսա աւետօք գալստեան քո։ Քարոզեցից Դաւթի հօր քում՝ եթէ բուսաւ բարունակն յարմատոյն քո, որպէս և գրեցաւն։ Բացից զհողն[2] Եսայեայ, և ասացից ցնա՝ թէ կատարեցաւ բան քո, զի ծնաւ կոյսն զԷմմանուէլն։ Անցից ընդ դժոխս, աւետարանեցից ամ մարգարէիցն զհամբաւս բարեաց, և զլոյս[3] մեծ փրկութե գալստեամբ քո. և զարմանան յայնժամ ընդ իս մարգարէքն և արդարքն՝ որ ցանկային տեսանել զքեզ. և երանեն ինձ, զի արժանի եղէ տեսանել զմեծութիդ քո։ Արձակեա զիս զոր կապեցեր հրամանաւ քո, երթալ և անդ վկայել ննջեցելոցն զյայտնութենէ քումմէ։ Քո, որ եկիր արձակել զկապեալսն, արձակեա յեկեղեցւոյ քումմէ զկապանս հերձուածողաց։ Որդի ած՝ որ ուրախացուցեր զՍիմէոն ծննդեամբ քո, ուրախացո զմեզ 'ի հաւատս, 'ի յոյս, 'ի սէր քո։ Եւ քեզ փառք[4] հանդերձ Հարբ և սուրբ Հոգւովդ յաւիտեանս յաւիտենից. ամէն։

1 Երկու օրինակք աւետարանել։
2 Մի օրինակ զհոյեցողն Եսայի։
3 Երկու օրինակք զլոյս։
4 Մի օր. փառք և ամենողորմ ընդ Հօր։

# Ի ԳԱԼՈՒՍՏՆ ՓՐԿՉԻՆ ՅԵՐՈՒՍԱՂԷՄ ԵՒ Ի ՍՈՒՐԲ ՏՕՆՆ ԲԱՐԵԲԱՆՈՒԹԵԱՆ *

Ի տօնս տօնից լի ընտրողութե՟ հրաւիրեալ էք, եղբարք իմ սիրելիք. մատուցէք զարդիւնս գովուե՟ց իմաստուն հրաւիրողին ձերոյ: Յառագաստս պայծառուե՟ կոչեցեալ էք դուք, զօրականք. իբրեւ զքաջ զինուոր առէք զնշան 'ի ձեռս ձեր: Ի ժողովարանս ամբարութե՟ց մերձեալ էք այսօր. զծածկեալ ստացուածս էութե՟ վաճառեցէք հոգեւորապէս: Ի հանդարտութե՟ յարկս ժողովեալ էք, սիրելիք. ջանացարուք մտանել յաներկիւղ գաւառն, ուր ոչ շրջին ամբոխք: Ահա 'ի ցնծութի՟ կոչեաց զձեզ Որդի Թագաւորին' որ եկն յաշխարհս մեր. ոստովք ձիթենեաց ելէք ընդ առաջ նորա, և պարեցէք նմա օվսաննայիւք:

Հասուցեր զմեզ 'ի տօնս յայս, Տէր տօնից և ժամանակաց. առիթ եղեր մեզ աւուրս այս, Տէր ամսոց և ամաց. ուսուցեր զմեզ երգել քեզ 'ի տօնս սըրբութե՟ քո. ազդեցեր մեզ ալելուել քեզ յաւուր յիշատակի բարեաց [1] քոց: Ուրախացին այսօր հրեշտակք գոչմամբ փողովք իւրեանց: Ցնծացեն ազգ և լեզուք, և զուարճացին օվսաննայիւք: Ջնջեցին քեւ սուգ մեր, զի Տէր ես ուրախուե՟ց: Եղծցին քեւ յանցանք մեր, զի բարի ես դու 'ի վերայ մեր: Հանգիցեն 'ի քեզ անձինք մեր, և մոռացին զնեղութի՟ս իւրեանց: Նորոգեսցին քեւ արարածք' որ հնացեալ էին և փտեալ մեղօք: Բեւեռեսցին 'ի քեզ գեղք մեր, և նորոգեսցին 'ի բնութի՟ս առաջինս: Զարդարեսցին քեւ եկեղեցիք մեր, զի Տէր ես հոգեւոր զարդուց: Սրբեսցին քեւ հոգիք մեր, և փայլեսցին իբրեւ զհրեշտակք: Օրհնեսցին քեւ ազգք մեր, զի եղեր տոհմակից մեր: Մաքրեսցին խիղճ մտաց մերոց, և խոտորեսցին 'ի չարեաց: Շինեսցին քեւ աւերակք

* Ցերեկից օրինակաց. երկուքն 'ի Ճառընտրացն Բ. ԺԸ:
1 Մի օրինակ բարեբանութեց:

մեր, և զերծցին յատելեացն ։ Զարդարեսցին քեւ հաստատութիւնք մեր, դառնալ յառաջին գեղեցկութիւն մեր ։ Փառաբանեսցեն զքեզ, տէր, արարածք՝ երկինք և երկիր լրիւ իւրեանց ։ Գովեսցեն զքեզ տիեզերք կազմուածք իւրեանց ։ Բարբառեսցեն[1] քեզ ա̃մ հոգիք սքանչելի հնչմամբ իւրեանց ։ Օրհնաբանեսցեն զարդք երկնից զհրաշալի էութի̃ քո ։ Ուրախասցին բարձունք յիջանելդ քո. և հովիտք ցընծասցեն և փառաբանեսցեն ։ Ուրախասցի ծով 'ի գընալս քո, և ցամաք 'ի կոխելդ քո ։ Բնութիւն մեր ցնծասցէ և փառաւորեսցէ, զի առ մեզ էջ մեծութի̃դ քո ։ Փառաւորեսցէ զքեզ տկար միտք իմ ձայնիւք լի ընտրողութ̃ ։ Ցնծասցեն դասք մարգարէիցն յօրհնաբանութիւն մանկանցն ։ Ուրախասցին գունդք առաքելոցն 'ի միաբանել ձայնից նորահաստակացն ։

Այսօր երկինք ուրախասցին և ա̃մ դասք հոգեղինացն, և գովեսցեն կերպիւք իւրեանց զայն՝ որ խոնարհեցոյց զերկինս և էջ ։ Այսօր ջուրն վերին գոչեսցէ զձայն օրհնութե̃ հզօր և ճոխ անուան նորա, և բղխեսցեն զձայնս գովեստից ։ Այսօր հաստատութի̃ զուարճասցի և փառաբանեսցէ զէականն, որ խոնարհեցոյց զերկինս, և էջ յերկիր և շրջեցաւ ընդ երկրաւորքս ։ Այսօր արեգակն ցնծասցէ և ճառագայթք իւր ուրախասցին, և գովեսցէ զարեգակնն արդարութ̃ որ լուսաւորեաց զարարածս ։ Այսօր լուսինն պայծառ[2] և երեւելի զշառաւեղս լուսոյն երեւեցուցանէ, և երկիր պագցէ բարձրելոյն՝ որ հաճեցաւն խոնարհել ։ Այսօր ա̃մ լուսաւորք զարդալից կերպիւք իւրեանց առաքեսցեն զարդիւնս փառաց արարչին՝ որ զարդարեաց զնոսա ։ Այսօր երկիր խընդասցէ, և լերինք խայտասցեն իբրև զգառինս առաջի տեառն՝ որ խոնարհեցաւ և այց արար ազգի մարդկան ։ Այսօր ծով ուրախասցի և կղզիք նորա խրախճանասցին[3] 'ի տէրն՝ որ եկն 'ի գաւառէ իւրմէ 'ի խոնարհ գաւառս մարդկան ։ Այսօր անտառք ցընծասցեն և մայրք ոստովք իւրեանց, զի ահա հատին

1 Մի օրինակ բարեբանեսցեն զքեզ ... զհրաշալի էութիւն քո ։
2 Երկու օր. բնաւորեցէ երեւելի ... լուսոյն և երկ ... ։
3 Երկու օրինակք խրախճանացին ։

զոստս իւրեանց լինել նշան գեղեցիկ ։ Այսօր անա֊
սունք ցնծասցեն և գազանք ուրախասցին, զի ահա
'ի յովանակի երևեցաւ երկնաւորն՝ որ եկն յերկիր ։
Այսօր քաղաքն Դաւթի ևս առաւել մեծասցի, զի
տէրն ա՟մ արարածոց կամեցաւ մտանել 'ի նա ։ Այ֊
սօր ապարանք ցնծասցեն և քաղաքք զարհուրեսցին
յաղաղակել մանկանցն՝ որք գոչէին զօրհնեալ ե֊
կեալն ։ Այսօր այգի սիրելւոյն խլեալ և ցրուեալ է 'ի
հեթանոսս, և արհամարհեն[1] զնա կոխողք . զի եղև
անարգ և խոտան ։ Ցանգ նորա մերձ էր յանկանել .
այսօր անկեալ և կործանեալ ։ Աշտարակք նորաշէն
և բարձունք քակեցաւ 'ի ձայնէ գոչմանն որպէս
զԵրիքով, որ կործանեցաւ 'ի ձայնէ գոչման փողոյն ։
Որթքն հնացեալք և ապականեալք՝ այսօր անարգե֊
ցան . և փոխանակ նոցա տնկեցաւ որթն՝ որ մնաւ 'ի
մէջ հեթանոսաց ։ Այգին որ ոչ ետ զպտուղ, կինճն
վայրենի արածեցաւ 'ի նմա . վասն զի ոչ ետ զխա֊
ղող, այլ զփուշ և զտատասկ ։ Եւ բարկացաւ տէր
այգւոյն, և ելոյց հուր 'ի բարունակս նորա . և ամ֊
պոց իւրոց հրաման ետ՝ զի մի տեղասցեն յայգին,
զի եղիցի նա աւեր և խոպան և առանց պտղոց և
արդեանց ։ Պակասեաց անձրև մարգարէիցն և ցօղք
Հոգւոյն տեսողաց ։ Սպառեցաւ աղբեւր Յակովբայ,
և ցամաքեցաւ բղխումն Իսրայէլի ։ Երկուս գաւա֊
զանս որդիք պարարտութե՟ հատան յանդւոյն Աբրա֊
համու . զի կորեաւ յԻսրայէլէ քահանայութի՟ և թա֊
գաւորութի՟ ։ Պարգևիչ թագաւորութեց այսօր լու֊
ծանէ զթագն Յուդայի, և եբարձ տէր 'ի ժողովրդե֊
նէ իւրմէ զգլուխն և զվերջն, զծերն և զականաւուսն
և զմարգարէն և զքահանայն ։ Այսօր 'ի սուգ նս֊
տեալ ժողովուրդն տօնասէր . զի զտօն ա՟ծորդւոյն
խոտեաց, և նա խափանեաց զտօնս նոցա ։ Այսօր
բարձաւ պատիւն 'ի ժողովրդենէն Իսրայէլի, և կայ
ամաչեցեալ 'ի մէջ ազգաց որպէս զԿայէն վասն չա֊
րութե՟ իւրոյ ։ Այսօր բազմացան խորամանկութիք 'ի
գաւիթս Յակովբայ յա՟մ կողմանց . զի Ճարտարա֊

1 Մի օրինակ՝ զարհամարհէն . . . մերձ էր յապականիլ . . . չէն, և բարձ բամբիւն նորա ։

պետոն որ չլինեաց զամուրս նորա, դարձեալ քակեաց զանկիւնս նորա: Այսօր ժողովուրդն երգեսցէ զերգս զայս 'ի մէջ հեթանոսաց, եթէ եթող զիս տէրն և մոռացաւ զիս 'ի ժառանգութենէ իւրմէ, և համարեցաւ զիս իբրև զօտար և իբրև զայրի անզաւակ: Այսօր ուրախանայ ժողովուրդս մեր 'ի ձայնէ հրնչման մարգարէիցն. և բուսուսցէ զոստս օրհնութե̃, և ծաղկեսցէ իբրև զշուշան: Այսօր կթեմք զպտուղս 'ի մեծ յայգւոյն մարգարէիցն, և պէսպէս համովք իւրեանց խրախճանամք հոգևորապէս: Ամենայն հեթանոսք ծափս հարէք հոգևոր տօնիս այսմիկ, և երգեցէք նմա ովսաննայիւք՝ որ պսակիչն է տօնից ձերոց: Եկեսցէ Յակովբ և պատմեսցէ մեզ վասն յաւանակին և որթոյն. և Դաւիթ զարթուսցէ զտաղայս և զմանկունս յօրհնութի̃: Զաքարիա գուշեացէ Երուսաղէմի՝ թէ ուրախ լեր, դուստր Սիոնի: Եսայիաս քարոզեսցէ մեզ ակնարկելով վասն աշակերտացն. գեղեցիկ են 'ի վերայ լերանց ոտք աւետարանչի արդարութե̃ց [1]:

Ի մտանել տեառն 'ի Սիոն մեծաւ փառօք ովսաննայի, օրինակաց և տեսութե̃ց և խորհրդոց և առակաց, ընթանային առաջի մանկունք, և ոստս ձիթենեաց 'ի ձեռին նոցա. և պարէին նմա ովսաննայիւք ամբիծ և արդար տղայքն: Պատեալ էր զնա փառօք ն̃ր գունդն առաքելոցն. և էր զհետ նորա սրբութի̃, թագաւորութի̃ և քահանայութի̃. և մարգարէքն փողովք իւրեանց գոչէին առաջի նորա խորհրդովք. իբրև թագաւորի զգովունս առաքէին նմա, և բազմադէմ բարբառով նկարագրէին նմա զպատկերս [2]: Ո̃մն ասէր՝ թէ սա է զօրմէ ասացի, եթէ ծագմամբ եկեսցէ յաշխարհ. և միւսն՝ 'ի վերայ սանդղոց, ասէ, տեսի զնա կանգնեալ: Ո̃մն ասէր, նա է զոր տեսի 'ի մէջ մորենւոյն իբրև զհուր. և միւսն կոչեաց զնա զարմացումն և ա̃ծ հզօր աշխարհի: Ո̃մն ասէր՝ թէ նա է որ էջ որոտմամբ և փայլատակմամբ և ձայնիւ փողոյ, եկեալ 'ի գլուխ լերինն, և տեսի զնա. և միւսըն գոչէր ասելով՝ եթէ օրհնեա զա̃ծ քո, Սիոն:

1 Երկու օր. խաղաղութե̃ց:   2 Մի օրինակ պէրգս:

Ոմն ասէր, զաւակ է նա զոր եթող մեզ ած յԻսրայէ-լէ. և միւսն յառաջագոյն աւետարանէր՝ եթէ նմա ապաւէն ազինք: Ոմն ասէր, որպէս խոտ է նա բու-սեալ և ծաղկեալ առանց սերման. և միւսն պատմէ ասելով եթէ արմատն Յեսսեայ: Ոմն ասէր, նա է նշանն որ բարձրանայ հեթանոսաց յերկրի. և միւսն օրինակէր զնա որպէս որոջ առաջի կտրչի: Ոմն ասէր, միթէ նա՞ է որում ակն ունին հեթանոսք. և միւսն՝ եթէ տէր իջանէ և կոխէ զբարձրութիւն լերանց: Ոմն պատմէր զզօրութիւն և զսքանչելի նշանս նորա, եթէ ահա որ արձակէ զկապեալս և բժշկէ զբեկեալս սըր-տիւ. և միւսն զանուն նորա խնդրէր, և եթէ զինչ կոչեսցէ զնա՝ փափագէր, եթէ որ ըմբռնէ զհողմն ձեռօք՝ զի՞նչ է անուն իւր կամ Որդւոյ նորա: Ոմն ա-սէր, եթէ իբրև զծաղիկ 'ի ծարաւուտ երկրէ բու-սաւ. և միւսն գոչէր ասելով, յառաջ քան զարեգակն է անուն նորա: Ոմն ասէր, մանուկ ծնաւ մեզ Որդի և տուաւ մեզ. և միւսն՝ հինաւուրց նստեալ, ասէ, և ծեր քան զամ աքարածս: Ոմն ասէր, ես տեսի զնա կանգնեալ 'ի վերայ բարձր պարսպի. և միւսն կոչեաց զնա հրեշտակ՝ որ ունի զխորհուրդ Հօր 'ի ձեռին: Ոմն ասէր, այս ճշմարիտ բնակեցաւ ած ընդ մարդկան. և միւսն այսպէս ասէր, եթէ սա է տէր ած մեր: Ոմն ասէր Երուսաղէմի, արի լուսաւորեաց, զի եհաս լոյս քո. և միւսն՝ ցնծա, դուստր Սիովնի, բարբառեա և ուրախ լեր, Երուսաղէմ: Ոմն ասէր, ծագումն է անուն նորա. և միւսն աստղ կոչեաց զնա: Ոմն գաւազան կոչեաց զնա. և միւսն հովիւ Իսրայէ-լի: Ոմն թագաւոր ասէ զնա. և միւսն սքանչելի խոր-հըրդական: Ոմն գառն կոչեաց զնա. և միւսն ողջա-կէզ արդարութեան: Ոմն ասէր, նա է վէմն որ հատաւ առանց ձեռին. և միւսն կոչեաց զնա իշխան խաղա-ղութեան և արդարութեան: Ոմն ասէր, նա է զոր տեսի փառաւոր ամպօք. և միւսն ետես նստեալ 'ի կառս քերովբէից: Ոմն ասէր, թէ տեսի զնա նստեալ յա-թոռ բարձրութեան, և լի էր տունն 'ի փառաց [1] լու-սեղէն հանդերձից նորա. և այլ՝ խորհուրդք ծած-

[1] Մի օրինակ փառօք նորա. և միւսն՝ խորհուրդք:

կեալք օրինակէին իմաստաբար։ Ոմն ասէր, եթէ ես լուայ 'ի Հօրէ յորժամ ասաց, եկայք իջցուք 'ի Բաբիլոնն, և բաժանեսցուք անդ զլեզուսն. և միւսն գոչէր և ասէր՝ քեզ ասեմ, Նաբուգոդոնոսոր։ Ոմն ասէր, եթէ ինձ ասացաւ ելանել պատմել յերկիր՝ եթէ տէր ասաց միածնի իւրոյ, արասցուք մարդ ըստ պատկերի մերում. և միւսն[1] թէ 'ի կատարածի մարգարէիցն Որդի ա̃յ յարիցէ և փրկեսցէ։ Ոմն օրինակէր զիջանելն նորա որպէս զանձրև՝ զի իջանէ հանդարտութ̃բ, և զՄարիամ նկարագրեաց երևելի և ա̃ր գեղմամբն. և միւսն զկուսութիւն նկարագրէր և ըզծնունդն օրինակէր։ Ոմն զգալուստն քարոզէր՝ եթէ պատրաստ արարէք զճանապարհս տեառն. և միւսն[2] թէ տեսին ա̃մ ծագք երկրի զփրկութի ա̃յ մերոյ։ Եւ այսպիսի ձայնիւք փառաբանէր յորժամ մտանէր յԵրուսաղէմ։

Այլ գունդք մարգարէիցն պատուեաց զմտանել նորա 'ի Սիոն։ Եւ ժողովեցան անդ մանկունք և մարգարէք և առաքեալք, զի զԹագաւորն երևելի սպասուք և աչառու[3] ովսաննայիւք յղարկեսցեն։ Փափագեաց նմա եկեղեցի հեթանոսաց, և երկրպագեաց Թագաւորաց արքային։ Նախանձեցաւ ընդ նա պառնիկ ժողովուրդն վիրալից, զի ինքն ոչ ընկալաւ զարքայն ըստ աւետեաց մարգարէիցն։ Տեսեալ զմեծութի բարձրելոյն՝ որ եկն առ ինքն, և զարհուրեցաւ. տեսեալ զսրբութի նորա՝ տրտմեցաւ, զի լրբեալ էր և անառակեալ. նայեցաւ 'ի նա արհամարհութ̃բ, զի ծածկեալ էր մարմնաւորութ̃բն. և խոտեաց զփառս տէրութեէն, վասն զի ծածկեալ էր ա̃ծութ̃բն։ Գոչեաց Դաւիթ որդի Յեսսեայ վասն ծածուկ փառաց նորա. Ի վայելչութի սրբութե, ասէ, ծնաւ 'ի ծոցոյ էութե։ Զսա՝ որ հեծեալն է խոնարհութ̃բ 'ի մերկացեալ յաւանակի հեզութ̃բ, Հայր ծնաւ ծածկութ̃բ յառաջ քան զյաւիտեանս գոյութ̃բ. և 'ի մօրէն ծնաւ յայտնութ̃բ՝ սկիզբն ժամանակաց տնօրէ-

1 Հաստուածդ և միւսն . . . փրկեսցէ, 'ի միում ևեթ օրինակի կայ։

2 Ի նոյն օրինակին ևեթ կայ և այս Հաստուած և միւսն . . . մերոյ։

3 Մի օրինակ տնաչառ։

նութ̃ք։ Երդուաւ տէր և ոչ եւս զղջացաւ վասն սիրելի Որդւոյ իւրոյ՝ եթէ դու ես հոգևոր քահանայ ըստ կարգին Մելքիսեդեկի։ Եւ Դաւիթ նկարագրեաց զպատկերս զայս ճշմարտապէս երգովք իւրովք. մարդապէս դրոշմեաց ընտրողութ̃ք. զմարդեղութ̃ն նորա յիշեաց 'ի քահանայութ̃ն զոր օրինակեաց։ Դու ես, ասէ, մշտնջենաւոր քահանայ և թագաւոր՝ որ ոչ վախճանի. իշխանութ̃ի քո իշխանութ̃ի յաւիտենից, և թագաւորութ̃ի քո յազգէ մինչև յազգ։ Զայսպիսի գեղեցկութ̃ն պատկերս՝ որ կերպարանակից է ա̃ծութ̃ն, նկարեաց Դաւիթ առաջի աչաց դստերն Երուսաղէմի։ Սա է թագաւորն փառաց զոր մարգարէքն քարոզեցին՝ լուր, դուստր, և խոնարհեցո զունկն քո առ ձայն փառաբանութ̃ն մանկանցն. մոռա զժողովուրդ քո և զտուն հօր քո ապստամբի, զի ցանկացաւ թագաւորն գեղոյ քում, և կարօտեաց վայելչութ̃ն քում։ Արհամարհեաց զձայնս մարգարէիցն և զքարոզութ̃իս առաքելոցն. մանկանց և երիտասարդաց ոչ ետ ունկն պոռնիկն։ Եւ զի ոչ լուաւ և պատրաստեցաւ 'ի ցնծութ̃ի և 'ի փառաբանութ̃ի, գրեաց և ետ նմա գիր արձակման, և արար զնա անարգ և անպիտան։ Առ զքօղն 'ի գլխոյ նորա, և զամօթ յաչաց նորա. մերկեաց զպատմուճան նորա, և եբարձ զվերարկու նորա. առ զօսկիճամուկն 'ի պարանոցէն, և եբարձ զապարանջանսն և զմեհևանդս. և իբրև զպոռնիկս և զշունս արտաքսեաց 'ի տանէ իւրմէ, և ահա նստի առանց քօղի բացաւ գլխով, և անարգեցաւ։

Ո՞ւր է գեղն կուսաւ̃ն քում, և պաճուճեալ հարսանութ̃ի քո. ո՞ւր են աւուրքն քո առաջինքն յաւիտենից. ո՞ւր են փառք և պատիւն քո և երևելի զարդն քո. ո՞ւր է տունն զոր շինեաց քեզ արքայն Սողոմոն 'ի պատիւ քո. ո՞ւր է քահանայն և կահ նորա՝ որ կայրն 'ի վերայ պաշտաման քո. ո՞ւր է կամարն ոսկի և խոյրն և մանեակն. ո՞ւր է բեհեզն և երկնագոյնն, զանգակքն ոսկի և նռնաձևքն. ո՞ւր են կարգք[1]ականցն, և բազում քարինքն պատուականք. ո՞ւր սե-

1 Մի օրինակ նկարք։

զանձն ոսկի և հացն նուիրանաց՝ որ կայր 'ի վերայ նորա. ո՞ւր են խունկքն քաւութ̃ե և ձէնձերք ողջակիզացն. ո՞ւր է արկղն կտակարանաց և տախտակքն քարեղէնք՝ որ 'ի նմա էին. ո՞ւր են բաժակքն և սկաւառակքն և ա̃մ անօթք սպասուցն. ո՞ւր են տօնախմբութ̃իք քո և ամսագլուխքն և պահպանութ̃իք: Խափանեցան 'ի քէն ուրախութ̃ի և ձայն ցնծութ̃ե երգոց. և ահա երգքն 'ի քեզ լալիւնք 'ի բերանս քո և որդւոց քոց: Զի՞նչ են մեղք քո, դուստր Յակովբու, զի այդչափ խիստ է խրատ քո: Փոխանակ զի զարքայն և զՈրդի արքային անարգեցեր, լիրբ և անաչառ պոռնիկ. զարքայն յանապատին անարգեցեր, և զՈրդի արքային յԵրուսաղէմ. զՀայրն ընդ որթուն փոխանակեցեր և 'ի պէսպէս կերպարանս, և զՈրդին ես փոխանակեցեր ընդ արիւնահեղ աւազակին, և զՀոգին տեառն դառնացուցեր 'ի մէջ օտար հեթանոսաց. զմշտնջենաւոր Երրորդութիւն ատեցեր թողեր և կատաղեցար, և զաստուածս ունայնութ̃ե սիրեցեր՝ զդեւս և զախտարս և զտարերաց նմանութ̃իս. զխեւամն [1] մարդասիրէիր, և զԲանն Հօր անարգէիր. զխեմուշն առաւել պատուէիր, և զքաւիչ Որդին հայհոյէիր. զԹամուզն մերձաւորապէս սիրէիր, և զտէրն բարձանց բամբասէիր. զԵսթեր յա̃մ տեղիս գովէիր, և զերկնաւորն նախատէիր. զԲահաղ զոհիւք մեծարէիր, և զՄեսիայ հալածէիր. զչղջիկանն և զմնոտիսն 'ի տաճարին քում երկրպագէիր, և որ հաստատեաց զերկիր հրամանաւն՝ 'ի մէջ հրապարակաց կռփէիր: Ո՞վ է լուեալ զայս՝ որ գործեցաւ առ փրկչին: Վասն այսորիկ կորացոյց զձեզ և արար 'ի նախատինս:

Զայս լուեալ Իսրայէլ 'ի բերանոյ մարգարէիցն՝ թէ ահա իբրև զայլազգիս էք, որ բարկացուցէք զարէնս իմ: Ծանեաւ եզն զստացիչ իւր, և էշ զմսուր տեառն իւրոյ. և Իսրայէլ զիս ոչ ծանեաւ, և ժողովուրդ իմ զիս 'ի միտ ոչ առ: Եթէ ժողովրդեան իմոյ լուեալ էր ինձ, ասէ, և կամ Իսրայէլի զճանապարհս իմ գնացեալ, վաղվաղակի մեծ առնէի զնա, և 'ի

1 Մի օրինակ խնայն . . . տատանէշ պատուիրէիր. Թուի լինել Քեւան:

վերայ հեղեղաց նր̃ արկեալ էր զձեռն իմ։ Յայնժամ, ասէ, խօսեցի ընդ նոսա բարկութ̃ իւրով, և սրտմտութ̃ իւրով խռովեցուցէ զնոսա։ Լից, ասէ, զերեսս նոցա անարգանօք և ամօթով։ Բարկացաւ Երուսաղէմի, և արար զնա աւերակ։ Գոչեաց նմա Եսայիաս ասելով 'ի վերայ նորա՝ եթէ իբրև զհովանի յայգւոջ և իբրև զտաղաւար լքեալ, սոյնպէս եթող տէր զԵրուսաղէմ վասն անօրէնութ̃ն իւրոյ։ Եւ եթէ ոչ տեառն զօրութ̃ց թողեալ էր մեզ զաւակ փոքր ինչ յարմատոյն Յեսսեայ՝ որ ծաղկեաց ժողովրդեանն Իսրայէլի, իբրև զՍոդոմ լինէաք և Գոմորոյ նմանէաք. և այժմ կայ մնայ՝ եթէ դարձ լինի նմա։ Ազգ որ բարկացոյց զա̃ծ իւր ա̃մ գնացիւք իւրովք, ահա սպասէ ժամանակի՝ թէ երբ հաշտեսցի ընդ իւր։ Զմարգարէսն ընթեռնու անմիտն, և ոչ իմանայ ըղբանս նոցա։ Եւ որպէս թէ լուաւ զդարձն՝ աղաղակէ ձայնիւ իւրով. և դարձեալ եթէ շինի Երուսաղէմ՝ լուաւ 'ի մարգարէիցն և թէ վասն որո՞յ աւերեցաւ՝ ոչ իմանայ եբրայեցին։ Եւ զի բազմանան փառք նորա, ասէ. և թէ ո՞րպէս լինին՝ ոչ խոստովանի։ Եւ զի անուանն մեծանայ, կարդայ. և թէ ի՞ւ մեծանայ՝ ոչ գիտէ։ Եւ զի կոչի սեփական, ասէ. և թէ ո՞վ փրկէ զնա՝ ոչ ասէ։ Եւ զի լինի 'ի փառս և 'ի պատիւ, յաւելու ասել անհամեալն. և եթէ ո՞րպէս կամ ի՞ւ՝ ոչ ասէ, զի կուրացեալ են միտք նորա։ Թանձրացեալ է, ասէ, սիրտն, և ծանրացեալ ականջքն Իսրայէլի, զի մի՛ իմասցի և լուիցէ նա զգրեալսն և զասացեալսն։

Ահա 'ի մտանել փրկչին մերոյ մարգարէութ̃ն գոչեաց ձայնիւ, եթէ սա է զորմէ ասացի եթէ գայ և հեծեալ է յաւանակ իշոյ. ել ընդ առաջ նորա ովսաննայիւք և պարուք բարբառեա և ցնծա։ Իսկ նա յորժամ լուաւ զձայն փառաց ովսաննայիցն, տրտմեցաւ զարհուրեցաւ և լռեցուցանել կամեցաւ զմանկունսն։ Միաւորեալ էին յայնժամ ձայնք առաքելոցն և մանկանցն։ Հինն երգէր ցնծութ̃ և նորոգութ̃ առաջի փրկչին, և մարգարէութ̃ին հանդերձ տղայովք և առաքելութ̃ և ինքեամբ. և 'ի միասին փառաբանեցին երկոքեան զայն՝ որ պարգևիչ է երկոցունց։ Արդ Հրեայքն ոչ եթէ միայն 'ի կատակարա-

նայն օտարացան, այլ զՀայր անարգեցին, և զՈրդին վասն նախանձու սպանին: Մարգարէն 'ի փառս նորա հրաւիրեաց զժողովուրդն իսրայէլացւոց. և նա սպանման պատրաստեցաւ, և ընթացաւ գործել ըզչարիսն: Երկինք զփառս նորա պատմեն, և ժողովուրդն ոչ հաւանեցաւ. և երկիր զսքանչելի խոնարհութին, և հրեայն ոչ առնու 'ի միտ: Խորհուրդք ած կատարեցան, և նա ղօղանջէ՝ եթէ ոչ են ճշմարիտ: Որ հանդերձեալք էին՝ սպասաւորեցան. և նա ուրանայ՝ թէ տակաւին ոչ է սկսեալ: Զօրինակն զոր նկարագրեցին տեսողքն, ելից և կատարեաց փրկիչն մեր. և ազգն խիստ և ապստամբ երդնու և ստէ՝ եթէ դեռ գայ, ոչ են կատարեալ գրեալքն, այլ 'ի պահու են այն խորհուրդքն:

Ով անմիտք, մինչև ցե՞րբ ոչ կամիք 'ի միտ առնուլ: Եկայք քննեսցուք արդարութեն զպատգամս մարգարէիցն, և տեսցուք եթէ կատարեցան գրեալ խորհուրդքն՝ զոր խօսեցան: Յակովբ օրհնէր զՅուդայ և ասէր ցնա այսպէս. մի պակասեսցէ գաւազանն 'ի Յուդայէ և մի՛ պետ յերանաց նորա, մինչև եկեսցէ հովիւն՝ որ տէրն է թագաւորութեց. և նմա ակն ունին հեթանոսք, զի նա փրկեսցէ զնոսա 'ի պատրանաց. զյովանակն իւր կապեսցէ զորթոյ գնդակէ, և 'ի թարունակն զորդի իշոյ իւրոյ: Քննեա այժմ և 'ի միտ առ, անամօթ և անմիտ հրեայ. եթէ կայ գաւազանն Յուդայի կամ պետ յերանաց նորա, ապա ոչ կատարեցան գրեալքն և ոչ բանք մարգարէիցն: Իսկ եթէ պետն խափանեցաւ և մարգարէութին լռեաց, ամաչէ ազգն Հրէից. Թէպէտ և խստութեն ղօղանջէ: Եթէ ոչ նստաւ 'ի յովանակի՝ որպէս Զաքարիաս մարգարէացաւ, եթէ ոչ փառաբանեցաւ 'ի մանկանցն՝ որպէս և Դաւիթ ասաց, եթէ ոչ խափանեաց թագաւորութին յեփրեմայ՝ որպէս և գրեալն է, եթէ ոչ խօսեցաւ զխաղաղութին ընդ հեթանոսս՝ որպէս և ասացեալն է, մի՛ հաւատասցես ամենևին եթէ նա է թագաւորն յաւիտենից: Իսկ եթէ զայս ած ելից, և կատարեաց զառակս և զխորհուրդս, այլ մի՛ ևս խաբեսցի հրեայն: Եւ յորժամ լուիցէ յայտ՝ եթէ դուք ոչ ժողովուրդք իմ էք, և ես ոչ եմ ած

ձեր. ժողովուրդն 'ի հեթանոսս փոխեցան, մերձաւորքն ընդ հեռաւորսն: Ցրուեցից զքեզ 'ի մէջ ազգաց՝ ասաց ա՟ծ ընդ Իսրայէլ. և առանց գնոյ վաճառեցի զքեզ, և ոչ գոյ թիւ աղաղակի քո. զի խառնեցար ընդ հեթանոսս և ուսար զգործս նոցա, ահա ես արհամարհեցից զքեզ, և կոչեցից առ իս զհեթանոսս, և 'ի մէջ Սիոնի եդից զվէմն հակառակութե՟. և որ հաւատայ յանուն նորա, ոչ ամաչէ յաւիտեանս, ասէ տէր: Եւ միւս մարգարէն ասէ՝ եթէ տեսի զտէր կանգնեալ 'ի վերայ բարձր պարսպի անդամանտեայ, և 'ի ձեռին նորա վէմ անդամանտեայ. և ասէ տէր ցմարգարէն 'ի տեսլեանն յայտնապէս, եթէ ահա դնեմ անդամանտ 'ի մէջ ժողովրդեանն Իսրայէլի: Եւ դարձեալ Դաւիթ յառաջագոյն ասաց՝ եթէ որպէս կատարեաց զխորհուրդսն: Զվէմն, ասէ, զոր արհամարհեցին շինողքն, նա եղև գլուխ շինուածոյն:

Արդ ուսիր, երբայեցի, զի շինեաց տէրն զԵրուսաղէմ և կանգնեաց տէր զամուրս պարսպաց նորա, և օրհնեաց զզաւակս նորա խաղաղութե՟, և յիշեաց տէր զգթութի՟ իւր, և ողորմութե՟ ստացաւ զնա: Եւ որպէս մայր որ գգուեացէ զմանուկն՝ զի մոռասցի զողբումն իւր, այնպէս մխիթարեաց տէր զԵրուսաղէմ. և ասէ ցնա. բազում բարկութե՟ հարի զքեզ, և ողորմութե՟ մեծաւ ողորմեցայց քեզ. փոխանակ նախատանաց կործանման քո և բարկութե՟ խրատու քո ամբարձ զգլուխ քո 'ի մէջ ազգաց, և յաճախեցից զփառս և զպատիւ քո. և զի կոչեցի զքեզ ոչ հաւատացեալ, և քաղաք լի անօրէնութե՟, հեղում 'ի քեզ զպատուական արիւնս իմ, և քաւեմ զանօրէնութիւս քո. և զի այրւացար[1] յԻսրայէլէ, զի ես մերժեցի զնա 'ի քէն: Բացից զդրունս քո ուրախութե՟, և մտցեն 'ի քեզ զօրք հեթանոսաց, և եղիցին քեզ ընտրեալ ժողովուրդք. և թագաւորեացէ տէր 'ի Սիոն, և եկեսցեն ազգք բազումք և փառաբանեսցեն զիս յԵրուսաղէմ: Եւ որպէս երկիր որ աճեցուցանէ զծաղիկս իւր, և որպէս պարտէզ որ բուսուցանէ զսերմանիս իւր, այնպէս ծագեսցէ տէր

1 Հնագոյն օրինակն այրեցար յԻսրայէլէ:

զարդարութիւն քո 'ի մէջ հեթանոսաց. և ասասցեն հեթանոսք յայնմ աւուր. ահա ած փրկիչն մեր. ահա տէրն զօրութ՟ք եկն և փրկեաց զմեզ 'ի նեղութ՟է. և կոչեսցեն քեզ անուն նոր զոր անուանեաց տէրն քո: Սիովն ասասցէ յայնմ ժամու. եթող զիս տէր, և մոռացաւ զիս ած: Միթէ մոռանայ՞ կին զմանկունս իւր, կամ ո՞չ գթասցի 'ի ծնունդս որովայնի իւրոյ. Թէպէտ և նա մոռանայ, բայց ես ոչ իսպառ մոռացայց զքեզ: Ահա ձեռօք իմովք կանգնեցից զբարձր պարիսպս քո, Երուսաղէմ. Թողեալ են քեզ մեղք քո խոնարհեալ, որ մեծացաւ յանկարծակի: Ահաւադիկ արարից կարկեհան զքարինս քո և ըզհիմունս քո յընտրեալ քարանց շափիւղայ, և կանգնեցից զաշտարակս քո յասպիս, և զդրունս քո յականց վանեաց, և զբարձր պարիսպս քո յընտիր ականց պատուականաց. և լցից 'ի մէջ քո, Երուսաղէմ, զստացուածս և զգանձս, զզմրուխտս և զմարգարիտս, զապիկիս[1] և զտպազիոնս և զականս սարդիոնս և զընտրեալ ոսկիս 'ի սենեակս քո[2]. և ուստերք և դստերք քո եղիցին ուսեալք յայ՟յ. և խաղաղութիւ 'ի հիմունս քո, և արդարութիւն 'ի գաւիթս քո. և յանդիման հեթանոսաց սրբեցից և բնակեցայց 'ի քեզ: Ահա ազգք 'ի լոյս քո եկեսցեն, և ազինք ընդառաջ ծագման քո. 'ի պատիւ ետու զքեզ 'ի մէջ հեթանոսաց, և 'ի պարծանս 'ի մէջ ազգաց: Ահա հականեմ 'ի քեզ զխորան իմ, և հաստատեմ 'ի քեզ զցիցս[3] իմ. երկայնեմ զապաւանդակս քո, և ընդարձակեմ զսրահ քո. և սրբեցայց և բնակեցայց 'ի քեզ, և եղիցի ած յաւիտեան: Ի սմա բնակեցայց, զի հաճեցայց ընդ սա. և զորս սորա օրհնեցից: Անդ ծագեցից զեղջերուրն 'ի Դաւիթ, և փրկութիւն մի պակասեսցէ 'ի նմանէ: Փոխանակ զի բարկացայ Երուսաղէմի, 'ի ձայն օրհնութ՟է մանկանցն ժողովեցից ըզծերս և զերիտասարդս, և գովեսցեն զիս ովսաննայիւք: Եւ զի առիթ եղև մանկանցն նախատել զիս 'ի հրապարակս իւր, ժողովեցից առ ինքն զզօրութիւ

1 Մի օրինակ զապակիս:
2 Հնագոյնն 'ի սենեակս:
3 Մի օրինակ զլնդէլսն ... և օրհնեցից:

ազգաց, և պարեացեն ինձ օրհնութ՟ք ովսաննայիւք. և գոչեսցէ Երուսաղէմ որդւովքն իւրովք՝ օրհնեալ եկեալն, և որ հանդերձեալն է գալ. ովսաննայ 'ի բարձունս և 'ի խոնարհս Որդի Հօրն բարձրելոյ. օրհնեալ է որ սիրով[1] խոնարհեցաւ և փրկեաց զազգս մարդկան: Օրհնեալ է Թագաւորն՝ որ աղքատացաւ և զաղքատս մեծացոյց: Օրհնեալ է որ եկն և կատարեաց զխորհուրդս և զառակս մարգարէիցն: Օրհնեալ է որ իւրացոյց[2] զարարածս մեծամեծ պարգևօք ծնողին: Օրհնեալ է որում համր բնութ՟իքն երգեցին զօրհնութիւնս ովսաննայիւք: Օրհնեալ է որում տղայքն երգեցին զնոր օրհնութ՟իս եղանակօք: Օրհնեալ է Նոր Թագաւորն որ եկն, զոր Նոր մանկունքն փառաբանեցին: Օրհնեալ է որում զօզանջեցին տղայքն, և գովեցին զնա հանդերձ աշակերտօքն:

Ո՞վ որ ոչ զարմանայցէ, տէր, ընդ խոնարհութ՟ն մեծութ՟ե քում. զի կառքն քերովբէական երկիւղիւ բարձեալ է զփառս քո, և յովանակն անարգ եբարձ զմեծ և զնոր զօրութ՟ի քո: Ձի գթութ՟ք եկեալ առ մեզ, և ողջունիւ մեք բարձրացաք. աւետարանէ բերան իմ զարդարութ՟իս քո յայսմ աւուր ուրախութ՟եց, և խօսեսցէ լեզու իմ զփառս քո օրհնութ՟ք 'ի տօնս տօնից: Ցնծասցէ անձն իմ 'ի տօնս յայս, քանզի 'ի սմա ցնծացան արարածք. և աստ օրհնութ՟ե բարձցեն միտք իմ փոխանակ ովսաննայիցն զոր բարձին մանկունքն առաջի յովանակին, յորոյ վերայ Նըստաւ մեծութ՟ի քո. գոչեցից քեզ ընդ Նաւին՝ ովսաննա Որդւոյ Դաւթի: Երախայն որոյ կապ էր լեզուն 'ի շաւիղս կատարեալ զբանիցն ծնաւ զօրհնութ՟իս ովսաննայիւ, զոր մարգարէքն բնաւ ոչ օրհնեցին: Արկին զարմացումն 'ի վերայ ծերոցն՝ որք տեսին զՈրդին և ոչ օրհնեցին: Տեսցեն զքեզ, տէր, խորհուրդք իմ, ոչ իբրև զտղայս անսգայս, այլ գովեցից զքեզ իբրև զդասս աշակերտացն՝ որք տեսին զզօրութ՟իս քո մեծապէս: Ցնծացայց 'ի քեզ իբրև զմանկունսն, որ ետուն զձայն իւրեանց՝ ուրախ սրտիւ:

Յայսմ աւուր եմուտ տէրն մեր յԵրուսաղէմ քա-

1 Երկու օրինակ 'ի Սիով: 2 Երկու օրինակ ուրախացոյց:

ղաքն Թագաւորն. և խոնարհեալ նստաւ 'ի յովանակին, զի բարձրացուսցէ զկործանումն Ադամայ։ Եթող զսերովբէսն 'ի բարձր գաւառն իւրեանց, որք սրբաբանեն զնա հանդերձ Հարբն իւրով. և ընկալաւ զօրհնութիւս տղայոց և մանկանց որդւոցն Իսրայէլի։ Այսօր տէրն մեր մտանէ 'ի Սիոն հեծեալ 'ի յովանակի, և Զաքարիա աւետարանեաց՝ եթէ ահա գայ Թագաւորն քո առ քեզ։ Քերովբէքն գոչեն մեծութե նորա՝ օրհնեալ է 'ի տեղւոջէ իւրմէ. և մանկունքն ոստովք ձիթենեաց փառաբանեն զնա ովսաննայիւք։ Այսօր խոնարհեցաւ տէրն և արարիչն ամ տիեզերաց. եթող զբարձրութի քերովբէիցն և նստաւ 'ի վերայ անարգ յովանակի։ Օրհնեալ է տէրն մարգարէիցն՝ որ եկն և կատարեաց զբանս նոցա, զոր և մանկունքն փառաբանեցին զխոնարհութի նորա հանդերձ աշակերտօքն։ Տղայքն որ ոչ գիտէին բնաւ զխօսս մարդկան, երգեցին 'ի գրկաց մարց իւրեանց. զի տեսին զհեզութի նորա հեծեալ 'ի յովանակի և եկեալ առ Երուսաղէմ ծարաւի արեան։ Տեսեալ զնա տրտմեցաւ պոռնիկն, զի հեզ էր և մաքուր։ Օրհնեալ է բարձրեալն՝ որ խոնարհեցաւ և 'ի յովանակի իշոյ նստաւ. և Սիոնի տեսեալ զհեզութի նորա՝ և ոչ ընկալաւ զնա։ Սերովբէքն զարհուրին 'ի փառաց նորա, և ոչ են բաւական նայել 'ի նա. մանկունքն և աշակերտքն փառաբանէին զնա ովսաննայիւք. քերովբէքն հիանային 'ի փայլատականց նորա, որք լըծեալ էին 'ի կառս մեծութե նորա. և աշակերտքն զանարգ յաւանակն պատրաստեցին, և նստաւ 'ի վերայ նորա։ Աքանչելիք են եթէ որպէս խոնարհեցաւ Որդի Թագաւորին առ երկրաւորքս. և փոխանակ հրեղէն կառացն 'ի վերայ յաւանակի երևեցաւ։ Հրեղէնքն սարսէին 'ի նմանէ 'ի վերին գաւառն առ Հօրն իւրում. և տղայքն սիրով բարբառեցին՝ ովսաննայ Որդւոյ Դաւթի։ Արքային Դաւթի պարուք պարէին դստերքն Իսրայէլի. և Որդւոյն Դաւթի մանկունքն երգէին ովսաննայիւք, և սփռէին զձորձս իւրեանց առաջի յաւանակի Թագաւորին՝ որ արհամարհեաց զերիւարս և զկառս, և զհեծեալս անարգս ընտրեաց իւր. զի կատարեսցի բան Զաքարիայի՝ որ

մարգարէացաւ դստերն Սիովնի՝ եթէ ահա գայ թագաւորն քո, և հեծեալ է 'ի յաւանակի իշոյ։ Առաջի տապանակին ա՛յ Դաւիթ արքայն խաղաց. առաջի յաւանակին Որդւոյն Դաւթի մանկունքն ոստովք փառաբանէին։ Նախատեաց զԴաւիթ Մեղքող, և անմիտ ծերքն զմանկունսն. և սկսան աղաղակել քարբքն և լռեցուցանել զձայն օրհնուե և զգոչումն աշակերտացն՝ որ գովէին զգալուստ թագաւորին, որ խոնարհեցաւ և նստաւ 'ի վերայ յաւանակին։ Արքայից արքայն եմուտ 'ի քաղաքն իւր փառօք, որպէս և վայել էր նմա. և ժողովուրդն ժանտ հարցանէր՝ եթէ ո՞վ է սա և կամ զի՞նչ է համբաւ սորա։ Ետես զամբոխն զի փառաբանէին զնա ոստովք նոր արմաւենեաց. և մորակեաց զնա նախանձն, և լռեցուցանել կամէր զնոսա։ Եմուտ 'ի Սիովն հեզութբ տէրն ա՛մ արարածոց. և ընդոստեաւ 'ի քնոյ պոռնիկն սիրող շնացողաց։ Օրհնեալ է որ արար զնա կոխան, և զամբարտաւանն՝ որ ոչ ընկալաւ զնա. և ընտրեաց իւր զսուրբ եկեղեցի, և ահա փառաբանէ ովսաննայիւք։ Եկայք առ իս ա՛ծաբանող մարգարէք և տեսանողք ճշմարտութեց. արդ տեսէք, գուցէ խոտորեցաւ արքայն 'ի ճանապարհէն զոր արկիք նմա։ Արի, Դաւիթ, նայեաց յՈրդին քո. զի որպէս քարոզեցաւ 'ի քէն, ահաւասիկ մանկունք և տղայք պարեն նմա ովսաննայիւք։ Հաստատեցաւ օրհնութին այն զոր խոտեցին ծերքն և փարիսեցիքն. մանկունքն ամբիծք ընկալան 'ի ճշմարիտ վարդապետէն։ Արի տես զաշակերտս քո, զի վայելուչք ընդ մանկանցն երգէին, որք լրջմտութբ աղաղակեն՝ ովսաննայ Որդւոյ Դաւթի։ Խոտեցին ծերքն զօրհնութիս Որդւոյն զոր պարտ էր ճանապարհի նորա. և ամբիծք և անարատքն բարբառեցին առաջի նորա զօրհնութիս։ Ընդէ՞ր ես ննջել, որդի Յեսսեայ. արի այսօր և ցնծա ընդ մեզ. առ զտաւիղ քո և սաղմոսեա ա՛յ եկեղեցւոյ. մոռա զժողովուրդ և զտուն հօր քո, զի ցանկացաւ թագաւորն գեղոյ քում։ Եւ զի ատեաց զնա դուստրն եբրայեցւոցն, ընկալաւ զնա դուստրն հեթանոսաց։ Զի բարի է ինձ քնար քո, և քաղցր ձայն երգոց քոց, զի ուսուցեր ամբիծ մանկանցն երգել

զձայն օրհնութե̃ ։ Ընթանայ Դաւիթ 'ի մէջ Սիովնի , և գոչէ ձայն սաղմոսի նորա . և երթան զհետ նորա տղայքն , և տաւղէ նոցա զերգս սրբութե̃ ։ Օրհնեալ եկեալդ անուամբ տեառն՝ քարոզէ Դաւիթ 'ի սաղմոսն իւր . և երգեն զկնի նորա ամբիծք , եթէ օրհնեալ է եկեալն և որ գալոցն է ։ Արի փառաւորեա , Զաքարիա , զի կատարեցաւ մարգարէութի̃ն քո . ահաւասիկ նստաւ 'ի յաւանակի՝ որպէս ասացեր , և յորդի իշոյ՝ որպէս քարոզեցեր ։ Կոչեա զպոռնիկն զի եկեսցէ ընդ առաջ փեսային , թէ հնար ինչ իցէ . և եթէ ոչ՝ առաքեսցէ զմանկունս օրհնել ովսաննայիւք ։ Ցնծա յոյժ և ուրախացիր , Երուսաղէմ . և քարոզեա զօրհնութի̃ , դուստր Սիովնի . ահաւասիկ գայ թագաւորն քո , և նստեալ է 'ի յաւանակի իշոյ . բարձցէ զերիվարս յեփրեմէ և զկառս յԻսրայէլէ , և աւետարանեսցէ զխաղաղութի̃ հեթանոսաց՝ որք հաւատացին 'ի նա ։ Ծերունիդ Յակոբ , յարուցեալ փառաբանեա , զի լցան խորհուրդք օրհնութե̃ քո . զի գնդակեաց զորթոյ զյաւանակն իւր , և 'ի բարունակ զորդի իշոյ ։ Արի փառաբանեա , 'որ եկեղեցի , և ընկալ զփեսայն ովսաննայիւք . և ընդ տղայս և ընդ մանկունս երգեա զօրհնութի̃ ։ Դուստր հեթանոսաց , տօնեա զտօնս [1] փրկչին՝ որ եկն և փրկեաց զքեզ 'ի մոլորութէ̃ . որում փառք և պատիւ հանդերձ Հարբ և 'սբ̃ Հոգւովն յաւիտեանս յաւիտենից . ամէն ։

1 Մի օրինակ ունի տօ , Ցուցակ , զի էին . . . 'ի մոլորութենէ Քս̃ փրկիչն ամենայն աշխարհի . որում ։

## Ի ՅԱՐՈՒԹԻՒՆ ՓՐԿՉԻՆ ՄԵՐՈՅ *

ՅԱՒՈՒՐ յորում յարեաւ Քս, և լուծաւ դողումն յաշակերտսն, ասէ Շմաւոն ցայլ առաքեալսն. երթամ որսայց ձուկն: Գնացին և ընկերքն ընդ նմա, զի սթափեսցին 'ի տրտմութէն, և բերցեն զօրապահի աւուրն: Զգիշերն ամենայն աշխատեցան, և յուռականն ձուկն ոչ եմուտ. և տրտմեցոյց զնոսա ծովն: Տէր ծովուն ուրախ արար զնոսա. 'ի ժամուն իբրև խափանեցաւ որսն, պատրաստեցաւ նոցա որս յոյժ. զի ետես տէր զառաքեալսն իւր՝ եթէ աշխատեալք էին և քաղցեալք, պատրաստեաց նոցա ճաշ: Մինչև եկեալ նոցա, ելին գտին առաջի նորա հաց, և ձուկն արկեալ զկայծականբք: Ասէ ցնոսա. եկայք ճաշեցէք. զի օր էր պենտակոստէին: Այր անդր եղեն միտք նոցա, թէ ուստի՞ է հացս այս և ձուկս: Զի յանապատին աճելով աճեաց, և աստ հաստելով հաստեցաւ. և ոչ տեսին յորժամ հաստէրն: Ի ձկանէդ որ որսացայք, խորովեցէք՝ ասաց տէրն ցաշակերտսն իւր: Ոչ նոքա որսացան, այլ դու. զի զգիշերն նոքա ոչ կալան. յարուն քո հաստատեցաւ նոցա: Թէ ընդէ՞ր ընդ միոյ ձկանն ոչ հաստատեաց ձկունս բազումս. զի հանդերձեալ էր նա տալ մի ձկամբն՝ որ հաստատեցոյց զհաւատչուն իւր: Եւ դարձեալ, զի ոչն յաճախեաց՝ եցոյց զկանխութն գիտուն իւրոյ. զի գիտէր թէ երկնչէին 'ի նմանէ վասն այլանման կերպարանաց իւրոց. և ապա հերձին և լուացին և խորովեցին, և հաղորդեցան ընդ նմա հացի: Զի հատոյց նոցա մինչ չև եկեալ էին. հատուցին նոքա յետ գալոյն զոր ինչ խոստացաւ նոցա 'ի վախճանի առնել նա երկոտասանիցն: Կանխեաց արար զայն աստ, զի այս ընդ այնր երաշխաւորեսցի. զի խոստացաւ նոցա ուտել 'ի սեղանն արքայութն. և այս այնմ վկայէ: Եկայք ճաշեցէք, ասէ ած

* Ի Ճառընտրէն Գ:

ցձկնորսսն : Բազմեալ էին քաղցեալքն, և 'ի մէջ նոցա կերակրիչն քաղցելոց բազմէր : Սերովբէք զարհուրէին 'ի նմանէ, և գունդք գաբրիէլեան զահի հարեալ էին, և որդիք հողոյ բազմեալ էին ընդ նա նախ քան զօրն՝ որ բազմէին ընդ նմա :

Եթէ հարցանիցես վասն հացին և վասն հրոյն և վասն ձկանն, գիտէին որ թռնադատեաց զձկունս ծովուն՝ ժողովելով 'ի փոքր գոգի ուռկանին . նա հրամայեաց հացին և հրոյն և ձկանն, և եղեն յանկարծ . զի եցոյց նոցա զա̄ծութիւն իւր որսալովն՝ զոր ետ նոցա . զի հուրն և հացն և ձուկն՝ ահա վկայեն երեքկին զերրորդութե̄ ա̄ծութե̄ն[1] : Ուտէին ընդ նմա, և հայէին՝ եթէ ուտէ կամ չուտէ : Եթէ կարօտ էր նա հացի, ոչ կարէր նա հաստել հաց : Եկեր ընդ նոսա, զի գուշակեսցէ՝ թէ արդարեւ մարմին զգեցաւ : Եցոյց նոցա զսպիսն, զի ծանուսցէ՝ թէ նոյն ինքն կենդանացաւ : Եւ թէ իբրև զայսոսիկ արար, կամեցան ստել զյարութի̄ նորա . եթէ անփոյթ արարեալ էր, քանի՞ ևս սուտ առնէին : Շրջեալ զհացն և ըզձուկն առաջի նոցա, և ոչ հաստեաց ջուրս . զի գիտէին՝ զի որ ոք ծարաւէր, երթայր ըմպէր 'ի ծովն, և գայր բազմէր . և ոչ գինի հաստեաց՝ իբրև կարէր . զի ուսուսցէ մեզ աշակերտելոցս, զի եթէ պիտոյ ինչ էր գինի, տայր զնա առաքելոցն : Նա և ասաց իսկ՝ եթէ ոչ արբից միւսանգամ 'ի ծննդենէ որթոյ : Զարմանք են այս, և յոյժ ժպրհեցի պատմել զնմանէ յայտնապէս, զի հաստեաց գինի 'ի հանգիստ մեր, և մի ցասուսցուք[2] նովաւ զա̄ծ : Արբցուք չափով գինի, զոր ճաշակեցին եղբարք մեր . զի է՝ որ ոչ ճաշակեաց զնա, և է՝ որ սակաւ . զի գուցէ լկտեցուսցէ զաւելի ըմպողսն : Եւ ք̄սի ա̄յ մերոյ փառք յաւիտեանս յաւիտենից . ամէն :

1 Յօրինակին ա̄ծութե̄ն :

2 Յօրինակին ցասցուք :

## ՅԱՅԼԱԿԵՐՊՈՒԹԻՒՆ ՏԵԱՌՆ *

Յ ԵՐԿՐԻ հունձք և ուրախութիւնք . յայգեաց պտուղք անթիւք . 'ի գրոց վարդապետութիւն կենաց ։ Այգի 'ի մի ամի ունի զկութք . գիրք հանապազ վերաբերեն զվարդապետութի̅ կենաց ։ Երկիր յորժամ հնձի , սպառի . այգի յորժամ կթի , նուազի . գիրք հանապազ հնձի , և հասկ մեկնողաց 'ի նմանէ չպակասէ . և որ ըստ օրէ կթի , և ողկոյզն որ 'ի նմա որթից ոչ պակասի ։ Մերձեսցուք յերկիրս յայս այժմ , և զակօս սորա կենսաբեր բացցուք . և հնձեսցուք որ 'ի սմա են հասկ կենաց , զբան տեառն մերոյ Յսի Քսի զասացեալսն ցիւր աշակերտսն . “Իցեն ոմանք մի ճաշակեսցեն զմահ մինչև տեսցեն զորդի մարդոյ եկեալ արքայութբ իւրով ։ Եւ յետ վեց աւուր առնու Յս ընդ իւր զՊետրոս և զՅակովբոս և զՅովհաննէս , և հանէ զնոսա 'ի լեառնն „ ։ Արք , զոր ասաց՝ մի տեսցեն զմահ մինչև տեսցեն զնշան գալստեան նորա , առեալ եհան 'ի լեառնն , և եցոյց նոցա՝ թէ որպէս գալոց է յաւուրն յետնում 'ի փառս ա̅ծութե̅ իւրոյ և 'ի մարմին մարդեղութե̅ իւրոյ ։ Եհան զնոսա 'ի լեառնն , զի յերկինս է ծանօթութիւն Որդւոյ . զի ցուցցէ՝ թէ ով է Որդի , կամ ոյր ։ Զի յորժամ հարց զնոսա “Զո՞ ասիցեն զորդի թէ իցէ „ , պատասխանեցին՝ թէ “Կէսք զԵղիա , կէսք զԵրեմիա , կէսք զՅովհաննէս և կէսք՝ թէ մի ոք 'ի մարգարէիցն „ ։ Վասն այնորիկ եհան զնոսա 'ի լեառնն , զի ցուցցէ՝ թէ ոչ է նա Եղիա , այլ ա̅ծ Եղիայի . և ոչ Երեմիա , այլ որ սրբեացն զԵրեմիա յորովայնին . և ոչ մի ոք 'ի մարգարէիցն , այլ ա̅ծ մարգարէիցն՝ որ առաքեաց զնոսա ։ Եւ դարձեալ եցոյց նոցա՝ եթէ սա ինքն է արարողն երկնից և երկրի , և տէր կենդանեաց և մեռելոց . հրամայեաց երկնից , և իջոյց զԵղիա . նկատեաց երկրի , և վերականգնեաց զՄովսէս ։

* Ի Ճառընտրէն ձթ ։

Եհան զնս՟ 'ի լեառնն, զի ուսուցէ զմզ՟ թէ սա ինքն է Որդին Ա՟յ նախ քան զյաւիտեանս 'ի Հօրէ ծնեալ, որ՟պ ինքն գիտէ. ծնեալ և 'ի կուսէն, և անապական պահեալ զկուսութի՟ն ծնողին իւրոյ: Զի ուր կամի Ա՟ծ, յաղթէ բնութե՟ն զօրութե՟ն: Բնակեցաւ յարգանդի կուսին Ա՟ծ Բանն, և ոչ բոցակիզեաց զանդամ կուսական մարմնոյն հուր Ա՟ծութեանն. այլ պահեաց իննամսեայ ժամանակ 'ի բնութեանն: Բնակեցաւ յարգանդի կուսին, և ոչ նշաւակեաց զերկրաւոր իւրս բնութե՟. և 'ի նմանէ յառաջ եկեալ Ա՟ծ մարդացեալ, զի կեցուսցէ զմեզ: Եցոյց զհուր՝ որ ոչ ապականէր զմարմինն յորում էր միացեալ. զի վկայեսցէ կուսին՝ որ ոչ ապականեցաւ, 'ի նորին զօրութենէն սրբեալ:

Եհան զնոսա 'ի լեառն, զի ցուցցէ զփառս Ա՟ծութե՟ իւրոյ և ծանուսցէ նոցա՝ թէ նա փրկեսցէ զիսրայէլ, որ 'ի ձեռն մարգարէիցն պատմեաց վասն մահուն իւրոյ, զի մի՟ գայթագղեսցին տեսանելով զնորա կամաւոր չարչարանսն զոր չարչարելոց էր վասն մեր մարդեղութե՟: Տեսանէին զնա մարդ, և ոչ գիտէին թէ Ա՟ծ է. Ճանաչէին զնա մարդ 'ի Մարիամայ՝ շրջելով ընդ նոսա յերկրի. ծանոյց նոցա՝ թէ Որդի է Ա՟յ և Ա՟ծ: Տեսանէին զնա զի ուտէր և ըմպէր, վաստակէր և հանգչէր, տքնէր և ննջէր, երկնչէր և քրտնէր. որ և բնութե՟ Ա՟ծութեանն այս ոչ վայել էր, բայց միայն մարդեղութեանն: Վասն այնորիկ եհան զնոսա 'ի լեառնն, զի Հայր ձայնեսցէ Որդւոյ, և ցուցցէ նոցա՝ թէ Որդի նորա իցէ Ճշմարտութե՟ և Ա՟ծութե՟:

Եհան զնոսա 'ի լեառն իբրև զՄովսէս և Եղիա. և եցոյց նոցա զթագաւորութիւն յառաջ քան զմահ իւր, և զզօրութի՟ իւր յառաջ քան զկապիլ իւր. ըզփառս յերեսս իւր յառաջ քան զթուքն. զպատիւն յառաջ քան զանարգանսն. զհանդերձս լուսափայլս յառաջ քան զմերկութիւն իւր: Զի յորժամ կալեալ խաչի 'ի Հրէիցն, ծանիցեն թէ ոչ վասն տըկարութե՟ խաչեցաւ, այլ վասն հաճութե՟ Հօր իւրոյ 'ի փրկութի՟ աշխարհի: Եհան զնոսա 'ի լեառն, զի ցուցցէ զփառս Ա՟ծութե՟ իւրոյ յառաջ քան զյարութի՟ն. զի յորժամ 'ի մեռելոց յարիցէ 'ի փառս Ա՟ծութե՟ իւրոյ, ծանիցեն թէ ոչ վասն վաստակոց իւրոց եառ

զփառս իւր, այլ էր նա յառաջ քան զյաւիտեանս ընդ Հօր ա՟ծ յա՟յ. և դարձեալ ա՟ծ ընդ Հօր. որ ասաց 'ի գալն 'ի կամաւոր չարչարանսն, Հայր, փառաւորեա զիս առ 'ի քէն փառօքն զոր ունէի յառաջ քան զլինելն աշխարհի առ 'ի քէն: Զնոյն փառս աստուածութեան իւրոյ անտես և ծածկաբար 'ի մարդեղութեն՝ եցոյց առաքելոցն 'ի լերանն: Տեսին զերեսս նորա որպէս փայլակն ծագեալ, և հանդերձ նորա սպիտակ որպէս զլոյս: Երկու արեգակն տեսանէին աշակերտքն. մի յերկինս ըստ սովորութեան երևէր նոցա և կենագործէր զաշխարհի հաստատութի, և մի՝ նոցա միայն երևէր երեսք նորա: Իսկ հանդերձ նորա իբրև զլոյս, եցոյց նոցա թէ յա՟մ մարմնոյ նորա բղխէ փառք ա՟ծութեան նորա, և յա՟մ անդամոց նորա ծագեցաւ լոյս նորա: Ոչ որպէս Մովսէսին արտաքոյ մարմնոյ նորա ծագեաց վայելչապէս, այլ յիւրմէ ծագէր փառք ա՟ծութեան նորա: Համահաւաքեաց զլոյսն իւր, և 'ի մի ժողովեցաւ: Ոչ եթէ յայլ կողմանց եկն և անդ հաւաքեցաւ. զի ոչ եկն յայլմէ կողմանէ և գեղեցկացոյց զնա, զի ոչ պիտոյ էր նմա. և ոչ յա՟մ անդամոց զփառս իւր եցոյց նոցա, այլ որչափ բաւական էին տանել պտուղք աչաց նոցա:

Այլ երևէր Մովսէս և Եղիա, և խօսէին ընդ նմա. և բանք նոցա որ ընդ նմա՝ այսպիսիք էին: Շնորհս խոստովանել նմա, զի բանք նոցա կատարեցան, և ա՟մ որք ընդ նոսա մարգարէիցն. և զմնացեալսն մաղթէին աւարտել գալստեամբ նորա: Երկրպագութի մատուցանէին նմա վասն փրկութեան զոր արար ազգի մարդկան. և զխորհուրդսն զոր գրաւեաց 'ի նոսա, սա ինքն գործովք կատարեաց: Ուրախութիւ ելից զմարգարէսն և զառաքեալսն 'ի նմին 'ի լերանն ելանելով: Ուրախացան մարգարէքն 'ի տեսանել զմարդեղութի նորա՝ որ էր անտես 'ի նոցանէ: Ուրախացան դարձեալ առաքեալքն 'ի տեսանել զփառս ա՟ծութեան նորա զոր ոչ էին տեսեալ: Գիտէին մարգարէքն թէ լինի մարդ, և տեսին. և հաւատացին առաքեալքըն թէ ա՟ծ է, և ստուգեցին: Ոչ էին տեսեալ մարգարէքն զոր տեսին. և ոչ ծանուցեալ առաքեալքն, և հաստատեցան 'ի լսել զձայն Հօր վկայելոյ 'ի վե-

րայ Որդւոյ։ Եւ այսու ծանեան զմարդեղութիւն նորա տեսանելով և լսելով, որ էր անտես 'ի նոցանէ։ Ստուգեաց զնոսա ձայն Հօր՝ յերևել փառաց մարմնոյ իւրոյ, որ 'ի նմա միաւորեալ էր անյաղթելի և անբաժանելի աստուածութիւն։ Եւ կնքեցաւ երիցն վկայութիւն, 'ի ձայնէ Հօր, և 'ի Մովսիսէ և յԵղիայէ՝ որ կային ընդ նմա որպէս ծառայք։ Յաւիտենից մարգարէքն տեսին զառաքեալսն. առաջնորդք հնոյն տեսին ըզսկզբունս նորոյս, և կատարեալք նորոյս ծանեան զաւանդիչսն հնոյն. ծանեան զմիմեանս 'ի խորհուրդ, որ լինիցի յարութեան մարմնոյս մեր տուեալ։ Ետես Մովսէս 'նք զՇմաւոնն սրբեալ։ Ետես տնտեսն Հօր զտեսուչն Որդւոյ. որ եհերձ զծովն կարմիր՝ գնալով ժողովրդեանն ընդ մէջ ալեաց՝ զայն որ գնայր 'ի վերայ ալեաց։ Ետես ունողն զփականս արքայութեան երկնից՝ զայն որ ունէր զգաւազանն փակողի. բացողն այն որ արկ 'ի հանդէս զերկոտասան ցեղսն՝ զայն որ արկ 'ի հանդէս եօթանասուն ցեղ. սկիզբն մարգարէիցն զգլխաւորն առաքելոցն. տեսանէր նախանձախնդիրն զվրիժառուն Հեղիաս, զկեփայեան վէմն։ Ետես Մովսէս, ասողն "Ի սկզբանէ արար Աստուած զերկին և զերկիր" զորդին Որոտման՝ որ հնչեաց "Ի սկզբանէ էր Բանն"։ Յովհաննէս տեսանէր զասողն՝ թէ "Որ էնն առաքեաց զիս". և ինքն վկայէ՝ թէ "Որ էրն 'ի սկզբանէ, զորմէ լուաք"։ Ետես կոյս հնոյն զկոյս նորոյս, Եղիա զՅովհաննէս։ Որ ել 'ի կառս հրեղէն՝ զայն որ անկաւ զլանջօք բոցոյն. և ուրախ եղեն 'ի տեսութեան միմեանց։ Եւ եղև լեառնն օրինակ եկեղեցւոյ. և միաւորեաց 'ի նա Յս զերկոսին կտակարանս զոր ընկալաւ եկեղեցի. և ծանոյց մեզ՝ եթէ նա է շնորհող երկոցունց։ Մինն ընկալաւ զխորհուրդ նորա. և երկրորդն յայտնեաց զփառս գործոց նորա։

Ասէ Շմաւոնն. Բարիոք է մեզ աստ կալ։ Ով Շըմաւոն զի՞նչ խօսիս. եթէ աստ մնամք, զբանս մարգարէիցն ո՞ աւարտէ. զխօսս քարոզողացն ո՞ կնքէ. զխորհուրդ արդարոցն ո՞վ կատարէ։ Եթէ աստ մնամք, զգրեալսն՝ թէ Փորեցին զձեռս իմ և զոտս իմ՝ ո՞վ վճարեսցէ. Բաժանեցին զհանդերձս իմ՝ ո՞ւմ վայելէ. Ետուն ինձ կերակուր լեղի՝ ո՞ւմ լիցի. Ի մեռեալս

ազատ՝ յո՞վ սատուգեսցի ; և զբնաւ տառս մարգարէիցն ո՞վ կնքեսցէ : Թէ աստ մնամք , զձեռագիրն Ադամայ ո՞վ պատառէ . հանդերձ փառաց նմա ո՞վ զգեցուցանէ . զպարտս մարդկան ո՞վ հատուցանէ : Թէ աստ մնամք ; զի՞արդ շինին եկեղեցիք . զի՞արդ հաստատին դրունք արքայութ՟. զերկինս զիա՞րդ առնուցուս ինև , և զո՞վ կապես կամ արձակես :

Լսէ դարձեալ. Արասցուք երիս տաղաւարս : Ով Շմաւոն , հրաման առեր . հաստատել զեկեղեցիս , և տաղաւա՞րս 'ի լերինս հաստատես . տեսեր զծաղիկս և զուարճացար, արժան է զի ճաշակեսցես զպտուղն յարութ՟ մարմնոյս այսորիկ : Տակաւին 'ի մարդկութ՟ ընդունէր զՅ՟ս. ընդ Մովսէսի և ընդ Եղիայի համարեցաւ : Եցոյց առժամայն՝ եթէ ոչ պիտոյ է նմա տաղաւարք նոցա . ծանոյց նոցա թէ նա ինքն է՝ որ տաղաւար յամպոյն հարց նոցա գործեաց յանապատին :

Մինչ նա խօսէր , ահա ամպ մի հովանի եղև նոցա : Տեսանե՞ս , ով Շմաւոն , տաղաւար շինեալ առանց աշխատութ՟. տեսանես տաղաւար՝ արգելլով զտապ , և խաւար չունի . տաղաւար փայլեալ , և բնակողք սքանչացեալք : Եւ ահա ձայն 'ի Հօրէ՝ Դա է իմ Որդի . դմա լուարուք : Եւ յետ ձայնին դարձաւ Մովսէս 'ի տեղի իւր , և Եղիա յարկս իւր , և առաքեալքըն անկան 'ի վերայ երեսաց իւրեանց յերկիր . և Յ՟ս միայն գտաւ , զի ձայնն 'ի Նա կատարեցաւ : Փախեան մարգարէքն , և առաքեալքն յերկիր անկան , զի ոչ 'ի նոսա կատարէր ձայնն Հօր՝ դմա լուարուք :

Եցոյց նոցա Հայր՝ եթէ կատարեցաւ տնտեսութ՟ն Մովսէսի . և զՈրդւոյ լուիցեն զոր յառաջն չառնոյր յանձն Շմաւոն լսել : Նա որպէս ծառայ հրամանս առ զոր խօսեցաւ , և զինչ երևեցաւ նմա՝ քարոզեաց. նոյնպէս և ա՟մ մարգարէքն մինչև եկն որ գալոց էր : Սա ինքն է Որդի , ոչ 'ի տանէ ծնեալ և ծառայ տիրեալ , ոչ տիրելով օրինադիր և ոչ ընդ օրինօք . այլ բնութ՟բ ա՟ծութ՟ նորա՝ դա է Որդի իմ սիրելի : Իսկ առաքելոցն որ էին ընդ նմա , անտես Հայր յայտնեաց 'ի լերինն : Ո՟ն պատմեաց զոր էնն, և Հայր պատմեաց զՈրդի . և 'ի նմին ձայնէ անկան առաքեալքն 'ի վերայ երեսաց իւրեանց : Զի ձայն ահեղակերպ , որպէս

թէ 'ի ձայնէն երկնի դողացաւ։ Նոքա անկան 'ի յերկիր. եցոյց նոցա՝ եթէ Հայր մերձեցաւ. և կոչեաց զնոսա Որդի, ձայնիւ իւրով յարոյց զնոսա։ Որպէս ձայն Հօր ընկեց զնոսա, ձայն Որդւոյ յարոյց զնոսա։ Եւ զօրութի՟ ա՟ծութե՟ն նորա միաւորեալ էր ընդ նմա անբաժանելի միաւորութ՟բ. 'ի մի պատկեր միացաւ առանց որոշման։ Ոչ որպէս Մովսէս արտաքոյ գեղեցկացեալն, այլ որպէս ա՟ծ իւր փառօքն փայլատակէր։ Մովսէս յերեսացն օծաւ վայելչութ՟ի. Յ՟ս յամ՟ մարմնոյ նորա իբրև զարեգակն զճառագայթս իւր փայլատակէր 'ի փառս ա՟ծութ՟ե իւրոյ։

Հայր գոչէր՝ Դմա լուարուք. ոչ բաժանեալ 'ի փառաց Որդւոյ ա՟ծութ՟ի [1].

[1] Երկաթագիր օրինակս, որ զեղչեալ է զիմաստս ճառիս ուրեք ուրեք, որպէս յայտ է 'ի յոյն բնագրէն, ցայս վայր հասուցեալ ըղճառս թողու անթերի. վասն վերջաբանութ՟ն կցեալ նմին, որ չէք 'ի յոյն բնագրին։ ՈՎ Պետրէ, ուէրէր ունկն-դէր մարգարէիցն. ընդդիմանայէր Փ՟ն՝ խափանել [illegible] որ վասն մերոյ փրկութ՟ե կատարելոց էր յԵրուսաղէմ. լուր Հօր՝ դմա լուարուք. ոչ բաժանեալ յերկուս որդիս, այլ մի. որում փառք յաւիտեանս. ամէն։

## ՆԵՐԲՈՂԵԱՆ

## ԱՍԱՑԵԱԼ Ի ՍՈՒՐԲ ԽԱՉՆ ԱՍՏՈՒԱԾԸՆԿԱԼ*

ՕՐՀՆԵՍՑՈՒՔ, եղբարք, զհրաշագործ անօրէնութեն միածնին և անճառ Բանին, որ 'ի սկզբանէ առ ած՝ ած Բանն, զոր կատարեաց 'ի մէջ տիեզերաց 'ի ձեռն կենդանարարմատ խաչին ։ Այսօր լոյս երեքճառագայթեան փայլմամբն լուսաւորեաց զտիեզերս ամ անճառելի և անհաս լուսովն ։ Լոյս որ գեր 'ի վերոյ հանդիպեալ եղականս լուսոյ ։ Լոյս անիմանալի և անհաս. յորմէ պայծառութի ժամանակափայլ և ըղձալի լոյս ։ Լոյս մշտնջենաւոր և անսպառ, որ[1] մշտընջենաւոր լուսոյ 'ի հայրականն ծոցոյ յառաջ խաղացեալ լուսով Հոգւոյն, սիրով լուսաւորեալ զարդարեցան ամ յօրինուածք եղականս բնութե ։ Այսօր խաչն լուսոյ կանգնեալ բարձրացաւ 'ի վերայ ոսկեբլուրն Գողգոթայի. և ես հաւատացեալ վերաթևեցի 'ի հողեղէնս գնացից ։ Այսօր արևելք հրաշացեալ ընծայեցին զկենաց փայտն առ 'ի փրկութի ադամային և հողածին ազգի ։ Այսօր դրախտն որդեգրութե բացաւ 'ի ձեռն կենաազգեացն[2] խաչի. և ես միւսանգամ նորոգեալ վայելեցի 'ի պտղոյ ծառոյն կենաց ։ Այսօր ծառն կենաց վերստին ծաղկեալ պայծառացաւ. և ես փառաւորեալ վայելչացայ լուսով ածային շնորհիւն ։ Այսօր սուրն սերովբէական պահպանութեն շրջանակեալ տեղի տայ. և ես միւսանգամ յարագուարճ խնդութբ մտեալ 'ի ձեռն երկրորդիս Ադամայ, վայելեմ 'ի փափկութեան եդովմայական[3] դրախտին ։ Այսօր կապանք դժոխոց լուծան, և ես արձակեցայ յաներևոյթ բռնաւորէն ։ Այսօր անմարմին Փարաւոնն ընկղմի 'ի ծովածածանչն դժոխոց[4]. և

* Ի ճառընտրէն ԺԹ. և 'ի ԽԷ գրչագրէն Փարիզու. յորում Կիւրղի Աղեքսանդրացւոյ ընծայի ճառս այս ։

1 Փարիզեան օրհնակն 'ի լուսոյ հայրական ... սիրով լուսաւորեալ ։

2 Փարիզեանն կենսաղբերց ... պտղով ծառոյն ։

3 Փարիզեանն եդենական ։

4 Փարիզեանն դժոխս ։

ես ելանեմ յերկիրն աւետեաց վերինն Երուսաղէմի։ Այսօր ա՟ծ մարդացեալ խաչի մարդկեղէն մարմնով. և ես փառաւորեալ ա՟ծանամ ա՟ծային միաւորութ՟ն [1]։ Այսօր ա՟ծային Բանն մարմին եղեալ բարձրացաւ 'ի մէջ տիեզերաց, տարածեալ զա՟ծախառն բազուկս իւր 'ի վերայ դիտապայծառ խաչին. անդ՝ ուր ադամային մարմինն նախաստեղծին մարդոյն անկեալ կայր, առ 'ի ներգործել զփրկութիւն բոլոր մարդկային ազգի, այս ինքն [2] կենդանեաց և մեռելոց. ձգելով յանմահութիւն և յանապական կեանս զմահկանացուացս բնութիւն. կործելով 'ի ժանեաց չարահնարող և սկզբնաչար վիշապին ա՟ծացուցիչ խաչելութ՟ն։ Զորոյ ըզգօրութեան զդորուատիս ոչ ոք 'ի մարդկանէ, ոչ ոք 'ի հրեշտակաց և 'ի հրեշտակապետաց, 'ի բոլոր իսկ յանմարմնոց ասեմ, և որ 'ի վեր քան զաշխարհս են իմանալեացն զօրութիւքն բերել ոչ կարեն. զի 'ի վեր են քան զբան և զմիտս եղական բնութեն ճառք ա՟ծեղէն շահից, զոր կատարեաց ա՟ծամատն [3] խաչիւ։

Ի ձեռն փայտի զմահ կթեցի. իսկ 'ի ձեռն խաչի զկեանս զգենում։ Ի ձեռն փայտի զանարգութի յոգնատեսակ և զանազան զգեցայ ախտից. իսկ 'ի ձեռն խաչի զփառս ճոխութեն մշակեմ։ Ի ձեռն փայտի Եւայ գլորեալ՝ արտաքս ընկեց զԱդամ 'ի պատուոյ անճառելին փառաց. իսկ 'ի ձեռն խաչի և մահու Քս կեանս արար [4] ազգի մերում, զմշտնջենաւոր փառս յաւիտենական կենացն պարգևեաց մեզ։ Քանզի ոչ միայն զդրախտին և որ ինչ յերևելիսս է տենչալի՝ վիճակեալ ժառանգեցի, այլ ճշմարիտ իսկ և իմանալի լուսով ա՟ծեղէն կենացն պայծառացեալ ա՟ծացայ։

Խաչն կանգնեցաւ 'ի մէջ Երուսաղէմի 'ի վերայ գագաթանն ոսկետեսակն [5] Գողգոթայի, և յահէ փառաց իմանալի զօրութեն պակեան երիկամունք ծագաց երկրի։ Խաչն կանգնեցաւ, և խորհուրդն ծածկեալ որ 'ի սկզբանէ արարածոց՝ յայտնեալ զեկուցաւ ազգի մարդկան։ Խաչն կանգնեցաւ, և գերաշխարհիկն արարածոց՝ արքայն հրեշտակաց և

1 Փար. էակաւորութե։

2 Փար. Այսօր ինքն որ էրն էին ... ածայոյ խաչելութեամբն։

3 Փարիզ. ածայօր խաչիւն։

4 Փար. կենդանարար զմշտին ...։

5 Փարիզ. ոսկեբլուր։

մարդկան մարդկապէս ընդ մարդկան շրջեցաւ, երեւեալ յաշխարհի ։ Խաչն կանգնեցաւ, և սատանայ գլորեալ կապեցաւ անլոյծ կապանօք ։ Խաչն կանգնեցաւ, և դժոխք աւերեալ գերեցան ։ Խաչն կանգնեցաւ, և դեւք հերքեալ ցրուեցան ։ Խաչն կանգնեցաւ, և կռապաշտութիւն լռեալ դադարեաց ։ Խաչն կանգնեցաւ, և վարագոյր հրէական տաճարին հերձեալ պատառեցաւ ։ Խաչն կանգնեցաւ, և եկեղեցի նորոյ շնորհօքն հիմնացաւ ։ Խաչն կանգնեցաւ, և Հրեայքն գայթագղեալ ցրուեցան և ոչ զղջացան ։ Խաչն կանգնեցաւ, և հեթանոսք յիմարեալ կատակերգեն զսքանչելիսն[1] ։ Խաչն կանգնեցաւ, և անէծք լուծեալ յօրհնութիւն փոխեցաւ ։ Խաչն կանգնեցաւ, և մահ արհամարհեալ անկաւ ։ Խաչն կանգնեցաւ, և շնորհք աւազանին լուսոյ փայլեալ ծաղկեցաւ ։ Խաչն կանգնեցաւ, և մեղք մեռան ։ Խաչն կանգնեցաւ, և լոյսն արդարութե̃ ծաւալեցաւ ։ Խաչն կանգնեցաւ, և քարոզք ա̃ծգիտութե̃ սփռեալ տարածեցան ընդ բոլոր արարածս ։ Խաչն կանգնեցաւ, և հեթանոսք հրաւիրեալ յորդեգրութիւն կոչեցան ։ Խաչն կանգնեցաւ, և ա̃ծաբանութիւն փայլեալ զարդարեցաւ[2] ։ Խաչն կանգնեցաւ, և առաքինութիւն զանազանապէս ճոխութ̃բ ծաղկեալ պտղեցաւ ։ Խաչն կանգնեցաւ, և մարդիկ ա̃ծատեսք և ա̃ծախօսք եղեն ։ Խաչն կանգնեցաւ, և երկնաւորքն ընդ երկրայինս խառնեցան ։ Խաչն կանգնեցաւ, և ապականութիւն զանապականութիւն ժառանգեաց ։ Խաչն կանգնեցաւ, և արեգակն նորոյ օրինաց բարձրացաւ անճառելի ճառագայթիւք ։ Խաչն կանգնեցաւ, և լուսին ստուերական[3] օրինացն եկաց 'ի կարգի իւրում ։ Խաչն կանգնեցաւ, և նոր և ա̃ծատեսակ նորոյ շնորհացս Երուսաղէմ[4] սկիզբն առեալ պայծառ շինութե̃ ։ Խաչն կանգնեցաւ 'ի վերայ նորակերտն Գողգոթայի, և ստուերապատեալ անհաւատութ̃բ հրէական ժողովրդեանն հինն Երուսաղէմ սկիզբն առ լուծման ըստ տէրունեան անսուտ ձայնին ։ Խաչն կանգնեցաւ 'ի վերայ նախահօրն Թաղ-

1 Փարիզ. զսքանչելեօքն ։
2 Փարիզ. զարգացաւ ։
3 Փարիզ. ստուերաչերդ ։
4 Փարիզ. Եւս սկիզբն պայծառութե ... ստուերաչերդեալ անօրէնութ̃ ։

մամն, և վերաբղխեալ մեզ զանմահութիւն 'ի մշտնջենաւոր[1] աղբերէ կենարար կողից, և ելից զտիեզերս ա͞մ անապականութ͞ք մեղրահոս երկնային մանանայիւն։ Խաչն կանգնեցաւ, և գայլք և գառինք 'ի միասին ճարակեսցին։ Խաչն կանգնեցաւ, և ճշմարիտ հաւատացեալք կոխեսցին զառեւծս և զվիշապս։ Խաչն կանգնեցաւ, և փափագողք վերին աշխարհին գրեալ վիճակին 'ի կեանս լուսեղէն յարկացն։ Խաչն կանգնեցաւ, և ճշմարիտ երկրպագուքն երկիր պագանեն Հօր հոգւով և ճշմարտութ͞բ։ Խաչն կանգնեցաւ, և ամենայն հաւատացեալք 'ի Ք͞ս ժառանգեցին զանունն զնոր տուեալ 'ի վերայ երկրի, քրիստոնեայ կոչեցեալք. զայս մեծ և սքանչելի անուն յորմէ եղեաք, և որով քաղաքավարիմք, և առ որ վիճակիմք։

Ո՛վ անունն նոր և զարմանալի հրեշտակաց և մարդկան. ո՛վ անուն նոր և փառաւորեալ 'ի յերկինս և յերկրի. ո՛վ անունն նոր և մշտնջենաւոր՝ մշտնջենաւորապէս տուեալ 'ի մարդիկ ըստ կանխաձայնեալ Եսայեայ մարգարէի որ ասէ, թէ "Տացի անունն նոր՝ որ օրհնեսցի ընդ ա͞մ երկիր„. այս ինքն է մեծ և պատուական, և պսակ մշտնջենաւոր քրիստոնէութ͞ես անուանակոչութ͞ի։ Որով անուամբ ոչ միայն կոչեցան, այլ և պայծառափայլ փառաւորեցան նախ և առաջին լուսաւորքն տիեզերաց երկոտասան ճառագայթաջահ առաքելական գնդին, առ որս ինքնադիմաբար խօսելով երանելի ձայնիւ կենարարն մեր Ք͞ս՝ կոչեաց զնոսա լուսաւորք աշխարհի. և 'ի նոցանէ զա͞ծաբանից դասս, զաւետարանչացն ասեմ և զվարդապետացն ջոկս. որք և լուսաւորագոյնս և ա͞ծատեսակս պատրաստեցին զանձինս հաւատացելոց 'ի ձեռն երանելի և ա͞ծընկալ խաչիս. խաչիս հետևանօք զմահն Յ͞սի յարամիշտ[2] 'ի մարմինս իւրեանց կրելով։ Ո՛վ անունն նոր և ամենօրհնեալ 'ի վերայ երկրի, որով ծաւալեալ փայլեցին ընդհանուր աստեղք տիեզերաց ծաղիկք անաշահոտք եկեղեցւոյ,

1 Փառ. 'ի մշտնջենաւորութեան... անապականութէ երկնային պարգեւացն։

2 Փարիզ. յոր 'ի մարմինս ... Ո՛ զանազան և ամենօրհնեալ անուան, որով.

և շուշանք բուրեալք 'ի զանազան հոտոց և 'ի խնկաբեր լերանց, զմարտիրոսացն ասեմ, և զմիշտ կուսանացն և զմենակեցացն պարս, զորս ոչ արժէ աշխարհս ։ Ո՛վ անունն նոր և ա՟ծատեսակ, սոսկալի հանդիպեալ դիւական և խաւարային այսոցն և ա՟մ անհաւատիցն, որով զարգացեալ բարձրացաւ եղջեւր կաթողիկէ եկեղեցւոյ. այս ինքն է Ճշմարտից և ա՟մ ուղղափառաց, որք 'ի ձեռն լուսապսակ և ա՟ծեղէն [1] խաչին ամրացուցին յանձինս իւրեանց Ճշմարիտ և ուղղափառ հաւատով զմեծ և զՃշմարիտ անուանակոչութի՟ն Ք՟ի ա՟յ մերոյ, յորջորջեալ քրիստոնեայք ։

Ո՛վ երանելի խորհուրդ սարսափելի տնօրէնութե՟ն Որդւոյն ա՟յ, զոր կատարեաց 'ի վերջին ժամանակս 'ի մէջ տիեզերաց [2]։ Անճառ է զօրութ՟բ ա՟ծընկալ խաչիս խորհուրդ՝ որ 'ի սկզբանէ՝ արարածոց ։ Խորհուրդ, որ 'ի մէջ ժամանակաց մարգարէիւք գուշակեալ, և 'ի վերջին ժամանակս առաքելովք քարոզեալ, և 'ի վերջին յաւիտեանս 'ի ձեռն ա՟ծաբան արանց թարգմանեալ, և հաւատացեալ յընդհանուր արարածս բանական բնութե՟ն ։ Քանզի խորհուրդ մեծ տնօրէնութե՟ն ա՟յ որ այժմ յայտնեցաւ կենդանատու և պատուական խաչիւս, 'ի դրախտին նկարագրեցաւ 'ի ձեռն կենաց փայտին. Նոյիւ նշանակեցաւ չորեքկերպեան տապանագործ օրինակաւ. Աբրահամաւ գուշակեցաւ խորհրդական [3] իսահակեան պատարագաւն. Յակոբաւ տպաւորեցաւ՝ երկրպագելով 'ի ծագ գաւազանին. Մովսէսիւ օրինակեալ՝ տեսակաւ բարձրադիտակ տպաւորութ՟բ պղնձանիւթ օձիւն. Ահարոնիւ ծաղկեալ վերափայլեաց 'ի ձեռն շառաւեղարմատ գաւազանին. Յեսուաւ զեկուցեալ հրաշագործեաց յանցս յորդանէսաբուղխ ջուրց. Նա և բոլոր իսկ արդարոց, նա և մարգարէիցն դասիւք կանխաւ տպաւորեալ մարգարէապէս 'ի ծածուկ, և ոչ առաքելապէս յայտնեցաւ զեկուցեալ ։ Իսկ յորժամ եկն

1 Փարիզ. ա՟ծընկալ ա՟է խաչին արմափացուցանէն ։

2 Փարիզ. տիեզերաց անճառելի զօրութե՟ն ... արարածոց ծածկեալ էր 'ի յաւիտենից, և մարգար ... ։

3 Փարիզ. խորհուրդն ... Մովսէսիւ օրինադրեցաւ տեսեալ զվերադիտակ՝ տպաւորութե՟ պղնձանիւթ օձին ... վերածաղկեալ փայլեաց ... յորդանանաբուղխ ։

լրումն ժամանակացս, և այց արար մեզ արեգակնն արդարութե̃ ծագելով 'ի բարձանց, և Բանն ա̃ծ մարմին եղեալ բնակեաց 'ի մեզ՝ շրջելով ընդ մարդկան ։ Եւ որպէս լուսաւոր մարգարիտն 'ի ծովային անդունդս փայլեալ, ձգեաց զճառագայթարձակ լոյս իւր զկերպարան թագաւորական պատկերի. զանկեալն և զկործանեալն յաղբ հողեղէնս գնացից և կոխան եղեալ 'ի խոզայ մոլեկան այսոց չարաց, և միւսանգամ մաքրեալ և խառնեալ՝ եդ զնա 'ի գանձի թագաւորական, և ա̃ծեղէն բնութե̃ անշփոթ միաւորութ̃ք ։ Յայնժամ ապա 'ի կատարումն մեծի խորհրդեան ետ մեզ զնշան մեծ և ա̃ծային զխաչն լուսոյ ։ Ըստ այնմ. “Ետուր երկիւղածաց քոց նշան, զի ապրեսցին յերեսաց աղեղան „. որ եղև իսկ պարիսպ ամուր և զէն անվթար կաթողիկէ եկեղեցւոյ ։ Յորմէ աճիւ հիացան դևք. վերջադարձին հրեայք. պակուցեալ սարսեն հեթանոսք. ամաչեցեալ եղծանին հերձուածողք. և բոլոր իսկ թշնամիք ճշմարտութե̃ ընդ կրունկն դառնան ։ Որովք յար և հանապազ մարտիւք պատերազմեալ սպասէ զարշապարաց մերոց օձն կամակոր պէսպէս և զանազան ախտիւք, և հայհոյիչ և ա̃ծամարտ խորհրդովք ։

Սակայն այս խաչ կենարար և ամենօրհնեալ և երանելի յետ մեծի հրաշագործութե̃ս ա̃ծային տնօրէնութե̃ն, ըստ կանխագիտութե̃ ա̃ծեղէն կամաց ծածկեալ ընդ երկրաւ աներևութանայր 'ի մարդկանէ 'ի նոյն և 'ի նմին փրկական խաչելութե̃ տեղւոջ. ոչ զօրութ̃ք իմանալին շնորհաց, այլ տեսութ̃ք մարդկային դիտաւորութ̃ք ։ Իսկ 'ի լրումն ժամանակաց 'ի դիցապաշտ և 'ի կռամոլ անաստուած թագաւորաց 'ի ժամանակս մեծի և ա̃ծայնոյն Կոստանդիանոս յաղթող թագաւորի վերաբղխեալ յերկրէ փայլէր 'ի բարձանց, զյաղթութի̃ միանգամայն և զա̃ծգիտութի̃ նմա պարգևելով ։ Աստուստ ապա 'ի ձեռն ա̃ծափայլ խաչիս աւանդեալ լինէին գանձք ա̃ծպաշտութե̃ ուղղափառ թագաւորաց ։ Աստուստ ապա 'ի ձեռն կենսազգեստ[1] խաչիս որպէս պսակ լինչ բոլո-

1 Փարիզ. կենդանագծեաց ... 'ի ձեռն փառաւոր խաչին ։

րեալ յերփն երփն ինչ ծաղկանց զնէին 'ի վ՟ր անձանց քրիստոնէութե՟ անուանակոչութե՟: Աստուստ ապա վերստին յընդհանրական եկեղեցիս զուարճացեալ ծաղկօք զանազան և յօքնափայլ առաքինութեք 'ի ձեռն քմամատն խաչիս:

Բայց ո՞վ բաւական իցէ, սիրելիք, արժանաւորապէս զանձառելի գանձուցն մեծութի՟ որ 'ի պատուական խաչէս պարգևեալ մեզ՝ արտայայտեալ պատմագրական տառիւք: Քանզի այսօր ծառն կենաց վերըստին ծաղկեալ յայտնեցաւ լուսաբողբոջ ճառագայթիւք. և աշխարհս ա՟մ լուսաւորեալ խնդութ՟ լցաւ: Այսօր խաչն Քրիստոսի ծագեալ 'ի բարձանց՝ զառ 'ի ներքոյ երկնից լուսաւորեաց, առաջնորդելով բոլորից յինքեան յերկրպագութի՟: Այսօր խաչն Քսի երևեալ՝ զաշխարհս ա՟մ ազատեաց 'ի կռապաշտութե՟ կապանաց: Այսօր խաչն լուսոյ աստեղակերպ[1] ճառագայթիւք փայլեալ 'ի բարձանց՝ զառ 'ի ներքոյ երկնից լուսաւորեաց. Թագաւորաց զյաղթութիւն շնորհեաց: Ո՛վ խաչ փրկական, առիթ երկնաւոր պարգևացն. ո՛վ խաչ կենարար, պատճառ ա՟մ բարեաց. ո՛վ խաչ լուսաւոր արմատ յորում Քսն պատարագեցաւ որպէս զոչխար 'ի զենումն եկեալ, և պատարագեաց որպէս քահանայ՝ ընծայելով զիս Հօր, միջնորդ եղեալ ա՟յ և մարդկան:

Խաչն երևեալ բարձրացաւ 'ի մէջ տիեզերաց, և աշխարհ ա՟մ ընթացեալ 'ի լոյս խաչին՝ հաւատացին 'ի Քս: Խաչն կանգնեցաւ, և հեթանոսք մերժեալ յինքեանց զանա՟ծ կռոցն պաշտամունսն՝ խաչեցելոյն երկրպագեցին: Խաչն կանգնեցաւ, և ճենճերք կռոցն պաշտամանց շիջաւ: Խաչն կանգնեցաւ, և եկեղեցիք հիմնացեալ պայծառացան ընդ չորս ծագս տիեզերաց: Խաչն կանգնեցաւ, և փոխանորդք առաքելոցն պայծառացեալ երևեցան լուսաւորք եկեղեցւոյ: Խաչն կանգնեցաւ, և քարոզք ա՟ծպաշտութե՟ն պայծառացան Երրորդութե՟ն հաւատով: Խաչն երևեցաւ, և եղջեւր քրիստոնէութե՟ բարձրացաւ: Խաչն երևեցաւ, և բլուրք զցնծութի՟ զգեցան: Խաչն երևեցաւ,

1 Փարիզեանն՝ բիւրեղակերպ . . . 'ի բարձանց՝ Թագաւորաց:

և անապատք ծաղկեցան ։ Խաչն երևեցաւ , և կուսութի̄ երկնաւորն փափագելով փեսային՝ արհամարհելով զայս յաւիտենի զհեշտութի̄ս ։ Խաչն երևեցաւ , և քահանայութիւն Ճոխացեալ վայելչացաւ ։ Խաչն երևեցաւ , և թագաւորք չքեղացեալք հաւատով պսակեցան ։ Խաչն երևեցաւ , և կրօնաւորք փայլեցին բարեպաշտութբ̄ Ճգնութե̄ն ։ Խաչն երևեցաւ , և լոյս [1] աւազանին հոսեցաւ 'ի սիրտս հաւատացելոց ։ Խաչն երևեցաւ , և Ադամ և որք ընդ նմա վերաթեւեալք լուսաւորեցան իմանալի արեգակամբ ։

Այս արդ որո̂վք գովասանական Ճառիւք կարասցուք վերտառեալ զերանաւէտ խաչիս զօրութի̄ , որ յամենամնբ Հոգւոյն փայլեալ 'ի բոլոր արարածս ընդհանրական եկեղեցւոյ ։ Այլ խաչիւն պարծեսցուք ըստ Պաւղոսի . 'ի խաչն ապաւինեսցուք որպէս զաւազակն . խաչակցեսցուք խաչեցելոյն 'ի ձեռն խոշորագոյն [2] և երկնային քաղաքավարութե̄ն . իբրև զի յարուցեալք ընդ յարուցելոյն թագաւորեսցուք զանեզրական թագաւորութիւնն ։ Ո՛վ խաչ փրկական և ամենօրհնեալ . յորում ամենակեցոյցն [3] տարածեցաւ զօրութիւն , կենագործելով զբոլորս հեղմամբ արեամբ և ջրովք որ յա̄ծախառն մարմնոյն , առ 'ի յազատութի̄ բոլոր տիեզերաց ։ Ո՛վ խաչ Ճշմարտապէս ա̄ծային հանդիպեալ նշան անյաղթելի , յորում կենացն կախեցաւ ողկոյզ , կաթեցուցանելով զմեղրաքոյս [4] մանանայն , որպէս մեծն 'ի մարգարէսն կանխաւ կոչեաց Մովսէս . ասելով եթէ “ Տեսանիցէք զկեանս ձեր կախեալ զփայտէ ” ։ Ո՛վ խաչ ստուգապէս, կենացն հանդիպեալ ստուգապէս ծառ , ընդ որոյ հովանեաւ հանգչին լուսատարմիկ և երկնային թռչչունք . այս ինքն արդարոց և գերաշխարհիկ [5] սրբոց երամք . ըստ այնմ եթէ “Փայտ կենաց է ամենեցուն որք յուսան 'ի նա, և որք յենուն 'ի նա իբրև 'ի տէր հաստատութե̄ ” ։

Այս արդ ո՞վ բաւական իցէ , սիրելիք , պատմել զզօ

1 Փարիզ. լոյս աւազանին խօսե֊ գունին տարածեցաւ զօրութե̄ :
ցաւ . . . :
4 Փարիզեանն պտաղցրաքոյս :
2 Փարիզ. խաւարաշնաւգէտ :
5 Մեր օրինակն գերաշխարհից :
3 Փարիզ. աշխարհակեցոյց է֊

րութեան խաչին. քանզի 'ի վեր քան զաշխարհս են գաւութեանցն ճառք որք յաղագս զօրութեան կենարար և ա͞ծընկալ խաչին։ Խաչն ճառագայթ[1] լուսոյ 'ի խաւարի. խաչն երանութիւն արդարոց. խաչն զէն առաքելոցն. խաչն լրումն մարգարէիցն. խաչն պսակ մարտիրոսաց. խաչն վհատելոց հաստատութիւն. խաչն անյուսից յոյս. խաչն սգաւորաց մխիթարութիւն. խաչն ճգնաւորաց ժուժկալութիւն. խաչն գերելոց փրկութիւն. խաչն ապաշխարողաց թողութիւն. խաչն մոլորելոց ճանապարհ և ճշմարտութիւն. խաչն արմատ անխզելի ուղղափառ հաւատոյ, նովաւ աճեցելոց և ծաղկելոց առ 'ի պտղաբերութիւն վերին աշխարհին։ Խաչն գաւազան զօրութեան և զէն արդարութեան ընդ բոլոր տիեզերս երկրպագուաց խաչելոյն անմեղ գառինն, որ եբարձ զմեղս աշխարհի։ Խաչն դրախտ[2] որդէգրութեան լուսարմատ տնկոց, և աղբեւր զովարար արդարութեան պասքելոց[3]։ Յայսմ աղբերէ արբին առաքելոցն դասքըն, և եղեն լուսաւորիչք աշխարհի՝ համեմատեալք անճառելի լուսոյ 'ի ձեռն հոմացեղ և ա͞ծախառն մարմնոյն. ըստ այնմ եթէ «Նման նմա լինելոց եմք»։ Յայսմ աղբերէ արբին մարտիրոսացն դասք, և եղեն հետեւողք խաչեցելոյն՝ խաչիւ և չարչարանօք յաղագս հանդերձելոցն փառաց որ յայտնելոց է 'ի մեզ։ Յայսմ աղբերէ արբին և կրօնաւորացն ջոկքն, և ծաղիկս և պաղպաջակս, կամ ցօղ վաղորդայնոյ զոչ մնացական և զբազմապատիկ զփառս յաւիտենից վարկանելով, հրաժարեցին 'ի զգալի[4] տենչանացս։ Եւ սահմանեալք հրեշտակակրօն երկնային վարուք հաճոյացան բոլորից ստացողի ա͞յ յօքնափայլ առաքինութեամբք[5]։

Ո՛վ երանելի և անխաղաց մեծութիւն որ յամենազօր խաչէս. քանզի 'ի ձեռն խաչիս յորդափայլ պարգեւք Հոգւոյն շնորհաց սփռեցան 'ի սիրտս մեր։ Ի ձեռն խաչի անմահութիւն ծաղկեցաւ. 'ի ձեռն խաչի անապականութիւն պարգեւեցաւ. 'ի ձեռն խաչի իշխան աշխարհիս այսորիկ ընկեցաւ արտաքս. 'ի ձեռն խաչի

1 Փարիզ. Ճառագայթափայլ լոյս որոց 'ի խաւարի։

2 Փարիզ. որդեգրութեան լուսարմատ տունկ։

3 Մեր օրինակն պսակելոց։

4 Փարիզ. զգալի փափկանօք։

5 Ի մեր օրինակն պակասէր առաքինութեամբ . . . յորդափայլ։

դժոխք լուծան. 'ի ձեռն խաչի հին մարդն մեր խաչակից եղև նորոյ երկնաւոր մարդոյն. 'ի ձեռն խաչի Եւայ յերկանցն ազատեցաւ. 'ի ձեռն խաչի դրախտն բացաւ. 'ի ձեռն խաչի հողածին բնութիւն ընդ ա̄ծայնոյն խառնեցաւ. 'ի ձեռն խաչի հրեշտակք զմարդիկ երանեցին. 'ի ձեռն խաչի երկիրս երկինք եղև. և 'ի ձեռն խաչի մարդն մահկանացու՝ ա̄ծ 'ի վերայ ա̄մ արարածոց կոչեցաւ: Այլ նա և յերկրորդ փառաւորեալ ա̄ծապէս գալստեանն յորժամ գալոց է դատաստան կենդանեաց և մեռելոց առնելով, խաչիւն գայ Թագաւորն փառաց յետ հրեշտակապետին[1] փողազոչ ձայնին, զարմանազան և հրաշափառ լուսով փայլեալ 'ի բարձանց: Եւ 'ի ձեռն Ճառագայթարձակ և լուսազարդ խաչին հանդերձեալ են[2] տեսանել զփառս ա̄ծութեանն միածնի, զարթուցեալք 'ի թաղմանէ: Եւ նոյնգունակ 'ի ձեռն իմանալի և անհաս լուսոյ գերազանցեալ խաչիւ՝ արդարոցն և հաւատարմացն անձինք վայելեն 'ի փառս մշտնջենաւոր կենացն Ճառագայթայեղց և անսպառ լուսով միասնական և համապատիւ Երրորդութե̄ն. որում յաւէտ և յիրաւի վայելեն փառք այժմ և յաւիտեանս. ամէն:

1 Փարիզ. հրեշտակապետական:

2 Փարիզ. հանդերձեալ գայ մենածին Որդին ա̄յ. և զարթուցեալք 'ի թաղմանէ գերեզմանացն 'ի ձեռն իմանալի և անհաս խաչին լուսոյ: խաչիւն՝ արդարոց.. ճառագայթայեղց ... փառս, պայծառ և զօրու̄ 'ի բոլոր սփացուածոց այժմ:

# ՅԵՆՈՎՔ ԵՒ ՅԵՂԻԱ

Արդարն Ենովք մեզ այսօր երկնային կերակուր տայ. քանզի վասն որ առ 'ի նմա շնորհին զմտաւ ածեմք: Կամիմ ասել զկերակուրն, և ոչ կարեմ գիտել. զի յագենամ, և յուսմն է ճաշակս՝ ոչ գիտեմ: Եթէ ասեմ՝ եթէ հաւատամ ուտելով մասն ինչ, խոստովանիմ եթէ ոչ գտից ուտել, զի յառաջագոյն է կերեալ: Հաւատն է 'ի վերայ ապառնեաց. իսկ պէտքն է 'ի վերայ անցելոցն: Ո՛վ ա̃յ շնորհին. զի կերակուր ն̃ր զերեսին ունի ժամանակս, զանցեալն և զառժամանակեին և զապառնոյն. զի յագեցեալ ուտելով ես քաղցենայ: Ոչ է յագումն քո, տէր, վնասակար, և ոչ քաղցդ քո յունայնութէ, և ոչ կերակուրդ քո վասն մարմնոյ զօրութե̃: Երանի որ իմացաւ զքեզ, զի գիտէ զճաշակումնդ քո. երանի որ ծանեաւ զքեզ, զի գիտէ զկերակուրդ. երանի որ ցանկանայ կամացդ քոց, զի գիտէ զզօրութի̃ կերակրոց քոց:

Արդարն Ենովք եւթներորդ եղև յԱդամայ, և յառաջեաց վասն հաւատոցն քան զնախաստեղծն. կատարեաց զքո կամսդ, և փոխեցաւ 'ի հանդիստ. ոչ զրկեցաւ դրախտն 'ի մարդոյն, քանզի փոխանակ Ադամայ էառ զԵնովք: Յեւթներորդ աւուր դադարեաց ա̃ծ յառնելոյ զամեն աշխարհ. յեւթներորդ դարուն զպտուղ բանաւորական բնութե̃ս էառ ա̃ծ: Ասացաք իսկ յառաջնումն բանին, եթէ յԱդամ և 'ի Կային նշանակեաց ա̃ծ զայս և զայն աշխարհ. ունիմք այլ զուգակից տարացուցի. վասն կատարածի մեզ մարգարէացան յայտնապէս:

Ո՞վ է որ ընդդէմ Ենովքայ պատրաստեսցի 'ի պատերազմ [1]. Ղամէք ամբարիշտն: Անդ դատաստան և զղջումն ծանեաք. ուսցուք 'ի ձեռն այսորիկ զկատարած աշխարհիս և զորբոց զորոշումն: Զի՞նչ ասէ Ղամէք. ոչ ցարս, այլ ցկանայս. և ոչ ցբազում

1 Յօրինակին 'ի լուսանցսն 'ի մարտ:

կանայս, այլ ցերկուս ոմանս. ամենաչարք ոչ արանց, այլ կանանց մարգարէանան։ "Ադդա և Սեղա, այր սպանի 'ի վէրս ինձ, և երիտասարդ սպանի 'ի հարուածս. զի 'ի Կայենէ խնդրեսցի եւթնիցս, իսկ 'ի Ղամեքայ եւթանասնիցս եւթն"։ Եթող արանց խոստովանել, և կանանց յայտնէ։ Այսպէս արար և Եսաւ, առ կանայս քանանացիս սէր ստանալով, և առ արդարն Յակոբ քէն ստանայր. հօրն ոչ լուաւ, այլ ընդ կանայս միաբանէր. զմայրն բարկացուցանէր, և զկանայսն քանանացիս զուարթացուցանէր։

Առաջին չարի մարգարէ՝ Ղամէք եղև, քանզի թըշնամի է վրէժխնդիր անարժան խորհրդակցելով, և ընդդիմացող իրագործին. ամբաստան լինի ունկնդրին, և սպառնայ չհաւանելոյն։ Եթէ ոչ լուիցէ, զայրանայ. եթէ լուիցէ, մատնէ[1]. եթէ անօրինեսցէ, բարկանայ. եթէ անցցէ զօրինօվք, մատնէ դատաւորին։ Ո՞վ ընդդիմացող բնութեան, ո՛վ ընդ մարդկան կրկնակին. ընդ երկդիմի պատերազմով անկանիմք։ Քանզի այսպէս գործէ խռովութի՟ ոգոց. բաջաղեցուցանէ մեծամեծս, և ցուցանէ դուզնաքեայս. փաղաքշէ իբրև զմայր, և նենգէ իբրև զպատերազմող. խոստանայ 'ի վեր քան զմարդ, և քան զմժիխ ապդել ոչ կարէ. ուսուցանէ իբրև զմիայն, և գործակցելով մոխիր գտանի։ Եւ Ադամայ այսպէս արար. ա͞ծ լինել խոստացաւ, և 'ի տեսիլ տառապանաց արար զնա. զԿայէն խորամանկութե՟ ուսուցանէր պատասխանել առ 'ի պատիժս, և ոչ մի ինչ մխիթարութի՟ գտանել։ Ահա և զՂամէք հաւանեցոյց սպանումն գործել, և խոստովանել զնա պատրաստեաց։ Ծիծաղի յորժամ կործանին սորա ունկնդիրքս, և հեռագոյն կացեալ զուարթանայ 'ի չարչարանս նոցա՝ իմացեալ զսպանումն։ Զի՞ սպաներ, ո Ղամէք, ասա մեզ. ընդէ՞ր չասես զանունն. ո՞ էր երիտասարդն զոր սպաներ. և ընդէ՞ր խոստովանիս քան զԿայէն գոլ ամբարիշտ. ո՞ պատմեաց քեզ 'ի վերայ Կայենի զվճիռն. ո՞ ուսոյց քեզ չափել զամբարշտութի՟ն, սահմանել զառաւելութի՟ պատժին։

1 Յօրինակին գրեալ էր Տափնէ. և 'ի լուսանցսն ասէ գրիչն Իմացիր։

Ասեն ոմանք՝ եթէ վասն Կայենի ասաց Ղամէք. այլ ոչ ինչ գիտեն: Քանզի զոր ա̃ծ սահմանեաց չապանանիլ յումեքէ, զիա՞րդ յՂամէքէ մեռանէր: Զամենայն ինչ զոր ասէ՝ լինի, վասն զի որչափ ասաց՝ ամենայն կատարեցաւ: Ընթերցիր զառաջագոյն բանսն, և ուսցիս զանվրիպութիւնս. տես ցայս վայր զհրամանացս զներկայութիւնս, և իմասցիս զասացեալս: Ոչ եթէ Ղամէք սպան զԿայէն, այլ հեծեծութիւն և երերանօք մեռաւ: Ի հրամանէն ծանիցուք, զի ոչ զամբարիշտ ոք սպան, այլ զկարի զբարեպաշտ: Քանզի եթէ Կայէն վասն Հաբելայ եւթն վրէժխնդրութիւս պահանջեցաւ, այս է՝ սահմանեցաւ պատժովք պատուհասիլ, որ է՝ եւթանասնից եւթն պահանջելոց էր, յորչափ արդեօք բարեպաշտ այր ձեռնարկեաց:

Սքանչանամ զասացուած գրոցս, և հիանամ ընդ միտս: Այր, ասէ, և երիտասարդ Ղամէք սպան: Ոչ պատճառս ասէ, և ոչ մարդկան բարեպաշտութեան պատիւ. քանզի թերևս երկու են զոր սպանն, այլ ոչ միայն զմի սպան: Ոչ մեկնիմ 'ի գրոցս, մինչև ուսայց՝ թէ ոյք իցեն եղեալ այրս. ոչ դադարեմ 'ի խնդրելոյ զշնորհսն, մինչև ցուցցէ ինձ՝ թէ ոյք իցեն այրս. ոչ զանուանսն հարցանեմ, այլ զազգն. ոչ ըղձաւանս խնդրեմ, այլ զգործոցն: Այս կանայք երկուքին ասասցեն մեզ զարանցն: Ադդա և Սեղա, ասացէք՝ ո՞յք եղեալ են այրս: Յազգէն էին Սեթայ, որոց երկոցունց էին այս կանայք. սպան զարդարսն, զի զկանայս նոցա առցէ. սպան զեղբարսն Ենովքայ, զի ապականեսցէ զառ 'ի յնոյ սահմանեալ ծնունդս: Յափշտակեցաւ արդարն Ենովք, զի մի մեռցի չարաչար: Հաւատաց չտեսանել զմահ, և ետ հաւատն բնութեան զշնորհսն: Ետ ա̃ծ հաւատոյն զիշխանութիւն, և վերացեալ զարդարն փոխեաց 'ի չար աշխարհէս յայսմանէ: Ծանեաւ Ղամէք յԵնովքայ, եթէ ոյք էին զոր սպանն. գիտաց յարդարոյն փոխմանէ, եթէ որպիսիք էին զոր սպանն. յայսմանէ քարոզեաց զիւր զամբարշտութիւն:

Բանս իմանալ տայ, թէ և զնա կորուսանել փութային ամբարիշտքն. չտանէին առաքինութեան կարգին, և ոչ բարեպաշտութեան խոկմանն համբերէին:

նոյնժամայն հնարէին այնոցիկ՝ որք առաքինութեան զարգանային, և զբարեպաշտոն հալածէին։ Զհաւատամս բանիս իմոյ. նոյ հաւատացուցէ զքեզ, զի յայնչափ աշխարհի միայն գտաւ արդարն։ Զարաչար սատակումն ունէր զերկիրն վասն երգոցն արբեցութեան և պոռնկութեան, թշնամանելով զբարեպաշտութիւն։ Ի խաղաղութեան ապականութիւն տիրէր, և 'ի կռուի մահ։ Զի եթէ էր մի ոք յայսպիսեաց սպանեալքս 'ի Ղամէքայ, ընդէ՞ր 'ի վերայ այլոց սպանելոցն ոչ ասացաւ այսպիսի հրաման։ Ինքն ասէ ամենայն գիրն, թէ «Ամենայն մարմին ապականեաց զճանապարհս իւր»։ Եւ զի՞արդ 'ի վերայ միոյ սպանողի սահման տանջանացն եդեալ լինէր, այնմիկ՝ որ ձեռնարկեացն։ Ոչ էր նոցա կենդանութիւն, բայց միայն մոլեգնութիւն և սթափանք նախանձու և սատակումն։

Ասաց ըստ մասանց և իմաստուն ոմն վասն նոցա՝ թէ իբրև գազանս էին առ ոչխարս, միայն ընդ կանայսն ունելով խաղաղութիւն. և 'ի նոցանէն ոչ ինչ դարձեալ այսպէս պատերազմ ընդունէին։ Մինչև 'ի քսան մահ արանց կանայքն տարաբերեալք լինէին. քանզի ապականութիւն զանութիւս մարմնոյն ըստ ճնշութեան կրթէր։ Եւ կանայքն ոչ ունէին 'ի վերայ միամտութեան զպարծանս, այլ 'ի վերայ բազում առնութեան։ Սոյնպէս և սոքա մոլեգնեցան, մանաւանդ ընդ որդիս մարդկան զպատերազմ ունելով. զի ապականութեան մոլեգնութեան հարկատրեցէ։ Յառաջանայր 'ի նոսա ախտն անժոյժկալութեան, մինչև զորդիսն այ առնուլին առ 'ի խառնակութիւն յանարգութեան։ Արք զորդիս մարդկան սպանանէին. իսկ կանայքն զորդիս այ։ Քանզի և աւետարանն ասէ վասն Քրիստոսի՝ եթէ եղև որդի Սեթայ որդի Ադամայ Որդի այ, և զիսրայէլ ածորդի անդրանիկ անուանեաց. քանզի և հաղորդակիցք շնորհաց սուրբ Հոգւոյն ժառանգելով ստացուածս՝ այ որդիք անուանէին։ Վասն այնչափ որդւոց այ ոչ ինչ 'ի վերայ կանաց գիրն հրաման ետ. և սպանեալքն վասն բարեպաշտութեան մարտնչէին։

Ծնան կանայքն հսկայս ոչ նոր ինչ, քանզի և յետ այնոցիկ նշանք եղեալ են. ծնանէին, զի մի ուրախասցի ապականութիւն 'ի վերայ իշխանութեան իւրոյ։

Ոչ միայն վասն մարդկան յանդիմանութե՟ ծնանէլին հսկայք, այլ և վասն մարգարէութե՟ն կորստեան. քանզի հետևէին նշանաց կորստեան իմն նշանակ. զի ըստ գործոցն և ընդունելին և զծնունդն նոցա, սատակումն լինէր՝ որպէս ասացի յառաջագոյն՝ վասն չարութե՟ և մահու: Արդարև իժից ունէին զբնու-թին զծնողսն սպանանելով, և կանայքն զչնացողսն, և արքն զոչ միամտեալսն առ 'ի մահ արանցն: Լսե՞ս զմոլեգնութիւս, հաւաստա ասացելոցս. իմանա՞ս զբռ-նաւոր ապականութիւնս և զանվայելուչ, հաւաստա հալածանաց բարեպաշտութե՟ն: Յառաջ քան զնմ արուեստս յայն ժամու գտեալ՝ զերկուս արուեստըս ասաց գիրն, սաղմոսարանի և քնարի, և ըղ-դարձնութե՟ պղնձոյ և երկաթոյ. և զքնարն առ 'ի մոլեկան երգս, և առ 'ի պատերազմ զդարբնութին: Իսկ ո՞ զմեզ 'ի վերայ հաստուցէ ասացելոց հետևել ապականութե՟ս և մահու:

Գրեաց՝ վասն էր ասացի զայս. զի ցուցից զկատարածն: Ի ստութէ՟ սկսաւ չարութին, և վախճանեսցէ յապականութէ՟ մարմնոց և ոգոց: Ի մոլորութէ՟ վիշապին արար սկիզբն մահուն, և 'ի սուր վախճանեաց: Իմացիր զսերմն յոր չափ աճեաց. զմտաւ ած զտունկն յոր վայր տարածեաց զարմատն: Ունիս զօրացոյցն, մի՛ լինիր անմիտ իբրև զփարիսեցիսն. զնշանս և զշարժմունս երկնից և զաւդոց գիտես փորձել, մի՛ տգիտանար վասն կատարածի ժամանակացն: Եթէ ետես զապականութի՟ և զմահ տիրեալ, իմացիր զկատարածն: Եթէ տեսցես զստութի՟ և զնենգութի՟ պատուեալ, մի՛ հարցաներ թէ երբ լինի: Ասաց և Տէրն Պաւղոս՝ եթէ "Առաքեսցէ նոցա Ած ազդումն ստութե՟ առ 'ի հաւատալ նոցա անիրաւութե՟". վասն զի ոչ հաւատացին ճշմարտութե՟ն: Ի ստութէ՟ սկսաւ վիշապն, զի ստութի՟ կատարեսցի. 'ի մահու անցն՝ ետ զփորձ ապականութե՟ն իւրոյ, զի զամենայն աշխարհս 'ի մահու կատարած ածցէ:

Փոքր կատարած առ Նոյիւ եղև. Ղամէք վասն այնր մարգարէացաւ. իսկ վասն մեծին յայսմ ետ ըզ-օրացոյցն: Վրէժխնդրութի՟ն եւթանասնիցն եւթն պարտուցն առ Ջրհեղեղն եղև, վասն զի սաստիկ բազ-

մութի մարդկան առ Նոյաւ կործեալ : Ադա և Սեղա կանայք Ղամէքայ՝ Սէթայ Թոռունք էին . վասն այսոցիկ պատմէ նոցա զվրէժխնդրութիւն իբրև սուգ առելոց վասն մարդկանն կորստեանն : Իսկ Կայէնի Թոռունքն և ոչ իբրև զերազ համարէին զբարեպաշտութիւն . քանզի ունէին բազում հնարիւք զփոյթ ապականութեան : Բազում մահք և յայլոց արդարոց եղև . այլ 'ի վերայ Ղամէքայ վախճան էառ եւթն զվրէժխնդրութիւն :

Ոչ անցանեմ զյայտնութե մնացս պատմութե . եւթն վրէժխնդրութիւն է վճիռ 'ի վերայ եւթն դարուն, լաւծումն նոցա և վախճան նոցա . այս ինքն է կատարած նոցա . քանզի ոչ ինչ սահմանէ ած , եթէ ոչ լինի : Ասաց և Մովսէս՝ հատուցանել զմեղս հարց 'ի վերայ որդոց յերիս և 'ի չորս դարս՝ որք ատեան զիս . և առնել զողորմութի 'ի հազարս՝ որք սիրեն զնա : Մեծապէս համառօտիւ զեւթն վրէժս թարգմանեաց մեզ օրէնս . քանզի երրորդ և չորրորդ և եւթներորդ լինի . քանզի վասն էր վճիռ զմեղս հալածելով, ոչ զանուղղիւղսն դատէ : Այսպէս ասացեալ է , քանզի նախագէտ գոլով գիտէ՝ եթէ 'ի վերայ եւթներորդ դարուց երրորդի կամ չորրորդի ոչ եղիցին ողորմութե արժանիք : Ասացի իսկ յառաջագոյն՝ եթէ առ յօգուտն ած սահմանէ ազգականութե զվճիռն, զի մի դիւրագլոր բնութես չարագոյն ինչ կարգ եդեալ եղիցի : Որպէս այժմ պահանջես , ասէ , 'ի Կայինէ զեւթն դարու զպարտիսն : Իսկ Ղամէք ընկալաւ պարտիւք ազգին իւրոյ վախճանելոց, մինչև հասեալ 'ի նուաղութի զպարտիս եւթանասնիցն եւթանն՝ խառնակեցաւ ազգն Ղամէքայ ընդ ազգին Ենովքայ :

Որդիս և դստերս ծնանէին և Թոռունքն Սէթայ. և այնչափ բազմութի գոլով միայն Նոյ արդար գտաւ 'ի վերայ ազգին իւրոյ . որում ասաց համդերձ կնօքն, որպէս առ Եղիշաբէթիւ և Զաքարիայիւ , որպէս առ Աբրահամու և Սառայիւ . փակեալ լինէր այնուհետև բանիցն հատումն յառաջիկայիցն : Լռեաց զկնոջէն Նոյի արդարոյ . զի իմասցուք եթէ գոյր և 'ի նմա միտք անօրինացն : Եցոյց եթէ յիրաւի լռեաց . և որ

տա 'ի նմանէն էին Քամ և Քանան՝ անէծ։ Թուեա զազգսն, և գտցես 'ի վերայ որդւոցն զազգսն Քանանու կորուսեալ. զի արտացէ ած վրէժխնդրութի Ղամէքայ զեւթանասանից զեւթն պարտուցն։ Ապա եթէ 'ի վերայ սորա ոչ կացցէ համարս յառաջ ասացեալ, սակաւիկ մի 'ի կատարած կողմն ածցես զմիտդ, և ընկալցիս զածային գրոց զմարգարէութի։ Ապաց Ղամէք զյապա լինելոցն. ոչ 'ի ձեռն ածային շնորհին, այլ ըստ նախախնամութեն լաւագունին։ Թողու ած մեղաւորաց տեւելոյ վասն յինքեանց պատրաստելոցն, զի դանդաղեալ 'ի կենցաղոյս՝ հասցեն յապաշխարութի։ Ոչ դառնան ամբարիշտքն, և մարգարէութին ցուցանէր զիւր ծանրութին, և վնաս անպատասխանիս առնէ։ Եղև այսպիսի և առ Բաղաամու. քանզի մարգարէացաւ վասն իւր մահուն. և օրհնել ոչ կամեցեալ զԻսրայէլ՝ յանդիմանեալ լինէր. զի վասն աշխատութեանն սահմանեցաւ նմա չարաչար մեռանել։

Որպէս պարտաւորք բերեն զգիր 'ի վերայ ինքեանց առ դատաւորս, այսպէս են և ամբարիշտք՝ որք մարգարէանան. զի խնդալով զառ 'ի վերայ ամբարշտութեն քարոզեն. ոչ եթէ բերողացն կամք զյանդիմանութին առնեն գրով, այլ տուողացն իմաստք 'ի գաղտնի ամանի զառ 'ի վերայ նոցա մտանութիւնս առնեն բերել։ Այսպէս և ած կամելով զիւր արդարութին ցուցանել, զյանդիմանութիւս ինքեանց ինքնավկայ տանջանս առնէր բերեալ. բայց ոչ վասն կամացն սրբութեն մարգարէանալ տայ նոցա։ Մեծ իսկ ուղղութիւն է պարտաւորին զիւր յանցանսն ցուցանել. զի առանց ամենայնիւ տանջանաց ճշմարտութին ցուցանի։ Դատաւորն զյանդիմանութի 'ի գործողէն առնու, և արդարութի տայ ամբարշտին ցուցանել՝ թէ որում արժանի է ամբարշտութին։ Որպէս Ադամայ մերկութին ճակատն [1] յանդիմանութի եղև պատուիրանազանցութեն, նոյնպէս և առ Ղամէքաւ մահին մեղքըն, զի ինքն զինքն յանդիմանեաց՝ թէ որպիսի կամաց է։ Առ Կայենաւ տատանումն եղև, և ամ-

1 Յօրինակին ճաշակն ։

քաստան թագուցեալ ամբարշտութեն . իսկ այլում մարդկան խեղճ մտաց տուաւ փոխանակ տատանման : Մեծ մարգարէ է խեղճ մտացն . յանդիմանէ և թագչի : Բնական է սուխս այս, զի և վկայ է ընդդէմ անիրաւութեն . և զարդարն յորժամ ոք ածէ 'ի վերայ զվճիռն՝ հաստատէ և անվրէպ ցուցանէ : Բազում անգամ անձին մոռացեալ՝ ստահակէ առ դատաստան . և իսկոյն խեղճ մտացն յիշեցուցանէ զգործոցն թելադրութիւն, և ցուցանէ զմիտսն և ասէ զպատճառսն, զժամանակն և զորպէսն և զտեղին նշանակէ, և տայ ծաղր առնել ազգացն զինքն՝ զի ուրացաւ :

Նու արդ ո՞ կարասցէ կալ և ասել, տէր, զքո[1] խորհուրդսդ . կամ ո՞ կարասցէ հասանել և իմանալ այդչափ իմաստիցդ : Զի զամենայն ինչ առնես, զորոց զորպիսութիւն անհնար է գիտել . բայց իմանալով զքեզ՝ սքանչանալ տաս զկարողութիւն քո . յարափակեցեր բնաւորական գիտութբ զխեղճ մտաց, զի մի աշխատիցիս զգաղտ յանցուածս դատելով . զի թէպէտ և թագուցանել ոք կամիցի, խեղճ մտացն ակամայ խոստովանել տացէ : Դատաւորն լռէ, և խեղճ մտացն խոստովանի . ամբաստանն լռէ, և խեղճ մըտացն խոստանայ . մեղք թագչին, և խեղճ մտացն յայտնէ զնա . ցուցանէ զկամացն և զմեղացն զմիաբանութի, զվճիռս տայ ոսոխին և զպատճառս խոստովանութե, և ամենեցուն լռելով ինքն զիւր զհամար տանջանացն սահմանէ ամբարիշտն : Ո՜վ ածային խորհրդոցն, ո՜վ անաշխատ դատաստանին, ո՜վ անհակառակ դատաստանին, ո՜վ դատակցին ած մարդկան բնութե կարգիս . զԱդամ 'ի մերկութն ամբաստանեաց . զԿային 'ի տկարութիւն . զՂամէք 'ի մարգարէութիւն . զԵսաւայ զխիղճ մտացն . զԱդամայ զմերկութիւն վասն օրինազանցութն յանդիմանեաց . ըզԿային 'ի տկարութեն վասն ածամարտութե . զՂամէք մարգարէութիւն վասն անմտութեն և անարժան յանդգնութեն . զԵսաւ խեղճ մտացն վասն թերահաւատութե երդմանցն և ցանկութեցն, մանաւանդ

1 Օրինակին զքո :

զի քան զմեծ և քան զազգակիցս առաւել զապականութիւն և զչարութիւն սիրեաց։ Զորս յանդիմանութիւն մեծ մարդոյ յարակցեաց, զի մի միայն մի վկայ գոլով ընդդիմաբանեսցէ. առնթեր եդ մեղացն զամբաստանն, զի մի աշխատեսցի արդարութիւն դատելով. ոչ եթող զմեղսն ընդդէմ խորամանգել ստութեան՝ դատաստանին, զի բնութիւն աղաղակէր ճշմարտութեան զխեղճ մտացն կարգեաց։ Որպէս խաւար ապականի 'ի հասանել լուսոյ, նոյնպէս և մեղաւորաց ուրացութիւն կործանի յորժամ ծագէ խիղճ մտացն։ Ի չորեցունց յայսց յանդիմանութեանց իւրաքանչիւր ոք 'ի մէնջ խրատի. և իմաստնոցն վասն բարեպաշտութեան ոչ ամբաստանք, այլ ջատագով լինին. մերկութիւնն ամօթով. իսկ տկարութիւն առ 'ի ճանաչել զառժամանակեայ բնութեանց. մարդարէութիւն յապաշխարութիւն ածելով. խիղճ մտաց փոխանակ վարդապետի խրատէ զմեզ։

Կացո 'ի վերայ այս չորեցունց զմիտսդ, և իմասցիս զհեթանոսաց անմտութիւն. զի փոխեցին զբնութիւն յամբարշտութեան արուեստս։ Մերկութիւն որ ամբաստանէ զապականութիւն բնութեան, ոչ միայն վասն պոռնկութեան, այլ վասն զի կարծեցին աղդուածն գոլ ցանկասիրութեան, յառժամանակեայ բնութեանս տկարութեան կարգեցին զոգի, և զպատահարս 'ի խղճէ մտաց կենդանութեանս կարգեալ, և գործոց որոշմունս զկատարելագործութիւն նոցա համարելով։ Ընդէ՞ր եդիք բնութեանս 'ի վերայ քող անարժանս. վերացո զքողդ, և տեսանես զբնութեանս գեղ. ամբարձ զարտաքուստ վերայ եդեալ զմիտսդ, և տեսանես զարդարեւ բնութեան գոյացութիւն։ Մի խառնակեր զբնութիւն. զի մի աշխատիցիս որոշել զնա առ 'ի կ.......... [1] ըստ կարգի։ Զի՞ աշխատիս՝ զի ուղղիցես զայն որ բարիոքն կայ. զի՞ փութաս 'ի ձեռն արուեստի իմանալ, որ առանց արուեստի առաջի կայ առ 'ի հասու լինել. ընդէ՞ր ապականես որ յայդ ուղիղն եղեալ է։ Եթէ իցէ գինի ազնիւ, ուղղութիւն առաւել շրջէ զնա։ Եթէ գիրն գրեալ որպէս արժանն է, որ ուղղէն՝ ա-

1 Յօրինակին քերեալ էր և դատարկ թողեալ տեղին. որպէս և զկնի։

պակասնէ զնա մանաւանդ՝ թէ քան վայելուչ առնէ ։ Ցորմէ ոչ ինչ է պակաս, յաւելուածն լինի պակաս ։ Լի է ամանն մեղու, զի՞ յաւելուս 'ի նա, զի՞ աշխատիցիս հատանելով 'ի քօէն, և զի՞ վաստակիս պարսաւելի լինելով ։ Լի է կապարճն ցորենով, զի՞ յաւելուս 'ի նա, զի՞ տաժանեսցիս քաղելով ։ Աստուած իբրև ամանս լցեալ զմտունս պիտանացուովքս կընքեաց ։ իսկ հեթանոսաց բացեալ զկնիքս նորա՝ ունայնացուցանեն ։ զի լցցեն՝ յաման յաման փոխելով՝ պակասել տան ։ և ինքեանց է կարօտ արարեալ, զարարչէն ամբաստանեն ։ Հայցեն մտովք զնուաղեալն, և ոչ խնդրեն զոր կորուսին ։ զոր ոչ կարիցեն տալ՝ խոստանան, և զոր ունէին՝ կորուսին ։ ոչ փորձին անդրէն տալ ։ Հնարագործելով զբնութիւն՝ շըրջեն զնա, և ապականեն առաւելապէս, և տրտնջեն զնոյն իբրև չար ինչ արարեալ ։ Դու շրջես և չգիտես, և դարձեալ ամբաստան լինիս ։ դու ապականես և ոչ տաս պատասխանի, և դարձեալ յանդիմանես ։ Զբնականն 'ի բաց մերժեցեր, և վասն եկամտին յամառիս ։ զնոյն ապականեցեր, և զքոյն կանգնել կամիս ։ զճշմարիտն հալածես, և նենգեցելոց խնամարկես ։ այսմ վկայես, և զայն ուրանաս ։ որ 'ի դիւէ է՝ ցանկաս, և որ յԱյ՝ է ատես ։ Ո՛վ ընդունայնութեան մտացն, ո՛վ յաճառութեան անխրատիցն ։ զամենայն ինչ ապականեցին, և ոչ ճանաչեն զուղղիչն ։ Հիւանդացեալք առ բժիշկն ընթանան ։ և դուք ընդէ՞ր առ ուղղիչն բնութեան ոչ գայք ։ Դու ապականեցեր, նա ուղղէ ։ դու պակասեցուցեր, նա զպակասեալն տայ ։ դու կործանեցեր, նա անդրէն կանգնէ ։

Որքա են անբան անասունքն, զի ըստ կամսն անարժանութեան խնդան ։ Զսոսա պարսաւեմ քան զանբան անասունսն ։ զի ոչ հարկաւորութեան եղեն անբանք, այլ ըստ անձին կամաց ։ Քանզի անբանքն ոչ գիտեն զինչ է անբանութիւն ։ զի՞նչ պարսաւանք նոցա մտացն, զի ոչ կարացեն իմանալ ։ Իսկ զմարդիկ պարսաւեմ, զի գիտեն թէ մր վատթարութի է՝ և խնդան 'ի նմա ։ Եթէ բուն անբանք թերևս զչորիցն բնութեց յառաջագոյն ասացելոց գործովք լինին ։ Այլ որպէս անասունքն թէպէտ տեսանեն զնա ոչ ճանաչեն,

նոյնպէս և սոքա թէպէտ խիթեալք լինին 'ի խղճէ մտացն, ոչ իմանան զօգտակարսն ։ Բարիոք ասաց առաքեալն Պաւղոս՝ եթէ «Մտանեաց զնոսա 'ի միտս անփորձս »։ Զի ասելով գոլ զինքեանս իմաստունս՝ յիմարեցան ։ Յիմարութիւն անբանութիւն է, և բանաւորական շարժմանցն զգայունք ։ Ա՛յլ խսկ է անբանութիւն բնական յանասունսն ։ Իսկ յիմարութիւն բանաւորական բնութեան է յեղափոխումն ընկալեալ, այսպէս անուանի ։ Բարիոք ասացի՝ եթէ որ գլխաւորք էին ։ Անբանք են հեթանոսք. զի ասելով գոլ զինքեանս իմաստունս՝ յիմարեցան ։ Անբանք եղեն յայտնապէս, զի ոչ ունէին անբանքն յինքեանս զառաջասացեալ զչորս զօրութիւնս. ոչ 'ի մերկութեան ամաչէին. ոչ զտանջանս յառաջագոյն տեսանէին. ոչ տկարութեացն խնամ տանէին. ոչ յիշատակս ունէին գործեցելոցն յինքեանց ։ Յիշատակն է խղճմտացն. մարգարէութիւն է ստամոքն. տկարութիւն է յառաջիմացութիւն և խնամակալութիւն ։ Մերկումն է գիտութիւն և ճանաչութիւն, որ ազդէ իւրաքանչիւր ումեք 'ի մենջ. զի ամ մարդիկ ունէին զայս՝ յայտնի է ։ Բայց զի կրկնակի է այս զօրութիւնս. և այս յայտնի է, զի մին է զգայական, իսկ միւսն իմանալի. և մինն կամաւոր, իսկ միւսն ակամայ ։ Բաղումք են յիմար ակամայ կամ 'վասն տկարութեան բնութեան պակասման, կամ վասն անփութութեան, իբրու թէ մնասուց ինչ եկեալ 'ի վերայ ։ Այսպիսիքն անմեղադրելի են. յայսպէս յանդիմանութեց խրատեալք, որք ըստ կամացն են, և որք զօրութիւն զայս ունելով ոչ իմանան ։ Զի որք ոչ նկատեն 'ի մասանց զամենայնն, և յարաբածոցս զարարիչն, և 'ի սահմանաց և 'ի բանից զիմաստութիւն և զարդարն, և 'ի պիտանացուացն և 'ի վայելչութեացն զբարեգործն, արդարեւ նոքա են անբան անասունք. զի կամովք յիմարութեան ուրախանան. Ճարակին զանբանութիւն, և 'ի հարցուածոյն փախչին ։ Զիա՞րդ ոչ ևս իցեն անբան անասունք ։ Եւ 'ի նոսա չորքն զօրութիւնքն ոչ խափանին ։

Ո՞ ասասցէ զայս զօրութիւնս և կամ ո՞ պատմեսցէ զնորա խորհուրդն, զի ըստ մարդկան սերմնարկեաց և տնկեաց զայսչափ զազդմունս ։ Այսչափ ազդմունս

ունէր բանն, զնոյն անգամն, զնոյն . . . . .[1] և նմա իսկ ոչ այսպիսի ետ: Իսկ մարդոյն բիւր գիտութիւն շնորհեաց. զի՞նչ են պատճառք 'ի նա ծնեալ մարմնի որիշ գոլ բնու̃ի. զի՞նչ են պատճառք կնոջ յերկրային 'ի մարմնին դէմ միմեանց բնութե̃ց գոլ, բանաւորս և անբանս. քանզի զայս ասաց ընդդէմ միմեանց: Ընթերցիր զբանս զասացեալ առ Ադամ, և գիտասցես զպայմանութի̃ս. մեզ փախչելի է 'ի կրկնակի պատմութե̃ս. քանզի պարտ է ունել սահման և մտաց: Ոչ եթէ որչափ տեսանեմք ուտեմք, կամ որչափ հայհեսցուք կերիցուք. մի անգամ յաւուր ուտեն իմաստունք. իսկ որ նուաղագոյնքն են՝ երկիցս. իսկ խօթքըն ստէպ ստէպ: Եւ աստ բանիցն մի անգամ բաւական եղիցի. իսկ եթէ հարկաւոր՝ երկիցս. բայց որ քան զայս աւելի է՝ ոչ ոք ընկալցի յարժան, և ոչ որ քան զխոտակամիտսն՝ թեթևագոյն են և կամ տըգիտագոյնք:

Իսկ դարձեալ Ղամէք եկեացէ 'ի մէջ. կարծելով մանաւանդ, քան թէ մարգարէանալով: Իմացաւ յառաջագոյն եղելոյ դատաստանին զզօրութի̃ չարին. և յիւր գործոյն զառընթերակայն միանգամայն և զպատուհասն միաբանեալ եհան 'ի վերայ իւր զհրամանն: Գիտեմ զասացեալս, և զևս պատմեսցուք մըտացս ճանաչեմ: Ոչ կայ եւթանասնից եւթն. 'ի վերայ Կայէնի ասացաք զմեղացն զորչափութի̃ն. ցուցաք զընտրութի̃ն. թագուցաք 'ի . . . ա Ղամէքայ զորչափութի̃ն ասեմք, զեւթն զԿայէնի զմեղսն աղբիւր ասելով այլոցն. ըստ իւրաքանչիւր մեղացն եւթանասուն: Գիտեմ զի պահանջես յինէն զտարազն զառ 'ի վերայ Կայէնի և զառ 'ի վերայ Ղամէքայ յայտնել: Եւ յառաջեմ քան զհարցումն. քանզի ոչ եմ ժխտող վասն առ 'ի յինէն ասացելոցն տալ զտարապացոյցն: Եւթն տեսիլ ետ ա̃ծ չարութե̃ն, որով զԿային եցոյց պարտաւորեալ: Քանզի և յառակսն այսպէս ասաց զայս: Որք ծնան 'ի Ղամէքէն եւթանասուն, ոչ պէսպէս մեղս ծնան, այլ զնոյնս կրսերագոյնս և բազմագոյնս ունելով: Բայց ունէր Կայէն յեւթանցն բազում չա

1 Յօրինակին բառ մի եղծեալ է:

ռաւելոյ. այլ Ղամէք վասն հասարակական կշռութեց և հասարակաչափութ իւրաքանչիւր եւթանցն պտղաբերութեն եւթանասնիցս եւթն 'ի նմանէ պահանջեալ սահմանեաց։ Որ ունին զեւթն Կայենին, կատարեալ է յամբարշտութեն։ Բայց զի իւրաքանչիւր կարող է ոչ ըստ Ղամէքայ հասարակակշռութե ունել շառաւելոյս մեղացն։ Բազում անգամ իսկ յոմանս եւթանցն և եւթանասնիցն աւելի և պակաս են. որք 'ի յեւթանցն ընդ երկուս կամ ընդ երիւս ամբարշտութեամբք եղեն անգեալ, կամ ընդ երիւս կամ ընդ չորիւս, և իւրաքանչիւր ոք 'ի նչէ բազում անգամ, բազմանայ քան զՂամէքայ զեւթանասունսն. և եթէ ոք բարկացող և սուտ յոյժ, բայց ոչ ուրացող և այրասպան։ Այլ ոք ունի զչորս ամբարշտուիս. այլ ոք երիս 'ի նոցանէն. իսկ միւս ոք ընդ չորիցն հինգերորդ ևս իմն։ Բայց մի պահանջեր զեւթանանից եւթանն զորպիսութեն, ունելով զ.......ն յորոց բխեցինն. չափեա զեւթն. և յաւելս.....արարողն պահանջի։

Գտանեմ քեզ և յայլում գրոց ցուցանել զտարազ զայսու թուոյ։ Օրէնք յամս եւթն, և դարձեալ 'ի յիսուն, թողուե կոչեցին։ Նոյնպէս յաղբերէ յեւթն աւուրցն եգիտ զամ եւթանեկինսն։ Ի միոյ օրէ բըխեաց տարի, և 'ի տարոյ եւթնամեանքն, և 'ի միոյ եւթանեկիցն եւթն եւթնակեանքն։ Որպէս զի ... թիւ եւթանասնիցն դարձեալ ընկալցի զպատիւ եւթանեկացն։ Քանզի եւթնաւորքս այլ աղբիւրք են պէսպէս թուոյ. և աւետարանն ասէ զերկոսին ըզթիւսն։ Ասէ Պետրոս. եթէ եւթնիցս մեղիցի ինձ եղբայր իմ, եւթնիցս թողից։ Պատասխանեաց Յս. ոչ միայն եւթնիցս, այլ եւթանասնից եւթն։ Վասն մկրտութեն զերկոսին զմեղսն ջնջեաց. ելոյծ զեւայի անէծսն. ելոյծ զԱդամայ զդատապարտութիւն. լուծանէ և զԿայենի զամբարշտութիւնն և զՂամէքայ զբազմայօրդ անմտութիւն։ Ի ձեռն մկրտութեն զամենայն քակտեաց. այլ հաւատացելոցն։ Իսկ եթէ ամբարշտիս, և Կայենի և Ղամէքայ ամբարշտութիւն 'ի քեզ հաստատեալ են։ Բայց ոչ ասաց՝ եթէ մեղիցէ յիս զեւթն մեղսն, այլ եւթնիցս. քանզի այլ է եւթ-

նոցա զնոյն մեղս գործել, և այլ է եւթն մեղս պէսպէսս մեղանչել։ Իսկ ո՞ւր վասն մկրտութեն ելոյծ. բայց ուր վասն հրամանին զառաջին սահմանն կացոյց՝ խափանեաց զմահ. այլ մեք դեռ մեռանիմք։ Նոյնպէս և 'ի մկրտութեն ելոյծ զեւթնեակն չարութեն. այլ կայ և մնայ որք ցանկանն նմա։ Բայց զեղբօրէն ասաց՝ թէ մեղիցէ յիս, յայտնելով եթէ ոչ յա̃ծ. քանզի բազում ինչ նովիմբ անուամբ ասին, որիշ զօրութիւ ունելով։ Են մեղք առ 'ի մահ, և են որք ոչ են 'ի մահ. և երկոցուն անուն մի է, և զօրութի որիշ։ Նոյնպէս և թիւ նոյն, բայց պէտքն որիշ։ Ա՛յլ է ունել եւթն ումեք ոսողոսս, և միւսումն ունել եւթն դահեկան. և այլ և ամք եւթն, և աւուրք եւթն։ Վասն այսորիկ քննութեամբք ճշմարտեմ, զի յայտնեցից քեզ զՂամէք. թարգմանեմ քեզ զնուազ կարծիքն, զի իմասցիս զմիտս ա̃ծային գրոց։

Պարծուցից զբանս 'ի յԵնովք, զի զպակասութի զառաջին եղելոյս աշխարհական տարացուցիս լրութբ հատուցից։ Ենովք եղեալ է այր բարեպաշտ, և զԱդամ զառաջին հայրն յանդիմանեաց վասն օրինազանցութեն։ Վկայեաց ա̃յ, զի զոր ասացն՝ տայր Ադամայ։ Վասն զի հաւատովքն անմահութե պատահեաց. մահկանացու գոլով ոչ մեռաւ։ Զի՞արդ Ադամ անմահ գոլով մեռանէր, եթէ պահեալ էր ըզպատուիրանն։ Ընդդիմանայ արդարս հերձուածողաց, որք ասէին՝ եթէ անիրաւութբ եհան զԱդամ 'ի դրախտէն։ Քանզի ահաւասիկ զԵնովք արդարութբ կեցեալ՝ յիրաւի յայսմ երկրէ 'ի դրախտն եմոյծ։ Զի եթէ չուժելով պահել զԱդամ 'ի դրախտէն եհան պատճառանօքն, զի՞արդ զԵնովք եմոյծ 'ի ձեռն հաւատոցն, և անմահ պահեաց զնա։ Եւթներորդ յԱդամայ եգիտ զարդարն հաճոյացեալ ինքեան, յայտնապէս մարգարէութի ունելով ապառնեացն։ Ի յուրբաթու Քնի մեռեալ, որ է յառաջ քան զշաբաթն, քանզի յարիցէ 'ի միաշաբաթօջն. զի յութերորդ դարու անպականութի մահու յաղթեաց։

Լուայ զ.... ական հերձուածէ ասելով, զի Քն եթէ վասն խափանելոյ զմահ եկն, զի՞արդ Ենովք ոչ մեռաւ կամ Եղիա. և եթէ յԵնովքայ, ասէ, խափա֊

նեցաւ, ուրեմն մեծագոյն են Ենովք և Եղիա քան զՔս։ Եւ եթէ Ենովք և Եղիա յառաջ քան զՔս բընակեցին 'ի դրախտին, զի՞նչ պէտք էին Քսի յարութեն, և կամ զի՞նչ աւելի Քս արար, և կամ ընկալաւ։ Համառօտիւ ասեմ, քանզի ոչ բարիոք են բանք քաղցունք տարացուցացս։ Խնդրէ աղքատն, տուր նմա. որ մեռանին՝ պէտք են նմա օգնականութե, մի յապաղեր զտուրն. եթէ ոչ՝ և մնա սպաներ։ Քս վասն Ադամայ մահու եկն, ոչ եթէ վասն Եղիայի՝ որ 'ի հարկաւորութենէն պահի։ Եկն տէր լուծանել զիշխանութի մեղաց. բայց ոչ վասն Ենովքայ բնութեն՝ որ յօրինակ տարացուցի արարչին արդէն և ոչ եւս է մեռեալ։ Շնորհն պահեաց զԵնովք, ոչ եթէ բնութի նորա յաղթեաց մահու։ Իսկ Քս վասն բնութեն, ոչ եթէ վասն շնորհին։ Վասն այնորիկ դեռ եւս բնութիս ընդ մահու անկեալ դնի, զի միանգամայն առցէ զանմահ բնութին։

Այլ է անմահութին, և այլ է յաղթել մահուն. Ենովք ոչ մի ինչ 'ի սոցանէ ընկալաւ։ Այլ է մարտընչել ընդ մահու, և այլ է փրկել 'ի մահուանէ։ Որ քաջամնայն, յաղթէ և փրկէ. իսկ փրկեալն ոչ ինքն կանգնել կայէ զնշան յաղթութեն, այլ իբրև զկողոպուտ լինի փրկչին։ Իսկ Քս պատերազմեալ յաղթեաց մեղացն. իսկ Ենովք հաւատացեալ՝ անվրէպ պահեցաւ դեռ եւս 'ի յաղթողէն։ Ոչ Ենովք խափանեաց զմահն, այլ զօրութեն այ հաւատաց։ Քս ած գոլով խոնարհութբ յաղթեաց վիշապին. Ենովք մարդ գոլով խոնարհութբ զի՞նչ կարէր առնել։ Իսկ խոնարհութին այ զի եղեցի ծառայ, 'ի ձեռն առ 'ի յընդունելոյ ինքեան. ծառայն զի՞նչ նուաղագոյն եւս արդեօք լինէր, զի ցուցցէ զառ 'ի յընդդէմ օձին զպատերազմ։ Աստուած Բանն 'ի մարմնի զմեղսն ընդունայնացոյց. մարդ ընդունայնութբ գոլով զիա՞րդ ընդունայնութբն յաղթէր մեղացն զօրութե։ Ոչ պրտու պրտուի պիտանացու լինի յընդդիմակացուն. իսկ Քս զօրաւոր գոլով պարտուով զվիշապն խափանեաց. 'ի ձեռն իւր ածութեն խափանեաց զզօրութի առիւծուն։ Ծնաւ 'ի կնոջէ, որ արարն զերկինս և զերկիր և զամ որ 'ի սմա. պա-

տեցաւ 'ի խանձարուրս, որ պատեացն մառախղով
զՀաստատութին. կաթն դիեաց, որ զերկնային զօ-
րութիւն յօրինէ Հոգով. տանջեցաւ, որ սպառնա-
լեօքն շարժէ զերկինս, և զբլուրս Հալէ:

Այլ ասես ինձ՝ եթէ քո զի՞նչ աւելի ուղեղաց քան
զԵղիա. մահկանացու դեռ ևս է Եղիա: Իսկ եթէ
այլոց պատրաստէր զուղղութի, զիա՞րդ և ինքեան
ոչ եդ զուղղութին: Եթէ յաղթեաց մահու, ընդէ՞ր
ինքն ոչ է անմահ: Եթէ խափանեաց զմեղս, ընդէ՞ր
թողութի մեղաց ոչ շնորհեաց մարդկան: Արդար է
Հեղիաս, միամտութ սպասեաց տեառն իւրում. պահի
դարձեալ 'ի վկայութի, զի ուսցին անհաւատքն՝ եթէ
կամքն նոյ առնեն զինչ և կամին, բայց ոչ մեղքն յաղ-
թեն: Մնայ վկայ լինել անմահին, զի մի՛ ոք ասասցէ՝
եթէ մարտիրոսք մեռեալք ոչ ինչ են. մնացեալ ցայ-
ժմ անմահ, յայտ առնէ Հրէից՝ զի եթէ քո կամե-
ցեալ էր, ոչ մեռանէր: Այլ կամօք մեռեալ, զի
իւրով արեամբն զամենեսին զմեզ 'ի մահուանէ փր-
կեսցէ: Եթէ մեռեալ էր Եղիայի և յարուցեալ, ոչ
ևս մեռանէր. աւելորդ էր քո յարութին: Իսկ եթէ
չև ևս էր մեռեալ, կենդանի կայ առ 'ի յանդիմա-
նութի Հրէիցն, և յետ վկայութեն մեռանի: Յա-
րոյց զորդին այրոյն զմեռեալ. ոչ եթէ զի մի՛ մեռցի
դարձեալ, այլ ցուցցէ զնոյ զշնորհսն՝ եթէ զոմ ինչ
կարող է առնել. վարձս իւրում կենդանութեն ետ
զմեռելոյն կենդանութի: Զոր պարտի մարդն, ած
Հատուցանէ. և զոր Եղիայն պահանջէր, շնորհն Հա-
տուցանէր: Յառաջ ասէր զապառնին, և զքի զօ-
րինակն պատուէր. զի նա եբարձ զմեղս աշխարհիս
իւրով մահուամբն. վասն մեր ամենեցուն Հատոյց
զպարտիս. վասն այնորիկ և ամենեքեան 'ի մեռելոց
յառնեմք:

Ոչ մեռաւ Ենովք, այլ ոչ է անմահ. քո մեռաւ,
և է անմահ: Իսկ ո՞վ է որ յաղթեաց մահուն, որ դեռ
ևս ընդ նովաւ է. եթէ որ զյաղթութին առ 'ի վե-
րայ նորա: Ո՞ ուղղեաց զմուտս Ճանապարհի դրախ-
տին, որպէս զաւանդն դարմանել կեաց անդ. եթէ
որ զիշխանութին նորա շնորհեաց արդարոց: Ենովք
ըստ շնորհի է անդ մինչև 'ի կատարած ժամանակաց.

իսկ Քս մտեալ'ի դրախտն իբրև տէր բաշխէ արժա-
նացելոցն զառ 'ի նմանէն հանգիստն ։ Քս եբաց ըզ-
դուռնն և եմուտ ։ իսկ զԵնովք ունին առ դրունս
արահի նորա ։ քանզի ոչ գրեալ՝ եթէ անդ փոխեաց
զնա ած ։ Եղիա յափշտակեցաւ յերկինս , այլ ոչ բա-
ցան նմա դրունք երկնից ։ 'ի բարձունս է յանմահ
կենդանութիւն ։ քանզի ոչ եմուտ յերկինս Ենովք ։
Բազում տեղիս ևս ունի ած , իսկ զդրախտն Քս ե-
բաց ։ Բազում տեղիս կենաց գիտէ ած ։ բայց զյա-
ւիտենական զիւր կեանսն 'ի ձեռն Որդւոյ իւրոյ շնոր-
հեաց մեզ ։ Եթէ չէր եկեալ Քսի , թագաւորէր ևս
մահ ։ քանզի Ենովք թէպէտ և ոչ ևս է մեռեալ,
ոչ մի ինչ շնորհ մարդկան ոչ էին ։ Եղև ջրհեղեղն
վասն բարեպաշտութեան անգիտութե ։ իսկ առ Քսիւ
ամ գիտութի այ 'ի մարդկան բազմացաւ ։ Առ Ենով-
քաւ Նոյ միայն գտաւ արդար ։ իսկ առ Քսիւ աւե-
տարանական քարոզութեան արդարութիւն առընթեր
եկաց ամ հեթանոսաց ։ մանաւանդ թէ զի օրէնքն
անքնին [1] յաղթեալ լինէին յաւետարանէ ։

Օ ինչ ոք ասիցէ վասն Ենովքայ ։ Ոչ կորոյս մահ
զիշխանութիւն չմեռանել Ենովքայ ։ վասն զի դեռ ևս
ընդ մահու գոլ հաւատալի է ։ Ոչ տրտմեցուցանէ
մահ զԵղիայի կենդանութիւն ։ քանզի յոյս մահուան
նորա [2] ոչ առնէ անվաւեր զիշխանութի նորա ։ Բայց
'ի Քսէ սաստիկ տրտմեալ է մահ, զի 'ի մեռելոց յաղ-
թեցաւ յարութե նորա ։ Ունէր զնա մահ իբրև զմի
ոք 'ի բազմաց , և կորոյս վասն նորա զամ մարդկան
զիշխանութիւն ։ Յոյժ խափանեալ են մեղք , զի կո-
րոյս զամ պարտիս անձին ։ զի փոխանակ նոցա Քս
հաճեաց բառնալով զմեղս աշխարհիս , և շնորհեալ
ամենեցուն պատառեաց զձեռագիր պարտեացն մե-
ղաց մերոց ։ Չեմ պարտաւոր մեղացն վասն Քսի բա-
րեգործութեան ։ բայց պարտիմ այ զհաւատն ։ Եւ ըզ-
խոստովանութիւն շնորհեաց ինձ , խոստովանիմ ըզ-
շնորհսն ։ հրամայեաց ինձ օրէնս կենդանութե , փու-
թամ առ յընդունել ։ Գիտեմ զԵնովք ծառայ շնոր-
հին ։ քանզի և զնա 'ի պարտեաց մեղացն ազատեաց

1 Յօրինակին 'ի լուսանցսն ինքն ։ 2 Յօրինակին նոցա ։

զի պարտաւոր էր մահու իբրև զմարդ մահկանացու և ապականելի ․ բայց ոչ իսկ եղև ընդ մեղօք ։ Կամեցաւ ած մնալ Ենովքայ , զի անիշխան արասցէ զմեղացն համարձակութի ։ Տիպ և ստուեր արար , զի մի 'ի տրտմութի արկցէ զպարս արդարոցն ։ Ծանեան յԵնովքայ , զի են և յաւիտենական կեանք և մարմնոց ։ Հաւանեցան յարդարոյն , զի ոչ եթող 'ի ձեռաց ած զազգս մարդկան ։ Մխիթարեաց զնոսա Ենովքաւ չթուլանալ 'ի մեղաց ․ կարկառեաց զձեռն , տրւեալ օրինակ յաւիտենական կենացն որք տանէին հոգ վասն նորա ։ Առ Ենովքաւ սկսաւ ․ իսկ առ Քսիւ կատարեաց ։ Ի վախճանին է պատրաստութի ․ քանզի բազում անգամ առ վախճանիւն սկիզբն 'ի մտացումն անկեալ դարձեալ յիշի ։ Ոչ ինչ է սկիզբն , որ ոչ ունի կատարած ․ զի ած օրինակք 'ի Քս կատարեցան ։ Զի ած հեղեղք 'ի ծով անկեալ ոչ երևին ․ այսպէս ած շնորհք 'ի Քս բովանդակեալ թաքչին ։

Ո՛վ այ երկայնմտութեն , զի յԵնովքայ մինչև 'ի Քս համբերեաց այնչափ յանդգնեալ մեղացն ։ Էառ զնախապտուղս բանաւորական բնութեւս ․ և ակն ունէր լնուլ զկալն , զի առաքեսցէ զժառանգաւորն ․ կատարեսցի նա 'ի պարտելոյն յօրէնսն ։ Եւ տես՝ զի աշակերտքն աւելի տանէին քան զվարդապետսն ․ և առաքեաց զաւետարանն առ 'ի յառաջադիմութի մարդկան սրբութե ։ Եկն աւետարանին վարդապետ ․ և վասն առաւելութե շնորհին եղև աշակերտ , զի օրինակ եղիցի ապառնեացն՝ որք ժառանգելոց են զփրկութին ։ Ո՛վ մեծ խորհրդոցն ․ տէրն ծառայ լինի , և արարիչն յարարածի երևի , և քահանայն ոչխար , և վարդապետն օրինաց՝ աշակերտ օրինաց ցուցանի ։ Վասն է՞ր է այս ․ զի միացուսցէ ընդ երկրայնոցս զերկնայինսն ․ զի միացուսցէ ընդ աներևութիցն զերևելիսս 'ի հաւասարութին ։ Ասասցէ վասն նախախնամութեն Ենովքայ , ա՞ռ ինչ Եղիա ․ և զպակասութին զառ 'ի նա եղելոյ տարացուցին պատմեցից ։ Ի նմա եցոյց ած թէ զիա՛րդ 'ի յարութեն արդարք 'ի մեղաւորաց մեկնին ․ և յԵղիա՝ եթէ ո՛րպէս մարմինքս յօդս համբարձեալ լինին ։

Ետ ած չորս տարացոյցս առ 'ի յանդիմանութի

բնութեան, զոր 'ի յԱդամն և 'ի Կայէն և 'ի յՂամէք և յԵնովք օրինակաւ նախատպեաց: Զորս զօրութիս առ 'ի մխիթարութի բարեպաշտաց ած շնորհեաց. 'ի յԱբէլ զամբաստանութի արեանն. և յԵնովք զզօրութի հաւատոց. յԵղիա զայցելութիս. 'ի Նոյ զառ 'ի յընդդիմանողաց պահպանութիս: Զչորեսին պայմանս ած արդարքն ունէին, յառընթերակայ կեանսն, 'ի մահուն, յետ մահուն, յետ յարութեն: Յառաժամանակեայ կեանսն, որպէս Նոյ է թագուցեալն 'ի հալածանս. և 'ի մահու, որպէս զՀաբէլն արիւնն խնդրել. յետ մահու, որպէս Ենովք 'ի գոգն Աբրահամու տարեալ. յետ յարութեն, որպէս Եղիա ամբովք յափշտակեալ: Որպէս ասաց Պաւղոս առաքեալ... աւելի ընկալաւ Ենովք 'ի հանդերձեալ աշխարհին. յոյժ նմանութիս ընկալաւ. քանզի որպէս յԱդամ օրինակ կատարածի աշխարհիս այսորիկ եղև, նոյնպէս և յԵնովք հանդերձեալ յաւիտենին օրինակ յայտնապէս երևի: Երանելի ես, Ենովք, զի 'ի քեզ պատմի հանդերձեալ աշխարհն. երանելի ես, զի 'ի ձեռն հաւատոց զաւետարանն Քսի ուսուցեր. երանելի ես, զի գիտես զվախճանն քո, և զի վասն վկայութե այ պահիս: Տացէ մեզ ած վասն հաղորդութեն 'ի հաւատոցդ քոց: Ցուցցէ մեզ զոր տեսանես. և լուսուսցէ մեզ զխորհրդոցն զօրութի՝ որում հաւատացարդ. զի և մեք վայելեսցուք յաւիտենական բարիսն նորա 'ի Քս Յս 'ի տէր մեր. որում փառք յաւիտեանս:

ՊԱՐԿԵՇՏՆ Յովսէփ վաճառեցաւ յիւրոց եղբարցն · բայց ինքն վաճառէ զկենդանութիւն իբրև յաղբերէ սահեալ: Ոչ ծառայ վաճառեցին եգիպտացւոցն · այլ ծառայքն տէր գնեցին: Աղօրի կարծէին զտեսուչն, և մուրացիկ կարծէին զկերակրիչն · խուժադուժ համարէին զօրէնադիրն¹ · և հայէին ընդ մանուկն ծերքն, զոր ոչ յետ բազում ժամանակի խոստովանէին վարդապետ: Ո՛վ առ 'ի նա ա՛ծային շնորհացն · զի յանձն էառ թագչել մինչև 'ի կատարելութիւն ժամանակաց, զի մի ոք ասիցէ մանկապէս զա՛ծութիւն: Ոչ խօսեցաւ մինչ դեռ էր անկատար · զի ցուցցէ՝ եթէ ոչ ըստ պատահարի ընտրէ, այլ ըստ դատողութեան ընտրէ զարժանիս իւր: Լռեաց 'ի բազում ամս, զի խօսեսցին գործքն Յովսէփու: Նախ գործք արդարոյն ճանաչեցաւ, և ապա նոյնժամայն գործակիցն նորա ծագեաց: Համբերութիւն Յովսէփու յառաջագոյն պատմութիւն եղև հանդերձելոյ օրինակին, և պարկեշտութիւն երիտասարդին եցոյց ըղթագուցեալ շնորհին զպարգև: Կրթեաց զնա 'ի կնոջն, զի 'ի բանտին ցուցցէ փորձ · փորձեաց զնա յեգիպտացի կնոջն, և յանձնեաց զարդարն եգիպտացւոյ: Լռեաց զրպարտեալ · համբերեաց մնասեալ, զի փառաւորեսցի արդարացեալ²: Ծանուցաւ եգիպտացւոյն տէր յառնն իմաստունի · այլ կնոջն յառաջ եկեալ ըղգխտութիւն խաւարեցոյց:

Դարձեալ մարտնչի ընդ Ադամայ և եգիպտացին յանզգամութէ կնոջն ճաշակեալ մեռաւ: Դարձեալ դրախտն յեգիպտոս կրթի · և երկդիմի փայտն յեգիպտոս խրատի: Եգիպտացի ասեմ զԵւա վասն խորամանգութե: Ոչ ասեմ ըստ նոյն գործոց նմանեալ, այլ վասն զի առ 'ի նմանէն կատարի · զի Եւա երկդիմի գիտութե արբոյց Ադամայ, և եգիպտացին զայրն

1 Յօրինակին զօրէնդիրն:

2 Յօրինակին արդարացեալ:

իւր պատրեաց ։ Նա խռովութի̃ գործեաց 'ի միտս առն , և սա զեգիպտացին պատրեաց բարիոք տեսանելով զվարս երիտասարդին ։ Ըստ պատկերի ա̃յ եղիցի մեզ Յովսէփ , զի զբարին խրատ տալով՝ ոչ լինէր լսելի ․ իսկ եգիպտացին կամէր միաբանել ընդ արդար առնն աղտեղութե̃ ։ Եւս ա̃ծ լինել կարծէր 'ի ձեռն չար խրատտուութեն ։

Հայեցա՛յք , երիտասարդք , ընդ Յովսէփ ․ և կանայք , յանդիմանեցայք 'ի վերայ եգիպտացւոյն ։ Երկուս նմանութիւնս տեսանեմ 'ի գործ կնոջն , և զերկոսին ընդդէմս ․ զի ոմանց յանդիմանութի̃ լինի , իսկ ոմանց պարսաւանք ․ և դարձեալ զոմանս խրատէ , իսկ զոմանս չարաչար ուսուցանէ ։ Իսկ ուրեմն բարիոք ասացաւ եթէ դարձեալ յԵգիպտոս երկդիմի փայտն կրթէ զմարդն ։ Զբազումս գիտեմ՝ որ 'ի յանդիմանութեց չար ուսանին , և 'ի հրաժարական բանէ փորձին ընդդէմ խորհրդովք ։ Իմացիր զոր ասեմք , և պահեա զպատուէրսն ։ Օձն զկինն 'ի հրաժարական պատուիրանէն գայթագղեցոյց ․ վասն այսորիկ ասաց Առաքեալն՝ եթէ․ պատուիրանն որ տուաւ ինձ 'ի կեանս՝ եղև ինձ մահ ․ քանզի ոչ գիտեմ զմեղս , եթէ ոչ օրինացն չէր ասացեալ՝ եթէ մի ցանկանցիս ․ զի պատճառս առեալ մեղացն 'ի ձեռն պատուիրանին պատրեաց զիս ։ Հայեաց 'ի քեզ , մի և քեզ արասցէ օձն զխրատ մեղացն ․ հայեաց , դուցէ պատճառք մեղաց եղիցին քեզ ասացեալքս ։ Կամէի լռել , այլ ոչ թողու զիս օգտելոյն մեր ․ և ա̃ծ գիտէր՝ զի բազմադոյնք են կորուսեալքն , այլ ոչ յաղթեցաւ վասն նոցա զանձինս այնոցիկ որ ապրելոցն են՝ չմիացուցանել ընդ իւրում ա̃ծութեն ։ Ասէ Ք̃ս ․ ընդարձակ է ճանապարհն որ տանի 'ի կորուստ ։ Այլ ոչ հրաժարեաց 'ի խաչէն վասն նոցա , վասն տառապելոցն՝ որք գտան ընդ նեղ և ընդ՝ նուրբ ճանապարհն ։ Ասասցուք իսկ, երիտասարդք ․ 'ի ձեռն Յովսէփու տեսանէ զպարկեշտութեն գեղ ․ յանդիմանեսցուք և զկանայս , զի ոչ ամաչեն ընդդէմ պարկեշտութեն մարտնչել ։ Վայ եգիպտացւոյն 'ի մարմնոյն վշտացեալ ․ քանզի աւասիկ փոխանակ ոսկերաց 'ի սրտին նետովք էր վառեալ ։

Փափկութիւն է պատճառք յաղթ մարմնով. և դատարկութիւն ցանկասիրութեան չար գործել սովորեաց։ Ի չաշխատելն 'ի գործս տայ աշխատութիւն աղտեղութեան. 'ի փափկութիւն մարմնոյն աղբիւր լինի հնարագիտութեան. յորկորստութենէ հոգոյն ապականութիւն բուսանի, և 'ի մարմնաւորութենէ անհոգութենէ աղտեալ հոգին հոգս ընդունի։ Հատ 'ի բաց զաւելորդս մարմնոյդ, և խլեսցես յոգոյդ զապականութիւն։ Ի կիր առ զբանաւորութիւնդ, զի մի բռնադատեսցես զմտացդ զօրութիւն։ Աւելորդն 'ի մարմնի ամբ լինի հոգոյն, և մարմնոյն զօրութիւն տկարութիւն լինի հոգոյն։ Ցանկութեան կիրք ողորկեցուցանեն զմարմին, այլ թառամեցուցանեն զմիտսն։ Իսկ ստէպ ստէպ պէտք ընպելեացն զմիտս թուլացուցանեն և դիւրահոս գործեն։ Ո՞չ լուար Պաւղոսի զի ասէ. “Յորժամ տկարանամ, յայնժամ զօրաւոր լինիմ„։ Փորձեա զամենայնս, և գիտասցես զօգուտն։ Քանզի զի՞նչ է զոր ասէ, եթէ յիս է տկարանալն. եթէ իմասցիս զոր ասեմս, և տեսցես 'ի վերայ Քսի։ Առաքելական տկարութիւն կամեցող է. զիա՞րդ. լուր զի ասէ նոյն՝ եթէ “ճնշեցուցանեմ զմարմինս իմ և ծառայեցուցանեմ. զի գուցէ այլոց քարոզեալ՝ ես ինքն անպիտան եղէց„։ Իսկ ուրեմն ինքն յանձն առնու տկարանալ, զի առողջութիւն պարգևեսցէ խորհրդոցն։

Որչափ արտաքին մարդն մեր ապականի, ներքինն նորոգի օր ըստ օրէ։ Բայց զիարդ ապականի արտաքին մարդս, լուր՝ ինքն ուսուսցէ զքեզ ասելով. որ մրցի ամ̃ և ճգնի։ Այլ ոչ իմանաս զայս ասացուածըս. այլ ասէ ցքեզ՝ եթէ “Մարմնոյ խնամ մի տանիր 'ի ցանկութիս„։ Այս, ասէ, կուսիցն ասացաւ. ոչ ասացաւ նոցա, այլ որք յամուսնութեան են։ Կոյսքն ոչ ճգնին զգուշութք, վասն զի ոչ ունին զփորձ ցանկութեան. քանզի որ ունէ՝ նա զգուշանայ ճգնութեան, հրաժարեալ 'ի բազմագունէն։ Այսպէս ասաց որք յամուսնութեան են՝ զգուշանալ, զի մի 'ի ձեռն անարժան խառնակութեանց յաւելուածք ախտից եղիցին պէտքն. և որդէծնութիւն եղիցի առ 'ի թշնամանս ամբարտաւանութեան, և ամուսնութիւն 'ի պոռնկութիւն համարեսցի։ Որք մնակեցքն են, և յարենէ կամովք ճա-

շահեցին • և թշնամանողք դիւրաւ յարձակեսցին ձեռօք • և բազում անգամ դառնայ համարձակութին 'ի թշնամանս , և յանդիմանութիւնն 'ի բարկութիւնն, և զուարթութին 'ի ծաղր անարգութե , և ճշմարտասիրութիւնն 'ի հակառակասիրութիւն ։ Քանզի ըստ արժանաւորին անընտրութին գողանայ առ 'ի յանվայելուչ անարժանութիւնս ։ Սոյնպէս և որ յամուսնութենէ ոչ զգուշասցի , յանորոշութենէ 'ի պոռնկութիւն գլորի ։ Չար է կամեցող ցանկութիւն կերակրոց, բայց չարագոյն է ըստ մարմնոյն • և լինի ոչ յումեքէ 'ի սկզբանէ ընդդիմացողի , այլ 'ի հեղգութէ լինի ։ Վասն այսորիկ այսպէս ասէ Պաւղոս • "Ոչ գիտէի զմեղս , եթէ ոչ օրինօքն՝ եթէ մի ցանկասցիս ,, ։

Իսկ արդեօք ոչ հարկաւորէ ցանկանալ բանսարկուն , բայց հեղգացելոյ և խօսեցելոյ վասն ներկայի ցանկութեան ճանապարհ ցուցանէ մոլորութե , և 'ի վերայ կացուցեալ առաջնորդէ 'ի մեղս՝ գտեալ ունկնդիր և գործակից առ 'ի կորուստ ։ Ասաց իսկ և Յակոբոս, եթէ "Ցանկութի յղացեալ ծնանի զմեղս • իսկ մեղքն կատարեալ ծնանի զմահ ,, ։ Մի հայիք յեգիպտոս • զի անդ Փարաւոն թագաւորէ , որ ասէր զժողովրդենէն՝ թէ "Ոչ արձակեմ, և զածն ոչ գիտեմ ,, ։ Զայս ապստամբութի ցանկութի ուսուցանէ • զի ունայնացուցանէ զոգիսն 'ի բարեպաշտութէ , և կորանայ 'ի հրոյն եգիպտացոյ , և ոչ ամաչես 'ի լուսոյն պարկեշտութէ ։ Հուրն այ լոյս է , իսկ հուրն թշնամոյն խաւար • նմա սպասաւորեն միտք , և սմա սպասաւորէ մարմին ։ Յորժամ ոք յղփանայ , փայտ մատուցանեն թշնամոյն առ 'ի տոչորումն հրոյն իւրոյ ։ Ասէ Եսայի՝ եթէ գնացէք 'ի լոյս հրոյ ձերոյ ։ Այլ և աւետարանն թարգմանեաց՝ թէ լոյսդ որ 'ի ձեզ է , խաւար է՝ ոչ ունելով զմարմինն աննիւթ ։ Ոչ տրտնջեմ զարարչէն • քաւ լիցի • և ոչ չար գոլ ասեմ զբնութիս • ընդունակ գիտեմ զսա ընդդիմացմանց • երբեմն լոյս եղեալ , իսկ երբեմն խաւար 'ի ձեռն գործոցն ։ Այլ 'ի մարմնի տիրէ խաւար մեղաց • իսկ 'ի միտսն տիրելոյս մարմնոյ , լոյս այժմ գիտեմ զզգայականս՝ որ զայ գիտութեն զփորձ եառ ։

խաւար իմանամ զանբանն՝ որ լցեալ է խաւարութեամբ մեղաց ։ Բնութիւն մարդկան իբրև գիւղ է. յիւղ յորժամ արկանէ վարդ, լինի վարդ իւղ. և եթէ ցմախ արկանէ, լինի յմախ իւղ. իսկ եթէ խնդամոլ արկցէ, լինի խնդամոլ իւղ ։ Նոյնպէս եթէ տիրեսցեն մեղք 'ի մարմնին, մեղաց մարմին լինի. և եթէ տիրեսցէ արդարութիւն, արդարութեան մարմին լինի ։ Ասաց Պաւղոս, եթէ առընթեր կացեալ մեղաց մարմնոյն՝ զէն անիրաւութեան է. և առընթեր կացեալ նորա արդարութեանն՝ զէն արդարութեան լինի ։ Եթէ պարարեսցես զմարմինդ, զէն ապականութեան լինի. զի պարտուցն արտաքուստ եկամուտ եղեալ 'ի ձեռն ապականութեանն որոշել 'ի բաց ընտրութեամբ. զի կերակուրքն յաղբ շրջին ։ Իսկ ուրեմն մարմինս 'ի բազում գարշութեանց զէն ապականութեան լինի, որպէս ասէ Առաքեալն. յորժամ լսեմ նորա ասելոյն՝ եթէ կերակուր աւուր պարենի մարմնոյն մահ է ։ Իմացիր՝ զի վասն կերակրոյն և վասն առ 'ի նմանէ ապականութեանցն ասաց ։

Բայց գիտեա՝ զի ոչ է բնութիւն պատճառք, այլ որ 'ի բնութեանն է եկամուտ անառակութիւն ։ Ի մարմինն եկամուտ ջերմութիւն 'ի ձեռն կերակրոցն, և յոգին եկամուտ խորհուրդ մարմնաւորական ։ Խորհուրդս այս 'ի մեղս առաջնորդէ. վասն զի 'ի ձեռն հեշտութեան ընդ միտսն շաղկապի ։ Կերակուրն բթեցուցանէ զմիտսն, և առ 'ի նմանէ երկնային խորհուրդն. կուրացուցանէ զնա յաստուածային գիտութեանցն. սովորութիւն առնէ նմա 'ի ձեռն նորին կրթութեան. և յառաջացեալ սովորութեանն՝ հանէ զբնութիւն, և փոխանակ մուծանէ զմարմնաւորական ցանկութիւն ։ Յետ շրջելոյ սովորութեանն 'ի բնութիւն՝ ոչ մարդ առնէ զոր խորհի. վասն զի 'ի սովորութենէն ձգի իբրև զեզն 'ի սպանումն և իբրև զհաւ յորոգայթ ։ Զսովորութիւն ախտ անուանէ Առաքեալն. և զառ 'ի սովորութենէ խորամանկութիւն մարմնական խորհուրդս կոչէ ։

Զայս խորհուրդս ունելով Եւայ՝ արդար կարծէր ասել ցԱստուած այնու խորհրդովք, և Կային Աստուծոյ պատասխանէր որ 'ի մարմնաւորական խորհրդոցն. զի և մեղանչել ևս յօժարել ուսուցանէ ։ Ո՛վ խորհրդոյս

այսորիկ, զի վասն երեւելեացն ասելով կարծէր յաղթել։ Վասն այսորիկ խորհուրդ մարմնոյ զի զձեւ բարեպաշտութեան ունի, իսկ զգործ ամբարշտութեան ոչ խօսի՝ զխեղճ մտացն ունելով, այլ յամսաւէ բանիւ արդարանալ. ոչ խոնարհեցուցանէ զմիտս 'ի չար գործոց, այլ զձեւ պարկեշտացուցանել թագաւորին կարծէ։ Այլ իբրեւ թէ ա՟ծ զսիրտ թագուցեալ ոչ տեսանէ, և գտանէ պատճառս իբրեւ առ մարդ։ Եւ ոչ միայն զայս չար ունի, այլ և զպատուիրանն ա՟յ շրջէ. յանդիմանի մեղօք, և տրտնջէ իբրեւ անպարտ։ Ի մէջ կայ Եւա չար գործեցեալ, և կամի ցուցանել զա՟ծ պատճառք, և զինքն լինել պատճառս։ Ասէ ցնա. ընդէ՞ր կերար 'ի փայտէն։ Իսկ նա ասէ. օձն ետ ինձ և կերայ։ Իբրեւ այն՝ թէ ոչ էր պարտ քեզ առնել զօձն, զի նենգելոց էր ինձ։ Այլ պատուէրն ա՟յ կարկեաց զբերան մեղացն, ցուցեալ՝ եթէ ոչ հարկաւ արար զայն, այլ ըստ կամաց յօժարութեան. քանզի եթէ ոչ էր կամեցեալ, ոչ ճաշակէր։ Քանզի ոչ էր իսկ օձն 'ի ներքս 'ի դրախտին, այլ արտաքուստ կացեալ տայր խրատ կնոջն։

Ոչ հեռի կայր 'ի դրախտէն դրանէ երկդիմի ծառն. ուստի և արտաքուստ գոլով վիշապն՝ ցուցանէր ըղպտուղ ծառոյն։ Զկնի եցոյց ա՟ծ զծառս զայս. վասն զի նոյնժամայն ընդ մուտն պատուիրեաց Ադամայ վասն նորա։ Այլ և մանաւանդ յիրաւի իսկ արար. զի ընդ մտանել և ելանել՝ առաջի աչացն ցուցանիւր պատուիրանն. և վասն զի ունէր զմահու և կենաց պտուղ, բարիոք եդաւ 'ի մէջ երկրիս այսորիկ 'ի դրախտին սահման եղեալ, յերկաքանչիւր կողմանցն զօրութ՟ի. և զի ընդ մէջ ցանկ ունէր երկոցուն աշխարհացս։ Ասէ, եթէ կարգեաց ա՟ծ պահել զճանապարհ դրախտին. քերովբէքն պատեցին զդուռնն, քանզի ոչ հեռի եկաց յանդիմանութ՟ի մեղուցելոյն։ Վասն այսորիկ և Առաքելն ասէ, զմիջակայ զորմն ցանկոյն քակեաց. այս ինքն 'ի բաց լուծեաց զծառն երկդիմի, յորում գրեալ էին մեղքն Ադամայ՝ որ կայր 'ի ցանկ դրախտին։ Ապա ուրեմն ձեռագիր մեղացն Ադամայ նմա պահիւր. զի սոյն ծառ [1] ա՟յ և

1 Յօրինակին գրեալ էր ծառս ա՟յ։

մարդկան միջնորդ եղեալ ։ Զի որպէս 'ի մէջ մարդկան միջնորդքն յանդիմանուն են, նոյնպէս ընդ Ադամ և ընդ ա՟ծ միջնորդ եղև ծառն ։

Բայց բարիոք ասացաւ ձեռագիր. մ՟ն զի ձեռամբ առեալ կերան ադամեանք ։ Գծել և քերել 'ի քարտին, կամ 'ի մոմի, կամ յայլ ինչ յայսպիսեաց՝ գրեալ է. նոյնպէս և որք կթեն 'ի ծառոյն զպտուղն. գծելով կամ քերելով ոչ եթէ այլ ինչ առնեն, բայց գրեն ։ Վասն զի Ադամ գծելով և քերելով զպտուղն ձեռամբ էառ. բարիոք 'ի վերայ նորա ձեռագիր կարգեաց ։ Ո՜վ մարմնաւոր իմաստիս այսորիկ, զի և ապստամբել ուսուցանէ. քանզի որ կամի զինքն իմաստուն ցուցանել, 'ի նմանէ բուսանի հեռ, և 'ի նմանէն ապստամբութի ։ Ասէ և ցԱդամ, թէ ընդէ՞ր կերար 'ի նմանէն ։ Եւ պարտ էր ասել՝ թէ մեղայ ։ Արդարացուցանէր զինքն. ասէ. կինս զոր ետուր ինձ, նա ետ ինձ և կերայ ։ Մնայր ա՟ծ զղջանալ նմա ։ Իբրև ետես եթէ յամառեաց, մահու դատապարտեաց զնա ։ Բարիոք ասաց իսկ Պաւղոս, եթէ ոչ հնազանդի խորհուրդ մարմնոյ. քանզի ոչ իսկ կարէ ։ Ի ձեռն որո՞յ գործոց իջոյց զխորհուրդս զայս ք՟ս ։ Ի ձեռն խոնարհութե. քանզի խոնարհեցոյց զանձն իւր, ասէ, մինչև 'ի մահ. բայց 'ի մահ խաչին ։ Ապա ուրեմն և հպարտութի ունի խորհուրդ մարմնոյս ։ Ասաց և Պաւղոս՝ եթէ գիտութի հպարտացուցանէ ։ Իսկ ուրեմն գիտուն է արտաքին ։ Վասն որոյ ասաց. գիրն սպանանէ, իսկ հոգին կեցուցանէ ։ Հոգին է արդարև գիտութի ։ Հոգևորն, ասէ, զա՟մ քննէ, բայց նա յումեքէ ոչ քննի ։ Արդեօք զգիտութիւն որ հպարտացուցանեն, և զնա 'ի մարմնաւորական իմաստիցս գիտէ ։

Իսկ, եղբարք, խոնարհեցուցէք զմարմինս նախ 'ի ձեռն պարկեշտութե, ապա 'ի ձեռն ահին ա՟յ ։ Խոնարհեցուսցուք զմարմինս, զի հասցուք 'ի մէնջ ըղխորհուրդս մարմնոյս ։ Ոչ ոք յղփացեալ կարէ զխոնարհութի զգենուլ. վասն զի ծանրացեալ շոգոյս 'ի շարժմունս մարմնոյս՝ յաղթէ բնականն մտացս ։ Երանի աղքատաց՝ ոչ վասն փոքր գիտութե ասաց, այլ վասն ճանաչելոյ զխոնարհութի բնութես մերոյ ։ Մար-

մին ընդդիմանայ հոգոյն, ոչ 'ի ձեռն բնութեան, այլ 'ի ձեռն եկամուտ խորհրդոց: Եթէ հնազանդեսցուք զզօրութիւն սորա, հնազանդի ոգոյ: Առաւել սաստկութիւն գանձուց զխորհուրդ մարմնոյ ծնանի: Վասն այսորիկ ասէ՝ վայ ձեզ մեծատանց. ոչ վասն այսր մեծութեան, վասն կերակրոցս զոր ա՟ծ արար, այլ վասն ճգանցն որ լինի յայսցանէ: Ոչ ա՟մ մեծատունն մեղաւոր է. բայց ա՟մ մեծատանց վայ: Բայց զի թէպէտ և պահեսցես զնա, աշխատի զի յաղթեսցէ. վասն այսր ունի զվայն, զի հազիւ յաղթեսցէ: Զայս զհազիւ ասաց և տէր՝ դժուարին. վասն զի վայ ճգնութեանն գիտէր՝ դժուարին է մեծատանց տանել: Ոչ ասաց՝ եթէ ոչ ոք 'ի մեծատանց. զի ցուցցէ ըզծանրութիւն մեծութեանն՝ միտմամբ ձգել զնա 'ի մարմնաւորական խորհուրդս. զմալուխ անցուցանել կարել ընդ ծակ ասղանն, քան եթէ մեծատունն յարքայութիւն ա՟յ: Զմարմնաւոր յղփութիւն մեծատանն զմալուխն ասէ. իսկ ծակ ասղան զխոնարհութիւն և զարհամարհելին ասէ: Վասն որոյ ասէ և սուրբն Յակոբոս. «Պարծեսցի մեծատունն եղբայրն 'ի խոնարհութեան իւրում»:

Եթէ խոնարհեսցուք, կարեմք տեսանել զա՟ծ. իսկ եթէ 'ի խորհուրդ մարմնոյ կարծիս ունիցիմք, գլորումն մեր լինի որպէս և Հրէիցն. քանզի ա՟ծ հակառակ կայ ամբարտաւանից, և շնորհս տայ խոնարհաց: Ունիմք զեգիպտացին օրինակ հպարտութեան, քանզի էր մեծատունն. ունիմք և խոնարհութեան օրինակ զՅովսէփ, քանզի էր խոնարհ: Այլ զնա խոնարհեցոյց ա՟ծ. իսկ զսա բարձրացոյց: Մեծացեալ էր եգիպտացին և ծառայ էր ապականութեան: Աղքատ էր և Յովսէփ, և թագաւոր էր 'ի վերայ ապականութեան: Զթագն նմա պարկեշտութիւն ետ. զի միանգամայն և ընդ աղքատս միաբանել և ծառայք կալցին զլոյս վարուց պարկեշտութեան ճգնել: Եղև ծառայն թագաւոր. ոչ միայն մեղացն, այլ և ա՟մ եգիպտացոցն: Քանզի ասէ. խնդրեցէք զերկնային, և երկրայինս տացի և յաւելցի ձեզ: Աշխարհական էր Յովսէփ և մեծատուն, այլ ոչ էր 'ի մարմնոյ առեալ. զայս իսկ ա՟ծ տայ ձեզ: Վասն այսորիկ և թա-

գաւորեալ՝ եղև պիտանացու աղքատաց և ա՟մ կա-
րօտելոց ։ Եւ ուսցիք աղքատանալ միամտութ՟բ . իսկ
ծառայել փութապէս . բարեպաշտել պարկեշտութ՟բ .
ճգնել վասն ա՟յ քաջապէս . հարստանալ առատութ՟բ .
Թագաւորել աղքատութ՟բ և ա՟ծասիրութ՟բ ։ Քանզի
ա՟յ են փառք և իշխանութի՟ն հանդերձ ս՟բ Հոգւովն այժմ
և միշտ և յաւիտեանս յաւիտենից . ամէն ։

## ՅԱՊԱՇԽԱՐՈՒԹԻՒՆՆ ՆԻՆՈՒԷԱՑԻՈՑ *

Ր․ՀԱ հրաման հասեալ առ մարգարէն Յովնան քարոզել Նինուէի ։ Եմուտ 'ի քաղաքն, և ահեղ ձայն նորա խռովեցոյց զամենեսեան ։ Քաղաքն հեթանոսաց խռովեցաւ [1] 'ի ձեռն քարոզին հեբրայեցւոյ ։ Յելանելն Յովնանու 'ի ծովէն, յուզեցան անդ [2] ալիք իբրև զալիս 'ի մէջ ծովուն ։ Էջ նա 'ի ծով և պղտորեաց զնա. ել 'ի ցամաք և խռովեցոյց զսա ։ Խռովեցաւ ծով 'ի փախչելն նորա, և շարժեցաւ ցամաքն 'ի քարոզել նորա ։ Դադարեաց ծովն աղօթիւք, և ցամաքն ապաշխարութեամբ ։ Աղօթք զՅովնան փրկեցին, և զՆինուէացիսն խնդրուածք իւրեանց ։ Փախեաւ Յովնան յայ, և Նինուէացիքն 'ի սրբութէ ։ Պաշարեաց զնոսա ստուգութին՝ զերկուսեանն իբրև պարտականս. ապաշխարութի ցուցին նմա երկոքին կողմանքն և ապրեցան ։ Ի նմանէ ուսաւ Յովնան թէ արժան է կեալ ապաշխարողաց ։ Զի որպէս ել նա 'ի ծովէն, զի [3] զընկղմեալ քաղաքն կանգնեսցէ. ծով խռովեցաւ յելանելն նորա 'ի ծովէն ։ Եբաց զբերան իւր արդար. Նինուէ լուաւ և տրտմեցաւ ։ Մի հեբրայեցի խռովեաց զամ քաղաքն առ հասարակ ։ Ելից Յովնան զբերան իւր, և ետ գոյժ ամենեցուն. մահ բաշխեաց որոց լսէին ։ Եբեկ ձայնիւ իւրով զսիրտ թագաւորին. զի քաղաքն 'ի վերայ նորա տապալէր ։ Ի մի ձայն բաժակ մահու արբուցանէր ։

Լուաւ թագաւորն և տրտմեցաւ. ընկէց զթագ իւր և խոնարհեցաւ ։ Լուան իշխանքն և տագնապեցան, և փոխանակ պատմուճանի քուրձ զգեցան ։ Լուան ծերքն պատուականք, և արկին մոխիր 'ի գլուխս իւրեանց ։ Լուան մեծատունք, և բացին զգանձս իւրեանց աղքատաց ։ Լուան փոխատուքն, և մուրհա-

* Ի Ճառընտրացն Բ. Գ. ԺԲ. և յՈսկեփ. ԺԲ ։

1 Երկու օր. փրփրեցաւ ։

2 Մի օր. Զորքն որպէս զալիս 'ի մէջ ծովուն ։ Մտեալ Յովնանու 'ի նաւն, և պղտորեաց զնաւն. Էլ ։

3 Մի օր. Եպէս զպտղոյն, և բացեալ զբերան իւր քարոզէր ։ Նինուէ ։

կաւ գործեցին զարդարութիւն ։ Լուան փոխառուքն , և փութապէս հատուցին զպարտսն ։ Ամենայն մարդ վասն անձին իւրոյ խոկայր յարդարութիւն ։ Ոչ գոյր անդ մարդ խորամանկ , թէ որպէս զրկեսցէ . 'ի պատերազմ ստուգութեան մտեալ էին , զի ամ̃ մարդ զանձն իւր շահեսցէ ։ Յովնանու լուան գողք և աւազակք , և զկապուտն դարձուցին տերանց իւրեանց ։ Կողոպտոյն տեարքն արհամարհեցին զինչս իւրեանց , և աւազակայն եղեն թողիչք ։ Ամենայն մարդ զանձն իւր խոշտանգէր . զի բարկութիւն զամենեսեան կշտամբէր ։ Լուան սպանողքն և խոստովան եղեն , և արհամարհեցին զահ դատաւորացն ։ Լուան դատաւորքըն և լռեցին , զի կորեան դատաստանքն 'ի բարկութենէն . ամ̃ մարդ զողորմութիւն սերմանէր , զի հնձեսցէ զփրկութիւն ։ Յովնանու լուան մեղաւորք , և խոստովան եղեն զմեղս իւրեանց ։ Լուաւ քաղաքն աղտեղեալ , և մերկացաւ զաղտեղութիւն իւր ։ Ի ձայնէ Յովնանու և տիկնայք ձոխք զհպարտութիւն խորհրըդոցն ցածուցին ։ Յաչս այնր ապաշխարութեան մերս որպէս ստուեր է . և առ այն խնդրուածոյն մերս որպէս նմանութիւն է ։ Առ մեզ սակաւք թողուն զպարտս իւրեանց յայս պահս . նինուէացիքն ետուն տուրս բազումս . նինուէացիքն զծառայսն ազատեցին ։ Ողորմեցարուք 'ի վերայ ազատաց ։

Յովնան իբրև առաքեցաւ յայն քաղաք , 'ի ձայն բարձր աղաղակեաց և ասէ . երեք աւուրք են , և Նինուէ տապալեսցի ։ Եւ 'ի ձայնէ նորա շարժեցաւ քաղաքն , և [1] պատեաց զնա մէգ և մառախուղ ։ Սըրտաբեկ լինէր [2] Նինուէ . զի ետես զդէմս մարգարէին թէ ահագին էին և սաստիկ ։ Ոչ ետ խրատ քարոզն քաղաքացեացն՝ թէ ապաշխարեցէք . զի յայտ արասցէ՝ թէ որ նեղեալն է , ինքն ժտեսցէ վասն օգտին իւրոյ ։ Ոչ ասաց թէ պահեցէք . այլ 'ի կամս ապատան արար ։ Փակեաց զդուռն ընդդէմ նոցա , զի ցուցցէ՝ թէ քանի բախեսցեն . զի որչափ ժտի ապաշխարողն , ժտութեամբն զողորմութիւն առցէ ։ Զայն ահեղ

1 Մի օր. մեգաւ և մառախղաւ [illegible] . . . :

2 Մի օր. [illegible] էին :

դողացուցանէր իբրև սրով, զի ժպիրհն յերկիւղէն բժշկեսցի 'ի յանցուածոյն ։ Քաղաքն ետես զՅովնան և խռովեցաւ, զի իբրև զխոհակեր[1] կայր 'ի միջի նց ։

Ընկեալ հիւանդք յարեան և ընթացան յապաշխարութի ։ Հիւանդն զմահիճս իւր թողոյր, զի ըզգաւազանն բարկութե տեսանէր ։ Ողջք հիւանդացեալ էին 'ի հիւանդութիս ցանկութեց ։ Խափանեցան անդ ճաշք թագաւորացն և ընթրիք մեծամեծացն ։ Եթէ տղայք 'ի կաթնէ սպահէին, ո՞վ էր որ խնդրէր զուրախութիւն ։ Եթէ զանասունս 'ի ջրոյ պահէին, ո՞վ էր անդ որ գինի ըմպէր ։ Եթէ թագաւորն քուրձ զգենոյր, ո՞վ էր որ պատմուճան ագանէր ։ Եթէ բոզք սրբեցան, ո՞վ էր որ յամուսինս դառնայր ։ Եթէ լկտիք զարհուրեցան, ո՞ւմ պիտոյ էր անդ ծաղր ։ Եւ վասն զի հանապազ շարժէր քաղաքն և երերէր, և ո՞վ էր որ զտուն իւր պահէր ։ Ընկեցեալ կայր ոսկին, և ոչ ոք էր որ գողանայր ․ 'ի բաց կային գանձք, և ոչ ոք էր որ յափշտակէր ։ Արգելին զաչս իւրեանց պակշոտեալք, զի մի հայեսցին 'ի կանայս[2] ։ Տգեղացուցին կանայք զգեղս իւրեանց, զի մի գայթագղեսցին տեսողքն ։ Քանզի ճշմարտիւ գիտէին՝ եթէ պակասիմք[3] 'ի միջոյ ․ և ա̃մ մարդ զմեղս հալածէր ։ Ամենայն մարդ զընկեր իւր կոչէր յաղօթս ․ և եղև ա̃մ քաղաքն մի մարմին իբրև զապաշխարող մի ։ Ոչ էր անդ՝ որ կայր[4] յաղօթս զի կացցէ ․ հաւաքէին իբրև զանդամս, և միմեանց աղօթս առնէին, զի ա̃մ քաղաքն հրաւիրեցաւ 'ի կորուստ ։ Վայելուչ էր և լալիւն տղայոցն, զի զա̃մ քաղաքն լացուցանէին ։ Ցելանէլ ձայնի անմեղացն զսիրտս և զաղիս ծնողացն գալարէին ։ Ծերք մոխրով[5] թաթաւեալ լինէին ․ խզեալ և ընկեցեալ լինէին պատուական ալիք ։ Գլուխք արանց և կանանց ստացան կընդութի յաղօթս իւրեանց ։ Կայր մայրն 'ի միջի, և շուրջ զնովաւ մանկունքն իւր ․ բուռն հարեալ զնմա-

1 Մի օրինակ՝ զխոհակէր ։

2 ԺԲ․ Ոսկ․ յաւելու․ փոխեցին զբնութիւն իւրեանց ցանկասէրքն, զի մի նկատեսցին 'ի գեղ պատկերաց ։

3 Մի օր․ հասեալ է վախճան կորըստեան․ և․․․ ։

4 Մի օր․ արտաքոյ լինէր 'ի ժամ աղօթիցն․ հաւաք․․․ ։

5 Այլք մոխրաթաթաւեալ կա՛մ մոխրաթաթաւեալ կա՛մ մոխրով թաթախեալ ։

նէ ձգէին յինքեանս , զի փրկեսցէ զնոսա 'ի մահուանէն ։ Ի ձայնէ շարժմանն փախչէր մանուկն 'ի ծոց մօր իւրոյ ։ Զայգն [1] և զերեկն թուէին զաւուրցն զոր ասաց Նոցա Յովնան . զաւուրս համարէին որ ելանէին և գային . ընդ ելանել աւուրն զաղաղակ բառնային , զի պակասէր յաւուրցն . ընդ ելանել աւուրն և ոգիքն 'ի մարմնոյն ելանէին ։ Որդիքն հարցանէին լալով ընդ հարս իւրեանց . Պատմեցէք մեզ , հարք . քանի՞ աւուրք կան յաւուրցն յայնց զոր ասաց մեզ եբրայեցին այն . և ո՞ր ժամ իցէ՝ որ նշանակեացն մեզ , զի 'ի նմա իջցուք կենդանւոյն 'ի դժոխս . և ո՞ր օր իցէ , զի 'ի նմա ապականի վայելուչ քաղաքս մեր . և ո՞ր օր իցէ օրն վախճանի , զի այլ ոչ ևս իցեմք զկնի նորա . և ո՞ր ժամ իցէ , զի 'ի նմա զամենեսին ցնորք ունիցին . և ո՞ր օր իցէ , զի ընդ տիեզերս սփռեսցի համբաւ կորստեան մերոյ ։ Անցանեն տեսողք և տեսանեն զքաղաքս տապալեալ 'ի վերայ տերանց իւրեանց ։

Զայս իբրև լուան հարք յորդւոց իւրեանց զարտասուս իւրեանց դառնապէս եռացուցանէին և արկանէին զանմեղօքն ։ Զի ոչ կարէին հարքն խօսել 'ի գթոյ իւրեանց , արգելան պատասխանիք նոցա 'ի լալոյ տղայոց իւրեանց . և զի մի՞ բազմացուսցեն հարքն զտանջանս որդւոց իւրեանց , արգելլին հարքն զարտասուս իւրեանց ։ Բռնադատէին և նեղէին զգութս իւրեանց , զի մխիթարեսցեն իմաստութ՟ զնոսա վասն հարցմանց մանկանցն ։ Երկնչէին հարքն յայտնել ճշմարտութ՟ որդւոց իւրեանց՝ եթէ մերձեալ է օրն և եհաս ըստ բանի մարգարէին ։ Իբրև զԱբրահամ մխիթարէին զորդիս իւրեանց մարգարէութ՟ ։ Եհարց Իսահակ վասն պատարագին , եթէ ո՞ւր է գառն պատարագի ։ Գառն խօսուն հարցանէր վասն գառինն անխօսի ։ Ոչ յայտնեաց Աբրահամ որդւոյն իւրոյ՝ թէ դու ես գառն պատարագին , զի մի՞ բառաչիցէ 'ի գորով և յողորմ , և լինիցի արատ 'ի պատարագն ։ Պատրեաց կապեաց զմիամօրն , մինչև ելցէ վաղակաւորն ։ Ետես Աբրահամ զորդին իւր՝ թէ

1 Երկու օր . զայգն և զերեկն ։

խիստ է քան զնա, ոչ 'ի լռութեան դադարեաց, զի մի զպատարագն տրտմեցուսցէ ։ Հնարս խնդրէր Աբրահամ թէ որպէս հաճեցուսցէ զսիրելին ։ Երկեաւ ասել՝ թէ դու ես, մարգարեացաւ թէ այլ է. կարծէր թէ նա է, մարգարէանայր թէ չէ նա ։ Լեզուն Աբրահամու առաւել գիտէր քան զսիրտն ։ Ելցուք, ասէ, ես և պատանեակս, և դարձցուք առ ձեզ ։ Կամեցաւ ստել, և մարգարեացաւ, զի հնարեսցի յօգտութիւն ։

Այնպէս և Նինուէացիքն ասէին ցորդիս իւրեանց. Քաղցր և բարի է Տէր, և ոչ ապականէ զպատկեր իւր զոր արար ։ Նկարիչն որ նկարէ զպատկեր, պահէ զնա գթութեամբ. որչափ ևս առաւել պահէ բարերարն զպատկեր կենդանի և զխօսուն ։ Ոչ գաւառս ապականի, որդեակք, և ոչ քաղաքս տապալի. 'ի ձեռն կործանեան սպառնալեացս կոչէ զմեզ յապաշխարութիւն ։ Դուք, որդիք սիրելիք, քանիցս անգամ տանջեցայք 'ի մէնջ [1]. գան արբէք զի յանցեայք, և իմաստնացայք զի տանջեցայք. և [2] դուք գիտէք զի սիրով ապականեցայք, և 'ի միտ առէք զի սիրով տանջեցայք. դարձաւ սրտմտութիւն, և եղև ուրախութիւն ։ Ուսարուք, ով սիրելիք, 'ի փորձելն տանջանաց, և 'ի միտ առէք 'ի գաւազանէն ։ Արդ յօգտութիւն խրատէ զմեզ Հայրն՝ այն որ իմաստնացուցանէ զմեզ ։ Գաւազանն իւր բարկութեամբ վարեցաւ, զի կեցուսցէ զմեզ ։ Այլ որպէս մեք զձեզ սաստիւ խրատեցաք՝ զի ստասցուք ընդ ձեզ, և այն քաղցր և բարերար տէրն սաստիւ խրատէ զմեզ, և ողորմութեամբ փրկէ զմեզ, և գանձ շնորհաց յորդորէ [3] 'ի մեզ ։ Եթէ այս ճշմարիտ է ձեզ՝ եթէ սիրով խրատեցաք զձեզ, զիա՞րդ կարծէ ոք զՏէր եթէ ոչ սիրով խրատէ զմեզ ։ Արդ խրատս այս մեզ լիցի հայելի ։ Սակաւ է սէր մեր առ ձեզ, քան ընդ սէրն Տեառն առ մեզ ։ Ի խրատու նորա գտանին պարգևք որդւոց մարդկան ։ Որդիք տրտմեալ, լռեցուցէք զար-

1 Մի օր. 'ի մէնջ գանոբէկք ։

2 Համառօտեալ և դուք... Այս օրինակս մեք, զեղջեն և լայնեն զմօրենակք աստուածայինք յերկրաւորս. մեք ընդարձակ ընթերցուածովք նոցին վարեցաք, թէ և չիցէ տակաւին հասարակաչափ առողջ ընդգրին, որ ընդարձակ է յայսմ վայրի քան զմեր օրինակն ։

3 Մի օրինակ յորդորէ ։

տասուս ձեր . բարկութիս 'ի մէնջ անցանէ , և շար-ժումն դադարէ . քաղաքս հաստատի , և գաւառս մխիթարի ։ Զայս և առաւել քան զայնս խօսեցան Նինուէացիքն ընդ որդիս իւրեանց ։ Թէպէտ և այս-պէս խօսեցան , սակայն 'ի լալոյն ոչ դադարէին ։ Խէթն զպահսն բազմացուցանէր և տագնապն զաղօթ-սըն , զի վախճանն 'ի դուրս հասեալ էր ։

Յարուցեալ Թագաւորն ել արտաքս . եցոյց [1] զիւր անձն քրձազգած ։ Իբրև ետես զնա քաղաքն' դողաց , զի երկուցեալ էր 'ի բարձրելոյն . զի [2] բեհեզ 'ի բար-կութէ մի զգեցցի ։ Արտասուեաց Թագաւորն իբրև ետես զքաղաքն առ հասարակ սգացեալ ։ Ելաց և քաղաքն ընդդէմ Թագաւորին , զի ետես մոխիր ըզ-գլխով նորա ։ Ո՞վ արար այնպէս աղօթս . ո՞վ աղա-չեաց այնպէս զա՛ծ . ո՞վ խոնարհեցաւ այնպէս . ո՞վ խնդրեաց այսպէս . ո՞վ մերկացաւ զաղտեղութիս իւր և զգաղտնիս [3] իւր յայտնեօք հանդերձ . ո՞վ լուաւ զձայն միոյ , և պատառեաց զսիրտ իւր 'ի մէջս իւր . զո՞վ 'ի ձայնէ [4] միոյ սկայիցն մահու կալան . ո՞վ եդ զա՛ծ առաջի աչաց իւրոց . ո՞վ ետես այնպէս Ճշմարիտ' զի հանեալ ունէր զսուրն 'ի ծածուկ ։ Ո՞վ կարէր համբերել ձայնի լալոյ տղայոցն . լուան' զի կարճէին կեանք իւրեանց ։ Ո՞վ լինէր բաւական համբերել գոչ-ման ծերոցն ։ Ո՞վ կարէր լսել զլալիւն երիտասար-դացն . զի ակն ունէին հարսանեաց , հրաւիրեցան յանդունդս ։ Ո՞վ ոք ոչ լայր յորժամ տեսանէր ըզ-Թագաւորն արտասուօք լցեալ . զի փոխանակ ապա-րանից արքայութե՛ իւրոյ իջանէր 'ի դժոխս . փոխա-նակ պատուի կառայ իւրոց լուաւ' թէ քաղաքս տա-պալի . փոխանակ գահուցն յանդունդս հրաւիրեցաւ . 'ի մահ կենդանույն հրաւիրեցան քաղաքն և Թա-գաւորն ։

Կոչեաց Թագաւորն զզօրս իւր . և իբրև եկին , ե-

1 Այլք եցոյց զանձն իւր թագա-ւորին , և էր թրջաթաթեալ կամ թրջաղ-թաց կամ թրջաղած ։

2 Երկու օր . զի վերհէզ 'ի բար-կութէ կամ 'ի բարկութէ ոք մի զգեցցի . այլ օր . զի մի զգեցցի վերհէզ բար-կութեն ։

3 Մի օր . զգաղտնիս որդւոց իւրոց հանդերձ խորհրդովք . այլ օր . զգաղտ-նիս և զյայտնիս . ևլն . . ։

4 Մի օր . 'ի ձայն յայնէ սկայից որք մահ . . ։

լաց 'ի վերայ նոցա թագաւորն. և նորա լացին 'ի վերայ թագաւորին իւրեանց: Ասէ ցնոսա թագաւորն, եթէ քանի՜ 'ի պատերազմի պարտեցաք[1], և քանի՜ 'ի ճակատու առաքինացաք. այսօր դողաց անձն իմ և տկարացայ, զի ոչ ոք է որ փրկէ և օգնէ ինձ. զի ոչ եթէ պատերազմ է, զի ելցուք յաղթեսցուք ըստ սովորութեան: Հսկայք տագնապեին[2] 'ի մեծ համբաւէ մերմէ, զի մեք յաղթէաք բազմաց. այսօր մի հեբրայեցի մտեալ յաղթեաց մեզ: Զթագաւորս բարբառս մեր տագնապէր. և ձայն սորա խռովեաց զմեզ: Զքաղաքս բազումս կործանեցաք. 'ի միջի մերում կայ և յաղթէ մեզ: Նինուէ մայր հսկայից 'ի միոջէ տկարէ երկեաւ[3]: Առիւծ 'ի մորւոջ իւրում տագնապեցաւ 'ի հեբրայեցւոյն: Մռնչեաց ասորեստան[4] 'ի յերկիր. և ձայն Յովնանու մռնչեաց 'ի նմա:

Ետ թագաւորն խրատ զօրացն իւրոց և ասէ. Խրատ տամ ձեզ, սիրելիք. մարտիցուք իբրև զհրակայս, և մի կռիցուք իբրև տկարք: Որ[5] մարդ է, 'ի փորձութեան իւրում քաջալերի և զօրանայ: Եթէ մեռանիմք, իբրև հսկայք. և եթէ կեամք, իբրև զառաքինիս: Եթէ մահ է, անուն բարիոք է. և եթէ կեանք են, առաքինութիւն: Երկուս շահս առանայ առաքինին 'ի քաջալերելն իւրում. արդ վառեսցուք և քաջալերեսցուք. թէպէտ և ոչ ինչ գտանեմք, զանուն նահատակաց առասցուք: Լուեալ է մեր 'ի հարց մերոց՝ թէ գոյ մեծ ստուգութիւն, գոյ նորա և ողորմութիւն. հաշտեցուսցուք[6] զստուգութիւն նորա. յաճախեսցուք յողորմութիւն, թէ[7] հաշտի ստուգութիւն նորա: Եթէ սարտուցեալ է ստուգութիւն նորա, ոչ եպերին խնդրուածքն մեր. թէպէտ և նա ոչ հաշտի, ոչ պատուհասին աղօթք մեր: Պատերազմ ծածուկ է, ով սիրելիք. զէն ծածուկ առցուք մեզ: Լուեալ է մեր յառաջնոցն՝ որք քարոզեցին զճշմարտութիւն

1 Երկու օր. պարտեցաք կամ պարտեցայ:

2 Մի օր. տագնապէին:

3 Երկու օրին. երկեաւ կամ երկեաւ ... 'ի մայրւոջ:

4 Երկու օր. ասորեստանեան կամ ասորեստան երկիր:

5 Մի օր. զի որ իմաստունն է 'ի փորձ ... այլ օր. 'ի պատերազմին փորձ ..:

6 Մի օր. հաշտեսցուք. և զմեզ հաշտեսցի:

7 Մի օր. 'Ի մեր կոյս է ողորմութիւն նորա:

յարարածս, զի ոչ զրկեալ է մարդկութիս 'ի գիտութէ: Քարոզեցաւ [1] տրտմութն յերկրի, զի հայեսցին 'ի նա լոյսք: Նկարեցաւ ապաշխարութի, զի յուսասցին 'ի նա մեղաւորք: Ո՞վ ոք ոչ լուաւ վասն Ջրհեղեղին: Մօտ են առ մեզ գրոյցքն՝ որ յաւուրս Նոյի 'ի կանայսն յանցեան. և պարտաւորեցաւ դարն այն: Եւ անդ քարոզեցաւ ձայն վասն Ջրհեղեղին թէ գայ. անօրէնքն լուան և բարկացուցին, զի զձայնն արհամարհեցին: Ձայն ուրագին և ձայն դրոյն [2] զՋրհեղեղն գուշակէր. զձայն ուրագին արհամարհեցին, և զձայն դրոյն այպն առնէին: Իբրև կատարեցաւ տապանն, ապա յայտնեցաւ ստուգութին: Գոչեաց յանկարծակի Ջրհեղեղն 'ի վերայ նոցա. զի զձայն ուրագին արհամարհեցին, 'ի ձայնէ որոտմանն ջնջեցան, և 'ի ճայթիւն փայլատակմանցն կուրացան: Սկսան ընթանալ նոքա առ տապանն զոր արհամարհեցին. փակեաց զդուռն ընդդէմ նոցա, զի այպն առնէին զշինեալն: Արդ, ով սիրելիք, մի արհամարհեսցուք զձայնն Յովնանու հեբրայեցւոյ. իմաստութբ հայեսցուք 'ի նա, և յամ կողմանց տեսցուք զնա: Ի ծուփ մեծ անկայ ես, եղբարք, վասն ձայնին Յովնանու: Եթէ [3] ոք զնա յիմար կոչէ, գանձ մեծ է նա, և միտք իւր հանճար. տեսիլ նորա գծուծ է և անարգ, և բան իւր հզօր է և պատուական: Ձեր առաջի հարցի հարցուածս կամաց իմոց, զի 'ի բովս քննեցի զնա, և ոչ փոխեաց զբան բերանոյ իւրոյ, և ոչ անկաւ [4] 'ի վերայ ճառից իւրոց, զի մեծ է ուշ իւր: Է որ գանձիւ պատրի, և է որ 'ի սրոյ երկնչի. եդաք մեք զայս հեբրայեցւոյն, և ապրեցաւ նա յերկոցունց: Ցուցաք նմա մեծութի, և ծաղր արար ըզմեզ. և պատուհաս սրոյ, և արհամարհեաց: Ջամ բան զոր ասէ, որպէս սրով պատառէ. զճակատ իւր իբրև զպղնձի պատրաստեաց, և եմուտ 'ի քաղաքս մեր: Եթէ չինութն քարոզեալ էր մեզ, կարծէաք եթէ խորամանկ է նա. զի որ համբաւ բարեաց քա֊

1 Մի օր. տարաղեաց զպատմութէ:
2 Մի օր. դրին. այլ օր. դրան:
3 Մի օր. Եթէ գտցէ ոք. այլ օր. մի Եթէ զնա յիմար կոչիցէ. միւս այլ մի ոք զնա յիմար կոչիցէ. զի միտք իւր հանճար, վասն զի գանձ մեծ է նա. եւս...:
4 Այլք ոչ անկաւ 'ի ճառից:

րոզէ, զվարձս բարիս շահեցի։ Դիւթ վասն օգտու-թե՛ [1] շարակարգող բանիւք պատրէ. քաղդէ առ սա-վի զծնունդս նուիրէ բախտից, և բաշխում ինչս առ-նու յանմտից։ Զի բժիշկ որ ստոյգ է, զճշմարիտն ասէ հիւանդին։ Ո՞վ կոչէ սուտ զմարգարէն զայն. եթէ սուտ էր [2] նա, ձայն նորա պատրանաց էր, այլ միտք իւր ճշմարիտ էին. զի բժիշկ թէպէտ և ոչ երկըն-չի, սակայն վասն վարձուցն հնազանդի։ Այս հեբ-րայեցի և հաց անգամ ոչ կամեցաւ ուտել 'ի քա-ղաքիս մերում։ Ո՞վ նեղեաց զսա առանց [3] օգտի. բար-կութիւն մեծ քարոզեաց մեզ, զիա՞րդ ոչ երկնչէր դա քարոզել զայս 'ի քաղաքիս մերում։ Լուեալ է մեր 'ի հեբրայեցւոց վասն Մովսէսի և Եղիայի՝ զի պա-հեցին զքառասուն օր թուով. գուցէ այսպէս պա-հեսցէ այս մարգարէ եբրայեցի։ Եթէ սա պահէ զի արդար է, մեք եկայք պահեսցուք զի մեղաք. թէ սա աղաչէ զի ճշմարիտ է, մեք խորգով և մոխրով օգնեսցուք [4]։ Թերևս պահք և աղօթք իւր այս են, զի մի սուտ լինիցի 'ի միջի մերում։ Զքաղաքս մեր տապալել կամի, զի քարոզութիւն իւր ճշմարտեսցի։ Պահօք մարտնչի ընդ մեզ. և մեք պահօք մարտիցուք ընդ նմա։ Ոչ եթէ ընդ մարգարէին մարտիցուք. զի ոչ եթէ նա ինչ մեղաւ մեզ, այլ մեղքն մեր։ Լուեալ է մեր վասն համբերութեանն Յոբայ, զի իբրև զփող քարոզեցին մեզ յաղթութիւնք նորա։ Սատանայ չա-րախօսեաց զնմանէ [5] որ արդարն էր։ Եթէ զարդա-րոյն չարն այն չարախօսէ, քանի՞ ևս չարախօսէ զմե-ղաւորաց։ Նա ել և տապալեալ զտունն որդւոցն Յով-բայ՝ խառնեաց զարիւն նոցա ընդ գինիսն, և զբա-ժակն նոցա ընդ ոսկերս. և նա տապալեաց զտունն 'ի վերայ բնակչաց իւրոց։ Երկնչիմ, ով սիրելիք, գու-ցէ թէ նա առաքիցի 'ի տապալել զքաղաքս մեր։ Ի պատերազմի՝ թագաւորաց յաղթեցաք սպառազինու-

1 Հնազոյնն և մի այլ՝ վասն օգ-տութէ պահէին նորա պատրանօք լինին. քաղդէ. այլ օր. վասն օգտութեան ան-ձին իւրոյ խօսեցի, և պատրանօք ինչս բազումս շահեցի. քաղդէ։

2 Մի օր. էր բան նորա պատրա-նաց, այլ միտք. այլ օր. այլ և միտք։

3 Երկու օր. այսպէս ընթեր-նուն. առանց օգտի բարկութիւն մեծ քա-րոզել մեզ. զիա՞րդ։

4 Մի օր. օգնեսցուք. այլ օր. պահեսցուք։

5 Երեք օր. զնմանէ բազ պատմու-թեան։ Եւնէ։

թէ . սատանայի յաղթեսցուք աղօթիւք ։ Ելցեն այսուհետև գունդք ձեր տալ ընդ նմա պատերազմ ։ Մերկացիք ընկեցէք զպատենազէնս ձեր , և խորգով վառեցարուք ընդդէմ նորա ։ Փշրեցէք ընկեցէք զաղեղունս ձեր , և ապաստան լերուք յաղօթս սրբուն ։ Անարգեցէք զսուսերս ակարս , և ընտրեցէք զպահս առաքինիս [1] . զի սուրն այն պահոց հատանէ զծածուկ անօրէնութի՛ քաղաքիս այսորիկ ։ Ոչ ինչ է այն յաղթութի՛ զոր առէքն . այլ արդ եթէ սոտ յաղթեսցուք , մեծ է քան զա՛մ յաղթութի՛ ։ Արդ ես եղէց առաջնորդ յայսմ սաստիկ պատերազմիս . իբրև զիս վառեցարուք , զօրք իմ , ով սիրելիք ։

Յայնժամ յարուցեալ թագաւորն մերկացաւ ըզհանդերձս իւր . մերկացան և ամենեքեան զհանդերձս իւրեանց ։ Առ թագաւորն քուրձ և զգեցաւ . զգեցան զօրքն իբրև զնա ։ Ասորեստանեայքն փափկասունք [2] յանկարծակի հնդիկք եղեն . թուացան խորգով իբրև զԵսաւ , զի նենգութ՛ զՅովնան գողացին ։ Վարեցաւ սատանայ որպէս զԵսաւն ։ Յաղթեաց Յակոբ Եսաւայ . յաղթեցին նինուէացիքն Յովնանու ։

Յարեաւ թագաւորն , առ զզօրս իւր և ել հայել զքաղաքն ։ Քարոզ կարդաց 'ի քաղաքին , զի ամենեքեան ապաշխարողք լինիցին ։ Պիղծն մերկասցի զպղծութի՛ իւր , զի մի վիրաւորեսցի 'ի պատերազմի . ագահն [3] թողցէ զագահութի՛ իւր , զի մի տկարասցի 'ի ճակատուն ։ Սարտուցեալն [4] հաշտեսցի ընդ ընկերի իւրում . զի ճշմարիտ սարտուցեալն հաշտեսցի ընդ մեզ ։ Մի՛ ոք վրէժ առցէ յանցանացն , զի և մեզ թողցին յանցանքն մեր ։ Զայս քարոզեցին քարոզքն 'ի քաղաքին ։

Թագաւորն կայր չարչարեալ . վերակացու լինէր զօրացն իւրոց ։ Կոչեաց և մերձ կացոյց յաղօթս ։ Իբրև պատրաստեաց թագաւորն և վառեաց զզօրս իւր , խորգովն իւրով տայր օրինակ և զքաղաքն ա՛մ խորգով վառէր ։ Որդի էր սա Նահներովտայ [5] հսկայի ,

1 Երեք օր . [illegible] ։
2 Մի օր . [illegible] ։
3 Հնադոյն օրինակն ատաւոն ։
4 Մի օր . Տարփուշեալն . որպէս և զինի ։
5 Այլք Նեբրովթայ կամ Նեբրովդայ կամ Բելայ ։

որսորդ և աւաքինի․ Թողոյր որսալ զգազանս, և ըզձանկութիւն ապականէր․ փոխանակ որսոյն յանապատի զքաղաքն որսայր․ Թողոյր զվայրենի կենդանիսն, և զընտանի անօրէնութիւն ապականէր ։ Փոխանակ պատուի կառաց իւրոց հետիոտս ընդ քաղաքն շրջէր, զի պնտեսցէ յապաշխարութիւն, և լուասցէ 'ի նոցանէ զպղծութիւն ։ Գնայր նա խոնարհութեամբ, և հաստատէր զքաղաքն երերեալ ։

Ետես Յովնան և յիմարեցաւ, և վասն որդւոց ժողովրդեան իւրոյ ամաչէր ։ Ի Նինուէ տեսանէր զառաքինութիւն, և լայր վասն աբրահամեան զաւակին ։ Ետես զի հաստատեցաւ զաւակն Քանանու, և զաւակն Յակոբայ էր մոլեգնեալ ։ Տեսանէր զանթլփատսն, զի թլփատեցան սրտիւք․ և թլփատեալքն խստացան ։ Դսրովէր[1] Յովնան զորդիս ժողովրդեան իւրոյ, զի շաբաթուք պարծէին․ տեսանէր դարձեալ զի զթլփատեալսն 'ի մէջ մահու և կենաց եդին ։

Ողբաւորն Նինուէացւոց գիտաց եթէ պատճառք բարկութեան յանցանք են, եհատ նա վաղվաղակի ըզպատճառս չարեացն ։ Ժողովեցան և խորհուրդ առին Նինուէացիքն թէ որպէս կեցցուք ։ Դաշն ուխտի եդին ամ̃ քաղաքն, զի հաշտեցուսցեն ընդ ինքեանս զա̃ծ ։ Նինուէացւոյն յայտնեաց ա̃ծ զծածուկ խորհուրդն՝ թէ պահք կարող են լուծանել զդատավճիռն ա̃յ ։ Զայս Յովնան ոչ յայտնեաց նոցա, զի խիթայր վասն փրկութեան նոցա ։ Իբրև տեսին Նինուէացիքն թէ սաստիկ է մարգարէին քարոզութիւնն, իմացան զա̃յ զի քաղցր է և բարերար ։ Ոչ դարձան ընդդէմ մարգարէին, զի զգթածն ա̃ծ ընդ ինքեանս հաշտեցուսցեն ։ Մարգարէին ետուն զստուգութի̃, և ա̃յ զշնորհս ողորմութե̃ ։ Թէպէտ և Յովնան զկոյան հատանէր, սակայն պահքն զկոյան բազմացուցանէին․ Թէպէտ և Յովնան զխրատն բեկանէր, սակայն աղօթքն հաստատէին ։ Զամպ[2] ծածկեալ խաւարաւ, խորգով փարատէին ։ Սիւնք երկրին երերէր, և հաստատէր զնա

1 Հնագոյն Գորովէր ։

2 Մի օր․ Ամպով և խաւարաւ ծածկեալ պատղամն, խորգով և մոխրով քարափէին ։

ցածութիւն։ Դողդողեցաւ քաղաքն 'ի կործանել, և հաստատեցին զնա տուրք ողորմութեան։ Գոչէին երամակք անասնոցն, որ պահէին 'ի ջրոյ. գոչիւն էր ազգի ազգի բարբառ անասնոց և մարդկան։ Լուաւ ատուգութիւն զգոչիւն նոցա, և փրկեաց ողորմութիւն։ Մի էր բոկութիւն[1] ծառայից և ազատաց. մի հաց էր խոնարհութեան մեծատանց և աղքատաց. մի ըմպելի էր թագաւորին և ռամկին. մի թխութիւն էր խորգոցն վարձկանին և փափկանին. 'ի մի լուծ ապաշխարութեան մտին։ Ամենայն քաղաքն երերէր 'ի պաշարմանէ շարժմանցն. իբրև ճնճղուկ 'ի վերայ փշոյ խղճիւ նստէին։ Իբրև լուսանայր, ոչ ակն ունէին եթէ օրն բարեաւ վախճանի. և ընդ երեկանալ աւուրն՝ ոչ կարծէին թէ բնաւ ծագիցէ 'ի նոսա առաւօտն։ Ի բերան մահու կայր ամենայն ժողովուրդն, և զդրունս անդնդոց բախէր։ Յովնան թուէր զաւուրսն, և նինուէացիքն զաղօթս յաճախէին։ Վաստակեցաւ քաղաքն զվեց եօթներորդսն։

Իբրև ետես Յովնան զարտասուս նոցա, երկեաւ յոյժ 'ի պահոց նոցա։ Յովնանու էր դդմենին հովանի. և նինուէացւոցն տօթն տապախառն։ Ետես զանձինս նոցա, զի հեղեալ էին իբրև զջուր առաջի բարձրելոյն։ Մանկունքն թացան 'ի ծոց[2] յարտասուս մարցն։ Ետես զՆինուէ՝ զի էր սգացեալ, և ըզՍիոն՝ զի էր մոլեգնեալ. ետես զատարեստան դսրովեալ, և զԵրուսաղէմ հպարտացեալ։ Երկեաւ Յովնան, զի մի՛ սուտ լիցի քարոզութիւն. զի գիտէր, թէ քարոզութիւն իմ լուծանի ապաշխարութեամբ։ Ետես Յովնան զթագաւորն նինուէացւոց, զի ճշմարտութեամբ երկիր պագանէր այ. ետես զՐոբովամ, զի որթուց երկիր պագանէր։ Եհաս օրն այն զի[3] կործանի, և եղև տմ քաղաքն 'ի կործանումն։ Ոչ յումեք մնաց շունչ յայս տեսիլ դառնութեան։ Կացուցին զտղայքն առաջի, և եհաս գոչիւն նոցա յերկինս։ Իբրև[4] զնաւ

1 Մի օրինակ բէկումն։

2 Այլք 'ի ծոց մարցն յարտասուաց խուռնից կամ 'ի ծոց արտասուաց մարց խուռնից. ուր երկու օրինակք վրիպակաւ ունին մանկանցն ընթեռցան։

3 Մի օր. զոր կործէր. երկու այլ զի կործանէր քաղաքն։ Ու։

4 Հնագոյնն իբրու զի երերէր երկիրն։

թուէր երկիրն նոցա, վասն զի համապազ շարժէր 'ի ներքոյ նոցա ։ Լացին վասն մահուն իւրեանց, զի ոչ ոք էր որ պատէր և թաղէր և մխիթարէր զնոսա ։ Իբրև յիշեցին զայս, աղաղակեցին. յո՞ր վախճան հրաւիրեցաք ։

Յարեաւ թագաւորն և կանայք իւր, և 'ի բաց եդին զթագն 'ի վերայ գլխոյ [1] թագաւորին. զի լուան թէ վաղիւն չիցեմք ։ Ամենայն քաղաքն միաբան գոչեցին առ Ած. վասն զի 'ի գոչել հողմոյն պղտորէր [2] զհող երկրին, զի երկինք խռովեալ էին. ամպք և մէգք զմիմեամբք պատէին, և զօրացեալ թանձրանայր մառախուղն ։ Փայլակն զփայլակն բախէր, որոտումն որոտման պատահէր, կայծակունք զկայծակունս ստիպէին. դողումն անդ և հիանալ [3] սրտի ։ Ամենայն մարդ ընդ գետին հայէր, թէ ահաւասիկ տապալի ։ Լային ամենեքեան զմիմեանս 'ի կատարել աւուրցն ։ Եհաս ժամն այն. կացին ամենեքեան յաստիճան մահու. բուռն հարին զմիմեամբք, վասն զի եհաս յուսահատութիւն ։ Եւ 'ի լալն իւրեանց հայէին [4] ընդ երկինս, եթէ եկն գիշերս և եբեր մեզ խաւար անմեկնելի. եկն գիշերս և ահա չիք մեզ տեսանել զառաւօտն ։ Եւ ասէին՝ թէ յորո՞ւմ պահու կործանի. յերեկորեա՞յ եթէ տապալի, եթէ առաւօտուն կործանի. յորո՞ւմ պահու արդեւք գայ ձայն գուժին ։ Կարծէին թէ յերեկորեայ տապալի. եկն երեկոյն, և նա կայր կանգուն ։ Այն ունէին եթէ 'ի գիշերի ընկղմեսցի. եղև գիշեր, և նա կայր ևս տակաւին ։ Այն ունէին եթէ առաւօտուն կործանի. բացաւ առաւօտն, բացաւ ողորմութիւն և գթութիւն Այ 'ի վերայ քաղաքին. զի յայն աւուրսն երկիրն 'ի շարժմանէ ոչ դադարէր ։ Յայս վեց եօթներորդն երանի էր մեռելոց՝ քան նոցա. կենդանի մեռեալ էին, և չէին թաղեալ ։ Եղբայր եղբօր պատահէր, և ոչ ճանաչէր զկերպարանս նորա. և ոչ ունէին կարաց 'ի միմեանց մեկնել զձայն 'ի ձայնէ ։ Իբրև զխանձող կրակի էին 'ի պահոց. մորթ և ոսկերք լոկ մնացին ։

1 Յայլս պակասի 'ի բաց. իսկ առօրի բնագիրն 'ի վերայ գլխոյ ասէ ։

2 Մի օր. պղտորէր հող ։

3 Մի օր. հիանալ ։

4 Այլք հայէին ընդ երկինս կամ ընդ երկնաւ ։

Արդ յորժամ քաղցրութիւն ա̃յ և մարդասիրութիւն ծագեաց, աւետիք ողորմութե̃ն տուաւ քաղաքին։ Ամպք և մէգք որ պատեալ էր զքաղաքաւն, յանկարծակի ցրուեցան և սփռեցան, և եղև 'ի խաղաղութի̃ն։ Յայնժամ յարուցեալ իշխանքն քաղաքին հանին զքուրձն զոր ունէր թագաւորն, և զգեցուցին նմա զթագաւորական ծիրանին։ Առին զթագն վըշտատեսութե̃ն, և եդին 'ի գլուխ նորա զթագն արքայութեան. և փոխեցին ամենեքեան զհանդերձս իւրեանց յուրախութի̃ն։ Եդին ծունր առ հասարակ, և կացին յաղօթս. համբարձին զձեռս իւրեանց յերկինս. հանին յամենայն բերանոյ օրհնութիւն և գոհութիւն և փառս ա̃յ, այն որ 'ի մահուանէ փրկեաց զկեանս նոցա։

Դարձաւ թագաւորն փութապէս և ել արտաքոյ քաղաքին տեսանել զՅովնան։ Իբրև ետես Յովնան զթագաւորն և զզօրսն իւր ցնծալից ուրախութեամբ, տրտմեցաւ տրտմութի̃ն մեծ, և գլխիվայրեալ ոչ հայէր ընդ նոսա։ Իբրև տեսին զՅովնան տրտմեալ, գիտացին եթէ վասն կենաց իւրեանց է։ Եւ մատուցեալ թագաւորն ա̃մ բազմութե̃ն երկիր պագանէր և ասէր. Ուրախ լեր ընդ մեզ, եբրայեցի, զի 'ի ձեռն քո գտաք մեք զփրկութի̃ն. ուրախ լեր ընդ մեզ, որդի Ամաթեայ, զի 'ի ձեռն քո ծանեաք մեք զա̃ծ։ Տեսին զի տրտմեալ էր, և ասեն. զի՞նչ շահ էր քեզ, եբրայեցի, եթէ ամենեքին մեք մեռեալ էաք. կամ զի՞նչ վնաս եղև քեզ, զի շահեցար դու զքաղաքս մեր. զի՞ տրտմեալ ես, եբրայեցի, զի կեցուցեր զմեզ. կամ զի՞ սգաս, առաքինի, զի ապաշխարողս առաքինիս ստացար։ Արժան է քեզ ուրախ լինել այսօր, զի ա̃ծ ուրախ եղև յերկինս։ Այսօր ուրախ լեր, զի ա̃մ մարդ ա̃յն քո երկիր պագանէ։ Ով հեբրայեցի, նայեա յանմեղուդ զի ապրեցան, և դիր զձեռն քո 'ի վերայ դոցա։ Օրհնեա զգաւառս զայս զի պահեցաւ; և բազմացի 'ի սա յիշատակ քո։ Օրհնեա, Յովնան, զքաղաքս մեր, զի այսուհետև անուն քո անուանեսցի 'ի սմա։ Զայս աւուրքս բարկութե̃ն 'ի միասին պահեցաք մեք և դու. լուծ զպահս քո և անցո զուգ քո. և ուրախ լեր ընդ մեզ, որդի եբրայե-

ցւոյ, զի քաղաքս և թագաւորս քեզ երկիր պագանեն։ Զայս և առաւել քան զայս խօսեցան ընդ նմա։

Լոջ Հոգին էր 'ի բերան նորա. սկսան լսել նոքա զի հարցանէր, և խնդրէր ընդ խնդրեան 'ի քննութի մտանէր։ Վիճէր ընդ նմա 'ի բերանոյ նորին. յերկուս դէմս խօսէր ընդ նմա՝ զնոյ և զմարգարէին 'ի լուր ամ ժողովրդեանն։ Զի ասէր ած վասն քաղաքին, թէ դու Յովնան, որոտեցար վասն դդմենւոյն տկարի. յայդ դդմենի որ ապականեցաւ, նմանեցի քաղաքս այս կենդանացեալ։ Դդմենին լիցի քեզ վարդապետ, և ուսիր 'ի նմանէ զհանճար իմաստութե։ Յանարգ դդմենւոյն փորձեա և ճաշակեաց՝ թէ զինչ համ իցէ զթուենն այ։ Տաղաւար քո լիցի քեզ հայելի. դու տաղաւարս[1] յերկրի հաստատես, և զքաղաքս յերկրէ կործանես։ Եւ զդդմենին անարգ պահես դու. և զքաղաքս մեծ տապալես։ Ո՞ւր է ստուգութի քո, Յովնան, զի զքաղաքս դդմենւոյն ոչ հաւասարեցեր։ Առ տաղաւարն է ողորմութի քո, Յովնան, և առ քաղաքս խստութի։ Զտերև դդմենւոյն յարգես դու քան զայս խօսուն մարդիկս։ Զկորիւն[2] դդմենւոյն և զծաղիկն նորա պատուես քան զանմեղ տղայսն։

Լուաւ զայս քաղաքն, և ընդ մի բերան հանէին օրհնութի գոհութի և փառս այ. զի փոխանակ նոցա դատէր զմարգարէն։ Աստուած սուտ արար զբան մարգարէին. և Յովնան լինէր վրէժխնդիր այ, զի մի սուտ լինիցի ած։ Յարեաւ Յովնան եմուտ 'ի քաղաքն. ընթացան յառաջ քաղաքացիքն և երկիր պագին նմա։ Ժողովք ժողովրդոց բերէին նմա պատարագս և մատուցանէին նմա տասանորդս։ Անմեղքն մատուցին զմանեակս իւրեանց, և երիտասարդքն ըզմեհեանդս։ Թագաւորն մատոյց զթագն և զխոյրն վերջիւքն[3] հանդերձ։ Յամ բերանոյ փառաւորեցաւ իբրև զած։ Փառաւորեցին զՅովնան, և հանին 'ի կառս որպէս զթագաւոր։ Զուկն 'ի ծովուն կլեր

1 Հնագոյն օրինակն այսպէս ունէր. դու տաղաւար ու երկրէ լաքանդես։

2 Մի օր. զկորեան դդմենին։

3 Մի օր. Վերջաւորօքն։

զՅովնան. և կառքն 'ի ցամաքի: Զկունք երթային առաջի նորա մինչ շրջէր 'ի ծովաւն. և հեծելազօրքն 'ի ցամաքի: Հերձ զծովս յիջանելն իւրում, և զցամաքն՝ յելանելն: Զուկն որ եկուլ զնա, ուժգին էր. և Թագաւորն որ լուաւ նմա, սաստիկ էր: Զուկն շաւիղս պատրաստէր նմա, և Թագաւորն Ճանապարհըս հորդէր: Զձուկն ձկունք յուղարկէին. և զկառս նորա ժողովք զօրացն: Արքայն Նինուէացւոց հրեշտակս արձակէր առաջի նորա, զի պատրաստեսցեն մարգարէին օթեվանս՝ որ 'ի նոսա իջցէ: Աստուած ցուցանէր Ճանապարհ ձկանն՝ թէ որպէս գնասցէ: Պատարագօք և պատուով ելանէր Յովնան 'ի փառաւորեալ կառսն և գնայր. ա͞մ մարդ ընդ առաջ ելանէր, և ահիւ նմա երկիր պագանէր: Թագաւորք 'ի նմանէ զարհուրէին, և ամենեքեան դողային:

Եղբարք իմ, ահագին կուրութի͞ կայ 'ի սիրտս մեր, և ո՞վ ոք ոչ լացցէ զմեզ: Սիրուն է մեզ ժամանակեայ կեանքս մեր քան զկեանսն խոստացեալս: Ժամանակեայ սեղանս մեր սիրելի է մեզ քան զսեղանն արքայութե͞. և լաւ է մեզ պարտէզ բանջարոյ քան զոր ժառանգեաց աւազակն: Ընդ սակաւ ծառոց աշխարհիս փոխեցաք ծառն կենաց: Անգամ և սպառնումն մարդոյ առաւել զարհուրեցուցանէ զմեզ քան զգեհենին: Զի եղև Նինուէ հայելի տիեզերաց:

Ի հասանելն Յովնանու յաշխարհն իւր՝ դարձուցանէր զգուղարկաւորս իւր: Ամաչէր Յովնան 'ի նոցանէ, թէ գուցէ տեսանիցեն զկռապաշտութի͞ ժողովրդեան իւրոյ. թէ գուցէ տեսանիցեն 'ի հեթանոսաց, և ուսանիցին զմեղս նոցա: Ի ժողովրդենէն խիթայր, թէ գուցէ քակիցէ զվէրսն կնքեալս և բժշկեալս: Երկեաւ Յովնան յապականեալ ժողովըրդենէն իւրմէ և ասէր, գուցէ թէ մտանիցեն, և ապականեսցին այս ապաշխարողքս: Արձակել զնոսա առանց պատճառանաց՝ ամաչէր. և ընդ երթալն նոցա խիթայր, զի մի մտանիցեն զաւակքն Քանանու, և այպն առնիցեն զզաւակքն աբրահամեան: Ունէր Յովնան շնորհս նոցա. համբուրէր զնոսա սիրով, և օրհնէր զնոսա սրբութ͞ք: Խնդրէր 'ի նոցանէ, և ոչ պատկառէին. խրատէր զնոսա, և ոչ մնայ֊

լին. համբուրէր զնոսա, և ոչ դառնային. ասէն.
Գամք ընդ քեզ յաշխարհն քո, զի ուսցուք 'ի նոցա-
նէ զօրութիւն, զի [1] ազգատոհմ սուրբ շրջի 'ի նմա:
Մտցուք տեսցուք 'ի նմա զպարկեշտութիւն. մտցուք տես-
ցուք 'ի նմա զխոնարհութիւն. մտցուք տեսցուք 'ի նմա
զճշմարտութիւն. մտցուք տեսցուք զայն երկիր, որ [2] ոչ
բնակէ 'ի նմա կռապաշտութիւն. մտցուք տեսցուք զե-
րանելին զայն, յորում [3] նենգութիւն ոչ գոյ. մտցուք
տեսցուք զառաքինին զայն, զի այլոց եղեն օրինակ՝
հեռի լինել 'ի բամբասանաց մեղաց: Մի՛ զրկեր ըզ-
մեզ, երբայեցի, զուղարկողքս քո յօգտութենէ մեր-
մէ. քեւ եղաք մեք ապաշխարողք. քեւ լիցուք մեք
արդարք: Փոխանակ վարձուց վաստակոց ոտից մերոց
թողացո զմեզ մնանել 'ի ժողովուրդ քո, զի առցուք
'ի նոցանէ օրինակ՝ որ լի [4] է օգտութեամբ:

Իսկ ով կարէր բաւական լինել զոր խօսեցան ա-
պաշխարողքն: Զի թէպէտ և զայս ասացին, և ա-
ռաւել ևս քան զոյն, Յովնան լսէր և լռիկ կայր, և
գլխարկեալ 'ի գետին հայէր. զի ամաչէր վասն ժո-
ղովրդեան իւրոյ, զի անօրէնք էին և անհրաւք: Չար
էր այս որդւոյն Ամաթեայ՝ քան որ ինչ եղև դդմե-
նւոյն, զի մահ խնդրէր անձին իւրում: Չար էր այս
նմա քան որ առին ընկեցին զնա 'ի ծով: Իսկ [5] Յով-
նան թագուցանէր զանօրէնութիւն ժողովրդեան իւ-
րոյ: Այլ որպէս հաճեաց նա սուտ բանիւ զնաւա-
վարսն 'ի փախչելն իւրում, այսպէս հաճէր զնինուէ-
ացիսն: Տարեկան մեծ է, ասէ, յերկրին մերում,
և չէ մարթ անդր մնանել օտարի. տարեկան է որ-
դւոց ժողովրդեան իմոյ, և չիք 'ի նոսա 'ի հեթանո-
սաց: Երթայք դուք առ այժմ, և դարձիք յաշխարհն
ձեր խաղաղութեամբ. և ապա եկայք յետ ժամանակի
իբրև կատարեսցին տարեկանքն մեր: Լուան 'ի նմա-
նէ միամիտքն. երկիր պագին և դարձան 'ի նմանէ:
Առին 'ի նմանէ զօրհնութիւնս, և չուեցին գնացին

1 Մի օր. զի զատոյ օրհնեալ և
ազգ որք էին նոքա: Մխիթարեա:

2 Մի օր. յորում բնակէ 'ի նմա
աստուածութիւն:

3 Երկու օր. զի անօրէնութիւն 'ի
նոսա ոչ գոյ:

4 Մի օր. լինի ուրախութիւն:

5 Երեք օր. Իսկ արդ որք թագաւո-
րեցանն կամ թագաւորացանն Յովհան զա-
նոր....:

յաշխարհն խուրեանց խաղաղութեան ։ Օրհնութիւն [1] և փառք քեզ, զի ոչ յամօթ արարեր զժողովուրդն հեթանոսաց · օրհնութիւն նմա որ սիրեաց զարդար զապաշխարողսն · օրհնութիւն նմա և օծելոյ նորա ։ Ասասցուք և մեք · օրհնութիւն և փառք Հօր և Որդւոյ և Հոգւոյն սրբոյ այժմ և միշտ և յաւիտեանս յաւիտենից · ամէն ։

1 Մի օր · այսպիսի վերջաբանութեամբ աւարտէ · Օրհնեալ է Աստուած, որ փրկեաց զնինուէացիսն · և խրախոյս ամենայն ժողովրդեան մեղաւորաց դառնալ առ նա, և գտանել դեղ ցաւելոց որդւոց իւրեանց · զի առ հասարակ յամենայն բերանոյ ելցէ գոհութիւն և փառս ամենատուր Երրորդութեան, որ է օրհնեալ յաւիտեանս · ամէն ։

# Ի ՅԻՇԱՏԱԿԻ ՍՐԲՈՑ ՄԱԿԱԲԱՅԵՑԻՈՑՆ ԱՍԱՑԵԱԼ ՎԱՍՆ ԿԵՐԱԿՐՈՅ ԶՈՐ ՈՒՏԵՆ ՀԱՒԱՏԱՑԵԱԼՔ ԱՌՈՂՋ ՄՏՕՔ *

Արար ա̃ծ զերկինս, զերկիր և զա̃մ որ է 'ի նոսա. և ահա բարի են յոյժ ։ Օրհնեաց զնոսա և ասէ. եւ տուն ձեզ զա̃մ, և կերիջիք իբրև զբանջար խոտոյ. բայց միայն զմիս արեան շնչոյ մի ուտիցէք, զի շունչ ա̃մ մսոյ արիւնն իւր է ։ Արդ յասելն՝ եթէ կերիջիք իբրև զբանջար խոտոյ, ոչ եթէ զանարժան ինչ կերակուր ուտէին, զի ոչ սովորութի̃ն իսկ ուսուցանէր զայն ։ Այլ ոչ ունէին Թլփատութի̃, և ոչ պիղծ ինչ էր նոցա ուտել զխոզենին, և ոչ գիտէին զգիրս ։ Ադամ, Աբէլ և Սէթ և այլք մինչև յԱբրահամ, Իսահակ և Յակոբ ուտէին զխոզենի և զամենայն կերակուրս, և չէր նոցա պղծութի̃ ։ Այլ յորժամ իջին յԵգիպտոս որդիքն Իսրայէլի, զնոյն գործ զաշխարհագրին գործէին. զի յԵգիպտոս զարջառ և զոչխար պաշտէին, և ուտէին միս խոզենի և զմուկն, զի շատ լինէր յԵգիպտոս. և ապա սկսան պաշտել զկուռս նոցա ։ Վասն որոյ և ասէ իսկ 'ի գիրս Արարածոյն զբանս 'ի ժողովրդեանն. եթէ զարջառ և զոչխար մեր զոհեմք առանց եգիպտացւոցն, քարկոծեն ըզմեզ ։ Եւ իբրև եկին ելին յերկրէ անտի, և յանցոյց զնոսա սատանայ, որթ եկն[1] ել 'ի հրոյն. զի յիշեցուսցէ զգործս նոցա այնու, եթէ յԵգիպտոս զարջառ և զոչխար պաշտէին ։

Այլ տէր ա̃ծ յորժամ եհան զնոսա յերկրէ անտի, ետ նոցա օրէնս՝ յոր գրեալ է, թէ միս խոզենի մի ուտիցէք, զի պիղծ է ։ Եւ վասն այնորիկ ետ նոցա ըզպատուիրանս զայս, զի թողցեն զխոզենին և կերիցեն զարջառն և զոչխար ։ Եւ յորժամ եկն կարկուտըն, և սատակեաց 'ի դաշտի անդ զանասունս նո-

* Ի Ճառընտրաց Գ. Է։

1 Միւս օրինակն Եղեւ։

ցա, ասաց՝ թէ 'ի դիս եգիպտացւոց արար տէր հարուածս մեծամեծս ։ Եւ յայտ է՝ եթէ զանասունս պաշտէին. և որ մնացեալ էր 'ի տան արջառ և ոչխար, նոյնպէս սատակեցան ։ Եւ կարծեցան ապա որդիքն Իսրայէլի յուտելոյ զխոզենին, և սկսան ուտել զարջառ և ոչխար ։ Իսկ յաւուրս Եսայեայ 'ի նոյն անմտութի յարձակեցան ։ Վասն այսորիկ ասէ մարգարէն. ուտէին զխոզենին և զմուկն 'ի միասին, և զոհէին 'ի պարտէզս իւրեանց ։ Վկայէ նոյն ինքն Եսայի յորժամ տրտնջէին վասն կռապաշտութե նոցա, և ասէ. ընտրեաց հիւսն զփայտ անփուտ և կոփեաց զնա դրօշ, գործեաց և մածոյց զնա ։ Եւ յաւուրս Մակաբայեցւոցն՝ առ որով Անտիոքոս գերեաց զԵրուսաղէմ, և տանջեաց զՀրեայսն, և տայր երկիր պագանել կռոցն՝ արջառոց և ոչխարաց ։ Եւ սպանին զԵղիազար զայր երանելի վասն խոզենի ուտելոյն. ընդ նմին և զկին ոմն անուն Շմունի հանդերձ որդւովք նորուն ։ Իբր ոչ եթէ զարշ համարէին զուտելն խոզենի, այլ անդէն ըստ ոչ սովորութեն Հրէից մեռանէին 'ի վերայ նախնական օրինացն, և 'ի վերայ թլփատութեն զոր ունէին յաւանդութեն և յառաջին հարցն իւրեանց ։ Նոյնպէս և Ցորոբովամ՝ որ յանցոյց զԻսրայէլ, երինջն ոսկի զոր կանգնեաց՝ յիշեցոյց նոցա զառաջին պաշտօնն անասնոց զոր յեգիպտոս պաշտէին ։ Եւ էր նոցա պղծեալ խոզենին. ոչ եթէ վասն կերակրոյն զոր ուտէին խոզքն, այլ վասն կռապաշտութեն զոր պաշտէին զարջառն և զոչխարսըն ։ Նա և երանելի մարգարէն Եղիաս յագռաւուց ընդունէր զկերակուրս. և զի խոզք և ագռաւք զնոյն ուտեն կերակուր, ամենեցուն յայտնի է ։ Բայց [1] ագռաւն 'ի տաճարէն առնոյր կերակուր 'ի ձեռանէ քահանային և տանէր Եղիայի մարգարէի. և չիք գրեալ թէ պղծեցաւ ։ Նոյնպէս և ուխտաւորն այ Սամփսոն 'ի բերանոյ առեւծուն կթեաց զմեղրն 'ի մեռելոյ անտի և ուտէր, և նա ծորէր իջանէր 'ի վերայ մորուացն. և չիք գրեալ թէ պղծեցաւ ուխտա-

1 Միւս օրինակն և առնոյր 'ի յէտն քահանայն 'ի տաճարէն փէտան և տանէր ։

ւորն ա՟յ 'ի կերակրոյն ։ Եւ ձկունք ծովուն ուտեն զմարդիկ և զանասունս որ անկանին 'ի ծով. և ուտեն մարդիկ զձկունս ծովուն, և ոչ է պղծութ՟ին նոցա ։ Այլ ինքն տէրն արժանի արար ուտել զձկունս յետ յարութեան ։ Իսկ Պետրոսի երևեալ անօթ ինչ իբրև կտաւոյ մեծի, հրամայեցաւ նմա 'ի տեսլեանն և ասէ. արի, Պետրէ, զեն և կեր ։ Եւ նորա զօրինայն պարծեալ՝ եթէ խառնակ ինչ և անսուրբ ոչ եմուտ 'ի բերան իմ ։ Եւ դարձեալ նմա պատասխանեալ, թէ զոր ա՟ծ սրբեաց, դու մի պղծեր ։ Աւ տէրն մեր անլուայ ձեռօք հաց ուտել տրտնջէին զաշակերտացն. իսկ նա ասէ. ոչ այդիւ պղծի մարդ, այլ որ 'ի մարդոյն ելանէ, այն պղծէ զմարդ ։ Իսկ երանելի Առաքելոյն այսպէս ասէ վասն կերակրոց՝ եթէ յաւուրս յետինս քակեսցին [1] մարդիկ 'ի կերակրոց, հարեալք իւրեանց խղճիւ մտօք, և խեղաթիւրեալք իւրեանց դիւական մոլորութ՟ն. որ արգելուցուն յամուսնանալոյ, և մեկնեսցեն 'ի կերակրոց զոր ա՟ծ կարգեաց 'ի վայելս հաւատացելոց. և որք հասեալ են 'ի ճըշմարտութ՟են վերայ. զի ա՟մ արարածք ա՟յ բարի են, և չիք 'ի նոսա խոտան, զի սրբին բանիւ ա՟յ և աղօթիւք ։ Եւ արդ երկուս գլուխս դնէ. մի՝ զի չիք ինչ պիղծ յարարածս ա՟յ. և երկրորդ՝ զի թէ իցէ ինչ պիղծ, ունիս նշան տէրունական, կնքեա և գոհացիր զտուողէն բարեաց. և ա՟մ պղծութ՟ի փախչի ։ Եւ եթէ ասեմք՝ եթէ այդպէս է, ապա կարօղ եմք սըրբել զզոհեալս. այլ հրամանն, ասէ, առաք չհաղորդել դիւաց ։ Այլ և յաւուրս առաքելոցն իբրև մկըրտէին զՀրեայսն, 'ի ժողովս տանէին նախ ուտել խոզենին, և ապա մկրտէին զնոսա. զի յայնմհետէ համարէին կոխան լինել զՀրէական աւանդութ՟իսն ։

Եթէ հրամայեցաւ ուտել, յայտ է՝ զի բարձաւ թլփատութ՟ին և շաբաթանալն և մոխիր երնջուցն և այլ ա՟մ կարգ օրինացն. որպէս և ասէ՝ թէ հինն անց, և արդ նոր եղև, և ոչ ևս այսուհետև արժան է դառնալ 'ի հինն ։ Զի թէպէտ և տէրն ասէ, ոչ եկի լուծանել զօրէնս կամ զմարգարէս, այլ լնուլ,

1 Միւս օրինակն որոշեսցին ... խղճի մտացն ։

մի՞թէ հակառակ ինչ էր օրէնքն Քսի գալստեանն . քաւ լիցի . այլ զոր ինչ խօսեցան մարգարէքն ըղնմանէ, զնոյն եկն լնուլ . իսկ յանիծից օրինացն գընեաց զմեզ : Եթէ ասիցեն՝ եթէ ոչ է լուծեալ զհին օրէնսն, այլ լցեալ, պարտին այսուհետեւ լսել 'ի մէնջ, եթէ ոչ է լուծեալ պարտիք թլփատել և շաբաթանալ և ոչ մկրտել . այլ պահել զհին օրինացն զդատարկութիւն՝ յորմէ Քս ազատեաց, զի ինքն եղև անէծք : Եւ արդ ոչ է պիղծ կերակուր՝ միս խոզենին 'ի Քս հաւատացելոց, այլ որ ինչ պիղծ է 'ի կերակուրս . այս ինքն յանասունս և 'ի կայտառս : Թէ ոք ասիցէ՝ թէ պարտ է ուտել զայն, զի սրբին բանիւ այ և աղօթիւք, և մեք տացուք պատասխանի ասողացն, եթէ որ ինչ աննման կերակուրն է, զայն և ոչ ուտել սովորութիւն իսկ ուսուցանէ զաննման ուտելիսն . զի այս է կերակուր զոր 'ի սկզբանն հրամայեաց ուտել .

Այլ որ ոչ իսկ երբէք տեսաւ, ոչ 'ի Հրեայս և ոչ 'ի հեթանոսս, որպէս ամենք անկեալ 'ի տարակոյս բազում ինչ կամին դնել անձանց կանոնս, մինչև տեսաք զի գնացին զհետ ոչինչի և գտին զոչինչ : Պիղծ համարին զխոզենին, և ուտեն զմիս մարդկան լեզուօք իւրեանց . գարշ համարին զխոզենին, և անխտիր վարին 'ի պոռնկութիւն, 'ի շնութի, յախակալութի, 'ի քինահանութի, 'ի պղծութի և յամ ցանկութիս չարեաց : Որպէս և տէրն իսկ ասէ . ոչ եթէ որ մտանէ ընդ բերանն այն պղծէ զմարդ, այլ որ ինչ ելանէ 'ի մարդոյն : Զի ամ կերակուր որ ինչ ուտիցի արդարակորով հաւատով և գոհանայցէ զայ, ընդունի ած զգոհութի նորա : Եւ եթէ ոք իբրև զօձ հողակեր լինիցի, և զթոյնս նորա յանձին իւրում կրեսցէ, ընդունի դատաստան 'ի տեառնէ : Զի և ինքն սատանայ առանց կերակրոյ է, այլ ոչ է վարք նորա առաջի տեառն այ . զի չիք բարի խորհուրդ 'ի սիրտ նորա, զի նախանձեցաւ ընդ պատիւ մարդոյս . Աստուծով հաւատացելոց սրբեալ են կերակուրք . և գոհութբ բարեբանեսցեն զՀայր և զՈրդի և զՀոգին սուրբ այժմ և միշտ և յաւիտեանս յաւիտենից . ամէն :

# ՆԵՐԲՈՂԵԱՆ
## ԱՍԱՑԵԱԼ ՊԱՏՄԱԳՐԱԲԱՐ
## Ի ՍՈՒՐԲՆ ՅՈՎՀԱՆՆԷՍ ԿԱՐԱՊԵՏՆ ԵՒ ՄԿՐՏԻՉ
## ՅԻՍՈՒՍԻ ՔՐԻՍՏՈՍԻ
## ԵՒ Ի ԿԱՔԱՒՈՒՄՆ ՀԵՐՈՎԴԻԱԴԱՅ *

ՀՐԱՒԻՐԵԼՈՎ կոչեցաւ լեզու իմ յուրախարար և 'ի կենսաբեր բարիս, և փափագեաց միտք իմ բազմել ուսմամբ 'ի հոգևոր սեղանս։ Եւ մինչ կայի ես և զզջայի զազգաց որդւոցն Աբրահամու, զմտաւ ածի զդստերս սրբոյն Ահարոնի, և կամեցայ գտանել զողկոյզն վաղահասուկ։ Եւ նայեցայ 'ի կողմն մի այգւոյն, և տեսի զողկոյզն գեղեցիկ քաղցրաճաշակ և անուշահոտ՝ զորդի ծերունոյ քահանային Զաքարիայի և ամուլ որթոյն[1] Եղիսաբեթի։ Եւ 'ի տեսանելն իմում զնա, ուրախացաւ սիրտ իմ. զոր օրինակ ցնծալով խայտաց Յովհաննէս ընդ առաջ տեառն իւրում։ Մարգարէքն մինչև ցՅովհաննէս, և առաքեալքն զկնի նորա. առաջինն 'ի նա կատարեցաւ. և վերջինս 'ի նմանէ սկսաւ. միջնացանկ էր երկուց կտակարանացն իբրև զարձան մարգարտեայ։ Զգիշերն տիւն մերժեաց, և զսառն տապն հալեաց. զպոռնկութիւն նախանձն խափանեաց, և զանօրէնութիւն արդարութիւն։ Հալածեաց Եզաբէլ զԵղիա, փոխանակ զի կոտորեաց զքուրմսն Բահաղու. և Հերովդիադա զՅովհաննէս գլխատեաց. քանզի ասէր՝ թէ մի՛ մերձենար 'ի թագաւորն։ Արդարն տայր զխրատն արդարուն, և նենգաւորն խորհէր զգործն անօրէնութեն։ Զօձ եթէ ոք վարէ, հարկանել և սպանանել ջանայ. և զմարդ չար եթէ յանդիմանես, ատէ ըզքեզ մինչև 'ի մահ։

* Ի Ճառընտրաց Բ. Ա. Ե. ԺԲ. և այլ հնգերորդ մի. յորս Աճառընտիրն յաւելու. Թարգմանեալ Տն Գրիգորիսի Հայոց կաթողիկոսի. այն է Վկայասէրն։

1 Հնագոյն օրինակն ամլորդոյն։

Ելեալ Յովհաննէս յանապատէն, և քարոզէր ըզճշմարտութիւն որդւոյն Յակովբայ. աւետարանէր զիրաւունս 'ի մէջ ազգաց նոցա, և լսելի առնէր խլից և համրոց՝ գալ առ նա։ Պատմէր նոցա զանսպառ լոյսն՝ զգառնն այ. և գոչեաց յայտնապէս՝ թէ չեմ ես Քսն որ գալոցն էր։ Ես մկրտեմ զձեզ ջրով միայն յապաշխարութիւն. իսկ որ զկնի իմ գալոցն է, նա մկրտեսցէ զձեզ 'ի Հոգւոյն սուրբ և 'ի հուր. որում չեմ արժանի բառնալ զխրացս կօշկաց նորա։ Պատրաստ արարէք զճանապարհս փեսայ թագաւորին յանդիման[1] Հերովդիայ. ուղիղ արարէք զշաւիղս այ մերոյ։ Սաստէր յանդիմանէր զՀերովդիա[2] և ցՀերովդէս ասէր. ոչ է արժան ունել քեզ զկին եղբօր քում։ Եւ յայնմանէ ոխացեալ էր ինքն Հերովդէս, և խորհէր սպանանել զնա։ Եւ զի ոչ կարէր յաղթել քարոզութե նորա, թաքոյց զորոգայթն և ձգեաց ականատս, զի կալցէ զնա և դադարեցուսցէ զյանդիմանիչ ձայն նորա։ Տեսեալ Յովհաննու զՀերովդիա[3] զի ոխացեալ էր ընդ նմա, և ծանեաւ թէ յամ զօրութէ կամի սպանանել զնա վասն ձայնին որ աղաղակեաց յայտնապէս զգալուստ Որդւոյն այ, և բարբառեցաւ յանապատին՝ ուղիղ արարէք զճանապարհս տեառն։ Քահանային մեծի՝ որ իբրև զարծուի մնաւ յանապատի, զարծաթեղէն սկտեղն[4] ետ դրօշեալ յանուն նորա պոռնկին անիծեալ։ Հարեալ 'ի նա Կարապետըն զնետն յանդիմանութէ, և նորա զարհուրեալ խռովեցաւ, և ընթացեալ եմուտ առ Հերովդէս սրտմտութեամբ և ասէ ցնա. արա ինձ զկամս զայս, և բարձ յինէն զսպառնալիս նորա. լուր աղաչանաց իմոց, և հատ զգլուխն Յովհաննու, զի խռովեցուցանէ յոյժ ձայն նորա զիս վասն քո։

Պատասխանի ետ Հերովդէս և ասէ. ոչ իշխեմ լսել քեզ և առնել զայդ գործ. քանզի այր մի է և արդար, գուցէ հուր իջուցէ 'ի վերայ իմ. զոր օրի-

1 Յերիս օրինակս չիք յանդիման Հերովդիայ։

2 Երկք օր. զՀերովդիադա։

3 Մի օր. զՀերովդէս. երկու զՀերովդիադա։

4 Հայցական հոլովբառիդ բաց 'ի սովորականէն գրեալ էր 'ի Ճառս յայս և զսկտեղէ յութ տեղիս յայլ և այլ օրինակս, և 'ի միում վայրի զսկեղ. թէպէտ և գործիականն էր ամ ուրեք սկտեղէ կամ սկեղէ։

նակ Հեղիաս կոչեաց զհուրն, և կիզեաց զերկու յիսուն արսն զօրականսն : Պատասխանի ետ վայրագնացն և ասէ ցհոմանին իւր. եթէ զՅովհաննէս ոչ սպանանես, ես քեզ այլ ոչ եղէց : Վասն զի զայնպիսիսն առաջին թագաւորքն չարաչար սպանանէին. զԵսայիաս Մանասէ սղոցեաց իբրև զփայտ դալար. զԵրեմիա մարգարէն Սեդեկիա 'ի գուբ տղմին ընկեց, և զայլ [1] ընկերս նորա Եզաբէլ հալածեաց ինքն միայն : Եւ դու եթէ ոչ սպանանես զՅովհաննէս, գոնէ արկ զնա 'ի բանտ. զի գիտասցէ թէ ունիմ ես իշխանութ̃ի կենաց և մահու նորա :

Ասէ ցնա Հերովդէս. լուր ինձ և ունկն դիր բանից իմոց և ասացից քեզ : Զանօրէնն և զչարագործ ոք պարտ է սպանանել և արկանել 'ի բանտ, և ոչ զարդար և զանարատ ոք : Ապաքէն զի՞նչ բարւոյ հասին Աքայաբ և Եզաբէլ. ո՞չ ահա զմարմինս նոցա շունք կերան, և [2] խոզք լուացան արեամբ նոցա. զՄանասէ կապեցին շղթայիւք և 'ի Բաբելոնի 'ի գերութ̃ի վարեցին. և զՍեդեկիայ զաչսն հանին, և զորդիսն առաջի աչաց նորա սրով կոտորեցին : Բայց յիշատակ արդարոցն ընդ ա̃մ երկիր գովի և բարեբանի. և ամպարշտաց դատաստանն կայ և մնայ առաջի ա̃յ : Այլ թէպէտ և յայն Յովհաննու երկնչելով ոչ երկնչիմ, սակայն սպանանելով զարդարն՝ նախատինք լինիմ ա̃մ երկրի. զի ոչ վասն ոսկւոյ իւրում և ոչ վասն արծաթոյ կամ ստացուածոյ մեռանի, այլ յաղագս ճշմարիտ քարոզութ̃են : Եւ զի ոչ ունի գեղեցկաշէն տաճարս և ոչ բարձրաբերձ շինուածս, ոչ հեծեալս և ոչ երիվարս, ոչ որդիս և ոչ ժառանգս, ոչ բուրաստանս [3] և ոչ այգիս. այլ աղքատ է և սուրբ և ամբիծ, և քարոզ ճշմարտութ̃են : Եւ եթէ նա սպանանի, թագաւորութ̃իս իմ կործանի. այլ վասն սրտի քո խռովութ̃ե արկից զնա 'ի բանտ : Ո՜ կեղծաւորութ̃ե դատաստան, յորում բազում անօրէնութ̃ի գտաւ 'ի մէջ նորա : Հրամայեաց կապել զարդարն և արկանել 'ի բանտ, և հանգոյց զսիրտ պոռնկին :

1 Մի օր. զընկերս 'ի նոցանէ :
2 Երեք օր. և լափեցին զարիւնս նոցա :
3 Հնագոյն օրինակն ոչ բուրաստանս. այլ մի է միայն աշխատ :

Մտեալ Յովհաննու 'ի բանդն՝ սկսաւ աղօթել առ ա՟ծ. և թուուցեալ աղօթից նորա ել 'ի դասս երկնաւորացն, և մտեալ առաջի ա՟ծութեն ուժգին պաղատանօք: Ով սիրելի եղբարք, ունկնդիր լերուք ընտրողապէս, և ելցեն 'ի ձենջ օրհնութի և գովութի ա՟ծութեն. զի Յովհաննէս որդի ամլոյն 'ի բանդի, և անհնարին բեկութն սրտի իմոյ գործեաց լրբութին Հերովդէի: Այլ 'ի ժամուն յորում առաքեաց Յովհաննէս զմաքուր աղօթս իւր առ ա՟ծ, հիացան հրեշտակք, զարհուրեցան և հոգիք արդարոցն, և աղօթս մատուցին առ ա՟ծ և ասեն. մի յապաղեր, տէր. այց արա ս՟ր մարգարէին[1] 'ի բանդի անօրինացն. արձակեա զնա անտի, որպէս զի մի գարշեսցի նա 'ի պղծութէ նոցա. զճրագն որ վառեցաւ 'ի սրբոյն Եղիսաբեթէ, շիջուցանել կամին զլոյս նորա. արկ 'ի նա զիւղ ա՟ծութե քո, և ջահավառեա զնա 'ի բարձունս երկնից: Սակայն ներէր ա՟ծութին:

Իսկ մինչ դեռ էր նա 'ի բանդին, արար Հերովդէս ընթրիս յաւուրս ծննդոց իւրոց նախարարաց և հազարապետաց իշխանութե իւրոյ: Արար ընթրիս մարմնաւորս ըստ մարմնոյ բարեկամացն, և ետ ըմպել նոցա գինի հին, և յիմարեցոյց զծերս և զերիտասարդըս: Կերան և յագեցան[2] և ոչ գոհացան զտուողէն բարեաց: Եւ յորժամ արբին և յագեցան, այնուհետև խնդրեցին մխաքան 'ի թագաւորէն և ասեն ցնա. առաքեա և ած այսր զդուստրն Հերովդիադայ, և կաքաւեսցէ առաջի բազմականացս. բարիոք է՝ թէ զկնի այսպիսի փափկութե արքայական սեղանոյս ուրախացուցանես զմեզ: Եւ հրամայեաց թագաւորն վաղվաղակի գալ աղջկանն, և բարիոք կաքաւել առաջի բազմականացն ըստ կամաց նոցա:

Զայն իբրև լուաւ Հերովդիադա՝ ուրախացաւ յոյժ, և յարուցեալ զարդարեաց զդուստր իւր երևելի գունովք: Զգեցոյց նմա հանդերձս վարդի և շուշանի նմանութե, և մեծագին անուշահոտ իւղովք օծեաց զնա, և կազմեաց մարդասպան դեղով

1 Երէք օր. մարգնոյն:
2 Հնագոյն օրինակն յոգնեցան. նոյնպէս և զկնի:

զայս նորա, և հիւսեաց արուեստաբար զհերս նորա. լուաց հնարաւորութեամբ զերեսս նորա, և ճառագայթաձև փայլեցոյց զգեղեցկութիւն պատկերի նորա. պաճուճելով կօշիկս յաղագս կաքաւելոյ ագոյց յոտս նորա, և պսակ ոսկեղէն շրջանակի տպաւորեալ եդ 'ի գլուխ նորա. և դիւանման ամենևին խենեշացոյց [1] զնա: Եւ այնուհետև ուսուցանէր զնա և ասէր. այսօր հանգո զսիրտ իմ զուարճալից կաքաւելովն քո մօրս որդի: Ահա ժամ հատանել զգլուխ մարգարէին, և լռեցուցանել զքարոզ նորա՝ որ կամէր արտաքսել զմեզ 'ի տանէ թագաւորութեան: Այս է ժամ խնուլ սուսերին արեամբ զբերանն՝ որ ջանայր ծաղր առնել զմեզ երկրիս գալիլեացւոց: Ծափս հար թագաւորին ձեռօքդ, և ոտիւքդ պարեա, և 'ի շրջան առնուլն [2] քո՝ զարմացո զհերովդէս և զբազմականս [3] իւր, և մահապարտեալ զՅովհաննէս դատապարտեա, փոխանակ զի նա զմեզ կամէր դատապարտել: Յայսմ աւուր իջո զկեանս նորա 'ի դժոխս, զի դադարեսցէ 'ի մէնջ: Եւ ասէ աղջիկն ցմայր իւր. երկայնամիտ լեր և քաջալերեա. ես այսօր հատանեմ զհասկն՝ որ մնաւ յանապատին. ես եղէց նմա սուսեր՝ հատանել զգլուխ նորա. և ես եղէց աղեղն և նետիւք իմովք հարից զնա. և ես լինիմ աղի և հեղձուցանեմ զնա: Նիստ, մայր իմ, հանդարտ. ուրախ լեր յայսմ աւուր: Եւ ելեալ գնաց 'ի բազմականսն, պաշտպանեալ դիւացն գնդիւք. և [4] ինքն իսկ սատանայ իբրև զզօրապետ երթայր զհետ նորա:

Զարդարեալ էր նա ծաղկագոյն և պատուական հանդերձիւք, և բուրէր անուշահոտութիւն իւղոց 'ի նմանէ: Եմուտ 'ի ներքս զարդարեալ և պաճուճեալ. ետես զնա բազմականն և զուարճացաւ մեծապէս. և յառաջ քան զկաքաւելն՝ զգեղեցկութիւն նորա գովէին և ընդ հնարաւորութիւն զարդուցն զարմանային: Երկրպագեաց թագաւորին, և նա հրամայեաց նմա կաքաւել: Կայթեաց ձեռօքն, և ոտիւ-

1 Հնագոյնն խենեշացոյց կամ խենէշ եցոյց:

2 Մի օր. և 'ի շուրջ առնուլն:

3 Մի օր. զբազմականս:

4 Հնագոյն օրինակն. և երևայր ինքն սատանայ, և զօրապետն զհետ նորա:

քըն սկսաւ կաքաւել. եբաց զգլուխն, և գերեաց ըզմիտս Թագաւորին և բազմականացն, և վայրահայեաց[1] աչօքն յափշտակեաց զմիտս զօրականացն. լինելով[2] ծաղու շրթանցն՝ ծաղր առար զԹագաւորն և զիշխանսն: Սպառեցաւ ծաղրն, և խափանեցան կաքաւքն, և պահեալ է դատաստան նոցա յաւիտեան: Ափշեաց գեղեցկութեամբն զԹագաւորն և լկտի կաքաւելովն. մինչև երդմամբ խոստանայր առաջի բազմականացն տալ նմա զինչ և խնդրեսցէ 'ի տացուածոց ընչից ոսկւոյ և արծաթոյ մինչև ցկէս Թագաւորութեան իւրոյ: Ո՜վ կեղծաւոր և անիրաւ դատաստանին. վասն լկտի և լրբենի կաքաւելոյն զայնչափ պարգևս խոստանայր. և աղքատաց և մուրողաց զմաշեալ ձորձս անգամ ոչ տայրն: Ցնծայր պոռնիկն և ուրախանայր ընդ պարգևս Թագաւորին: Եւ որնանկք առ դուրս հառաչէին, և[3] ոչ համարէր զնոսա իբրև զշունս տալ նոցա փշրանս:

Յայնժամ խօսեցաւ իժն առաջի քարբին և ասէ ցնա. երթայց հարցից ցմայր իմ, և ըստ հրամանի նորա խնդրեցից 'ի քէն. քանզի պատուէր ետ ինձ ոչ խնդրել ինչ առանց կամաց նորա. բայց 'ի գլուխ քո երդնում, զի փութով դարձեալ՝ ուրախ արարից ըզձեզ յընթրիսդ: Իսկոյն ելեալ գայլն ապականիչ, և մտեալ զեզաբէլ մարդասպան, և ասէ ցնա. զի՞նչ խնդրեցից 'ի Թագաւորէն: Եւ նա ասէ. առ զսկըտեղն արծաթի և տար ընդ քեզ յարքունիսն և ասա. խնդրեմ 'ի քէն տալ ինձ սկտեղբ այսու զգլուխն Յովհաննու: Զայս իբրև լուաւ Թագաւորն՝ տրտմեցաւ յոյժ, և ոչ գիտէր զինչ գործեսցէ. սպանանել զարդարն երկնչէր, և սուտ լինել պատկառէր և ամաչէր 'ի բազմականացն: Եւ տագնապէր յերկուցն միջի: Յետ այսորիկ ապա կոչեաց զմի ումն 'ի դահճացն և ասէ. երթ 'ի բանդն սուսերաւ, հատ զգլուխն Յովհաննու և բեր այսր սկտեղբ: Յայնժամ բազմեալքն խօսել սկսան ընդ միմեանս և ասեն. ահաւասիկ պատճառանօք մեղաց արդարն մեռանի, և

1 Մի օր. վայրագածուս. այլ վայրագածուս. միւս այլ վայրած:

2 Երեք օր. ելանելով ծաղուն 'ի շրթանց նորա:

3 Այլք և համարէր զնոսա իբրև զանասունս: Յօրինած:

ա͞ծ կորուսանէ զմեզ։ Եւ դարձեալ աղաչանօք ասէին ցԹագաւորն. անհնարին իրս գործես, ով Թագաւոր. զԹագաւորութիւնդ քումմէ երդուար, և ոչ զարդարոյն. մի սպանաներ զայրն ա͞յ և ամբիծ 'ի տարապարտուց։ Եթէ կամեցեալ էր աղջկանդ՝ զգլուխդ քո հատանէր, և զքեզ ծաղր և նախատինս ա͞մ երկրի կացուցանէր։ Արդ լուր մեզ, արքայ, և տուեա երդման [1] քո վասն Յովհաննու. և նա աղաչեսցէ վասն քո զտէրն բարձանց, և Թողութիւն շնորհեսցի քեզ 'ի տեառնէ։

Իսկ երից Թշուառական անիծեալ Թագաւորն ոչ կամեցաւ սուտ լինել. այլ հրամանն ետ փութով սպանանել զկարապետն արքայութեան ա͞յ։ Գնացեալ ապա զինուորին եմուտ 'ի բանդն ունելով զսուսերն մերկ 'ի ձեռին իւրում, և եգիտ զմ͞րն զի խոնարհեցուցեալ ծունր՝ կայր յաղօթս առ տէր։ Իսկ նորա յերկիւղի մեծի եղեալ՝ սարսափէր ա͞մ անդամօք մարմնոյն, և ասէր ցՅովհաննէս. անիծեալ է օր ծննդեանն իմոյ. բարիոք էր ինձ՝ եթէ ոչ էի եղեալ յարգանդէ մօր իմոյ. զի եթէ սպանանեմ զքեզ, վայ է ինձ յա͞յն քումմէ. և եթէ ոչ սպանանեմ, հրաման Թագաւորին սպանանէ զիս. սաստիկ [2] է երկիւղ ա͞յ, և մեծ է հրաման Թագաւորին. բայց լաւ է ինձ մանաւանդ մեռանել, և ոչ զամբիծ արիւնդ քո հեղուլ։ Պատասխանի ետ Յովհաննէս և ասէ ուրախու͞թ ցզինուորն. 'ի կեանս քո, այր դու, երդուեմն տամ. ասա ինձ, զի՞նչ պատճառ է այդմ գործոյդ։ Եւ նա ասէ ցնա. ընԹրիս արար արքայ Հերովդէս, և կոչեաց անդ ըզհազարապետս և զմեծամեծս գաւառին. և աղջկանն արբոյց նոցա գինիս հինս, մինչև սպառեցաւ ամենեւին իմաստութիւն ծերոցն, և կոչեցին անդ զդուստրն Հերովդիադայ, և կաքաւեաց առաջի նոցա. և արքայ խոստացաւ նմա զինչ և խնդրեսցէ. և նա խնդրեաց զսուրբ գլուխ քո։

Եւ Յովհաննէս ասէ ուրախու͞թ. խայտալով ծնայ, և կաքաւելով մեռանիմ. եկ, որդեակ, առ զգլուխ

1 Այլք. վերդումն։

2 Այլք սաստիկ է հրաման Թագաւորին, և մեծ է երկիւղն ա͞յ։

իմ ըստ հրամանի տեառն քո, և կատարեա զցանկութիւն նոցա։ Բայց երդումն տաց քեզ յԱծ կենդանի, որ հրամանաւ իւրով կապեաց զծով աւազաւ, մի տար ունել ձեռամբ պիղծ պոռնկին զհերաց գըլխոյ իմոյ, որ յանապատի է սնեալ սրբութիւն և արդարութիւն։ Եւ ես որպէս եղէ քարոզիչ կենդանեաց առաջի տեառն իմոյ, սոյնպէս ընթանամ առաջի նորա և քարոզեմ իջելոցն 'ի դժոխս յաւիտենից մարգարէիցն՝ աւետարանել զգալուստ փրկչին։ Աւետարանեցից նախահօրն Ադամայ, եթէ ահա հանդերձեալ է մտանել տէրն քո փոխանակ քո, և մահուամբ իւրով փրկէ զքեզ։ Աւետարանեցից Եւայի՝ թէ դուստրըն քո ծնաւ Որդի և նա ազատեսցէ զքեզ։ Եւ զայս ասացեալ սրբոյն Յովհաննու ծունր եդեալ՝ եկաց յաղօթս առ տէր և ասէ այսպէս. Ած և Որդի Այ, Բան Հօր՝ զոր մկրտեցին ձեռքս իմ 'ի Յորդանան գետ։ Ձայն Հօր՝ որ ցելեաց զերկինս, զոր լուայ ականջօք իմովք։ Հոգիդ Սբ՝ որ իջեր 'ի նմանութիւն աղաւնւոյ 'ի վերայ փառակցին քո տեառն մերոյ Յսի Քսի։ Ընկալ այժմ զհոգի ծառայի քո Յովհաննու. զօրացո զտկարութիւն իմ, զի հանդերձեալ են հեղուլ զարիւն իմ, և [1] ցոյց յայտնապէս զքանչելիս քո 'ի ձեռն մահուան իմոյ. առաքեա տէր հուր յերկնից, և կիզեա զհեր գլխոյ իմոյ, զի մի մերձեսցի 'ի սա դուստր պոռնկին։ Եւ յարտասուել արդարոյն՝ վշտացան զօրութիւնք երկնից։ Եւ յետ այսորիկ ասէ ցդահիճն. արդ եկ առ զգլուխ իմ և կատարեա ըզցանկութիւն պոռնկին։ Եւ դահիճն մերձ կացուցեալ զսուրն՝ եհատ զպատուական գլուխ մեծի կարապետին։

Եւ զայն տեսեալ՝ հիացան երկինք, և սասանեցաւ երկիր. դողացան լերինք և բլուրք մեծամեծք։ Եւ [2] բարձեալ դահճին եդ 'ի վերայ սկտեղն՝ տանէր առ Հերովդէս։ Եւ նոյն ժամայն էջ հուր յերկնից, և կիզեաց զհեր գլխոյն մինչ դեռ ունէր դահիճն 'ի

1 Այլք. և զայս ասէր արտասուելով յոյժ. և ընդ հեղուլ արտասուացն՝ կամ ընդ լուռ արտորոյն՝ ... զօրութիւնք. մի օր. [illegible]։

2 Այլք. Բարձեալ էր զնա զընասրն 'ի վերայ յետոյ խորոյ։ Եւ որք փէս . . . .։

վերայ ձեռաց իւրոց ։ Եւ որք տեսին, հիացեալ հարցանէին՝ թէ զի՞նչ իցէ բարձեալդ ։ Եւ նա ասէ, Հուր կիզող տանն Հերովդէի ։ Եւ տարեալ զնա եդ առաջի թագաւորին և բազմականացն ։ Եւ տեսեալ թագաւորն՝ սկսաւ ողբալ և արտասուել, և ոչ գիտէր զինչ արասցէ ։ Նոյնպէս և ա̃մ իշխանք բազմականին զարհուրեցան և երկեան յոյժ․ և բազում արտասուս հեղեալ՝ ասէին ցթագաւորն․ երանի էր թէ չէր ծնեալ եղբայրն քո դուստր ժանտ ։ Եւ այլք ասէին, թէ բարիոք էր մեզ թէ բնաւ չէաք մտեալ 'ի բազմականս յայս ։ Եւ ամենեքեան համբուրեցին զսուրբ գլուխ Կարապետին, և հառաչելով խնդրէին զթողութի̃ յանցանաց իւրեանց ։ Ապա ասէ թագաւորն ցդուստրն լեգէոնին․ մեծապէս խայտառակեցեր ըզմեզ կաքաւելովդ յայսմ աւուր․ արդ առ զհրալի սկըտեղդ, և տար մօր քո․ և ես անպարտ եմ յարենէ արդարոյդ ։ Եւ նորա առեալ ցնծալով և ուրախութբ̃՝ ընթացեալ տանէր մօրն իւրում զմարգարէն մեծ զոր սպան ։

Զարմանք էին յոյժ՝ եթէ զիա՞րդ ոչ թողացան ոտք նորա, յորժամ բարձեալ զնա ելանէր 'ի բազմականացն[1] ։ Առեալ զնա գնայր օձն[2] քարբաձնունդ, բարձեալ զտատրակն փայելուչ՝ որ քաղցրաձայն բարբառելովն զկենսաբեր եղանակն երգէր յանապատին ։ Եւ մտեալ առ մայրն ցնծալով ետ նմա զգլուխն արեամբն թաթաւեալ ։ Եւ նորա ընկալեալ ուրախութբ̃ զուարճանայր, և խնդայր լըղջմտութբ̃ ։ Եդեալ[3] առաջի, և մարտ եդեալ 'ի վայր հարկանէր զնա լըրբութբ̃, և ասէր․ դու որդի մորոսաց, որ կամեցար յաղթել ինձ, արդ ես յաղթեցի[4] դստերբս իմով, հատի զգլուխ քո․ ո՞ւր է զօրութի̃ այն քում զոր քարոզէիր․ եկեալ խնդրեսցէ զվրէժ քո յինէն, զի ես սպանի զքեզ ։ Եւ առեալ զսկտեղն ընկեց զգլուխն յերկիր[5] ։ Եւ ապա ասէ ցդուստրն իւր հոմանին

1 Երկու օր․ 'Ի բազմոցէն ։

2 Այլք փարէ օձն ։

3 Երեք օր․ 'Ի վայր հարկանէր զնա մեծաւ լրբութբ̃, և մարտնչէր ընդ նմա [illegible] ։

4 Այլք յաղթեցի քեզ, և չափաելով տափերն իմոյ՝ հարի ։

5 Երեք օր․ յաւելուն․ և խաւարեցաւ լոյս արեգական, և երկիր շարժեցաւ ։

դիւաց. վաղիւն վերստին ընթրիս առնէ Թագաւորն, և հրամայէ քեզ կաքաւել առաջի բազմականացն, և դու խնդրեա 'ի նմանէ ոսկի և արծաթ և հանդերձըս մեծագինս. արիւն մարդոյ այլ մի՛ ևս խնդրեսցես: Իսկ յերկրորդում աւուրն յընթրիսն եղև տապ խորշակի 'ի տան բազմականին, զոր ոչ կարէին համբերել: Ապա ելեալ 'ի յանդն 'ի վայելուչ տեղի՝ որ կոչէր ժողով ջրոց, և անդ բազմեցան: Եհաս ժամն, և հրամայեաց Թագաւորն կոչել զաղջիկն. և նա եկեալ երկիր եպագ Թագաւորին և իշխանացն: Իբրև հրամայեցին նմա խաղալ 'ի մէջ բազմականին, և նա սկսաւ մեծաւ հպարտութեամբ հեզիկ շարժեալ զպարանոցն, շրջան առնոյր[1] անդամօքն, կաքաւել ոտիւք. և հայէր ծովանման մահաբեր աչօքն 'ի կաքաւելն իւրում: Ասէ ցնա Թագաւորն. խնդրեա յինէն արծաթ և ոսկի և տաց քեզ. արիւն մարդոյ մի՛ խընդրեր, զի ոչ տամ քեզ: Քանզի յայսմ գիշերի մեծապէս զարհուրեալ տագնապեցայ և չարչարեցայ պէսպէս և բազմադէմ տեսլեամբք երազոց. վասն զի լուայ քեզ, և հատի զգլուխ արդարոյն Յովհաննու: Եւ հրեշտակք երկնից հարկանէին զնա հրեղէն գաւազանօք:

Իսկ աղջկանն հպարտացեալ լրբենի արուեստիւն, ել 'ի միջոյ բազմականացն. երթայր կաքաւելով հեռագոյն 'ի նոցանէ մինչև յեզր ջրոյն սառուցելոյ, և կամէր կօշկօքն կաքաւել 'ի վերայ սառինն: Յայնժամ գոչեաց Թագաւորն և իշխանքն և ասեն ցնա. մի՛ ելաներ 'ի վերայ սառին ծովուդ, զի կօշիկ քո գայթագղեցուցանէ զքեզ. այլ և սառնդ Թուլագոյն է յայսմ աւուր տօթոյ, գուցէ ոչ բառնայ ըզքեզ: Իսկ նորա ոչ անսացեալ խրատու նոցա, ուրեմն զի արիւն արդարոյն գոչէր 'ի վերայ նորա, և ելեալ ամպարհաւաճութեամբ կաքաւէր 'ի վերայ սառն ծովուն, կամեցեալ նար իւր ցուցանել Թագաւորին և զօրաց նորա: Եւ անդէն եհաս բարկութիւն տեառն 'ի վերայ նորա. և ոչ հանդուրժեաց սառնն բառնալ զանհամութիւն նորա, և ոչ ջուրքն հանդարտեցին լըր-

1 Այլք. և շրջշրջէր զամենայն անդամս մարմնոյն 'ի կաքաւելն իւրում:

բուլթն նորա. նոյնժամայն բեկաւ սառն ծովուն 'ի ներքոյ ոտից նորա, և ջուրքն ընկղմեցին զպղծութիւն նորա։ Եւ սառնն իբրև սուսերաւ եհատ զգլուխ նորա. և խորասոյզ խորտակեցաւ 'ի խորս ծովուն գարշելի մարմին նորա։ Ժողովեցան սողունք ջուրցն, և պաշարեցին զպիղծ անդամս նորա, և պատառեցին զբեհեզս և զծիրանիս[1] նորա. ձուղէին և լափէին զճապաղեալ արիւն նորա։ Եւ ծփայր ի վերայ ջուրցն գիտաւոր գլուխ նորա։ Զայն իբրև տեսին բազմականքն՝ հիացան յոյժ, և թուլացան ձեռք նոցա, և յերկիր ընկեցին զըմպելիս գինւոյն. և միաբան աղաղակեցին 'ի ձայն օրհնութե այ և ասեն. օրհնեալ արդար դատաւորն երկնաւոր, որ արար դատ արդարոյն Յովհաննու, զի 'ի նոյն ժամ աւուրն յորում զնա գլխատեաց, չարաչար և ինքն գլխատեցաւ 'ի խորս ծովուն։

Իսկ Թագաւորն զարհուրեալ և ափշեալ՝ խօսել ամենևին ոչ կարէր։ Այնուհետև հրաման ետ քարոզել, զի մի ոք ասիցէ մօրն նորա զոր ինչ եղեն։ Զի մի ասիցէ նա՝ թէ սառն սպան զդուստր նորա, այլ աղօթք սրբոյն Յովհաննու զոր ինքն սպան։ Եւ որպէս երբեկ առ սկուտեղբ զգլուխ արդարոյն, նովին սկուտեղբ առցէ զգլուխ դստերն իւրոյ միածնի։ Այլ երթայք ասացէք նմա. դուստր քո ասէ, տուր զսկուտեղն զայն, զի նովաւ բերից քեզ զտուրս 'ի Թագաւորէն։ Եւ գնացեալ բերին զսկուտեղն։ Եւ նա մնայր թէ զայ դուստրն պարգևօք 'ի Թագաւորէն։ Եդին 'ի վերայ սկուտեղն զգլուխ դստերն և տարան առ նա և ասեն. առ զպարգևսդ զոր առաքեաց քեզ Թագաւորն երկնաւոր։ Իբրև ետես դողացաւ սարսափելով, և լուծան ձեռք նորա, և առեալ հող արկանէր զգլխով իւրով, և սկսաւ նախատել և հայհոյել զանուն այ։ Եւ մինչ դեռ բանքն 'ի բերանն էին և անարգէր զՅովհաննէս, յանկարծակի[2] 'ի վերուստ 'ի բարձանց հատաւ վէմ մի մեծ, և եկեալ հարկանէր զլքբենի դէմս

1 Երկք օր. զծաղկագոյն յուրջս նորա. ծաղովէին՝ կամ յոււէին և ուտէին զխոխոչուն՝ կամ զխոխոող անդամս նորա։

2 Երկք օր. անկաւ կար մի մեծ յօդիցն և եհար զնա 'ի պարկէրս իւր, և իբրև զմոխիր մանրեաց զնա. և այլն....։

նորա, և անդէն հոսեալ ցրուեաց զնա ընդ երկիր մանր իբրև զփոշի. և սատակեցաւ չարն հանդերձ դստերբն իւրով 'ի նմին աւուր։ Իսկ Թագաւորն 'ի նմին ամբարշտութեան կացեալ մինչև 'ի քարոզութիւն սուրբ առաքելոցն։

Այլ յորժամ ելին սուրբ առաքեալքն և քարոզեցին զա̃մ փրկական տնօրէնութիւնս Որդւոյն ա̃յ յաւետեացն Գաբրիէլի մինչև ցհամբարձումն, զիջանելն յերկնից, զծնունդն 'ի Մարիամայ և զյայտնութիւն[1], զսքանչելիսն զոր արար, զանդամալուծսն զոր հաստատեաց, զհիւանդսն զոր բժշկեաց, զդիւահարսն և զբորոտսն զոր սրբեաց, և զմեռեալսն զոր յարոյց բանիւ, զմաքսաւորս և զմեղաւորսն զոր արդարացոյց բանիւ, զչարչարանսն, զմահն Քի, զԹաղումն, զերեքօրեայ յարութիւն, և զհամբարձումն առ Հայր, և զմիւսանգամ գալուստն յերկնից և զդատաստանն յաւիտենից, զայս ա̃մ իբրև լսէին յառաքելոցն, և տեսանէին աչօք իւրեանց զնշանսն և զարուեստսն զոր գործէին յանուն նորա, ամենեքեան միաբան փառաւոր առնէին զա̃ծ և ասէին. մեծ է ա̃ծն առաքելոցն, և չիք այլ ա̃ծ բայց 'ի նմանէ։

Իսկ ամպարիշտն Հերովդէս զայս ա̃մ ետես և լըւաւ, և ոչ փառաւորեաց զա̃ծ. այլ ասէր առ ամենեսեան, եթէ զՅովհաննէս մկրտիչն զոր գլխատեցի՝ նա է, նա յարեաւ 'ի մեռելոց, և զօրութիւնք նովաւ լինին։ Եւ ոչ տայր փառս ա̃յ. այլ և զա̃յ պատիւն յինքըն ձգէր 'ի սուտակասպասիցն։ Յաւուր միում երևելոյն զգեցաւ զհանդերձ Թագաւորութեան և նըստաւ յատենի։ Եւ անդէն եհար զնա հրեշտակն ա̃յ, և շարժեցաւ[2] որդամբ և մեռաւ. որոյ մի̃ լիցի յիշատակ նորա առաջի ա̃յ։ Մեռան երեքեան ամպարիշտքն չարաչար մահուամբ, և պահեալ են դատաստանք նոցա առաջի ա̃յ ահեղ ատենին արդար դատաւորին։ Եւ Յովհաննէս՝ որ մեռաւ տարապարտուց 'ի ձեռաց պիղծ պոռնկացն, ահաւասիկ եկեղեցիք հեթանոսաց տօնեն զյիշատակ նորա յաւիտեանս յաւիտենից։

1 Երկու օրինակ զյայտնութիւն։ 2 Մի օրինակ ճճեցաւ։

Արդ եկայք, եղբարք իմ սիրելիք, գոհացարուք զմ՟յ և մատուսցուք նմա պատարագ օրհնութեան, որ կենագործեաց վասն մեր զփրկական տնօրէնութիւն, և զմեզ արժանի արար զայսպիսի սքանչելիս իմանալ: Օրհնեալ է ա՟ծ որ ընտրեաց զՅովհաննէս յորովայնէ մօր իւրոյ, և արար զնա քարոզ ճշմարտութեան: Զի ահաւասիկ ճառագայթք յիշատակի նորա փայլեն ընդ ա՟մ տիեզերս: Որոյ աղօթիւք եկեսցէ մեզ օգնութիւն և փրկութիւն, և անձանց մերոց ներումն թողութեան, և ա՟մ ժողովրդեանս յա՟յ ողորմութիւն, և յա՟մ բերանոյ Ք՟ի փառաբանութիւն, որ հաճեցաւ 'ի ձեռաց նորա ընդունել զմկրտութիւն: Արդ եկայք ամենեքեան աղաչեսցուք զտէր մեր Յ՟ս Ք՟ս և ասասցուք. Շնորհեա, տէր, եկեղեցւոյ քում զերկնային քո խաղաղութիւն: Թագաւորաց և իշխանաց զանսապառ անդորրութիւն, և երկրպագուաց խաչի քո 'ի վերայ թշնամեաց քոց զյաղթութիւն: Հեռացո 'ի մ՟ք եկեղեցւոյ զհեռ և զնախանձ և զա՟մ հայհոյութիւն: Եւ մերժեա, տէր, յա՟մ յերկրէ զաւար և զսով և զա՟մ մահ տարաժամ և զա՟մ պատուհաս: Տուր մեզ, տէր, զքեզ միայն սիրել, և զկեանս աշխարհիս ատել: Տուր մեզ, տէր, զքեզ միայն ստանալ, և զանցաւոր ստացուածս լքանել: Տուր մեզ, տէր, լուսովդ քո լուսաւորիլ, և[1] փարատեա 'ի մէնջ զանգիտութե՟ խաւարն: Տուր, տէր, ոգւոց մերոց քև պայծառանալ, և մտաց մերոց քև իմաստնանալ: Եւ եղիցին սիրտք մեր բուռվառ քեզ, և լեզուք մեր 'ի նմին կայծակն հրոյ, և շրթունք մեր խունկ ընդունելի, և բուրեսցին քեզ հոտ անուշութե՟: Եւ եղիցին բերանք մեր երգեցիկք, և կոկորդք մեր քնար հոգւոյդ սրբոյ, և հնչեսցեն բարբառք մեր զօրհնութիւն յա՟մ ժամ ա՟ծութեանդ: Քահանայք ա՟մ, բարեբանեսցուք զմեծ քահանայապետն՝ որ եղև պատարագ վասն մեր: Պաշտօնեայք ա՟մ, սրբասացուք[2] բարեբանեսցուք զտէր մեր՝ որ եղև պաշտօնեայ վասն

1 Երեք օր. և չանգիտացաւ խաւարն լուծանել:

2 Երեք օր. սրբաբանեցէք զՏէր.. պաշտօնեայ տաճարի ծառայից ուրոց: Արք, օրհնեցէք. կանայք, մեծացուցէք. երիտասարդք, գովեցէք. և մանկունք, բարձրացուցէք. և ամենայն հաւատացեալք, անդադար երկրպագեցէք:

մեր ։ Ամենայն արք հանդերձ կանամբք, գովեսցուք և բարձր արասցուք. և միաբան հաւատացեալք ամ, անդադար երկրպագեսցուք ։ Շնորհեա մեզ, տէր, վառել քեզ զերիս ընդունելի պատարագս 'ի հաճոյս քեզ ։ Շնորհեա մեզ, տէր, նուիրել քեզ զերիս պատուական բուրվառս մաքուր աղօթիւք ։ Շնորհեա մեզ, տէր, վառել քեզ զերիս ճրագս լուսաւորս, ըստ հոգի, զբան և զմիտս երեքսրբեան Երրորդութեն 'ի մաքրումն հոգւոց և 'ի լուսացումն մարմնոց մերոց. վասն զի աղտեղեալ է յանցանօք մեղաց ։ Եւ այսպէս սրբութբ և մաքրութբ զմիտս տացուք Հօր, և զբանս տացուք Որդւոյ, և զհոգիս Հոգւոյդ սրբոյ, և միաբան ասասցուք. Հայր անսկիզբն, սրբեա զմիտս մեր. Որդիդ միածին, մաքրեա զբանս բերանոց մերոց. Հոգիդ Սբ, տաճարացո զհոգիս մեր Հոգւոյդ սրբոյ. անբաժանելի Երրորդութի, պարգևեա զողորմութի և զթողութի մեղաց ասողացս և լսողաց ներբողենիս սրբոյն Յովհաննու կարապետին մեծի ։ Եւ քեզ[1] փառք յաւիտեանս յաւիտենից. ամէն ։

1 Մի օրինակ փառք և [illegible] ։

## Ի ՍՈՒՐԲՆ ՍՏԵՓԱՆՈՍ ՆԱԽԱՎԿԱՅՆ ՔՐԻՍՏՈՍԻ *

ԱՆԴՐԱՆԻԿՆ մարտիրոսաց կոչեաց զիս 'ի հոգևոր հարսանիս իւր. շնորհեա ինձ, տէր, պարգևօք մտանել առ նա, և ուրախանալ յառագաստ նորա : Ընտրեալն' որ իբրև զողկոյզ երևեցաւ յայգւոջն Քրի, քաղցրահամ և անուշահոտ ընծայեցաւ այ : Գլուխ արդեանց խաչելութեան' որ մատեաւ, հարիւրապատիկ մեծապէս զշեղջս փառաւորս 'ի չարչարանացն ժողովեաց : Հաւատարիմ վկայն' որ յառաջագոյն կոխեաց զմահ, և արար զնա կամուրջ ամենեցուն' որ գալոց են առ ած : Ստեփանոս գլուխ եղբարց իւրոց, որ հետակտուր եղև Ճանապարհի արքայութեան. իմաստուն բանաւորն, որ հոգևոր օրինօքն վարդապետեաց. նովաւ յաղթեաց դպրացն հարցողաց : Հզօր զինաւորն, որ առաջին եմուտ 'ի պատերազմ զկնի թագաւորին. քաջութբ խորտակեաց զահագին դասս ձախակողման : Ընդունելի են վկայքն ամ, և ցանկալի է յիշատակ մարտի նոցա. բայց առաւել համարիմ զվկայիս այսորիկ. իբրև թէ ամ պտուղք սիրելի են հողագործաց, բայց առաւել ցանկալի վաղահասն է քան զամ : Իսկ եթէ ողկոյզն անցաւոր ցանկալի է վասն վաղահասութեան, ո՞րչափ ևս առաւել վկայս այս գեղեցիկ և ընդունելի : Ինքն առաջին եհաս յաւետարան Որդւոյն այ, և քաղցրացոյց Ճաշակօքն զհրեշտակս և զմարդիկ : Ինքն նախ խայծեաց 'ի բարունակ խաչին, և առաջին պտուղ ընծայեցաւ թագաւորին :

Սա է վկայ' որ յառաջ եմուտ 'ի բովս ոսկեգործաց, և չարչարանօքն ընկալաւ զհոգևոր պայծառութիւն : Ի սմանէ ուսան ամ ընկերք իւր' եթէ մեռեալ է մահ, և արհամարհեցին զնա որպէս զօձ սատակեալ : Սա է' որ յառաջագոյն փորձեաց զմահ, և ծանեաւ գիտութբ' եթէ սպան զնա Յս խաչիւն, և

* Ի Ճառընտրաց Բ. Դ. տես և զծանօթութիւն յէջ 9 :

մի՛ լիցի զարհուրեցուցիչ: Ոչ բաւէ բերան մեր պատմել յաղագս նորա, վասն զի բարձր է ճառ նորա քան զլեզուս մեր: Եկեղեցին Քրիստոսի ընտրեաց զնա կերակրել զորբս և զաղքատս 'ի պէտս իւրեանց. և Պետրոս և Յովհաննէս կացուցին զնա տնտես սեպհական ժողովրդեանն: Ընտրեցաւ նա 'ի մէջէն Սիմովնէ յառաքելապետէն. իսկ արդ ո՞վ բաւական է նորա: Առաքեալքն պատուեցին զնա, և ո՞ հասանէ գովել զնա: Հայր էր որբոց և հօրաքոյր վասն կենաց նոցա. մխիթարիչ այրեաց և լցուցանէր զկարօտութիւն նոցա. Հոգւոյն Սրբոյ էր լեալ տաճար և հանգիստ, վասն այնորիկ շնորհալից էր նա յամենայն գնացս իւր. լի էր իմաստութեամբ և գիտութեամբ և յստակ մտօք [1] և ըղձօնութեամբ և մաքրութեամբ, սրբութեամբ և գեղեցկութեամբ և բանաւորութեամբ և քաղցրութեամբ և յանդիմանութեամբ և ճշմարտութեամբ, ողորմածութեամբ, սիրով և գթութեամբ, որ է կերպարան Աստուածութեանն. աւետարանիչ եկեղեցւոյ և թարգմանիչ խաչելութեանն. երևելի պատկեր՝ որոյ գեղեցկութիւն բարձր է քան զլեզուս մեր: Իսկ արդ մեծութեան սորա զորպիսի՞ պսակս փառաց հիւսեցից. զի անուն և գործ իւր հոգևոր շնորհիւ պսակեցին զնա: Արդ ո՞ կարէ յաւելուլ 'ի գեղս գեղեցկին. զի սա է Ստեփանոս պսակն հոգևոր. սա է գովելի և լուսեղէն մարգարիտն՝ որոյ լոյս յամենայն կողմանց փայլէ տեսողացն: Երևելի էր և փառաւոր, և 'ի սպասաւորութիւն քաջ և արի, և 'ի քաղցրութիւն բանաւոր և կատարեալ. սքանչելագործ և մեծապան և պայծառազգոյն. հմուտ գիտութեան և հանճարեղ զգօնութեամբ, և լցեալ էր ամենևին Հոգւով սրբով և հաւատով, և զօրանայր նշանօք և արուեստիւք:

Իսկ Հրեայքն ստերիք [2] ճշմարտութեան՝ չար նախանձու վառեալք, բանս արկանէին ընդդէմ նորա լրբութեամբ. թեքեալ ըստ նմանութեան օձի զլեզուս իւրեանց, և մարտնչէին ընդ սպասաւորն առաքելոցն: Խօսէին ընդ նա չարաբարոյ մտօք, և նա յաղթէր նոցա ճշմարիտ վարդապետութեամբն: Ատէին զնա վասն առաքինի գործոցն, և առաւել վասն ճշմարիտ յան-

1 Միւս օրինակն յստակամտութբ:    2 Միւս օրինակն ափելիք:

դիմանութեանն ։ Եւ յորժամ 'ի խօսելն յանդիմանեցան 'ի նմանէ, թագուցին նմա որոգայթ ըստ սովորութեան իւրեանց ։ Նենգաւոր և կատաղի ժողովուրդն ծարաւի էր արեանն ։ Վասն այնորիկ սրեաց զուսերն իւր 'ի վերայ ծ̃ռյն ա̃յ գայլն ապականիչ՝ որ խողխողեաց զա̃ծային գառինն ․ դարանեցաւ զենուլ զնա իբրև զազգականս նորա խաչահան և արիւնահեղն՝ որ ատեաց զՀայր և խաչեաց զՈրդի ։ Յօժարեցաւ չար նախանձու սպանանել զգեղեցիկն ․ զհովիւն սպան և թուան հարեալ զհօտից նորա ։ Եւ զի յանդիմանէր զնա Ստեփանոս, խորհեցաւ արեամբն խնուլ զբերան նորա ․ թաքոյց զորոգայթն ըստ սովորութեան իւրոյ, և կացոյց սուտ վկայս 'ի վերայ ամբծին ։ Դուստրն Եզաբէլի նայեցաւ 'ի մայրն իւր՝ թէ զինչ գործեաց ․ և ուսաւ 'ի նմանէ որպէս զրպարտել, կամ և սպանանել ։ Դուստր չարագործին ընկալաւ 'ի պոռնիկ մօրէն նենգել, զրպարտել, քարկոծել, սպանանել լրբութեամբ ։ Յայնժամ գտանէին առ նոսա սուտ վկայք ․ զի հանապազ զրպարտողք և սպանողք են Յուդայքն ։

Դրդեաց ժանտ ժողովուրդն զվկայսն անիրաւութեան 'ի վերայ նորա ․ զոր օրինակ արար Եզաբէլ զՆաբովթ ․ և ուսուցին նոցա յասել՝ թէ հայհոյեաց դա զա̃ծ ։ Զայրն ցանկալի որ լի էր Հոգւով սրբով և հաւատով, հայհոյիչ կոչէին լրբենիքն ։ Անօրէնութեան որդիքն՝ որ զլոյսն ատեցին և սիրեցին զխաւարն, անարգէին զնա անպատմելի նախատանօք և հայհոյութեամբ ։ Կատաղեալ ժողովուրդն զտէրն իւր Բէեղզեբուղ կոչեաց, և զծ̃ռն Ստեփանոս հայհոյիչ առ ատելութեան իւրոյ ։ Բարի ծառայն նմանեաց տեառն իւրում ․ զի իբրև զնա զրպարտեցաւ յամպարշտաց ։ Ուսոյց զզուր վկայսն ասել՝ թէ հայհոյեաց դա զա̃ծ և զՄովսէս ։ Յափշտակեցին գայլքն ապականիչ զգառնն անարատ մեծաւ բարկութեամբ, և արկին զնա 'ի մէջ ժողովրդեանն, և խածատէին սրտմտութեամբ ։ Կացուցին զանիրաւ վկայսն, զոր օրինակ Ք̃սին ․ և սկսան ասել մեծաւ ժպրհութեամբ ․ այրս այս ոչ դադարէ հայհոյել զա̃ծ և զօրէնսն Մովսէսի, և բամբասէ զսուրբ տեղիս ։ Եւ այսպիսի բանիւք դատապարտէր Ճշմարիտն

յանօրինացն ։ Իսկ նա զգեցեալ էր զՀոգին սբ՟, և լի էր շնորհօք և հաւատովք, և ոչ երկնչէր 'ի շանցն՝ որ պատեալն էին զնա ։ Եկեալ ա՟ծային շնորհացն և իջեալ 'ի վերայ նորա, և եդև լուսափայլ պատկեր նորա իբրև զհրեշտակի ։ Զօրութ՟ի Ք՟սի բնակեալ էր 'ի նմա, և նովաւ պայծառանայր տեսիլ նորա 'ի մէջ սպանողացն ։ Ոչ երկնչէր 'ի մահուանէ ամենևին. և վկայէ լուսափայլութ՟ի երեսաց նորա ։ Լի էր հոգևոր տեսլեամբ, և արժան էր լինել վկայ Որդւոյն ա՟յ ։ Եւ 'ի հարցանել նոցա վասն Յ՟սի, լուսաւորեցաւ և պայծառացաւ տեսիլ նորա. զարդարեցաւ ա՟ծային շնորհօքն, զի տեսանէին զնա իբրև զհրեշտակ լուսոյ, և զարմանային յոյժ ։

Սկսաւ քահանայապետն խօսել ընդ նա՝ եթէ արդարև այդ այդպէս ճշմարիտ են վասն քո ։ Պատասխանի ետ սբն՟ անիրաւին յօրինաց ցուցանել նմա եթէ ճշմարտապէս Յ՟ս է ժառանգն Հօր ։ Պատմէր առաջի զրպարտողացն զկտակն Հօր, ծանուցանել նոցա եթէ ով է ժառանգ և Որդի ։ Ցանդիմանեաց զնոսա՝ եթէ Հայրն ճշմարիտ ընդունի զՈրդին իւր սիրելի ։ Եւ նոքա խստապարանոցք և կարծրամիտք անարգէին զնա ։ Պատմեաց առաջի նոցա զՄովսէս, որով պարծէին, յայտնապէս քարոզ Որդւոյն ա՟յ ։ Իբրև զզօրապետ 'ի դասու եկաց ընդդէմ ձախակողմանն, և քաջութ՟բ մարտնչէր փոխանակ փրկչին մերոյ ։ Եւ տեսեալ թագաւորին զքաջութիւն իւրոյ զինուորին երևեցաւ նմա՝ առաւել զօրացուցանել զնա 'ի վերայ ախոյանին ։ Ծածուկ արքայն պատերազմող ծառային վասն այնորիկ տեսանելի եղև, զի մի թուլասցի 'ի մէջ դասուցն ։ Զօրաւոր պատերազմող էր, զի առաջին եմուտ 'ի ճակատամարտին ։ Հրաշափառ երևեցոյց զթագն նորա, զի ընդդէմ կացցէ և մի լիցի անժոյժ՝ կալ 'ի մեծ արհաւիրսն որ յարեաւ 'ի վերայ նորա ։ Եւ յորժամ ետես նա զփառս թագաւորին 'ի բարձունս, սկսաւ պատմել զտեսիլն առաջի ուրացողացն. ահաւասիկ տեսանեմ զերկինս բացեալ, և զՈրդի մարդոյ զի կայ ընդ աջմէ Հօր ։ Ահա տեսանեմ զոր խաչեցէքն 'ի Գողգոթայ, զի անկեալ կան առաջի նորա զօրքն գաբրիէլեան ։ Ցայնմ Յիսուս զոր

ուրացայքն առաջի Պիղատոսի, ահա պատկառեն 'ի նմանէ դասքն Միքայելի: Ահա 'ի գլուխս բարձանց կոխէ ամենակալ տէրն, և սարսեն 'ի նմանէ իշխանութիւնք լուսեղէնք: Ահա կայ ընդ աջմէ Հօր էակիցն իւր. և ոչ ինչ կայ ընդ ինքն և ընդ Հայր, բայց միայն ինքն միայն:

Յարիոք էր Թագաւորին մեծի ցուցանել զփառսն իւր, որ մարտնչէր փոխանակ յաղթութեան նորա: Տեսեալ վկային զտէրն՝ զի կայր ընդ աջմէ Հօր. և ընդէ՞ր ոչ ետես զնա նստեալ ընդ. աջմէ Հօր՝ այլ կանգնեալ. զի ինքն Հայր ասաց ընդ էակից Որդին՝ թէ նիստ ընդ աջմէ իմմէ: Եւ դարձեալ՝ թէ նստոյց զնա 'ի վերոյ քան զերկինս ընդ աջմէ իւրմէ: Եւ դարձեալ՝ թէ տեսանիցէք զՈրդի մարդոյ նստեալ 'ի վերայ ամպոց: Եւ աստ միայն ասէ՝ զի կայր ընդ աջմէ: Եւ ոչ եթէ առանց պատճառի է, զոր պարտ է իմանալ ուսումնասիրաց՝ թէ ընդէր ետես զնա Ստեփանոս յոտն կացեալ: Քանզի յորժամ եմուտ հաւատարիմ ծառայն 'ի պատերազմ ընդ բռնաւորին, յարեաւ տէրն ցուցանել նմա զպսակն յաղթութեան: Ի մենամարտիկ լինել վկային զարմացաւ տէրն մինչ նստեալն էր ընդ աջմէ, և յանչափ սիրոյն յարեաւ պսակել զնա. քանզի յաղթեաց դիմամարտին: Ի ժամուն յորում վկայն 'ի պատերազմի էր, ժողովեցան երկնային զօրքն և նայեցան 'ի նա. մեծ հանդէս եղև հրեշտակաց և մարդկան, զի երկու կողմն տեսողացն զարմացան ընդ նա: Հիացան հրեշտակքն ընդ քաջութիւն նորա, և տէրն յարեաւ շնորհել նմա զպսակս լուսեղէնս: Առաջին էր վկայս այս և սիրուն տեառն. վասն այնորիկ յարեաւ պսակել զնա և գովել: Եւ այսպիսի տեսեալ զնա Ստեփանոսի՝ պատմեաց ժողովրդեանն զտեսիլն հրաշալի:

Եւ իբրև լուան օրինազանց Հրեայքն զմեծութիւն բանից նորա, խցին զականջս իւրեանց իբրև զիժս՝ զի մի լուիցեն. վասն զի այս է սովորութիւն նոցա հանապազ ընդ վկայութեան գրոց՝ խնուլ զականջս իւրեանց և ոչ լսել ճշմարտութեան: Յայնժամ սրտմտեցան ուխտադրուժքն, և կրճտէին զատամունս իւրեանց 'ի վերայ նորա: Զարթեաւ 'ի նոսա հեռ և նախանձ

խաչին, և խոստանային սպանանել զնա որպէս զտէրն իւր։ Արին պիղծքն զնա 'ի մէջ ժողովրդեանն, և մեծաւ բարկութբ չարչարէին զնա. հանէին զնա յերուսաղէմէ տիրասպանէն. գայլն ապականիչ որ կիրթ է զենման ածային գառանցն։ Քարկոծ առնէին ըզմեծ վկայն Քսի, և հեղուին անողորմ զամբիծ արիւն նորա։ Ամպն մրրկեալ որոտաց անդ յանօրէնութե Հրէիցն, և փոխանակ անձրևի զքարինս էարկ 'ի վերայ ածատունկ ծառոյն. 'ի պարզս զկարկուտն իջուցանէին, և վաղվաղակի յաճախ քարամբքն զբարի պտուղն կռփէին։ Ի կատաղեալն իւրեանց զքարինս առեալ՝ կամէին քարկոծեալ զՔս. և զի ոչ եղեն ձեռնհաս քարկոծել, պահեցին զոխսն և հանին 'ի Ստեփանոս. զպակասութի չարչարանացն Քսի 'ի նա կատարեցին։ Եւ զոր ինչ 'ի խաչելութե վարդապետին ոչ արարին, վճարեցին յաշակերտն։ Որդւոյն այ խաչն էր պահեալ, և զայն կատարեցին. և թէպէտ ջանացան քարկոծել, բայց ոչ կարացին. քանզի ոչ ոք 'ի մարգարէիցն գրեաց՝ եթէ քարկոծի Քս։ Այլ զինչ և կրեաց 'ի Հրէիցն, ամենայնն գրեալ է. զեղին, քացախն և գեղարդն և խաչն և կռփին և խայտառակելն և հարկանելն և անարգելն։ Կամեցան Հրեայքն քարկոծել զնա. և վասն զի չէր գրեալ, խափանեցաւ ակամայութբ։ Ամբոխեցաւ բարկութի նոցա իբրև զալիս ծովու, և բազմութբ քարանցն իբրև յորձանս գետոց հեղձին զնախավկայն Քսի։ Զարայն կենաց զգլուխ արդեանց խաչելութեն քարամբք հարին, զի յառաջագոյն մտցէ յիշատեմարանս թագաւորին։ Տեսին զքաղցր պտուղն յոստ խաչին կախեալ, և ձգեցին քարինս իջուցանել զնա յերկիր. հարկանէին զհաւատարիմ վկայն Քսի, և չարչարէին զնա։ Եւ աղօթէր ածապէս վասն սպանողացն. ծունր արկեալ 'ի մէջ սպանողացն՝ իբրև զփրկելիս օրհնէր ըզնոսա։ Համբարձ զձայն իւր. տէր Յս, ընկալ զոգի իմ, և սպանողացն իմ մի յիշեր զմեղս զայս։ Այսպիսի քաղցրաճաշակ սէր 'ի խաչելութեն ծառոյ անտի է. զի խաչեցեալ տէրն մեր զայն ասաց, եթէ Հայր, թող դոցա, զի ոչ գիտեն զինչ գործեն։ Զայս լուեալ աշակերտին ուսաւ 'ի վարդապետէն, և նովին

սրբոյն աղօթեաց վասն սպանողացն։
Որդ նկարագրել զպատկեր ճառի սորա ոչ եմ բա֊
ւական. քանզի առաւել է գեղեցկութիւն սորա քան
զերանկս իմ։ Եւ ոչ եթէ յիմ նայի տեսանել և նկա֊
րագրել զպայծառութիւն իւր, այլ 'ի վեր յերկինս առ
ա̃ծային տեսլեամբն է կապեալ։ Գանձ նորա և սիրտ
և տեսութիւն 'ի վեր է ամենեւին, և պատկեր գեղեց֊
կութեան անդ իցէ. և անդ ո՞րպէս նկարագրեցից։ Հո֊
գին՝ որ կատարեաց զնա սքանչելի տեսլեամբն, և ե֊
հաս տեսանել զբարձրութիւն և զխորութիւն և զերկայ֊
նութիւն և զլայնութիւն։ Տեսանելով զՔ̃ն լցաւ հոգի
իւր յա̃ծային լուսոյն. և 'ի զուարճանալն նուաւ՝
կոխեաց[1] և կրեաց զչարչարանս մեծաւ ուրախու֊
թբ̃։ Արբեցաւ 'ի սիրոյն Ք̃ի մեծապէս, մինչև սի֊
րել զթշնամիսն նորա։ Այս է սէր՝ որ մեծ է քան
զյոյս և զհաւատս. վասն զի քարկոծէին զնա, և նա
օրհնէր զհարկանողսն իւր. և ինքն ընթացեալ յա֊
ռաջագոյն 'ի ճանապարհս չարչարանաց և արեան։
Օրհնեալ է Ք̃ս՝ որ ետ նմա զօրութիւն և յաղթութիւն
և պսակ. և նմա փառք յաւիտեանս. ամէն։

1 Միւս օրինակն ճոխեաց։

## Ի ՎԿԱՅՍՆ ԱՐԵՒԵԼԻՑ *

ՍԿՍԱՅՑ այսուհետեւ պատմել դողալով զչարչարանս որ եկին 'ի վերայ ազգիս մերոյ, զաւականս եւ զանարգանս զոր կրեցին ժողովուրդն մեր, եւ զանհնարին նեղութիւնս որ եկին 'ի վերայ աշխարհիս, եւ զդառն ժամանակն զոր եկաց 'ի վերայ մեր, զտանջանս բարկութեան եւ զխրատ[1] անողորմութեան, զգազանութիւն թագաւորաց եւ զամպարշտութիւն իշխանացն՝ որք յարձակեցան 'ի վերայ մեծազօր վկայիցն, եւ չարաչար հարուածովք հարին բարկութեամբ. որոց աներեւոյթ զօրութիւնդ 'ի բարձանց եհաս 'ի թիկունս, անպարտելի ցուցանել զնոսա 'ի համբերութեան իւրեանց: Այլ տեսիլ նեղութեանցն դառնագոյն էր, եւ երեւոյթ տանջանացն սոսկալի. ըստ այնմ զոր Երեմիաս ասէ, թէ լուռ լիցուք, զի տէր ա̄ծ կարկեցոյց, եւ արբոյց մեզ զջուր դառնութեան վասն մեղաց մերոց. սպասեցաք խաղաղութեան, եւ չիք ուրեք խաղաղութիւն. եւ ակն կալաք բարեաց, եւ հեռացան 'ի մէնջ: Զի եւ առիւծ յանտառէ մռմռեալ եւ գազանացեալ 'ի վերայ սակաւաւոր թուոյ հօտիս, եւ կոտորեաց որպէս եւ կամեցաւ, եւ ցրուեաց կորոյս ըստ ախորժակաց իւրոց. եւ զխոյս եւ զմաքիս առ ոտս կոխէր, եւ զորոջսն թունաւոր ձիրանամբքն պատառէր: Եւ քանզի այծեացն սեւացելոց ոչ մեղանչէր, բազում ոչխարք մարմառուտք վասն ապրելոյ 'ի նմանէ 'ի սեւացեալ գոյնն դարձան: Ո՜վ ազատութիւն անձնիշխան, որ ներկանէ զանձինս 'ի պէսպէս գոյնս յոր եւ կամի. եթէ կամի 'ի տգեղութիւն, եւ եթէ կամի 'ի սպիտակս. այլ գիտասցէ, զի սպիտակն 'ի փառս եւ 'ի պարծանս լինին. իսկ թուխն 'ի նախատինս եւ յանարգանս:

Սուր սուսերացն 'ի մարմնոց քահանայիցն ուտէր եւ քաղցնոյր, եւ յարենէ առաջնորդաց եկեղեցւոյ ըմ

* Ի Ճառընտրէն ԺԹ. և 'ի ԽԴ գրչագրէն Փարիզու, որ համառօտեալ է:

[1] Փարիզեանն ըխրատ:

պէր և ծարաւէր։ Քանզի հրաման սրոյն ել 'ի սաստիկ Թագաւորացն 'ի վերայ սրբոցն տաղնապաւ, և 'ի ձեռս Թշնամեացն որ ծարաւի էին արդարութե̃ արեան նոցա, մատնեցան. ըստ այնմ զոր Մովսէսն ասէ, եթէ Թշնամիք մեր եղեն մեզ դատաւորք, և առեալ յեղբարց և 'ի տոհմայնոց և 'ի բարեկամաց' նեղէին և հալածէին։ Եւ կատարեցաւ բան տեառն զոր ասաց, եթէ առեսցեն զձեզ յա̃մ տեղիս վասն անուան իմոյ, և մատնեսջիք 'ի ծնողաց և յեղբարց և յազգականաց և 'ի բարեկամաց, և սպանանիցեն 'ի ձէնջ. և մազ մի 'ի գլխոյ ձերոյ ոչ կորիցէ. և համբերութե̃ ստասջիք զոգիս ձեր։ Այս ա̃մ կատարեցաւ արդարեամբք առ վկայսն սուրբս և երանելիս։

Օ՜ ի՜նչ մահ անհնարին զոր ոչ ածին անօրէն դատաւորքն 'ի վերայ մեծազօր վկայիցն. կամ զո՞ր տանջանս դառնութե̃ Թողին Թշնամիքն եկեղեցւոյ, որ ոչ այնու զՃշմարիտն ծառայքն Քնի կրեցին. կամ զո՞ր չարչարանս [1] և զլլկանս Թողին Թշնամիք ժողովրդեանն ա̃յ, որ ոչ այնու զպնդակազմն և զպատերազմողսն չարչարեցին։ Զկէսս 'ի քաղց և 'ի ծարաւ Ճգնեցուցանէին, մինչև ծորէին մարմինք նոցա, և մեռանէին։ Զկէսս գլխիվայր կախէին, և 'ի միջօրեայ ժամանակին ոսկրաքանց առնէին և սպանանէին։ Զայլս քակելով զոտս Թիկանցն առ 'ի պրկել և 'ի ձգել բազում արանց' լուծանէին և սպանանէին. և զայլ ոմանս անհնարին գելոցօք խորտակէին զկողս և զոսկերս և սպանանէին։ Զոմանս 'ի ցուրտ և 'ի պարզ ընկենուին, մինչև սառուցեալ մարմինքն և մեռանէին. և զկիսոց կեռոցօք առ սակաւ սակաւ քարշէին զմարմինսն և սպանանէին։ Զկէսս չարաչար մորթէին և սպանանէին, և զկէսս սղոցէին ընդ մէջ և սպանանէին։ Զոմանս գայլխկանօք [2] ծակէին զպՃղուկս նոցա և սպանանէին, և կիսոցն եղէգն հերձեալ համգոյն հասակացն դնէին շուրջ և պնդէին լարիւք ընդ անդամսն, և ձգէին մի մի և հանէին հանդերձ մորթով և մսով և ջղովքն, և այնու սպանանէին. և ըզ-

1 Փարիզ. զՃշմարտն և զկրօ- ... տանջելով։ տանս ... 'ի քաղցոյ և 'ի ծարաւոյ
2 Փարիզ. Գէլէխանօք ... լարովք.

կեան քարամբք ծեծէին անողորմ և սպանանէին ։ Թող զայլ կտտանսն որով կտտէին . զի զունչսն հատանէին , զականջսն խլէին , զմատունսն կտրէին , զաչսն փորէին , զբարձս և զծունկս ուռամբք խորտակէին , և զայլս զբուռթոյ ոտիցն կախէին , և կիտոց խեցի ջեռուցեալ յանդամս ¹ դնէին և պնդէին . և կիտոց քուրձ լնուին մոխրով , և թաղէին 'ի ներքս զգլուխն ։ Ոմանց քացախ և մանանուխ արկանէին ընդ քիթսն , և զնոյն դարձեալ արկանէին ² յայլ վէրսն և շփէին ։ Կիտոցն առաղունս ընդ ընգնաբերանսն վարէին յանխնայ . և այլոց փշեղէն գաւազանօք նորոգէին զհարուածսն օր ըստ օրէ ։ Եւ դարձեալ յետ այսր ամ̃ի անհնարին չարչարանաց սրով զգլուխն հատանէին ։

Ամենահաստակք պատերազմողք , զօրաւորք զօրութբ̃ , առաքինեալք զինուն արդարութեան , մտեալք 'ի պատերազմ պատենազէն զինուն կազմութեան . որ ժամանեալ պնդակազմ մարտիւն առին զպսակեալ յաղթութիւնն յաւիտենական ։ Այս են չարչարանք սակաւ ժամուց և թուով աւուրց , որ ընկալան զմխիթարութիւն խոստմամբք պատրաստեալ յուսոյն , և առ 'ի սփոփութիւն ժամանակեայ վշտացն ։ Այս է ժամանակեայ տրտմութիւն զոր մոռացոյց անվախճան ուրախութիւն ։ Այս է սէր Ճշմարտից . որչափ մտանէ 'ի քննութիւն , եւս քան զեւս վառի և նորոգի . զի զօրութբ̃ հեռաւոր խոստմանցն յաղթեցին մերձաւոր տանջանացն ։ Ըստ այնմ՝ եթէ “Փորձեցեր զմեզ , ա̃ծ , և քննեցեր , որպէս քննի արծաթ . անցաք մեք ընդ հուր և ընդ ջուր , և հաներ զմեզ 'ի հանգիստ քո „ ։ Զի ժամանակեայ նեղութեամբ զյաւիտենական բարիսն ընկալցին 'ի Ք̃ս Յ̃ս 'ի Տէր մեր . որում փառք յաւիտեանս ։

1 Փարիզ . 'ի ծնօտսն ։
2 Փարիզ . ընդ այլ վէրսն ածէին . . . ընդ ընգաւնս ։

## Ի ՑԱՐՈՒԹԻՒՆ ՄԵՌԵԼՈՑ *

Մի՛ ողբ անհաւատասցի վասն յաւիտենական կենացն. քանզի թէ ոչ հովանի այնոցիկ էր, ոչ ինչ յեւիցս մնացեալ լինէր: Մի՛ վասն զի ոչ տեսանեմք զած՝ անհաւատասցուք. զի և ոչ զոգիս տեսանեմք՝ որ գործէ զկենդանութիւն մարմնոյ: Եթէ իցէ առանց հոգւոյ կեալ ումեք, է և առանց յաւիտենականին՝ որովհետև ած: Եթէ[1] տեսանեմք աչօք, տասցելոցն ոչ հաւատամք: Եթէ ոչ տեսանեմք զեղեալսն մեռեալ և յարուցեալ, յաղագս յարութեան ոչ ընդունիցիմք զհաւատ: Ամենայն մեռեալ 'ի վերայ երկրի, և ած կենդանի անճառելի զօրութեամբն: Ի բաց առ զգործս, և տեսցես զմարմնոյ մեռելութիւն: Որ տայ և առնու, ած է. ոչ 'ի հարկէ ետ, և ոչ զրկէ 'ի բաց բառնալով զբնութիւն: Ամենեցուն միջնորդելով պատրաստեաց. 'ի ձեռն նորա տայ և առնու որպէս կամի: Առնու, զի մի՛ զբնութիւն փոխանակ արարչին կարծեսցուք: Հաւաքէ զմանկունս և զծերս. քանզի բնութիւս ապաստաւոր լինի նմա, և ոչ հակառակի: Հաւաքէ զերիտասարդս պատանեկօք. վասն զի գիտէ բնութիւս զտկարութիւն իւր, և ոչ 'ի բաց կայ 'ի կոչողէն: Որ զբնութիւս կարգեաց զմարդկան, յարութիւն խոստացաւ. վասն զի անքանիցն բաւական զմերձակայս ևեթ կարգեաց: Եթէ կամի՝ բնութիւս դատարկանայ, և որքան կամի՝ յերկարէ զկենդանութիւն: Պարտ է հաւատալ՝ եթէ յառնեմք որպէս կամի. կորնչի մարմին զբազում ամս ցրուեալ յերկրի. այլ արասցէ ած կորստեանն, և 'ի շահ առնէ զկորուստն: Հուր՝ անյայտ զմարմնականս առնէ. այլ պահեալ[2] լինի հուր յածութեան. հրաման տայ ած հրոյն, և նա զիւր գործն դարձուցանելով անդրէն փոխարէ զմարմինսն զոր միանգամ սպառ: Ջուր ապականէ զյօղովս որ 'ի

* Ի Ճառընտրաց ԺԳ. Գ:

1 Միւս օրինակն. Եթէ ոչ տեսանէ ոք աչօք, տասցելոցն ոչ հաւատա- տամք:

2 Միւս օրինակն պարփակեալ լինի:

նմա անկանելն. այլ մերկանայ յիւրմէ զօրութենէն, մինչև 'ի բաց տացէ զոր էառն: Ասէ յառակսն. դըժոխք և կորուստ յայտնի են առաջի տեառն: Ընդէ՞ր մեք յարութեն ընդդէմ կամք:

Արդ մի՛ ոք 'ի մէնջ կործանեսցի ընդ մեռելոցն. քանզի հաւանեցուցանէ զմեզ ամենեցունց դատաւորն, քանզի մեռաւ և յարեաւ: Մի՛ խոտորեսցուք զյոյս մեր, զի մի՛ 'ի հողոյ զանհաւանութեն զչարախօսութին ընդունիցիմք. զո՞մ ինչ մեզ յառաջագոյն դրով տպաւորեաց ա՛ծ, եթէ լինի ճանապարհ վերըրատին հոգւոց մերոց 'ի մարմինս: Զենովք փոխեաց և զեղիա յափշտակեաց յերկրէ. և ընդէ՞ր մեք անհաւատութեամբ վաղճանիմք: Նա մինչ դեռ կենդանի էր, հրամայեաց և եղև. և ոչ բնութեն տկարացաւ, կամ մահ ընդդէմ եկաց: Զեղիա ամենևին յերկրէ յերկինս բնակեցոյց. և հաւաքեցաւ ապականութին մարմնոյն ակնարկութեամբ արարչին: Ունիմք զօրինակ անմահութեն կենդանեօք և վախճանեցելովք: Հաւատասցուք ասացելոց, որպէս ինչ լինելոցն իցէ մեզ: Զոր ինչ կամի, լինի. վասն այնորիկ պարտ և արժան է հաւատալ յայն՝ որ ասացն. զի եթէ ոչ կարէր առնել զոր կամին, թերևս արդեւք յոչ հաւատալն նմա ներէր: Ապա եթէ ետ մեզ փորձիւ զիւրոյ զօրութեն գործ, պահանջելոց է 'ի մէնջ զբան իւրոյ հաւատոյն: Եթէ ոչ ընձեռեաց[1] զհմտութին ճշմարտութեան իւրոյ, զանհաւատս իբրև զըպարտօղս տանջեսցէ: Կենդանի է Ենովք, և Եղիա ոչ վաղճանեցաւ. այլ թէպէտ և մեռանին, ոչ յորժամ մահ կամեսցի, այլ յորժամ ինքն հրամայեսցէ: Կայ Քս յարուցեալ 'ի մեռելոց, և զմահ ոչ տեսանէ. զի ինքն գործակից եղև, զի ապրեսցուք, և զի զյոյս յարութեն ստասցուք: Զնոսա կենդանիս հաւաքեաց, և զբիւրս այլս մահու մատնեաց. զնոսա 'ի կենդանութեն աւանդեաց մինչև ցորքան կամեսցի, և զվախճանեալսն 'ի դժոխս մատնեալ պահեաց. զնոսա յերկրէ փոխեաց, և զբազումս 'ի մարմնոց որոշեաց[2]: Արդ որպէս Ենովք

1 Միւս օրինակն ընդդիմանայ … ըղդարարողս պարծելոց է: մինչ հող համարեցին, և հոգին՝ խոխոմն:

2 Միւս օր. յաւելու. Մար-

և Եղիա դարձեալ են յաշխարհ գալոց, նոյնպէս և հոգիքն 'ի մարմինս եկեսցեն ։

Կամիս ուսանել թէ հուր աստուծով պահէ և ոչ ապականէ զմարմինս. ընթերցիր զերից մանկանցն զիրս հնոցին ։ Կամիս ուսանել եթէ ջուր զհաւատ պահէ զարարչին. հարց զկարմիր ծովն, և ասէ քեզ։ Ցանկա՞ս ուսանել թէ որպէս անկորուստ պահէ ըզմարմինս. հարց զՅովնան և պատմէ քեզ։ Ետես զերեզման խոր զմարմնոյ բնութեան զգազանին, և սքանչացաւ զիւր բնութիւնն պահեալ յաղագս տեառն ։ Ամենեքեան զարհուրին յարարչէն. վասն զի նոքա նախախնամութեամբ նորա և կամօք գոյացան ։ Զխոնաւբնութեան կարմիր ծովուն ցամաք արար, ցուցանելով եթէ կարէ զմեռեալս յարուցանել ։ Զերկիր ցամաք՝ առ ջրհեղեղաւն խոնաւ արար. և զիարդ ոչ կարիցէ դարձեալ յարութիւն առնել մեռելոց ։ Յեգիպտոս զերկիրն երկիր եցոյց. զԻսրայել ընկալաւ իբրև 'ի գիրկս, զի մի վնաս ինչ կրեսցեն 'ի հրոյ. և ընդէ՞ր անհաւատամք 'ի մեռելոց յառնել։ Զերկիր՝ հնոց հրոյ եցոյց բոցակիզեալ, զի ծանիցուք՝ եթէ նա ըզբնութիւս նոցա արար ։ ԶՍոդոմ բոցակիզեալ տոչորեաց. և դատաստանք միայն յանհաւատս ։ Ոչ առժամայն եղև տարերցն փոփոխումն, այլ յետ երից հազար ամաց այնոքիկ կատարեցան. զի ցուցցէ զփոփոխումն նոցա ոչ ըստ բնութեան, այլ ըստ այ հրամանին ։ Եւ եթէ առաջին և մեծամեծ իրօք տարերքս փոփոխեցան յոր ինչ ած կամեցաւ, ընդէ՞ր և մեք ոչ հաւատամք՝ եթէ մահկանացու մարմինքս անմահ լինելոց են ։ Քանզի եթէ փոփոխեցաւ ջուր յարիւն յԵգիպտոս, և դարձեալ յարենէ 'ի ջուր եղև, զիա՞րդ կարասցուք ոչ հաւատալ այ՝ եթէ առնելոց է զապականացուս անապական ։ Էր և Ադամ 'ի սկզբանն ջուր մաքուր, յաղագս անմահութեան ասեմ. յանցանելովն եղև արիւն վասն ապականացու բնութեան ընդունելոյ ։ Առաքեալ՝ մարմին և արիւն կոչէ զամուսնութիւն մանկածնութեան. այլ զի 'ի յարութեան ոչ կանայս առնեն և ոչ արանց լինին, վասն այսորիկ զարքայութիւն երկնից ժառանգել ոչ կարեն ։ Ոչ զմարմինն 'ի բաց եհան յարքայութենէն զբնութիւն մարդկան,

այլ զապականութիւն առաց և ոչ զմարմին. և զեկոյց զամուսնութիւն հարսանեաց։ Ասելով զապականութիւն, զհերձուածոյն գուշակեաց՝ որ ամուսնութիւն 'ի հանդերձեալն քարոզեն։

Կամիմ ցուցանել յաղագս մարմնոյ բնութեանս, զի յարքայութիւն այ լինելոց է։ Ասէ Առաքեալ, եթէ կերպարանակից Քրի յարութեանն լինելոց եմք։ Եւ զՔս Ստեփանոս ընդ աջմէ Հօր կացեալ ճանաչէր։ Անծանօթ 'ի մարմնոյ լինէր. քանզի և Ստեփանոս ետես զՔս նախ քան զյարութիւն։ Եթէ ծանեաւ զՔս 'ի կերպարանս մարմնոցն հաւանէր։ Եւ եթէ ըստ Քրի յառնելոց եմք, ով ոք անհաւատասցի եթէ մեռեալ մարմինք զանապականութիւն ոչ ժառանգեն։ Եւ զաշակերտան ինքն տէրն հաւանեցոյց ասելովն, թէ ոգի՝ մարմին և ոսկերս ոչ ունի, որպէս զիսս տեսանէք ունելով։ Եւ զիարդ ոմանք զքարոզութիւն այ ընդ իւրեանց զօրութեան հաւասարելով ոչ ամաչեն։

Գիտէ երկին զզօրութիւն արարչին, և հնազանդի բանի հրամանի նորա։ Մատոյց երբեմն և հրէից յանապատին զոր ինչ երկիր կարգեցաւ սպասաւորել մարդկան։ Կերակրեաց երկին զմարմինս զ'ի յերկրէ լինելոց՝ զոր ինչ երկրի մօրս ած սնուցանել հրամայեաց։ Ոչ ցօղ 'ի սերմանց աճեցուցին եւ երկրին, այլ կերակուրս պատրաստականս առաքեաց մարդկան։ Գիտէր եթէ 'ի յարութեան յերկնի բնակեն, և իբրև յառաջանալով զնոսա սնոյց։ Ոչ երկանի կարօտացաւ և ոչ աղօրւոյ, այլ գործեցեալ զայն՝ 'ի վայր առաքեաց։ Ուսցուք յայնմանէ՝ եթէ առանց երկանոյ մարմինքս 'ի հանդերձելումն կեան։ Ոչ երկրի պէտք են և ոչ մշակի կերակրոյ իրք. զի որքան օր էր՝ ըզհունձս ընդունէին. ոչ զպտուղս, այլ զմարմնոյ[1] կերակուրս։ Ուսցուք յեղելոցս զինչ է անախտունի յարութեան։ Անդ ծանիցուք 'ի պատմելոցն այսու զինչ է անհոգութիւն յաւիտենական կենացն։ Ոչ հնացան հանդերձքն՝, զի ոչ երկրաւոր զգեստուց կարօտանամք 'ի հանդերձեալն. ոչ հնացան կօշիկքն, զի և ոչ աղ-

[1] Միւս օրինակն զանմարմին ... ծանիցուք 'ի պատահելոյն ... զի և ոչ անփափք ։

քատ լինելին պահպանութեան, և ոչ ոտն զքարի հարկանիցի։ Ուտէին զմանանայն ոչ ծասկելով, զի 'ի յարութեան 'ի հոգևոր կերակուրն վայելելոց եմք։ Ոչ 'ի բաց եհան ած զմարմնական զգեստն, ոչ սպաս տանելով կերակրոյ. զի ցուցցէ եթէ բոլորովին յարուցանէ մարմնոյ։ Ընկալաւ զմարմնոյ միջնորդութի 'ի սպասաւորութի բարեպաշտութե հանդերձ հոգւով. ցուցանելով եթէ յօրինակի իւրոյ շնորհին յարուցանէ զբովանդակ մարմինս։ Ամենեցուն սպասաւոր լինէր երկին, մանկանց և տղայոց տայր զկերակուրն, զի ծանիցուք՝ եթէ ած բնութի յարութեան յանդիման կայցէ։ Կաթնակերքն իբրև զկաթն զմանանայն 'ի մարցն ծծէին, զի և ինքեանք յարիցեն յառաւելութի սքանչելեացն։

Շնորհն այ ելից վայելչութբ զյարութին. քանզի ած յաղագս նորա տպաւորեցան։ Գիտեմ զփայտն՝ որ ունի զօրինակ յարութեան. այս է գաւազանն Ահարոնի՝ որ ծաղկեցաւ. քանզի մեռաւ զառժամանակեայ բնութիւնն, այլ կենդանացաւ անձառելի զօրութբ 'ի ձեռն ածային շնորհին։ Քան զյոլով գաւազանս պատուականագոյն են այ մարմինք մարդկան. քանզի վասն սոցա գաւազանքն բողբոջեցին։ Եւ եթէ վս Ահարոնի գաւազանն ծաղկեցաւ, յաղագս Ահարոնի և մարմինն նորա յարիցէ. եթէ 'ի փառս քահանայութեան Ահարոնի զգաւազան 'ի մեռելութէ յանդիման կացոյց կենդանի, յաղագս յաւիտենական կենաց նորա և զմեռեալ մարմինն յարուցանէ։ Ոչ այնպէս գաւազանն սիրելի էր Ահարոնի. որպէս մարմինն։ Այմենայն ուրեք զսիրելագոյնն փառօք պատուեսցէ. և [1] այնպէս խնամք տանի, զի իցէ և կեցցէ. ապա ուրեմն որ զհրաշագոյնն արար, զնուազագոյնն առաւել ևս արասցէ։ Գաւազանն էր առանց արմատոյ և կենդանացաւ. նոյնպէս և մարմինն առանց արգանդի դարձեալ կեցցէ։ Ոչ ևս եկաց գաւազանն 'ի վերայ երկրի ներգործելով բնութեան. և մեռեալն առանց իրիք պատճառի յարիցէ։ Ի տան

1 Միւս օրինակն ոչ այնպէս է ա– հրաշափառագոյն արար զնուազն ... տայն խնամ տանի ... ապա ուրեմն արասցէ և զկենդագոյնն ։

կայր գաւազանն բազում ժամանակօք, զհիւթ խո-նաւութեան 'ի բաց լքանելով. և մարմինք 'ի գերեզ-մանս կան և մնան բազում ժամանակս դադարեալ 'ի կենդանութենէ։ Ոչ յօդս էր գաւազանն և ոչ մերձ 'ի ջուր, այլ 'ի յոյժ ցամաքութենէ բողբոջեաց. և մե-ռեալք ոչ ունին զհիւթ կենդանութեան և առժամայն ա՟յ ասելով յառնեն։ Կինն Ովսեայ՝ նուն Հեղեայ ըզ-մահու ունէր զօրինակ անդ ծնանելով մանուկ. և մահ 'ի յարութեան զա՟մ ազգայինս արձակեսցէ։ Նա ծնաւ և մեռաւ. և սա յառաջ ածեալ զմեռեալս՝ վախճանեսցի։ Ի նմին աւուր խնդութի և տրտմու-թի. նոյնպէս և 'ի յարութեան անմամանիցն սուգ է, և արդարոցն ցնծութի։ Ամուլ էր և Հռեբեկա, որ-պէս և յարութին անպտուղ է. 'ի վախճանի ծնաւ, նոյնպէս և յարութին արասցէ։ Ի միում երկուսն երկու մանկունս ծնաւ զչար և զբարի. նոյնպէս և յարուին։ Վայ այնոցիկ՝ որ Յեսաւայ բաժինն լինիցին, զի զնզովս ժառանգեսցեն։ Երանի որ 'ի վիճակին Յակոբայ գտցի, զի զյաւիտենական կեանս ժառան-գեսցէ։ Որում և մեք արժանասցուք շնորհօքն Ք՟ի ա՟յ մերոյ. ընդ որում Հօր և սուրբ Հոգւոյն փառք իշխանութի և պատիւ յաւիտեանս յաւիտենից. ամէն։

## ՎԱՍՆ ԴԱՏԱՍՏԱՆԻՆ
## ԵՒ ՄԻՒՍԱՆԳԱՄ ԳԱԼՍՏԵԱՆ *

*ԼՍԿԱՑՔ ամենեքեան, եղբարք, լուարուք ինձ և խորհրդակցութե՟ իմոյ մեղաւորի և տգիտի Եփրեմի. քանզի ժամանեաց մեզ օրն այն ահաւոր և մեծ. և մեք, սիրելիք, զքօսանիմք՝ ոչ զմտաւ ածելով զփոքր ժամանակս զայս, և փութալ հաշտեցուցանել զա՟ծ: Ահա աւուրք և ամիսք և տարիք իբրև զերազ անցանեն և իբրև ստուեր երեկորի. զի եկեսցէ վաղվաղակի ահաւոր և մեծ գալուստն տեառն: Արդար իսկ և ահաւոր օրն այն մեղաւորացն, և որք ոչ կամեցան առնել զկամս այ՟ և ապրել: Արդ աղաչեմ զձեզ, եղբարք հարազատք, եկայք 'ի բաց ընկեսցուք զհոգս երկրաւոր իրացս. վասն զի ամ՟ անցանէ, բովանդակ ապականի, և ոչ ինչ մեզ օգնէ 'ի ժամուն յայնմիկ, բայց գործք բարիք զորս աստ ունիմք. քանզի հանդերձեալ է իւրաքանչիւր ոք բառնալ զիւր գործն և զխօսս առաջի բեմբին ահաւոր դատաստանին այ՟: Դողայ սիրտ, և երիկամունք այլայլին յորժամ լինի անդ գործոցն յայտնութի՟, խորհրդոց և խօսից: Մեծ երկիւղ է, եղբարք. մեծ դողումն է, սիրելիք: Ո՞ արդեօք ոչ զարհուրեսցի. ո՞ ոչ դողասցէ, սգասցի և լացցէ. զի անդ յայտնելոց է զոր ինչ գործեցաք 'ի ծածուկս և 'ի խաւարի:*

*Իմացարուք զայս զոր ձեզ ասեմ, և տամ հաւատատութի՟ ձերոյ սիրոյդ: Ծառք պտղաբերք 'ի ներքուստ 'ի յինքեանց 'ի ժամանակի իւրեանց բողբոջեցուցանեն զպտուղս հանդերձ տերևօք: Ո՞ւստ ուստեք ծառք զգենուն զիւրեանց քաջ վայելչութի՟ն. այլ ներքուստ յինքեանն հրամանաւ այ՟ բերեն զպտուղն ըստ բնութե՟ն: Նոյնպէս և յաւուրն յայնմիկ յահաւորի առաջի արկանին ամ՟ մարմինք մարդկան*

* Ցերկուց օրինակաց. միոյն ևեթ Թուականն յայտնի ՉՁԵ:

զոր ինչ գործեցին բարի կամ չար․ և ընդունի իւ-
րաքանչիւր ոք յանդիման բեմբին ահաւոր դատաւո-
րին զգործս իբրև զպտուղ, զխօսս իբրև զտերև։ Ար-
դարք բառնան զպտուղ գեղեցիկ վայելուչ․ սուրբք
ընդունին զպտուղ բարի․ և քաջազուարճ՝ վկայք բե-
րեն զտանջանացն և զչարչարանացն զպարծանս համ
բերութե̃․ կրօնաւորքն բառնան զճգնութիս, զժուժ-
կալութիս, զպաղատանս։ Արք մեղաւորք, ամբա-
րիշտք և պիղծք ընդունին անդ զպտուղ վատթար և
զապականեալ լի ամօթով և լալով և ողբով զորդն
անքուն յանշէջ հուրն։ Ահագին է անդ դատաստանն,
ո՛վ եղբարք․ վասն զի առանց վկայից յայտնին գործքն
և խօսքն, խորհուրդք և միտածութիւնք, յորժամ մերձ
կայցեն հազարք հազարաց և բիւրք բիւրուց քե-
րովբէից և սերովբէից, արդարոց, սրբոց և մարգա-
րէից և առաքելոց։

Արդ ընդէ՞ր հեղգամք․ քանզի ժամանակ եհաս
և օրն մերձեցաւ, յորժամ զգաղտնիս մեր զա̃մ ա-
հաւոր դատաւորն 'ի լոյս ածիցէ։ Եթէ գիտէաք
զինչ մեր առաջի կայ, լայաք արդեւք յա̃մ ժամ 'ի
տուէ և 'ի գիշերի աղաչելով զա̃ծ, զի փրկեսցէ զմեզ
յամօթոյն յայնմանէ և յաւիտենական խաւարէն։
Կարկի բերանն մարդոյն առաջի բեմբին․ դողան ա̃մ
արարածք և նոքին իսկ գունդք սրբոց հրեշտակաց 'ի
փառաց նորա գալստեանն։

Ո՞ինչ եւս ասեմք նմա յաւուրն դատաստանի, ե-
թէ 'ի ժամանակիս յայսմիկ ծուլանայցեմք․ քանզի
նա երկայնամիտ էր։ Որ զամենեսեան զմեզ կոչէ յիւր
արքայութիւն, բան 'ի մէնջ պահանջէ զպտղերգութե̃ն[1]
սուղ ժամանակիս այսորիկ։ Եւ ինքն մեզ ասէ․ յա-
ղագս ձեր մարմնացայ, վասն ձեր մարմնապէս 'ի վե-
րայ երկրի գնացի, ձեր աղագաւ տանջեցայ, յաղագս
ձեր թուք առի, վասն ձեր ապտակեցայ, յաղագս
ձեր խաչեցայ, ձեր աղագաւ 'ի վերայ փայտին քա-
ցախ արբի, զի զձեզ արարից ո̃րս և երկնայինս։ Զիմ
արքայութիւն ձեզ շնորհեցի, զիմ դրախտն ձեզ պար-
գևեցի․ զամենեսեան եղբարս իմ պատուեցի, Հօր

1 Միւսն զպտղաբերութիւնն։

ընծայեցի զձեզ, զհոգիս առաքեցի. առաւել ևս քան զայս ա̃մ այլ զի՞նչ արդեօք ունէի առնել և ոչ արարի ձեզ, զի դուք ապրեսջիք. զյօժարամտութիւն[1] միայն ոչ բռնադատել, զի մի՛ 'ի հարկէ իցէ ձեր փրկութիւն։ Ասացէք, մեղաւորք և մահկանացուք ըստ բնութեանդ. զի՞նչ դուք չարչարեցայք վասն իմ տեառնս՝ որ չարչարեցայ վասն ձեր։ Ահա պատրաստեցի զարքայութիւն և զկեանս, զհանգիստ և զուրախութիւն և զտանջանս յաւիտենականս յարտաքին խաւարին, ուր կամի իւրաքանչիւր ոք երթալ իշխանութ̃ իւրով։

Ինկայք ամենեքեան երկրպագցուք նմա, և լացցուք առաջի արարչի տեառն մերոյ ասելով. ո՛ տէր, զայդ ա̃մ իբրև զա̃ծ համբերեցեր յաղագս մեր. բայց մեք մեղաւորքս անարգեմք յա̃մ ժամ զբարեգործութիս։ Աստուած ես անսկիզբն բնութ̃, անհասանելի, անչարչարելի, անկարօտ. հաճոյ թուեցաւ քո՛ւմ չարչարանօք խաչին փրկել զմեղաւորս՝ որ ըզքեզ ոչ ճանաչէին. պարգևեցեր նոցա զլոյս գիտութեդ։ Արդ զի՞նչ ևս տացեն քեզ ազգ մեղաւորաց՝ անհասանելոյդ ա̃յ, բարւոյդ և գթածիդ առ ամենեսեան. որք են յօժարութ̃ իւրեանց ամբարիշտք ոչ ըստ բնութեն, զի նախ քան զապրելն մեր ամբարիշտ էր ա̃մ ազգ, և դարձեալ զկնի մեղաւորք եմք մերով յօժարութ̃ք։ Իսկ դու, տէր, նոյն իսկ ես յա̃մ ժամ բարի և բազմագութ, ահաւոր և փառաւորեալ, յաւիտենից արարիչ. և բառնաս 'ի սկըզբան դժուարութե մերոյ յաղագս յոլով գթութեց քո զոր ցուցեր 'ի մեզ յորդիս մարդկան։ Յաղթեցար, ա̃ծ, 'ի սիրոյ քումմէ, և 'ի ն̃ք գթութեց մերձեցար 'ի խաչն յաղագս փրկութե ա̃մ աշխարհի։ Ի քումմէ շնորհէ ուսաք զայս ասել առաջի փառաց քոց. զի եթէ ոչ էիր յաղթեալ 'ի քումմէ գթոյդ, Ք̃ս, զքեզ ոչ մատուցանէիր յաղագս մեղաւորաց զենումն և պատարագ։ Լցան, ով տէր, միտք ծառայի քո 'ի քաղցրութեն շնորհի քո և սիրոյ. յարաժամ քաղցրանան, միշտ լուսաւորին, յաճախապէս հաստատին. յարաժամ անարգեն, և 'ի դառնութե զկնի

1 Միւսն զյօժար մտաւորութիւնն ։

յանօրինացն ։ Իսկ նա զգեցեալ էր զհոգին ս՟բ , և լի էր շնորհօք և հաւատովք , և ոչ երկնչէր 'ի շանցն՝ որ պատեալն էին զնա ։ Եկեալ ա՟ծային շնորհացն և իջեալ 'ի վերայ նորա , և եղև լուսափայլ պատկեր նորա իբրև զհրեշտակի ։ Զօրութ՟ի Ք՟ի բնակեալ էր 'ի նմա , և նովաւ պայծառանայր տեսիլ նորա 'ի մէջ ապանողացն ։ Ոչ երկնչէր 'ի մահուանէ ամենևին ․ և վկայէ լուսափայլութ՟ի երեսաց նորա ։ Լի էր հոգև որ տեսլեամբ , և արժան էր լինել վկայ Որդւոյն ա՟յ ։ Եւ 'ի հարցանել նոցա վասն Յ՟ի , լուսաւորեցաւ և պայծառացաւ տեսիլ նորա ․ զարդարեցաւ ա՟ծային շնորհօքն , զի տեսանէին զնա իբրև զհրեշտակ լուսոյ , և զարմանային յոյժ ։

Սկսաւ քահանայապետն խօսել ընդ նա՝ եթէ արդարեւ այդ այդպէս ճշմարի՞տ են վասն քո ։ Պատասխանի ետ ս՟բն անիրաւին յօրինաց ցուցանել նմա եթէ ճշմարտապէս Յ՟ս է ժառանգն Հօր ։ Պատմէր առաջի զրպարտողացն զկտակն Հօր , ծանուցանել նոցա եթէ ով է ժառանգ և Որդի ։ Ցանդիմանեաց զնոսա՝ եթէ Հայրն ճշմարիտ ընդունի զՈրդին իւր սիրելի ։ Եւ նոքա խստապարանոցք և կարծրամիտք անարգէին զնա ։ Պատմեաց առաջի նոցա զՄովսէս , որով պարծէին , յայտնապէս քարոզ Որդւոյն ա՟յ ։ Իբրև զզօրապետ 'ի դասու եկաց ընդդէմ ձախակողմանն , և քաջութ՟բ մարտնչէր փոխանակ փրկչին մերոյ ։ Եւ տեսեալ թագաւորին զքաջութիւն իւրոյ զինուորին երևեցաւ նմա՝ առաւել զօրացուցանել զնա 'ի վերայ ախոյանին ։ Ծածուկ արքայն պատերազմող ծառային վասն այնորիկ տեսանելի եղև , զի մի թուլասցի 'ի մէջ դասուցն ։ Զօրաւոր պատերազմող էր , զի առաջին եմուտ 'ի ճակատամարտին ։ Հրաշափառ երևեցոյց զթագն նորա , զի ընդդէմ կացցէ և մի լիցի անժոյժ՝ կալ 'ի մեծ արհաւիրսն որ յարեաւ 'ի վերայ նորա ։ Եւ յորժամ ետես նա զփառս թագաւորին 'ի բարձունս , սկսաւ պատմել զտեսիլն առաջի ուրացողացն ․ ահաւասիկ տեսանեմ զերկինս բացեալ , և զՈրդի մարդոյ զի կայ ընդ աջմէ Հօր ։ Ահա տեսանեմ զոր խաչեցէքն 'ի Գողգոթայ , զի անկեալ կան առաջի նորա զօրքն գաբրիէլեան ։ Ցայնմ Յիսուս զոր

ուրացայքն առաջի Պիղատոսի, ահա պատկառեն 'ի նմանէ դասքն Միքայելի ։ Ահա 'ի գլուխս բարձանց կոխէ ամենակալ տէրն, և սարսեն 'ի նմանէ իշխանութիւնք լուսեղէնք ։ Ահա կայ ընդ աջմէ Հօր էակիցն իւր. և ոչ ինչ կայ ընդ ինքն և ընդ Հայր, բայց միայն ինքն միայն ։

Նախիտք էր թագաւորին մեծի ցուցանել զփառսն իւր, որ մարտնչէր փոխանակ յաղթութեան նորա ։ Տեսեալ վկային զտէրն՝ զի կայր ընդ աջմէ Հօր. և ընդէ՞ր ոչ ետես զնա նստեալ ընդ աջմէ Հօր՝ այլ կանգնեալ. զի ինքն Հայր ասաց ընդ էակից Որդին՝ թէ նիստ ընդ աջմէ իմմէ ։ Եւ դարձեալ՝ թէ նստոյց զնա 'ի վերոյ քան զերկինս ընդ աջմէ իւրմէ ։ Եւ դարձեալ՝ թէ տեսանիցէք զՈրդի մարդոյ նստեալ 'ի վերայ ամպոց ։ Եւ աստ միայն ասէ՝ զի կայր ընդ աջմէ ։ Եւ ոչ եթէ առանց պատճառի է, զոր պարտ է իմանալ ուսումնասիրաց՝ թէ ընդէր ետես զնա Ստեփանոս յոտն կացեալ ։ Քանզի յորժամ եմուտ հաւատարիմ ծառայն 'ի պատերազմ ընդ բռնաւորին, յարեաւ տէրն ցուցանել նմա զպսակն յաղթութեան ։ Ի մենամարտիկ լինել վկային զարմացաւ տէրն մինչ նստեալն էր ընդ աջմէ, և յանչափ ուրոյն յարեաւ պսակել զնա. քանզի յաղթեաց դիմամարտին ։ Ի ժամանակ յորում վկայն 'ի պատերազմի էր, ժողովեցան երկնային զօրքն և նայեցան 'ի նա. մեծ հանդէս եղև հրեշտակաց և մարդկան, զի երկու կողմն տեսողացն զարմացան ընդ նա ։ Հիացան հրեշտակքն ընդ քաջութիւն նորա, և տէրն յարեաւ շնորհել նմա զպսակս լուսեղէնս ։ Առաջին էր վկայս այս և սիրուն տեառն. վասն այնորիկ յարեաւ պսակել զնա և գովել ։ Եւ այսպիսի տեսեալ զնա Ստեփանոսի՝ պատմեաց ժողովրդեանն զտեսիլն հրաշալի ։

Եւ իբրև լուան օրինազանց Հրեայքն զմեծութիւն բանից նորա, խցին զականջս իւրեանց իբրև զիժս՝ զի մի լուիցեն. վասն զի այս է սովորութիւն նոցա հանապազ ըստ վկայութեան գրոց՝ խնուլ զականջս իւրեանց և ոչ լսել ճշմարտութեան ։ Յայնժամ սրտմտեցան ուխտադրուժքն, և կրճտէին զատամունս իւրեանց 'ի վերայ նորա ։ Զարթեաւ 'ի նոսա հեռ և նախանձ

խաչին, և խոստանային սպանանել զնա որպէս զտէրն իւր։ Ածին պիղծքն զմին 'ի մէջ ժողովրդեանն, և մեծաւ բարկութ՟բ չարչարէին զնա. հանէին զնա յերուսաղէմէ տիրասպանէն. գային ապականիչ որ կիրթ է զենման ա՟ծային գառանցն։ Քարկոծ առնէին ըզմեծ վկայն Ք՟ի, և հեղուին անողորմ զամբիծ արիւն նորա։ Ամպն մրրկեալ որոտաց անդ յանօրէնութե Հրէիցն, և փոխանակ անձրևի զքարինս էարկ 'ի վերայ ա՟ծատունկ ծառոյն. 'ի պարզս զկարկուտն իջուցանէին, և վաղվաղակի յաճախ քարամբքն զբարի պտուղն կափէին։ Ի կատաղեալն իւրեանց զքարինս առեալ՝ կամէին քարկոծեալ զՔ՟ս. և զի ոչ եղեն ձեռնհաս քարկոծել, պահեցին զոխն և հանին 'ի Ստեփաննոս. զպակասութի չարչարանացն Ք՟ի 'ի նա կատարեցին։ Եւ զոր ինչ 'ի խաչելութե վարդապետին ոչ արարին, վճարեցին յաշակերտն։ Որդւոյն ա՟յ խաչն էր պահեալ, և զայն կատարեցին. և թէպէտ ջանացան քարկոծել, բայց ոչ կարացին. քանզի ոչ ոք 'ի մարգարէիցն գրեաց՝ եթէ քարկոծի Ք՟ս։ Այլ զինչ ևս կրեաց 'ի Հրէիցն, ամենայնն գրեալ է. զեղին, քացախն և գեղարդն և խաչն և կափիլն և խայտառակելն և հարկանելն և անարգելն։ Կամեցան Հրեայքն քարկոծել զնա. և վասն զի չէր գրեալ, խափանեցաւ ակամայութ՟բ։ Ամբոխեցաւ բարկութի նոցա իբրև զալիս ծովու, և բազմութ՟բ քարանցն իբրև յորձանս գետոց հեղձին զնախավկայն Ք՟ի։ Զարայն կենաց զգլուխ արդեանց խաչելութեն քարամբք հարին, զի յառաջագոյն մտցէ յիշատակարանս թագաւորին։ Տեսին զքաղցր պտուղն յաստ խաչին կախեալ, և ձգեցին քարինս իջուցանել զնա յերկիր. հարկանէին զհաւատարիմ վկայն Ք՟ի, և չարչարէին զնա։ Եւ աղօթէր ա՟ծապէս վասն սպանողացն. ծունր արկեալ 'ի մէջ սպանողացն՝ իբրև զսիրելիս օրհնէր ըզնոսա։ Համբարձ զձայն իւր. տէր Յ՟ս, ընկալ զոգի իմ, և սպանողացն իմ մի յիշեր զմեղս զայս։ Այսպիսի քաղցրաճաշակ սէր 'ի խաչելութեն ծառոյ անտի է. զի խաչեալ տէրն մեր զոյն ասաց, եթէ Հայր, թող դոցա, զի ոչ գիտեն զինչ գործեն։ Զայս լուեալ աշակերտին ուսաւ 'ի վարդապետէն, և նովին

սիրովն աղօթեաց վասն սպանողացն ։

Արդ նկարագրել զպատկեր ճառի սորա ոչ եմ բաւական․ քանզի առաւել է գեղեցկութիւն սորա քան զբանս իմ։ Եւ ոչ եթէ յիմ նայի տեսանել և նկարագրել զպայծառութիւն իւր, այլ 'ի վեր յերկինս առածային տեսլեանն է կապեալ։ Գանձ նորա և սիրտ և տեսութիւն 'ի վեր է ամենևին, և պատկեր գեղեցկութեան անդ իցէ․ և անդ որպէս նկարագրեցից։ Հոգին 'որ կատարեաց զնա սքանչելի տեսլեամբն, և եհաս տեսանել զքաղցրութիւն և զխորութիւն և զերկայնութիւն և զլայնութիւն։ Տեսանելով զՔս լցաւ հոգի իւր յածային լուսոյն․ և 'ի զուարճանալն նովաւ կոխեաց[1] և կրեաց զչարչարանս մեծաւ ուրախութեամբ։ Արբեցաւ 'ի սիրոյն Քի մեծապէս, մինչև սիրել զթշնամիսն նորա։ Այս է սէր՝ որ մեծ է քան զյոյս և զհաւատս․ վասն զի քարկոծէին զնա, և նա օրհնէր զհարկանողսն իւր․ և ինքն ընթացեալ յառաջագոյն 'ի ճանապարհս չարչարանաց և արեան։ Օրհնեալ է Քս՝ որ ետ նմա զօրութիւն և յաղթութիւն և պսակ․ և նմա փառք յաւիտեանս․ ամէն։

1 Միւս օրինակն ջախջեաց ։

# Ի ՎԿԱՅՍՆ ԱՐԵՒԵԼԻՑ *

ՍԿՍԱՅՑ այսուհետեւ պատմել դողալով զչարչարանս որ եկին 'ի վերայ ազգիս մերոյ, զաւականս եւ զանարգանս զոր կրեցին ժողովուրդն մեր, եւ զանհնարին նեղութիւնս որ եկին 'ի վերայ աշխարհիս, եւ զդառն ժամանակն զոր եկաց 'ի վերայ մեր, զտանջանս բարկութե եւ զխրատ[1] անողորմութե, զգազանութի թագաւորաց եւ զամպարշտութիս իշխանացն՝ որք յարձակեցան 'ի վերայ մեծազօր վկայիցն, եւ չարաչար հարուածովք հարին բարկութբ. որոց աներեւոյթ զօրութիդ 'ի բարձանց եհաս 'ի թիկունս, անպարտելի ցուցանել զնոսա 'ի համբերութեն իւրեանց։ Այլ տեսիլ նեղութեցն դառնագոյն էր, եւ երեւոյթ տանջանացն սոսկալի. ըստ այնմ զոր Երեմիաս ասէ, թէ լուա լիցուք, զի տէր ա̃ծ կարկեցոյց, եւ արբոյց մեզ զջուր դառնութե վասն մեղաց մերոց. սպասեցաք խաղաղութե, եւ չիք ուրեք խաղաղութի. եւ ակն կալաք բարեաց, եւ հեռացան 'ի մէնջ։ Զի եւ առիւծ յանտառէ մռմռեալ եւ գազանացեալ 'ի վերայ սակաւաւոր թուոյ հօտին, եւ կոտորեաց որպէս եւ կամեցաւ, եւ ցրուեաց կորոյս ըստ ախորժակաց իւրոց. եւ զխոյս եւ զմաքիս առ ոտս կոխէր, եւ զորոջան թունաւոր ձիրանամբքն պատառէր։ Եւ քանզի այծեացն սեւացելոց ոչ մեղանչէր, բազում ոչխարք մարմառոտք վասն ապրելոյ 'ի նմանէ 'ի սեւացեալ գոյնն դարձան։ Ո՛վ ազատութի անձնիշխան, որ ներկանէ զանձինս 'ի պէսպէս գոյնս յոր եւ կամի. եթէ կամի 'ի տգեղութիւն, եւ եթէ կամի 'ի սպիտակս. այլ գիտասցէ, զի սպիտակն 'ի փառս եւ 'ի պարծանս լինին. իսկ թուխն 'ի նախատինս եւ յանարգանս։

Սուր սուսերացն 'ի մարմնոց քահանայիցն ուտէր եւ քաղցնոյր, եւ յարենէ առաջնորդաց եկեղեցւոյ ըմ-

* Ի Ճառընտրէն ԺԹ. և 'ի ԽԴ գրչագրէն Փարիզու, որ համառօտեալ է։

1 Փարիզեանն զխիտ։

պէր և ծարաւէր ։ Քանզի հրաման սրոյն եղ 'ի սաս-տիկ թագաւորացն 'ի վերայ սրբոցն տագնապաւ, և 'ի ձեռս թշնամեացն որ ծարաւի էին արդարութե̄ արեան նոցա, մատնեցան ։ ըստ այնմ զոր Մովսէսն ասէ, եթէ թշնամիք մեր եղեն մեզ դատաւորք, և առեալ յեղբարց և 'ի տոհմայնոց և 'ի բարեկամաց՝ նեղէին և հալածէին ։ Եւ կատարեցաւ բան տեառն զոր ասաց, եթէ ատեսցեն զձեզ յա̄մ տեղիս վասն անուան իմոյ, և մատնեսջիք 'ի ծնողաց և յեղբարց և յազգականաց և 'ի բարեկամաց, և սպանանիցեն 'ի ձէնջ. և մազ մի 'ի գլխոց ձերոց ոչ կորիցէ. և համբերութե̄ ստասջիք զոգիս ձեր ։ Այս ա̄մ կատա-րեցաւ արդեամբք առ վկայսն սուրբս և երանելիս ։

Ո՜րինչ մահ անհնարին զոր ոչ ածին անօրէն դա-տաւորքն 'ի վերայ մեծազօր վկայիցն. կամ զո՞ր տան-ջանս դառնութե̄ թողին թշնամիքն եկեղեցւոյ, որ ոչ այնու զՃշմարիտն ծառայքն Քնի կրեցին. կամ զո՞ր չարչարանս [1] և զկկանս թողին թշնամիք ժողո-վրրդեանն ա̄յ, որ ոչ այնու զպնդակազմն և զպատե-րազմողսն չարչարեցին ։ Զկէսս 'ի քաղց և 'ի ծարաւ Ճգնեցուցանէին, մինչև ծորէին մարմինք նոցա, և մեռանէին ։ Զկէսս գլխիվայր կախէին, և 'ի միջօ-րեայ ժամանակսն ոսկրաքանց առնէին և սպանանէ-ին ։ Զայլս քակելով զօդս թիկանցն առ 'ի պրկել և 'ի ձգել բազում արանց՝ լուծանէին և սպանանէին. և զայլ ոմանս անհնարին գելոցօք խորտակէին զկողս և զոսկերս և սպանանէին ։ Զոմանս 'ի ցուրտ և 'ի պարզ ընկենուին, մինչև սառուցեալ մարմինքն և մեռա-նէին. և զկիսոց կտրոցօք առ սակաւ սակաւ քարշէին զմարմինսն և սպանանէին ։ Զկէսս չարաչար մորթէին և սպանանէին, և զկէսս սղոցէին ընդ մէջ և սպա-նանէին ։ Զոմանս գայլլիկոնօք [2] ծակէին զպՃղունս նոցա և սպանանէին, և կիսոցն եղէգն հերձեալ հան-գոյն հասակացն դնէին շուրջ և պնդէին լարիւք ընդ-անդամսն, և ձգէին մի մի և հանէին հանդերձ մոր-թով և մսով և ջղովքն, և այնու սպանանէին. և ըզ-

1 Փարիզ. զչարչարանս և զկըտ-տանս ... 'ի տաղտս և 'ի ծարաւոյ ... տանջելով:

2 Փարիզ. գէլլիկոնօք ... լարովք.

կեան քարամբք ծեծելին անողորմ և սպանանելին ։ Թող զայլ կտտանսն որով կտտէին․ զի զունչսն հատանէին, զականջսն խլէին, զմատունսն կտորէին, զաչսն փորէին, զբարձս և զծունկս ուռամբք խորտակէին, և զայլս զգուլթոյ ոտիցն կախէին, և կիսոց խեցի ջեռուցեալ յանդամս [1] դնէին և պնդէին․ և կիսոց քուրձ ընուէին մախրով, և թաղէին 'ի ներքս զգլուխն ։ Ոմանց քացախ և մանանեխ արկանէին ընդ քիթսն, և զնոյն դարձեալ արկանէին [2] յայլ վէրսն և չփէին ։ Կիսոցն ասղունս ընդ ընգնաբերանսն վարէին յանխնայ․ և այլոց փշեղէն գաւազանօք նորոգէին զհարուածսն օր ըստ օրէ ։ Եւ դարձեալ յետ այսր ա͞մի անհնարին չարչարանաց սրով զգլուխն հատանէին ։

Ամենահատակք պատերազմողք, զօրաւորք զօրութ͞ք, առաքինեալք զինուն արդարութ͞ե, մտեալք 'ի պատերազմ պատենազէն զինուն կազմութ͞ե․ որ ժամանեալ պնդակազմ մարտիւն առին զառաւել յաղթութիւնն յաւիտենական ։ Այս են չարչարանք սակաւ ժամուց և թուով աւուրց, որ ընկալան զմխիթարութ͞ի խոստմամբք պատրաստեալ յուսոյն, և առ 'ի սփոփութ͞ի ժամանակեայ վշտացն ։ Այս է ժամանակեայ տրտմութ͞ին զոր մոռացոյց անվախճան ուրախութ͞ին ։ Այս է սէր ճշմարտից․ որչափ մտանէ 'ի քննութ͞ի, եւս քան զեւս վառի և նորոգի․ զի զօրութ͞ք հեռաւոր խոստմանցն յաղթեցին մերձաւոր տանջանացն ։ Ըստ այնմ՝ եթէ “Փորձեցեր զմեզ, ա͞ծ, և քննեցեր, որպէս քննի արծաթ․ անցաք մեք ընդ հուր և ընդ ջուր, և հաներ զմեզ 'ի հանգիստ քո ” ։ Զի ժամանակեայ նեղութ͞քս զյաւիտենական բարիսն ընկալցին 'ի Ք͞ս Յ͞ս 'ի տէր մեր․ որում փառք յաւիտեանս ։

1 Փարիզ․ 'ի ծնօտսն ։

2 Փարիզ․ ընդ այն վէրսն ածէին ․․․ ընդ ընգաւսն ։

# Ի ՅԱՐՈՒԹԻՒՆ ՄԵՌԵԼՈՑ *

Մի՛ ոք անհաւատասցի վասն յաւիտենական կենացն. քանզի թէ ոչ հովանի այնոցիկ էր, ոչ ինչ յելից մնացեալ լինէր: Մի՛ վասն զի ոչ տեսանեմք զնմ՝ անհաւատասցուք. զի և ոչ զոգիս տեսանեմք՝ որ գործէ զկենդանութիւն մարմնոյ: Եթէ իցէ առանց հոգւոյ կեալ ումեք, է և առանց յաւիտենականին՝ որովհետև եղև նմ: Եթէ [1] տեսանեմք աչօք, առաքելոցն ո՞չ հաւատամք: Եթէ ոչ տեսանեմք զեղեալսն մեռեալ և յարուցեալ, յաղագս յարութեան ո՞չ ընդունիցիմք զհաւատս: Ամենայն մեռեալ 'ի վերայ երկրի, և նմ կենդանի անճառելի զօրութեամբ: Ի բաց առ զգործս, և տեսցես զմարմնոյ մեռելութիւն: Որ տայ և առնու, նմ է. ոչ 'ի հարկէ ետ, և ոչ զրկէ 'ի բաց բառնալով զբնութիւն: Ամենեցուն միջնորդելով պատրաստեաց. 'ի ձեռն նորա տայ և առնու որպէս կամի: Առնու, զի մի՛ զբնութիւն փոխանակ արարչին կարծեսցուք: Հաւաքէ զմանկունս և զծերս. քանզի բնութիւն սպասաւոր լինի նմ, և ոչ հակառակի: Հաւաքէ զերիտասարդս պատանեկօք. վասն զի գիտէ բնութիւն զտկարութիւն իւր, և ոչ 'ի բաց կայ 'ի կոչողէն: Որ զբնութիւն կարգեաց զմարդկան, յարութիւն խոստացաւ. վասն զի անքննին բաւական զմերձակայս ևեթ կարգեաց: Եթէ կամի՝ բնութիւն դատարկանայ, և որքան կամի՝ յերկարէ զկենդանութի: Պարտ է հաւատալ՝ եթէ յառնեմք որպէս կամի. կորնչի մարմին զբազում ամս ցրուեալ յերկրի. այլ արացէ նմ կորստեանն, և 'ի շահ առնէ զկորուստն: Հուր՝ անյայտ զմարմնականս առնէ. այլ պահեալ [2] լինի հուր յածութէն. հրաման տայ նմ հրոյն, և նա զիւր գործն դարձուցանելով անդրէն փոփոխէ զմարմինսն զոր միանգամ սպան: Ջուր ապականէ զյոլովս որ 'ի

* Ի Ճառընտրաց ՃԳ. Գ:

1 Միւս օրինակն. Եթէ ոչ տեսանէք աչօք, առաքելոցն ոչ հաւատայք:

2 Միւս օրինակն պարփակեալ լինի:

Նմա անկանելոյն . այլ մերկանայ յիւրմէ զօրութենէն , մինչև 'ի բաց տացէ զոր էառն : Ասէ յառակսն . դըժոխք և կորուստ յայտնի են առաջի տեառն : Ընդէ՞ր մեք յարութեան ընդդէմ կամք :

Արդ մի՛ ոք 'ի մէնջ կործանեսցի ընդ մեռելոցն . քանզի հաւանեցուցանէ զմեզ ամենեցունց դատաւորն , քանզի մեռաւ և յարեաւ : Մի՛ խոտորեսցուք զյոյս մեր , զի մի՛ 'ի հողոյ զանհաւանութեան զչարախօսութիւն ընդունիցիմք . զոր ինչ մեզ յառաջագոյն գրով տպաւորեաց ած , եթէ լինի ճանապարհ վերըստին հոգւոց մերոց 'ի մարմինս : Զենովք փոխեաց և զեղիա յափշտակեաց յերկրէ . և ընդէ՞ր մեք անհաւատութեամբ վաղճանիմք : Նա մինչ դեռ կենդանի էր , հրամայեաց և եղև . և ոչ բնութիւն տկարացաւ , կամ մահ ընդդէմ եկաց : Զեղիա ամենևին յերկրէ յերկինս բնակեցոյց . և հաւաքեցաւ ապականութիւն մարմնոյն անկնարկութեամբ արարչին : Ունիմք զօրինակ անմահութեան կենդանեօք և վախճանեցելովք : Հաւատասցուք ասացելոց , որպէս ինչ լինելոցն իցէ մեզ : Զոր ինչ կամի , լինի . վասն այնորիկ պարտ և արժան է հաւատալ յայն՝ որ ասացն . զի եթէ ոչ կարէր առնել զոր կամին , թերևս արդեւք յոչ հաւատալն նմա ներէր : Ապա եթէ ես մեզ փորձիւ զիւրոյ զօրութեան գործ , պահանջելոց է 'ի մէնջ զբան իւրոյ հաւատոյն : Եթէ ոչ ընձեռեաց [1] զհմտութիւն ճշմարտութեան իւրոյ , զանհաւատս իբրև զըպարտողս տանջեսցէ : Կենդանի է Ենովք , և Եղիա ոչ վաղճանեցաւ . այլ թէպէտ և մեռանին , ոչ յորժամ մահ կամեսցի , այլ յորժամ ինքն հրամայեսցէ : Կայ Քս յարուցեալ 'ի մեռելոց , և զմահ ոչ տեսանէ . զի ինքն գործակից եղև , զի ապրեսցուք , և զի զյոյս յարութեան ստացուք : Զնոսա կենդանիս հաւաքեաց , և զաւուրս այլս մահու մատնեաց . զնոսա 'ի կենդանութեան աւանդեաց մինչև ցորքան կամեսցի , և զվախճանեալսն 'ի դժոխոյս մատնեալ պահեաց . զնոսա յերկրէ փոխեաց , և զբազումս 'ի մարմնոց որոշեաց [2] : Արդ որպէս Ենովք

1 Միւս օրինակն ընդդիմանեաց ... վերադարձողս պատմելոյ է :

2 Միւս օր . յաւելու . Մարմինք հող համարեսցին , և հոգին՝ փոփոխումն :

և Եղիա դարձեալ են յաշխարհ գալոց, նոյնպէս և հոգիքն 'ի մարմինս եկեսցեն ։

Կամիս ուսանել թէ հուր աստուծով պահէ և ոչ ապականէ զմարմինս. ընթերցիր զերից մանկանցն զիրս հնոցին ։ Կամիս ուսանել եթէ ջուր զհաստատ պահէ զարարչին. հարց զկարմիր ծովն, և ասէ քեզ ։ Յանկամ ուսանել թէ որպէս անկորուստ պահէ ըզմարմինս. հարց զՅովնան և պատմէ քեզ ։ Ետես գերեզման խոր զմարմնոյ բնութ՟ի զգազանին, և աքանչացաւ զիւր բնութիւնն պահեալ յաղագս տեառն ։ Ամենեքեան զարհուրին յարարչէն. վասն զի նոքա նախախնամութ՟ն նորա և կամօք գոյացան ։ Զխոնաւութ՟ի կարմիր ծովուն ցամաք արար, ցուցանելով եթէ կարէ զմեռեալս յարուցանել ։ Զերկիր ցամաք՝ առ ջրհեղեղաւն խոնաւ արար. և զիա՞րդ ոչ կարիցէ դարձեալ յարութիւն առնել մեռելոց ։ Յեգիպտոս զերկին երկիր եցոյց. զԻսրայէլ ընկալաւ իբրև 'ի գիրկս, զի մի՛ վնաս ինչ կրեսցեն 'ի հրոյ. և ընդէ՞ր անհաւատամք 'ի մեռելոց յառնել ։ Զերկիր՝ հնոց հրոյ եցոյց բօցակիզեալ, զի ծանիցուք՝ եթէ նա ըզբնութիս նոցա արար ։ ԶԱդամ բօցակիզեալ տոչորեաց. և դատաստանք միայն յանհաւատս ։ Ոչ առժամայն եղև տարերցն փոփոխումն, այլ յետ երից հազար ամաց այնոքիկ կատարեցան. զի ցուցցէ զփոփոխումն նոցա ոչ ըստ բնութ՟ե, այլ ըստ ա՟յ հրամանին ։ Եւ եթէ առաջին և մեծամեծ իրօք տարերքս փոփոխեցան յոր ինչ ա՟ծ կամեցաւ, ընդէ՞ր և մեք ոչ հաւատամք՝ եթէ մահկանացու մարմինքս անմահ լինելոց են ։ Քանզի եթէ փոփոխեցաւ ջուր յարիւն յԵգիպտոս, և դարձեալ յարենէ 'ի ջուր եղև, զիա՞րդ կարասցուք ոչ հաւատալ ա՟յ՝ եթէ առնելոց է զապականացուս անապական ։ Էր և Ադամ 'ի սկզբանն ջուր մաքուր, յաղագս անմահութ՟ենն ասեմ. յանցանելովն եղև արիւն վասն ապականացու բնութ՟ենն ընդունելոյ ։ Առաքեալ՝ մարմին և արիւն կոչէ զամուսնութ՟ի մանկածնութ՟ե. այլ զի 'ի յարութ՟ենն ոչ կանայս առնեն և ոչ արանց լինին, վասն այսորիկ զարքայութ՟ին երկնից ժառանգել ոչ կարեն ։ Ոչ զմարմինն 'ի բաց եհան յարքայութ՟էն զբնութ՟ի մարդկան,

այլ զապականութիւն առաց և ոչ զմարմին . և զեկոյց զանմահութիւն հարսանեաց ։ Ասելով զապականութիւն, զհերձուածողսն գուշակեաց՝ որ անմահութիւն 'ի հանդերձեալսն քարոզեն ։

Ունիմ ցուցանել յաղագս մարմնոյ բնութեան, զի յարքայութիւն այ լինելոց է ։ Ասէ Առաքեալ, եթէ կերպարանակից Քի յարութեանն լինելոց եմք ։ Եւ զՔս Ստեփաննոս ընդ աջմէ Հօր կացեալ ճանաչէր ։ Անծանօթ 'ի մարմնոյ լինէր . քանզի և Ստեփաննոս ետես զՔս նախ քան զյարութիւն ։ Եթէ ծանեաւ զՔս 'ի կերպարանս մարմնոյն հաւանէր ։ Եւ եթէ ըստ Քի յառնելոց եմք, ո՞վ ոք անհաւատացի եթէ մեռեալ մարմինք զանապականութիւն ոչ ժառանգեն ։ Եւ զաշակերտսն իւրն տեսին հաւանեցոյց ասելովն, թէ ոգի՝ մարմին և ոսկերս ոչ ունի, որպէս զիս տեսանէք ունելով ։ Եւ զիա՞րդ ոմանք զքարոզութիւն այ ընդ իւրեանց զօրութեան հաւասարելով ոչ ամաչեն ։

Գիտէ երկին զզօրութիւն արարչին, և հնազանդի բանի հրամանի նորա ։ Մատոյց երբեմն և հրեղէն յանապատին զոր ինչ երկիր կարգեցաւ սպասաւորել մարդկան ։ Կերակրեաց երկին զմարմինս զ'ի յերկրէ լինեալս՝ զոր ինչ երկրի մօրս ած մնուցանել հրամայեաց ։ Ոչ ցօղ 'ի սերմանց աճեցուցն ետ երկրին, այլ կերակուրս պատրաստականս առաքեաց մարդկան ։ Գիտէր եթէ 'ի յարութեան յերկնի բնակեն, և իբրև յառաջանալով զնոսա մնոյց ։ Ոչ երկանի կարօտացաւ և ոչ աղօրւոյ, այլ գործեցեալ զայն՝ 'ի վայր առաքեաց ։ Ուսցուք յայնմանէ՝ եթէ առանց երկանոյ մարմինքս 'ի հանդերձելումն կեան ։ Ոչ երկրի պէտք են և ոչ մշակի կերակրոյ իւրք . զի որքան օր էր՝ ըղհունձս ընդունէին . ոչ զպտուղս, այլ զմարմնոյ [1] կերակուրս ։ Ուսցուք յեղելոցս զինչ է անախտութիւն յարութեան ։ Անդ ծանիցուք 'ի պատմելոցն այսու զինչ է անհոգութիւն յաւիտենական կենացն ։ Ոչ հնացան հանդերձքն՝, զի ոչ երկրաւոր զգեստուց կարօտանամք 'ի հանդերձեալսն . ոչ հնացան կօշիկքն, զի և ոչ աղ-

1 Միւս օրինակն զանմարմնն ... ծանիցուք 'ի պատահելոցն ... զի և ոչ անփապփ ։

քատ լինելն պահպանութեան, և ոչ ոտն զքարի հարկանիցի : Ուստեին զմանամանայն ոչ ծասկելով, զի 'ի յարութեան 'ի հոգևոր կերակուրն վայելելոց եմք : Ոչ 'ի բաց եհան ած զմարմնական զգեստն, ոչ սպաս տանելով կերակրոյ . զի ցուցցէ եթէ բոլորովին յարուց անէ մարմնոյ : Ընկալաւ զմարմնոյ միջնորդութիւն 'ի սպասաւորութիւն բարեպաշտաւ հանդերձ հոգւով . ցուցանելով եթէ յօրինակի իւրոյ շնորհին յարուցանէ զբովանդակ մարմինս : Ամենեցուն նպաստաւոր լինէր երկնին, մանկանց և տղայոց տայր զկերակուրն, զի ծանիցուք՝ եթէ ած բնութիւն յարութեան յանդիման կայցէ : Կաթնակերքն իբրև զկաթն զմանամայն 'ի մարցն ծծէին, զի և ինքեանք յարիցեն յառաւելութիւն սքանչելեացն :

Շնորհն այ ելից վայելչութիւն զյարութիւն . քանզի ած յաղագս նորա տպաւորեցան : Գիտեմ զփայտն՝ որ ունի զօրինակ յարութեան . այս է գաւազանն Ահարոնի՝ որ ծաղկեցաւ . քանզի մեռաւ զառժամանակեայ բնութիւնն, այլ կենդանացաւ անճառելի զօրութբ 'ի ձեռն ածային շնորհին : Քան զյոլով գաւազանք պատուականագոյն են այ մարմինք մարդկան . քանզի վասն սոցա գաւազանքն բողբոջեցին : Եւ եթէ մն Ահարոնի գաւազանն ծաղկեցաւ, յաղագս Ահարոնի և մարմինն նորա յարիցէ . եթէ 'ի փառս քահանայութեան Ահարոնի զգաւազանն 'ի մեռելութէ յանդիման կացոյց կենդանի, յաղագս յաւիտենական կենաց նորա և զմեռեալ մարմինն յարուցանէ : Ոչ այնպէս գաւազանն սիրելի էր Ահարոնի . որպէս մարմինն : Ամենայն ուրեք զսիրելագոյնն փառօք պատուեսցէ . և [1] այնպէս խնամ տանի, զի իցէ և կեցցէ . ապա ուրեմն որ զհրաշագոյնն արար, զնուաղագոյնն առաւել ևս արասցէ : Գաւազանն էր առանց արմատոյ և կենդանացաւ . նոյնպէս և մարմինն առանց արգանդի դարձեալ կեցցէ : Ոչ ևս եկաց գաւազանն 'ի վերայ երկրի ներգործելով բնութեան . և մեռեալն առանց իրիք պատճառի յարիցէ : Ի տան

1 Միւս օրինակն ոչ այնպէս ֆա_ հրաշափառագոյն արար զնոսայն ... տացն խնամ տանի ... ապա ուրեմն արասցէ և զկենդանագոյնն :

կայր գաւազանն բազում ժամանակօք , զհիւթ խոնաւութե՟ն 'ի բաց լքանելով . և մարմինք 'ի գերեզմանս կան և մնան բազում ժամանակս դադարեալ 'ի կենդանութե՟ : Ոչ յօդս էր գաւազանն և ոչ մերձ 'ի ջուր , այլ 'ի յոյժ ցամաքութե՟ բողբոջեաց . և մեռեալք ոչ ունին զհիւթ կենդանութե՟ և առժամայն ա՟յ ասելով յառնեն : Կինն Ոփնեայ՝ նաև Հեղեայ ըզմահու ունէր զօրինակ անդ ծնանելով մանուկ . և մահ 'ի յարութե՟ն զա՟մ ազգայինս արձակեսցէ : Նա ծնաւ և մեռաւ . և սա յառաջ ածեալ զմեռեալս՝ վախճանեսցի : Ի նմին աւուր խնդութի՟ և տրտմութի՟ . նոյնպէս և 'ի յարութե՟ն անմահից սուգ է , և արդարոցն ցնծութի՟ : Ամուլ էր և Հռեբեկա , որպէս և յարութի՟ն անպտուղ է . 'ի վախճանի ծնաւ , նոյնպէս և յարութի՟ն արասցէ : Ի միում երկուոս երկու մանկունս ծնաւ զչար և զբարի . նոյնպէս և յարութի՟ն : Վայ այնոցիկ՝ որ Յեսուայ բաժինն լինիցին , զի զնզովս ժառանգեսցեն : Երանի որ 'ի վիճակին Յակովբայ գտցի , զի զյաւիտենական կեանս ժառանգեսցէ : Որում և մեք արժանասցուք շնորհօքն Քրի՟ ա՟յ մերոյ . ընդ որում Հօր և սուրբ Հոգւոյն փառք իշխանութի՟ և պատիւ յաւիտեանս յաւիտենից . ամէն :

# ՎԱՍՆ ԴԱՏԱՍՏԱՆԻՆ
# ԵՒ ՄԻՒՍԱՆԳԱՄ ԳԱԼՍՏԵԱՆ *

ԻԿԱՑՔ ամենեքեան, եղբարք, լուարուք ինձ և խորհրդակցութե̃ իմոյ. մեղաւորի և տգիտի Եփրեմի. քանզի ժամանեաց մեզ օրն այն ահաւոր և մեծ. և մեք, սիրելիք, զբօսանիմք՝ ոչ զմտաւ ածելով զփոքր ժամանակս զայս, և փութալ հաշտեցուցանել զա̃ծ: Ահա աւուրք և ամիսք և տարիք իբրև զերազ անցանեն և իբրև ստուեր երեկորի. զի եկեսցէ վաղվաղակի ահաւոր և մեծ գալուստն տեառն: Արդար իսկ և ահաւոր օրն այն մեղաւորացն, և որք ոչ կամեցան առնել զկամս ա̃յ և ապրել: Արդ աղաչեմ զձեզ, եղբարք հարազատք, եկայք 'ի բաց ընկեսցուք զհոգս երկրաւոր իրացս. վասն զի ա̃մ անցանէ, բովանդակ ապականի, և ոչ ինչ մեզ օգնէ 'ի ժամուն յայնմիկ, բայց գործք բարիք զորս աստ ունիմք. քանզի հանդերձեալ է իւրաքանչիւր ոք բառնալ զիւր գործն և զխօսս առաջի բեմբին ահաւոր դատաստանին ա̃յ: Դողայ սիրտ, և երիկամունք այլայլին յորժամ լինի անդ գործոցն յայտնութի̃, խորհրդոց և խօսից: Մեծ երկիւղ է, եղբարք. մեծ դողումն է, սիրելիք: Ո՞ արդեօք ոչ զարհուրեսցի. ո՞ ոչ դողասցէ, սգասցի և լասցէ. զի անդ յայտնելոց է զոր ինչ գործեցաք 'ի ծածուկս և 'ի խաւարի:

Իմացարուք զայս զոր ձեզ ասեմ, և տամ հաւատատութի̃ ձերոյ սիրոյդ: Ծառք պտղաբերք 'ի ներքուստ 'ի յինքեանց 'ի ժամանակի իւրեանց բողբոջեցուցանեն զպտուղս հանդերձ տերևօք: Ո՞ւստ ուստեք ծառք զգենուն զիւրեանց քօղ վայելչութի̃ն. այլ ներքուստ յինքեանն հրամանաւ ա̃յ բերեն զպտուղն ըստ բնութեն: Նոյնպէս և յաւուրն յայնմիկ յահաւորի առաջի արկանին ա̃մ մարմինք մարդկան

* Ցերկուց օրինակաց. միոյն ևեթ Թուականն յայտնի ՉՂԵ:

*զոր ինչ գործեցին բարի կամ չար. և ընդունի իւրաքանչիւր ոք յանդիման բեմբին ահաւոր դատաւորին զգործս իւրև զպտուղ, զխօսս իւրև զտերև։ Արդարք բառնան զպտուղ գեղեցիկ վայելուչ. սուրբք ընդունին զպտուղ բարի. և քաջազուարճ՝ վկայք բերեն զտանջանացն և զչարչարանացն զպարծանս համբերութ̃ք. կրօնաւորքն բառնան զճգնութիւս, զժուժկալութիւս, զպաղատանս։ Արք մեղաւորք, ամբարիշտք և պիղծք ընդունին անդ զպտուղ վատթար և զապականեալ լի ամօթով և լալով և ողբով զորդն անքուն յանշէջ հուրն։ Ահագին է անդ դատաստանն, ո՜վ եղբարք. վասն զի առանց վկայից յայտնին գործքն և խօսքն, խորհուրդք և մտածութիւնք, յորժամ մերձ կայցեն հազարք հազարաց և բիւրք բիւրուց քերովբէից և սերովբէից, արդարոց, սրբոց և մարգարէից և առաքելոց։*

*Արդ ընդէ՞ր հեղգամք. քանզի ժամանակ եհաս և օրն մերձեցաւ, յորժամ զգաղտնիս մեր զա̃մ ահաւոր դատաւորն 'ի լոյս ածիցէ։ Եթէ գիտէաք զինչ մեր առաջի կայ, լայաք արդեւք յա̃մ ժամ 'ի տուէ և 'ի գիշերի աղաչելով զա̃ծ, զի փրկեսցէ զմեզ յամօթոյն յայնմանէ և յաւիտենական խաւարէն։ Կարկի բերանն մարդոյն առաջի բեմբին. դողան ա̃մ արարածք և նոքին իսկ զունդք սրբոց հրեշտակաց 'ի փառաց նորա գալստեանն։*

*Ո՜ ինչ ես ասեմք նմա յաւուրն դատաստանի, եթէ 'ի ժամանակիս յայսմիկ ծուլանայցեմք. քանզի նա երկայնամիտ էր։ Որ զամենեսեան զմեզ կոչէ յիւր արքայութիւն, բան 'ի մէնջ պահանջէ զպղերգութեն[1] սուղ ժամանակիս այսորիկ։ Եւ ինքն մեզ ասէ. յաղագս ձեր մարմնացայ, վասն ձեր մարմնապէս 'ի վերայ երկրի գնացի, ձեր աղագաւ տանջեցայ, յաղագս ձեր թուք առի, վասն ձեր ապտակեցայ, յաղագս ձեր խաչեցայ, ձեր աղագաւ 'ի վերայ փայտին քացախ արբի, զի զձեզ արարից իմս և երկնայինս։ Զիմ արքայութիւն ձեզ շնորհեցի, զիմ դրախտն ձեզ պարգևեցի. զամենեսեան եղբարս իմ պատուեցի, Հօր*

1 Միւսն զպղերգութիւնն։

ընծայեցի զձեզ, զհոգիս առաքեցի. առաւել ևս քան զայս Տէր այլ զի՞նչ արդեօք ունէի տանել և ոչ արարի ձեզ, զի դուք ապրեսջիք. զյօժարամտութիւն[1] միայն ոչ բռնադատել, զի մի՛ 'ի հարկէ իցէ ձեր փրկութիւն: Ասացէք, մեղաւորք և մահկանացուք ըստ բնութեանդ. զի՞նչ դուք չարչարեցայք վասն իմ տեառն՝ որ չարչարեցայ վասն ձեր: Ահա պատրաստեցի զարքայութիւն և զկեանս, զհանգիստ և զուրախութիւն և զտանջանս յաւիտենականս յարտաքին խաւարին, ուր կամի իւրաքանչիւր ոք երթալ իշխանութեամբ իւրով:

Վկայք ամենեքեան երկրպագուք նմա, և լացցուք առաջի արարչի տեառն մերոյ ասելով. ո՛ տէր, զայդ Տէր իբրև զԱստուած համբերեցեր յաղագս մեր. բայց մեք մեղաւորքս անարգեմք յամենայն ժամ զբարեգործութիւնս: Աստուած ես անսկիզբն բնութեամբ, անհասանելի, անչարչարելի, անկարօտ. հաճոյ թուեցաւ քո՛ւմ չարչարանօք խաչին փրկել զմեղաւորս՝ որ ըզքեզ ոչ ճանաչէին. պարգևեցեր նոցա զլոյս գիտութեան: Արդ զի՞նչ ևս տացեն քեզ ազգ մեղաւորաց՝ անհասանելւոյդ Աստուծոյ, բարւոյդ և գթածիդ առ ամենեսեան. որք են յօժարութեամբ իւրեանց ամբարիշտք ոչ ըստ բնութեան, զի նախ քան զապրելն մեր ամբարիշտ էր ամենայն ազգ, և դարձեալ զկնի մեղաւորք եմք մերով յօժարութեամբ: Իսկ դու, տէր, նոյն իսկ ես յամենայն ժամ բարի և բազմագութ, ահաւոր և փառաւորեալ, յաւիտենից արարիչ. և բառնաս 'ի սկըզբան դժուարութեան մերոյ յաղագս յոլով գթութեանց քո զոր ցուցեր 'ի մեզ յորդիս մարդկան: Յաղթեցար, Աստուած, 'ի սիրոյ քումմէ, և 'ի նոք գթութեանց մերձեցար 'ի խաչն յաղագս փրկութեան ամենայն աշխարհի: Ի քումմէ շնորհէ ուսաք զայս ասել առաջի փառաց քոց. զի եթէ ոչ էիր յաղթեալ 'ի քումմէ գթոյդ, Քրիստոս, զքեզ ոչ մատուցանէիր յաղագս մեղաւորաց զենումն և պատարագ: Լցան, ով տէր, միտք ծառայի քո 'ի քաղցրութենէ շնորհի քո և սիրոյ. յարաժամ քաղցրանան, մինչ լուսաւորին, յաճախապէս հաստատին. յարաժամ անարգեն, և 'ի դառնութեան զինս

1 Միւսն՝ յօժար մտութեանն:

քեանս փոփոխմն՝ ոչ տխրժելով միշտ զքաղցրութիւն ունել զիւրեանց տեառն ։

Ոն միածին Ճառագայթ Հօր 'ի լոյս բնակեալ յանմատոյց յանմերձենալի 'ի լոյս անհասանելի, որ լուսաւորեցեր շնորհօք զամ աշխարհս, լուսաւորեա և զիս զխաւարեալ զաչս իմ. քանզի ծածկեալ յիս խաւարին մասն՝ լուսաւորէ միշտ զնա շնորհօք, զի մի խաւարեսցի 'ի ժանգացուցչէն ։ Քանզի նմանեցան, ով տէր, մարմինք մեր նորատունկ ծառոյն՝ որ պէտս ունի յարաժամ հիւթոյ ջրոյ. նոյնպէս միտքս մեր տկարք անընդհատ կարօտանան քում շնորհիդ հաստատութե և լուսաւորութե ։ Բան քո, տէր, բացցէ զկուրացեալ զաչս իմ ։ Ի մօրէ ծնեցելոյն մեծ սքանչելիք եղեն 'ի Սելովմա. կուրին տեսանել մարմնաւոր աչօք լուսաւորեցաւ, և 'ի ներքուստ ակամբ մտացն քարոզեալ առանց երկիւղի զժիշկն իւր ։ Ած փրկիչ իմ, լուսաւորեա զաչս մեր սրտից սիրել զքեզ տէր, և ցանկանալով կատարեալ միշտ զքո կամս. վասն զի Սելովմա հեռի է 'ի մէնջ, ահա բաժակ քո ահաւոր արեանդ լի է լուսով և կենօք, զսա մեզ շնորհէ յիմաստութի և 'ի լուսաւորութի. զի համօրէն հաւատով, սիրով սրբութք մերձեցեալ 'ի նա, զի եղիցի նա մեզ 'ի մեղաց թողութի, և մի 'ի դատապարտութի յաւուրն դատաստանին ։ Զի որ հպին յածայինսն անարժան անձամբ, զինքն դատապարտելով, ոչ սրբելով զինքն՝ զթագաւորն ընդունելով յիւրում հարսնարանին ։

Մեր հոգիս հարսն սուրբ է անմահ փեսային. և հարսանիք են ածային խորհուրդն, կերեալ և արբեալ՝ոք հոգւովն ։ Արդ հայեա 'ի քեզ, զհարսնարանդ քո միշտ պահեա անաղտ, և փափագեա ընդունել զՔս զթագաւորն երկնային զփեսայն, զի յաւուրն յայնմիկ գայցէ տէրն, օթեվանս առնիցէ համօրէն Հարբն իւրով, և առաջի հրեշտակաց և հրեշտակապետաց գովութի քեզ լինիցի 'ի դրախտին համօրէն մեծ փառօք, և խնդութք մտցես ։ Վասն զի զի՞նչ 'ի քէն խնդրէ ածն, ով մարդ, բայց 'ի փրկութենէն ։ Եւ եթէ դու յապաղեսցես ոչ կամելով՝ապրել, յուղիղ ճանապարհս այ գնալ, և զպատուի-

րանս Նորա ոչ ախորժեա կատարել, զքեզ ինքն սպանանես և արտաքս հանես յերկնային հարսնարանէն։ Աստուած սուրբ առանց մեղաց՝ յիւր միածին Որդին ոչ խնայեաց վասն քո. իսկ դու, ով Թշուառական, քեզ ո՞չ ողորմիս։ Սթափեցիր 'ի քնոյ քումմէ գոնէ ժամկաւ ինչ անագան. բաց զբերան քո, աղաչեա զնա, ընկեա 'ի քէն 'ի բաց զմեղացն ծանրութիւնն. ողորմեա քեզ, պաղատեա քեզ յաճախապէս, արտասուեա անընդհատ։ Փախիր 'ի Թուլուէ, ատեա զպղերգութի, տաղտկեա 'ի չարութէ։ Փափագեա 'ի ժուժկալութիս, ձգնեա 'ի հանդարտութին, կրթեա 'ի սաղմոսերգութիս։ Փութա, ով եղբայր, մինչ դեռ ժամանակ է. սիրեա զա͞ծ 'ի բոլոր սրտէ քումմէ, որպէս և զքեզ սիրեաց։ Լեր տաճար ա͞յ, և բնակեսցէ 'ի քեզ բարձրեալն. Զի հոգի որ ունիցի յինքեան զա͞ծ, տաճար ն͞ք և մաքուր լինի ա͞յ։ Ածային խորհուրդք պաշտին 'ի նմա. հրեշտակք երկնից ցնծան անդ, և ձեպին միշտ փոյթ առնել նմա։ Յոգւոյն յորում տ͞րն իւրեանց բնակէ, հրեշտակք փութան պատուել զոգին զայն, վասն զի տաճար գտանին տ͞ն իւրեանց։

Երանի մարդոյ՝ որ զքեզ սիրէ 'ի բոլոր սրտէ իւրմէ, և ատէ զաշխարհ և զա͞մ որ 'ի նմա է, զի զքեզ միայն ունիցի ն͞ք՝ տէր տէր։ Եթէ ոք այսպէս սիրէ զա͞ծ ճշմարտապէս, այնպիսոյն միտքն ոչ ևս են յերկրի, այլ 'ի վեր յարաժամ, ուր և սիրեաց և հուպ բաղձացաւ. ծարաւեաց մտօքն, անտի քաղցրանայ, անտի լուսաւորի, անտի լցեալ լինին քաղցրութ͞բ միշտ սիրոյն ա͞յ ուրախութ͞բ. և քաղցրութ͞բն ա͞յ լի և ճշմարտապէս սիրոյն ա͞յ։ Երանի որ ճաշակեաց 'ի նմանէն, և ոչ յագեցաւ քաղցրութ͞բն սիրոյն ա͞յ։ Ո՞ ոք կարէ ասել զնմանէն արժանապէս։ Պաւղոս առաքեալ, որ ճաշակեաց 'ի նմանէն և յագեցեալ նովաւ, նա աղաղակէ և ասէ. ոչ բարձրութի և ոչ խորութի և ոչ նոյն ինքն կեանքս, ոչ հանդերձեալ մահ, ոչ ա͞մ հրեշտակք, ոչ պետութիք և ոչ իշխանութիք, ոչ այլ ինչ արարածք ա͞մ 'ի միասին ոչ կարեն հեռացուցանել 'ի սիրոյն ա͞յ զանձն՝ որ ճաշակեաց 'ի սիրոյ նորա։ Հուր է սէրն ա͞յ, զօրանայ յոգւոյն՝ որ փափաքէ նմա. պայծառս գործէ զզայութի նորա. բարձ

րանայ 'ի յերկրէ, ատէ զերկրայինսս, զնա միայն տեսանել զոր սիրեացն ։

Մարգարէութեան մեզ զայսոսիկ և ասեն 'Տր վկայքն՝ որք ճաշակեցին 'ի նմանէն և յագեցան 'ի նմանէն ։ Կապանք կակուղ են առ սէրն այ, և ոչ կարէ սուր երկսայրի զնա հատանել ։ Քանզի թէպէտ և կոտորէին բռնաւորքն զանդամս սրբոցն, սակայն զսէրն նորա ոչ կարէին կտրել ։ Ո՜վ կակուղ կապանք սիրոյն այ. լի է արդարեւ սքանչելեօք, ոչ կարելով հատանել սուրն զնա, և ոչ հուր եղծ զնա ։ Անդամք կոտորեալք, և զսէրն ոչ կտրէին. այրեցեալք լինէին անդամք, և կապեալք՝ 'ի սիրոյն ոչ խզէին ։ Ընկղմեալ լինէին դարձեալ մարմինք սրբոցն, բայց սէրն նոցա ոչ ընկղմէր ։ Ի կապանս մտանէին անդամքն, և սէրն ոչ կապեցաւ ։ Ո՞վ արդեւք ոչ զարմանայցի ընդ հեշտալի սիրոյն կապանս, որ ոչ հատաւ երբէք և ոչ լուծաւ ։ Եթէ ոք սիրեսցէ երբէք զած ճշմարտապէս, զայնպիսի սէրն ընկալաւ, զայնպիսի սէրն ետ տէրն իւրում եկեղեցւոյ, և զարդարեալ զնա սիրով ։ Այն սէրն գրաւական է այ յորդւոյն. սիւն և հաստատութի գտանի սէրն 'ի 'Տր յանձինս ։ Նոյն սէրն զմիածին Որդին առ մեզ իջոյց. Նովին սիրով ած մարդացաւ. Նովին անմարմինն մարմնացաւ. 'ի ձեռն նորին սիրոյն կապեցաւ զօրաւորն. Նովին սիրով հոգի հարսն եղև փեսային, զի տեսանիցէ յինքեան զքաջավայելչութին իւր հոգին. Նովաւ չարչարեցաւ անչարչարելի փեսայն ։ Եւ եթէ արտաքոյ իցէ սիրոյն այնորիկ անձն, ոչ հաճի ընդ նմա երկնաւոր տէրն. բռնադատել երբէք յօժարութն նորա ոչ կամի. վասն որոյ միանգամ ետ նմա իշխանութի՝ առաքինանալ միշտ, որպէս ախորժիցէ ։ Ո՞ կարասցէ և կամ ո՞ բաւեսցէ փառաւորել զած զփրկիչն յաղագս շնորհին զոր ընկալաք ամենիքեան 'ի ձեռն շնորհին նորա ։ Փառք գոհութի նորա հաճոյութեն ։

Լուարուք, եղբարք, գեղեցիկ խորհրդակցութե իմոյ անարգի, և ճեպեսցուք մինչ դեռ ժամանակս ունիմք առաքինանալոյ սրբութբ և արժանաւոր այ, զի Հոգին 'Տր բնակեսցէ 'ի մեզ, սէրն այ յաճախեսցէ յանձինս մեր. քանզի այս են կամք նորա կատարեալք

յամ ժամ ։ Մի՛ ինչ կալցուք, եղբարք, քան զայս հոգ, եթէ որպէս անձինք մեր գտցին 'ի լոյս ։ Մի՛ փորձեսցուք զանձինս ընդ երկրաւոր իրս և ընդ հոգս ստացուածոց և ընչից. այլ զարդարեսցուք զայն աղօթիւք և պահօք, տքնութբ և արտասուօք. որպէս զի գտցէ անձն փոքր ինչ համարձակութի առաջի բեմբին ահաւոր դատաւորին, յորժամ մերձ կացցեն ամ անձինք երկիւղիւ, յորժամ լինի որոշումն ընտրելեացն 'ի մեղաւորացն, յորժամ կացցեն ոչխարքն ընդ աջմէ և ուլքն ընդ ահեկէ ։ Հաւանեցարուք, եղբարք, զի մերձեալ է տեառն գալուստն՝ որ հատուցանէ իւրաքանչիւր ըստ գործոց. և զընտրեալսն իւր ընդունի 'ի լոյսն յաւիտենական, տանջէ և զմեղաւորսն որք զայրացուցին զնա ։ Երանի մարդոյն՝ որ եգիտ համարձակութի 'ի ժամուն յայնմիկ, և լուաւ զերանելի զձայնն զայն "Եկայք օրհնեալք Հօր իմոյ. ընտրեալք, ժառանգեցէք զարքայութիւն,, ։ Յայնժամ տեսանէ իւրաքանչիւր զինքն 'ի լոյս, հայի ընդ ինքեանն յանկարծելի փառսն, և սքանչացեալ զմտաւ ածէ յինքեան ասելով. արդեւք ես 'ի յինքն, և զիարդ ես անարժանս այսպէս գտայ ։ Մերձենան և հրեշտակք հանդերձ խնդութբ մեծաւ՝ փառաւորել զնոս. և պատմեն նոցա զառաքինութի նոցա, զճգնութի, զժուժկալութի, զտքնութի, զաղօթսիրութի, զկամաւոր աղքատսիրութի, զկատարեալ անստացուածութի, զհամբերութի 'ի ծառայել, զժուժկալուի 'ի քաղցս, զերկարելն յաղօթս, զխնդութիւն 'ի մերկութի յաղագս կատարեալ սիրոյն Քի ։ Զայսոսիկ հրեշտակք մեծաւ ուրախութբ ասեն արդարոցն ։ Պատասխանի տան նոցա արդարքն և ասեն. ամենեին՝ որ 'ի վերայ երկրի՝ մի ինչ գեղեցիկ ուղղուի ոչ գտաւ առ մեզ ։ Դարձեալ հրեշտակք յիշեցուցանեն նոցա զտեղին և զժամանակն. և հրաշանալով ընդ նոսա զած փառաւորեն, տեսանելով 'ի յերկինս զմարմինս սրբոց քան զլոյս պայծառագոյն ։ Նահատակեցան կամք 'ի վերայ երկրի, և համբերութբ ծածկեցին յինքեանս զգեղեցիկ մարգարիտն և զանաղտ պատմուճանն ։ Քանզի գտին յանդաստանի գանձ ծածկեալ, և վաճառելով զամ ինչս իւրեանց 'ի վերայ

երկրի՝ զնա ստացան ։ Փոքր է ժամանակ Ճգնութեան , եղբարք , և մեծ է հանգիստն ․ սուղ է ժամանակ վաստակոյս Ճգնութեան , և յաւիտեանս յաւիտենից է դրախտն՝ փափկութեան հանգիստն ։ Եթէ ոք գիտիցէ ինչ զիւր եթէ մեղաւ այ , և ախորժելով թուլանայ , յանցեաւ կամօք , արտասուեսցէ սիրով , լացցէ անընդհատ , զի արտասուօք ձգեսցէ զշնորհսն յինքն ․ ստասցէ զզղջումն , լուասցէ զմարմինն իւր արտասուօք և հառաչանօք ։

Սնուցի՛մք արդեւք զփորձ արտասուացն , եղբարք ․ լուսաւորեցա՞ւ ոք 'ի ձէնջ խնդութեամբ , եղբարք , այնուիկ արտասուօք՝ որ ըստ այ են ։ Հաւանեցարուք , եղբարք , ոչ ինչ 'ի վերայ երկրի քաղցրագոյն քան զխնդութիւն և զհանգիստ ժամուն այնմիկ ։ Յորժամ ոք աղօթիւք հայցիցէ ընդ ած 'ի սրտի իւրում , փափագէ միշտ ընդ այ ։ Եթէ ոք 'ի ձէնջ հմուտ իցէ և քաղցրացաւ յարտասուս , սիրով պաղատիցի , բարձրանայ 'ի յերկրէ , լինի ինքն բոլորովին արտաքոյ մարմնոյն ․ և զի՞նչ ևս ասեմ մարմնոյ , բովանդակ արտաքոյ յաւիտենից այսորիկ լինի , ոչ ևս 'ի վերայ երկրի լինիցի ․ այնպիսին ընդ այ խօսի , 'ի քնէ լուսաւորի , նբ Հոգւոյն միշտ սրբի ։ Մեծ սքանչելիք է , եղբարք , մարդ հողեղէն ընդ այ խօսի 'ի նբ յաղօթս իւր ։ Երանի մարդոյն՝ որ ունի ապաշաւանս յամ ժամ առ ած ։ Զղջացումն բժշկութիւն է անձինն , լուսաւորութիւն հոգւոյ , ապաշաւանք , մեղաց թողութիւն ․ զՀոգին նբ առ մեզ ձգեն ․ ապաշխարութիւնք զՅն զմիածինն բովանդակեցուցանեն 'ի մեզ ․ յամ ժամ նմա ցանգամք ։

Կամիմք պատմել ձեզ , եղբարք , զզօրութիւն արտասուաց ։ Աննա արտասուօք առ յայ զՍամուէլ մարգարէ՝ բարձրութիւն և պարծանս սրտի իւրում ։ Կինն մեղաւոր 'ի տանն Սիմոնի 'ի քնէ առ թողութիւն մեղաց լալով և թանալով զոտսն նորա ։ Մեծ է զօրութիւն արտասուաց , եղբարք ․ մեծապէս զօրանան արտասուք առ ած , լուանան միշտ զանձինս 'ի մեղաց և մաքրեն յանօրէնութենէ ։ Արտասուք ըստ այ՝ համարձակութիւն տան յարաժամ առ ած ․ ոչ կարեն երբէք մերձենալ պիղծ խորհուրդք յոգի՝ որ ունի զըղջումն ։ Զի՞նչ արդեւք քան զայն քաղցրութիւն գտա-

նիցի. զի՞նչ փափաքելի քան զերանութիւն նորա, յոր-
ժամ զնոյն ինքն զԱծ տեսանէ անձն աղօթելով առ-
նա ։ Յորժամ ցանկայ հոգւոյն, զնա տեսանէ միշտ
'ի պաղատանսն, ընդ նմա խօսի 'ի տուընջեան և 'ի
գիշերի ։ Գանձ անկողոպտելի է սէրն Այ, անճառելի
խնդութի. անդ բերկրի հոգի՝ որ ունի զսէրն զայն ։
Զսէր ասեմ ոչ զմի աւուր, այլ զկեալն 'ի գիշերի և
'ի տուընջեան իբրև յոգւոջ ։

Աղբիւր յստակ են գութք միշտ 'ի յոգւոջ, եղ-
բարք. ոռոգանէ զտունկն պտղաբեր զանձինն. տունկ
պտղաբեր զուղղութի ասեմ և զառաքինութիւս նո-
րա՝ ոռոգել միշտ արտասուօք և աղօթիւք. տնկէ
զտունկն գեղեցիկ զպտղաբեր և զքաջազուարճ միշտ
յանձին քում. և ոռոգանէ զնա դարձեալ արտա-
սուօք և պաղատանօք ։ Տունկք ոռոգեալք արտա-
սուօք և աղօթիւք բերէ նա պտուղ քաջազուարճ՝
որ պիտանացու է հոգւոյ ։ Ընտիրք և գեղեցիկք լի-
նիցին այնորիկ. անսպառ ոռոգանեն զտունկն քո ար-
տասուօք և աղօթիւք, զի ոռոգանեալք աճիցեն և
պտղաբերք լինիցին հանապազօր ։ Մի՛ լինիր ինձ նմա-
նող լքելոյ և մեղաւորի, որ ասեմ զօր հանապազ և
ոչ առնեմ երբէք. ծոյլ յօժարութբ և թոյլ յոր-
դորմամբ, և ոչ աղօթս մբս. զի գիտեմ զիս յամ
ժամ մեղաւոր, և երկուցեալ միշտ 'ի հանդերձեալ
դատաստանէն, և պատասխանիս ինչ ոչ ունիմ յա-
ղագս յանցանաց իմոց մեղկութեան ։ Արդ աղաչեմ զձեզ,
երկիւղածք յԱյ, որք յամ ժամ առնէք զհաճոյս նր,
բարեխօսեցէք առ նա յաղագս իմ տկարի, զի եկեսցէ
առ իս նր ոք շնորհն յաղօթից ձերոց. և ապրեսցի
իմ անձս յաւուրն յայնմիկ յահաւոր և 'ի մեծի, յոր-
ժամ գայ Քս հատուցանել իւրաքանչիւր ումեք ։

Փառք միայնոյ Այ անմահի և գթածի՝ որ շարժեաց
զմեր լեզուս շնորհիւն իւրով երգել զբանս դատաս-
տանի և սիրոյ և զապաշխարանաց ։ Դարձեալ անձանց
լուսաւորիչ է, սրտի և խորհրդոց օգտակար. զի ամ
անձն երգելով զայսոսիկ՝ քաղցրացի, և ձգեսցի 'ի
կեանս յաւիտենականս 'ի Քս Յս 'ի տէր մեր. որում
փառք յաւիտեանս ։

# ՑԱՂԱԳՍ ԱՊԱՇԽԱՐՈՒԹԵԱՆ Ի ՊԱՀՍ ՔԱՌԱՍՆՈՐԴԱՑ*

Ի շաւիղս փառաց քոց, Տէր, ընթանամ բանիւք իմ, Որդի ա̃յ. քանզի քեզ պարտին տալ փառք ա̃մ բնութիւնք բանաւորաց. առ քեզ, Տէր, համբառնալ զբարբառ բերանոյ իւրաքանչիւր որ՝ երգել զերգս սքանչելի անուանդ քում Նըյ։ Ի քէն ընկալաք զբանաւորութիւն, Տէր. և քեզ մատուսցուք զբանս օրհնութեան։ Քո եմք, Տէր, ստեղծեալք 'ի հողոյ բանականք, լեզուօք, շարժմամբք շրթանց, զգայութեմբք, մտօք և խորհրդովք բարեաց. պարգևեա մեզ, Տէր, զշնորհս առ 'ի քեզ փառաբանութեան՝ որ կարօղ ես յամի տալ խնդրողաց քոց առատապէս զքեզ բարեբանել։ Եւ քանզի փառք փառաց քոց, Տէր, ընդ քեզ են միշտ և հանապազ, և ոչ կարօտիս փառաբանողաց, որպէս և եսդ յէութեան և առանց կարեաց, այլ գթալով 'ի մեզ, Տէր, ընկալցիս զպտուղ բանի ներբողենի շրթանց մերոց։ Բաց և այժմ զբերանս մեր, Տէր, և լցո զսա ըստ անսուտ խոստմանց քոց խօսել մեզ յաղագս մեծանուն փառաց քոց՝ մեծապէս սիրով։ Զդատարկ անօթ շրթանց մերոց մատուցաք առ քեզ, Տէր. լցո զբերանս մեր շնորհօք փառաբանութեան քո վասն սիրոյ քո։ Որպէս 'ի քէն, Տէր, յադեսցին զօրհանապազ ամենայն քաղցելոց անձինք, տուր մեզ Տէր և այժմ քարոզել զմեծութիւն պարգևաց քոց։ Զի թէ և անբան կենդանեացն ետուր բան՝ որով փառաբանի ամենամեծ անուն քո, Տէր, յանբանէն բանաւոր խօսիւք. որով զդժուարինս դիւրաւ գործես հանապազ, զոր և անբան իշոյն ետուր բան խօսելով ընդ [1] բանաւոր գիտնականին առ 'ի խրատել զանխրատ մարգարէն՝ Նմա 'ի զարմացումն, և

* Ի Ճառընտրաց ԺԳ. ԺԲ. և ԺԸ. Ոսկեփ։

1 Մի օրինակ չի բանաւոր գիտնականն։

քեզ, տէր, 'ի փառաբանութ՟ն, ամենևին նոր բա-
նիւքն որով խօսեցաւ անբանն մեծաւ սքանչելեօք՝
գովեցար դու, տէր, և մարգարէն ինչ ոչ օգտեցաւ։
Այլ մեք ոչ լինիցուք իբրև զնա դատարկ 'ի յօգտից.
քանզի պատկեր քո եմք, տէր, և գործք ձեռաց
քոց։ Լցո զմեզ 'ի քոյոց պարգևացդ բանականութ՟.
ոչ իբրև զանբանն կենդանին կամ իբրև զօրինակ փողոյ
ձայնի՝ որ լոկ միայն ունի զհնչումն, քանզի և քաղց-
րաձայն եղանակ փողոյն ոչ ինչ օգնէ։ Այլ շնորհիւ-
քո, տէր, եղիցուք մեք իբրև զերկիր բարի. սերմա-
նել տոհմական, որ տացէ տեառն իւրում զպտուղս
բազմապատիկս։ Արդ տուր մեզ, տէր, բանք ներբո-
ղենից խորախանալ 'ի յերգս օրհնութ՟ քո հանդերձ
ժողովոյս բազմականօք. տուր, տէր, և լսողաց բա-
նից զունկնդրութ՟ի, երկիւղիւ և սիրով ընդունել ըղ-
լուր բանից քոց, և ճաշակել զհացդ կենաց, և լսող
լինել բանից քոց իբրև զանմեղ մանկունս 'ի դայե-
կաց 'ի հաց կոչելով։ Եւ զի հացն այն միայն առ-
օրեայն է 'ի հաստատութ՟ մարմնոյ, և ջուրն զովացու-
ցիչ ընութ՟. իսկ բանք քո, տէր, հաց կենաց է, լոյս
և կեանք և առիթ հոգևոր կենաց։ Ի լիութ՟է հացի
ծանրութ՟ի և ծուլութ՟ի ծնանի. իսկ բանք քո, տէր,
կենաց աճեցուցանէ զթևս հոգւոց՝ թռչել յերկինս,
ելանելով 'ի խորանսն լուսոյ։ Շնորհեա մեզ, տէր,
յաւուրս ՟մր քառասնորդաց պարկեշտաամիտ սրբութ՟բ
ճաշակել չափաւոր, և անչափս զբանս քո կենաց խօ-
սել և լսել. կարճել 'ի կերակրոց, և երկայնել զերգս
՟ածաբարբառս։

Արդ պարտ է մեզ չափաւորապէս ճաշակել. քան-
զի 'ի պէսպէս խորտկաց կուրանայ միտք հոգւոյ՝ յոր-
ժամ յղփանայ, և ՟ածային գրովք լուսաւորի միտք
հոգւոյն՝ յորժամ լիանայ յաւուրս սրբութ՟ պահոցս։
Ոանզատոյց է մարմնական պիտոյից և յաճախումն ՟մր
գրոց վարդապետութ՟. որ է հոգւոց փրկութ՟ի։ Ցայսր
աւուրց սրբութ՟ե պահոց ջահափայլ պայծառացաւ
լռութ՟ի պահոց 'ի վերայ ժողովրդեանդ ՟այ. և մեք
շնորհօքն ՟այ բարձրացուսցուք զբանս վարդապետու-
թ՟էս 'ի լսելիս պահողաց սիրելեացդ ՟այ։ Այսր ա-
ւուրց սրբութ՟ե պահոց պապանձեալ և լցեալ է ան-

առակութի բերանոյ, և բացեալ ականջացս դուռն լոյս 'ի լսել զբանս կենաց: Այսր աւուր սրբութեան պահոց խափանեալ է լռութի որովայնի, և լուսափայլ զուարթանան կարգ հոգեորականք: Յայսր աւուրց սրբութե պահոց բարձեալ է իշխանութի որկորստութե, և իշխէ բանս կենաց սփռեալ և փայլեալ 'ի ժողովս հաւատացելոց, և բղխեն իբրև ծառք զծաղիկս և զպտուղս կենաց[1]: Զի ոչ եթէ յամ ժամ զտանի պտուղ 'ի տունկս գեղեցիկս. այլ զայ ժամանակ, զի և ոչ տերև զտանի 'ի ծառս վարսաւորս, և ոչ 'ի բարունակ որթ այգեաց յամ ժամ զտանի ողկոյզ խաղողոյ. այլ ընտրեալ է ժամանակ պտղաբերութե արդեանց, որպէս մարդատունկս յաւուրս պահոց բերելով պտուղ կենաց: Եւ ոչ յանդաստանս յամ ժամ զտանի բռնալիր որայ և խրձունս բոլորադէզս. այլ աւուրքն և եղանակ տարւոյն բերեն իւրաքանչիւր արդիւնս: Իսկ եթէ արդիւնք երկրաւորք և մարմնաւորք ընթանան զժամանակս իւրեանց, ապա և արդիւնքս հոգևոր և երկնաւոր ընթացցին ըստ ժամանակս իւրեանց ընտրողապէս, որ է ժամանակ պահոցն. որով բազմապատիկ պտուղք մեր ժողովին 'ի շտեմարանս հոգևորս:

Սիրելիք, ահա ժամանակ ընդունելի. զարթիցուք ամենեքեան 'ի պտղաբերութի 'ի պահոց աւուրս, զի լցցին շտեմարանք հոգւոց մերոց առատութբ ցորենոյ. զեղցին[2] հնձանք մեր լիութբ խաղողոյ: Յայսմ աւուրց ժամանակի պահոցս հիւանդացելոց հոգիք առողջանան՝ գոլով 'ի դուրս բժշկին երկնաւորի, և նա գթութբ պատէ զվէրս մեր: Յայսմ աւուր սրբութե պահոց ամենաժողով[3] մնաժողով շահավաճառք մարգարտին լուսոյ և ականցն պատուականաց: Յայսմ աւուրց սրբութե պահոց ահա վաճն այսօրիկ վաճառի արդարութե պսակն, և իմաստուն վաճառականն գնէ զնա ողորմութբ և տրօք տնանկաց: Յայսմ աւուրց պահոց կայ Քս միածին Որդին այ տալով մեզ 'ի վաճառ զարքայութի երկնից 'ի ձեռն

1 Մի օր. յաւելու. խօսէա, չեպու, ընորհօքն այ:
2 Մի օրինակ հեղցին:
3 Մի օր. ծող փեան հարկանի ածն ամողայ շահավաճառ:

աղքատաց և տնանկաց․ և ոչ ճշգիւ 'ի տուրս, այլ ընդ պատառոյ միոյ հացի և ընդ լօկոյ ջրոյ՝ որ ըստ կարին է։ Յայժմ աւուր պահոց բացցուք զշտեմարանս մեր աղքատաց, և սփռել տնանկաց մի խնայեսցուք․ զի առցուք 'ի տեառնէ բազմառատս պարգևօք զարքայութիւն երկնից, որով սիրէ Քս տալ և պարգևել մեզ զանճառ բարութիւնս, և միայն զպատճառս խնդրէ յառողաց․ ընդ փոքր մի ձորձոյ և ընդ կտաւոյ հնացեալ հանդերձի զլուսեղէն զգեստն փոխարէն տալով․ ընդ անպէտ պատառատուն պատմուճանի տայ մեզ զպատմուճանն լուսափայլ զ'ի վերուստ անկեալն․ ընդ ջնջանի[1] և ընդ մաշեալ վերարկուի մահճաց՝ տայ մեզ զբազմականն Աբրահամու, ուստի մերժեալ են ցաւք և հեծութիւնք․ ընդ փշրանացն ընթրեաց սեղանոյն շնորհէ մեզ զփափկութի՟ անմահական դրախտին ընդ Ղազարու 'ի գոգ նահապետտին Աբրահամու։ Տացուք ծարաւելոցն զբաժակն ցուրտ ջրոյ, և ընկալցուք 'ի տեառնէ զբաժակն ուրախութե՟ և անմահութե՟։ Բացցուք զդուռն սրահի տանս մերոյ եկին և պանդխտին սիրողապէս․ և բացցին մեզ դրունք արքայութե՟ երկնից։

Պահք սրբութե՟ ողորմութ՟ զարդարի․ տուր նմա զզարդ իւր, զի մի՛ օտարասցիս 'ի վարձուց պահոցն։ Տուր տնանկացն զոր 'ի ձեռն պահոցն յաւելլաւ 'ի քէն, զի մի՛ երևեսցիս ընդացող[2] և անխնայող, և ոչ իբրև զպահող․ այլ զոր անխնայեցեր, տուր այնմ՝ որ քաղցեալ և նքօղեալ իցէ, զի կրկնապատիկ առցես զվարձս պահոցն։ Պահեա զպահս քո երկու բերանով, մի՝ որով դու պահես, և երկրորդ՝ այնմ որով կերակրի 'ի թօշակէն քումմէ։ Պահելով ո՟յ և որոք տնանկաց կրկնապատիկ առցես զշահս վաստակոց քոց․ զի այսպէս խնդրէ արդարութի՟ն՝ որ գործէ զնա։ Պահօք մաքրեա զաղտ հոգւոյ քոյ, և ողորմութե՟ գնեա զարքայութի՟։ Պահելով քո մի՛ շտեմարանեալ կայցէ 'ի յարկս քո խորտիկս՝ որ յաւելլաւ 'ի պահելն քո․ այլ լցո նովաւ զքաղցելոց անձինս։ Իսկ եթէ անխնայես 'ի նա՝ զի քեզ լիցի, լուծանես զպահսն քո

1 Մի օրինակ ջնջոյի։ 2 Մի օրինակ պնդացող։

համդերձ պահեստիւն. իսկ եթէ տայես զնա 'ի ձեռս աղքատաց, պահսն քո կատարեալ լիցի, և ընդունիցիս զպսակն կենաց և արդարութե՜ ։

Ի ժամանակս սերմանելոյ արդեանց ոչ ոք զլանայ 'ի սերմանելն. զի յուսալով գիտէ՝ թէ ըստ լիութե սերմանն հաւաքէ զարդիւնսն լիապէս ։ Արդ 'ի սերմանել զողորմութի մի ծուլասցիս, ո՛ պահող. և ունիցիս հնձել զարդիւնսն 'ի փառաց աշխարհին՝ որ գալոցն է ։ Երկիր բարի և պարարտ են աղքատք, և 'ի սերմանելն ընուն զերկինս արդեամբք ։ Քանզի են երկիր արտավարք՝ որ սխալեն և ոչ բուսանին. և են բազումք՝ որ բուսանին և աճեն, և ոչ տան պտուղ ։ Բայց անդաստանք աղքատաց ոչ նենգեն հողագործաց, և ոչ երբէք սխալեն. այլ որով կերպիւ և սերմանեն, տացեն պտուղ բազմապատիկ շիղջ ցորենոյ կենաց հացի ։ Հողագործաց սերման բազում խափանումն գործին, երաշտ, սառն, տապ և ամպք կարկտաբերք. և եթէ ըստ այնմ անցանէ որայն 'ի լինել շիղջ ցորենոյն, սակայն և անդ երկիղ է 'ի հողամասն անիրաւ պահանջողաց, 'ի գողոց, յանձրևաբեր ամպոց, և 'ի պէսպէս պատճառէ հալի և սպառեսցի. թերևս տասներորդ մասն ապրեցաւ ։ Իսկ ողորմութե սերմանց և արդեանց ոչ երկիւղ, ոչ ցասումն, ոչ կարկուտ և ոչ մարախ և ոչ դրժող ինչ յաղթել կարէ նմա. քանզի 'ի ձեռս այ պահեալ պահպանի պարգևք ամ պահողաց 'ի բարձրագաւառն, զոր պահէ աջն արարիչ մեծն և հզօր, այն որ կշռէ զլերինս և հաստատէ զբարձունս ։ Անդ պահպանեալ կան արդիւնքն ողորմածաց. քանզի սակաւ լումայն՝ որ առնու 'ի ձեռն աղքատաց, անդ ընկալցիս զնա 'ի ձեռաց Քրիստոսի բազմապատիկ. և զոր սերմանեցեր առ աղքատս, հնձեսցես զնա առ տէրն քո յանդաստանս լուսոյ. և զոր ցրեցեր, անդ ժողովեսցես զանանց բարութիւն ։

Արդ գանձեա զգանձս քո յերկինս, և թագս յերկիւղալից յերկրէս յայսմանէ՝ եդեալ յերկինս 'ի վերին գաւառն, ուր ոչ իշխեն գողք և աւազակք ։ Ահա առ դրանն քում կան մշակքն մեծավաստակք 'ի գործել զանդաստանս քո՝ հաց 'ի բերան վարձու, և չի-

նեսցեն քեզ բերդ ամուր և աշտարակ բարձր յերկիրն կենդանեաց . և անդ երեւեալ բնակեսցես և գտցես ժառանգելով զվարձսն՝ որով ետուր նոցա ։ Ձեռք նոցա շինեսցեն քեզ սենեակս յարկս լուսոյ . և անդ երեւեալ ժառանգեսցես զգանձս յաւիտենից ։ Ձեռք նոցա կանգնեսցեն քեզ աշտիճանս լուսեղէնս և ելք 'ի բարձունս , առանց աշխատութեան ելանել առ ած ։ Ձեռք նոցա հորդեսցեն քեզ ճանապարհ կենաց դըռնացն քոյ յառագաստն լուսոյ առանց գայթագղութեան . նոքա լիցին քեզ ճանապարհորդակից յերկիւղալի աշխարհին յահագին և յանծանօթ ճանապարհին ։ Ձեռք նոցա կազմեսցեն քեզ կամուրջ յորդեւանդ բորբոքեալ հրեղէն գետոյն . քանզի պատկեր են չորրորդին՝ որ ընդ երից մանկանցն . որ և բարեխօսեն փրկել զքեզ , սրսկելով 'ի վերայ քո զցօղն ողորմութեան ։ Ձեռք նոցա գործեն քեզ նաւ 'ի վերայ հրեղէն ծովուն . և 'ի գնալն քո 'ի վերայ նորա ոչ մերձենայ 'ի քեզ բոցն կիզանող ։ Ձեռք նոցա համարձակապէս բանան քեզ զդուռն փեսային , մինչ փակեալն իցէ . և ածեալ բազմեցուցանեն զքեզ 'ի սեղանն փափագելի՝ կոչելով հիւրամեծար զՂազարոս . զի եղբարք են նոքա , և նովաւ գան ընդ առաջ քո իբրև սիրելւոյ , և վկայեն ողորմութեան քո առաջի վերին զուարթնոց հրեշտակաց և հրեշտակապետաց , և մատամբ ցուցանեն վերին արքային Քրիստոսի , թէ այս այն այր է՝ որ կերակրէր զմեզ 'ի սովին մերում լրջմտութեամբ , և 'ի գոհութեն նոցա գովիս դու 'ի վերին զօրացն ։

Լեր նոցա սիրելի , և ընկալցին զքեզ 'ի տաղաւարս իւրեանց . զի նոքա իսկ են պարծանք ամ արդարութեան ։ Զինչս քո 'ի ձեռն նոցա արձակեա առ ած , և երեւեալ գտցես զնա 'ի դուռն արքայութեան բազմապատիկ ։ Զպաշարադիր ճանապարհին քո դիր առ նոսա 'ի պահեստի , մինչ չև իցես հեռացեալ . և յորժամ փոփոխեսցիս յաստեացս , այն ոչ պակասեսցէ 'ի քէն ։ Լեր ընկերակից նոցա 'ի ճանապարհն՝ որ առաջի քո կայ լի աւազակօք . և զստացուածս քո դիր 'ի բեռին նոցա , և ոչ յափշտակի 'ի քէն ։ Եւ զոր աստէնն թողացուցեր՝ կորեաւ 'ի քէն , ստէպ ստէպ

ճողոպրեա[1] յընչից քոց, և տուր 'ի ձեռս նոցա, և ստուգիւ պահեսցին քեզ։ Եւ զոր ոչ տացես 'ի ձեռս նոցա, ոչ քո իցէ. յորժամ 'ի ձեռս նոցա է, ապա լինի քո։ Եւ զոր ունիցդ առ քեզ, ոչ ես դու տէր նոցա. և զոր տնանկքն առնուն 'ի քէն, այն ևս պահեսցի քեզ։ Եթէ կամեցցիս տէր լինել ընչից քոց, արձակեա զնոսա 'ի ձեռն աղքատաց առ ա՟ծ։ Եթէ մեծութ՟ի կամիս ստանալ, զճշմարիտ մեծութ՟ի ստացիր, և մի՛ լքանիր աստէն, զի մի՛ լինիցիս աղքատ։ Եթէ մեծութե՟ ցանկաս, ստուգապէս լեր մեծատուն՝ մի՛ զառժամանակեայս, այլ յաւիտենից մեծութ՟ք։ Բարձ զինչ քո 'ի վերայ ուսոյ աղքատին, և երթ ուրախութ՟ք զկնի նորա յերկիրն կենդանեաց։

Ով պահող, կոչեա դու զտնանկն, և տուր նմա զհացիկն. և մի՛ հայիր նմա գալ առ քեզ, այլ նախ դու երթեալ՝ լցո զնա հացիւ. զի ոչ թէ անդաստան երթայ 'ի տունս երկրագործաց, այլ անձամբ կրեն զսերմանիսն սփռել 'ի նոսա։ Նոյնպէս և դու առ զսերմն բարի, և երթ սփռեա յանդաստանն հոգևոր և բանաւոր. աւանդեա 'ի նոսա, և աներկբայութ՟ք մնա արդեանց 'ի նմանէ։ Ապա եթէ դայցէ տնանկն 'ի տուն քո, 'ի վարձս ոտից նորա պարտիս հատուցանել. զի քեզ վաստակեցաւ հանգիստ քեզ առնելով գնալոյն առ նա, զոր պարտ է միշտ երթալ առ նա. և իբրև եկն, կրկնապատիկ հատո նմա սրտի մտօք։ Զի եթէ հնար գոյր արտավայրացն[2] գալ առ հողագործն, քանի՛օն ուրախութ՟ք տայրն նմա ըզսերմն լիապէս։ Ի գալ մուրողին 'ի դուռն քո, մի՛ յապաղեր տալ նմա զպէտս և արձակել զնա ցնծութ՟ք։ Ժտելով խնդրեաց 'ի քէն, մի՛ ասեր՝ երթ 'ի բարի, տէր տացէ քեզ։ Բարի է բանդ, այլ դատարկ և առանց վարձու. կերակրիլ խնդրէ 'ի քէն, և ոչ թէ ուսանել զտեառնէ զբարեաց տուողէն։ Տուր նմա զհացիկն, և տէր տացէ՝ մի՛ ասես նմա, զի 'ի տրոց քոց տացէ տէր նմա։ Եւ եթէ զտէր յոյս ցուցանես նմա, և տացէ ճշմարտապէս տալով քո, լեր տէր և դու, և ապա ասա՝ թէ տէր տացէ, և չէ խոտան։

1 Մի օր. ճողոպրեա և ճողոպրեա։ 2 Մի օր. արտահողացն։

Եթէ ասիցեմ՝ տէր տացէ, և դու ոչ տացես, սուտ լինիմ. զի բարեաց տուողն 'ի բարեաց քոց ոչ ետ նմա, որպէս ասացեր։ Հեշտալի է բանդ և առաւել քան զտուրս. այլ տուր նմա զհացիկն, զի զբարի բանդ զայդ ոչ կամի լսել 'ի քէն։ Սովեալ է և նքաղեալ. կերակրիկ խնդրէ, և ոչ բանս բարիս. զի 'ի բանից քոց ոչ յագի և ոչ օգտի. և ոչ վարդապետ խնդրէ, այլ զտուրս ողորմութեան։ Մի՛ վարդապետ լինիր նմա, այլ լռութեամբ արա զողորմութիւն։ Միթէ ասիցէ՞ երկրագործն ցանդաստանն՝ և ահա սերմանեսցէ 'ի քեզ տէր, ահա սերմանեսցէ. և եթէ բիւր անգամ երկրորդեսցէ, և ոչ տացէ նմա սերմն բարւոք, ոչ ինչ օգտիցի 'ի նմանէ։ Եւ ոչ եթէ բանիւք լինի որայ, կամ շիղջ ցորենոյ առանց սերման։ Նոյնպէս և մուրողին թէ բազում անգամ ասիցես՝ գնա բարւոք, տէր տացէ քեզ, և ոչ ինչ տացես նմա, խօսք քո լքաւ 'ի քէն, և պտուղ 'ի քեզ ոչ տացէ։ Արդ պարզեա զձեռն քո 'ի տուրս, և լռութեամբ խօսեա ընդ աղքատին տրօք քո, և մի՛ թարգմանիր նմա զբարերար տեառնէ։ Եւ եթէ դատարկ իցես իբրև զնա, ասա նմա ողոքելով՝ տէր տացէ քեզ և մեզ։

Ով պահող, սերմանեա զողորմութիւն երկոքին ձեռօք. ահա գայ ժամանակ և հնձես աջովդ և ահեկաւդ։ Յայսմ աւուր պահոց յոյժ սիրէ երկիրն բարի զբարի սերմն 'ի քէն. յաճախեա 'ի սերմանել, և ամենեքին բուսանի և ուրախ առնէ զքեզ։ Ով պահող, 'ի պահել բերանոյ քո պահեա զշրթունս քո յանիծից և բամբասանաց, 'ի հայհոյութեանց, 'ի թշնամանաց, 'ի նախատանաց, 'ի հպարտ բանից, նա և 'ի ստերդմանց. այլ եղիցի այոն այո, և ոչն ոչ։ Տես 'ի քեզ և սանձեա զշրթունս քո, զի մի՛ խօսեսցի բերան քո բանս՝ որով լուծանի պահսն քո, և գրեսցիս դու ընդ անարգ արբեցողսն և ընդ պիղծսն. քանզի մի բանն որ ոչ է 'ի կամս Աստուծոյ, պիղծ առնէ զպահսն քո։ Եւ արդ կնքեա զշրթունս քո, եթէ պահող իցես։ Եսայիաս 'ի բարի վարուց պահոց համարեցաւ զլռութիւն բերանոյն. ասէ. “Մի՛ խօսեսցի բերան քո զբանս տրտնջման յաւուրս պահոց քոց„։ Զի ոչ ամենայն բանք ընդ միոյ համարին զոր խօսեսցին մարդիկ, և

ոչ յա̃մ բանից վարձատրի կամ պարտաւորի. քանզի և օրհնութի̃ ա̃յ և բարեբանութի̃ք բանք են, և երգք հոգևորք, և տեսիլք մարգարէութե̃: Այսպիսի բանք կեանք են և լոյս ասողաց և լսողաց. զոր եթէ հնար է, մի՛ դադարեսցուք զաւուրս կենաց մերոց:

Մ՛ի խօսեսցի բերան քո զբանս դատարկս և արտաքինս յաւուրս պահոց: Մարգարէն իսկ յայտ առնէ զբանսն, զոր ոչ է արժան լուծանել. ասէ. մի՛ խօսեսցիս բան զընկերէ քումմէ, մի՛ հեռ, մի՛ նախանձոտ, մի՛ չարայուշ: Լուեցո, ասէ, զլեզու քո 'ի բամբասանաց, 'ի հայհոյութե̃ց, 'ի տրտնջմանէ, և յա̃մ իրէ՝ որ շրջի 'ի խաւարի: Քանզի մի և նոյն լոկ բանն կարող է փակել զդուռն ապաշխարութե̃ պահողին, և անպիտան առնել ա̃ծայրին կանոնաց. և միայն բանքն կարող են կործանել զասացողն 'ի հուր գեհեննին, և 'ի կորուստն յաւիտենից յուղարկել զնա: Մովսէս գլուխ մարգարէիցն՝ գործք իւր ա̃մ բարիք էին, և 'ի մի բան բերանոյ բարկացոյց զա̃ծ: Նոյնպէս և Մարիամ մարգարէուհին քոյրն Ահարոնի մեծ քահանայապետին կոյս էր և անապական. և վասն միոյ բանի զոր խօսեցաւ, բորոտութե̃բ պատուհասեցաւ: Եւ ընդէ՞ր ոչ ասացից վասն աջակողման աւազակին բանից բարեաց, որ միով բանիւ ժառանգորդ եղև դրախտին կենաց: Նոյնպէս և մաքսաւորն բանիւ արդարացաւ: Նոյնպէս և բան անպիտան 'ի դատաստան և 'ի մահ ձգէ՝ ասացաւ, Ո՞վ ոք ոչ սարսէ, և ո՞վ ոք ոչ զարհուրի և դողայ յառասպելախօս և 'ի դատարկ բանից: Զի գրեալ է. “Ի բանից քոց արդարասցիս, և 'ի բանից քոց պարտաւորեսցիս„: Արդ երկիւղիւ կշռեսցէ ա̃մ ոք զխօսս իւր և ապա խօսեսցի. զի 'ի բանից շրթանց պիղծ համարեսցին, թէպէտ և ս̃րք և պահողք իցեն, զի ոչ եթէ ապաքէն բանք իցեն: Ահա և Մովսէս բարկացոյց զա̃ծ, և Մարիամ բորոտեցաւ, ս̃րքն և ընտրեալքն: Նա և աւազակն բանիւ ժառանգեաց զդրախտն, և մաքսաւորն բանիւ արդարացաւ. 'ի նմին բերանոյ բանից բարութի̃ք և չարութի̃ք առանց գործոց: Արդ վեհերեա 'ի բանից, ով պահող, զի մի՛ կրեսցես դատապարտութի̃ յաւուր պահոց քոց: Մ՛ի սովորեսցիս խօսել երբէք

զառաստպելական բանս, և մի՛ պատմեր յանցանաց գործս մարդկան: Զի՞նչ հարկ է քեզ կեղեքել զվէրս այլում. պատմեա զվէրս քո, և մի՛ պատմեր զվէրս մերձաւորին. երկիր 'ի տեառնէ, և մի՛ բամբասեր զմեղուցեալ եղբայրն, և մի՛ դատեր զայլս ծառայ: Առաջին առաքինութի և մեծ այն է զոր Դաւիթ ասէ. "Մի՛ խօսեսցի բերան իմ զգործս որդւոց մարդկան յաւիտեան,,: Բարւոք խօսեցաւ և հզօր քընարն մարգարէութե. մի՛ խօսեսցիս, ասէ, զգործոց չարաց զընկերէ քումմէ, զի մի՛ լիցի շրթունք քո կամուրջ բանից ունայնութե, և ոչ օգտեսցիս 'ի բամբասանաց ազգականին քում: Զի՞նչ օգուտ է պահօք արդարանալ, և բանիւք մեղաւոր գտանիլ. զի՞նչ օգուտ է միով ձեռամբն շինել և միւսովն քակել, և այնու 'ի տեառնէ վարձս ոչ ընդունել. զի՞նչ օգուտ է պահօք ժողովել զարդարութի, և բանիւք ցրել. զի՞նչ օգուտ է պահօք պնդել զմէջս, և բանիւք լուծանել, և ընդունելի ինչ ոչ առնել: Բարւոք և ո՞ք է պահելդ զնա, այլ զեղծ և պիղծ են բանք քո. զոր օրինակ 'ի բուրվառ եդեալ ոք խունկ անուշ, և առ նմին գարշելի ապաւառ[1] որչափ գարշ և ընդունայն է սրբոց:

Ով պահող, սարսեա 'ի բանից չարաց. բանք չարք սպանուիք գործեն. որք յանդգնին 'ի խօսս իւրեանց, 'ի նմին բերանոյ բղխեն և բարեբանութիք այ, սաղմոսք և ալէլուք: Արդ կրթեա զլեզու քո 'ի փառաբանութի այ՝ կարդալով սաղմոսք և ալէլուք, եթէ կարող իցես. ապա թէ ոչ՝ ընտրեա զանարատ լռութի. և որ կարողն իցէ՝ խօսիցի շնորհօքն այ զբանս հոգեշահս, զշինութի եղբարց, զմխիթարութի մտաց, յորոց օգտին լսողքն: Ով պահող, այց ել որբոց տընանկաց. ողորմեա մուրողաց և աղքատաց. սպասաւորեա հիւանդաց և վշտացելոց. ծածկեա զթիկունս մերկացելոց. զայրիս և զորբս կոչեա 'ի տուն քո, լցո զթեզանիս նոցա 'ի փշրանաց սեղանոյ քո. եթէ կարող իցես, բարձ զտնանկութի նոցա յարդեանց քոց ուրախութբ. և 'ի վերայ այսր ամի լուեցո զշրթունս քո 'ի դատարկ բանից, և մի՛ կեղեքեր զվէրս յանցա-

1 Մի օրինակ ապարուր :

*նաց եղբօր քո։ Եւ քանզի հանդիպեցաւ քեզ աւուրս պահոց, բազմաշահ վաճառու շահաւորեա զոգիդ քո իբրև իմաստուն վաճառական։ Ջնջեա զձեռագիր պարտաւորութեան քո, յորժամ 'ի բաց է դուռն ապաշխարութե̃ն քո մեծին[1]. և արիական աղօթիւք և պահօք հաստուսցէ իւրաքանչիւր զպարտս իւր և ողորմածութ̃բ. զի եղիցուք մաքրեալք 'ի մեղաց ճըշմարիտ ապաշխարութ̃բ. և օրհնեսցուք զայն՝ որ շընորհեաց մեզ պատամս պահոց 'ի պահել զմեղս մեր, և նմա փառք յաւիտեանս. ամէն։*

1 Այսպէս 'ի միում օրինակի. յայլս պակասի։

## ՅՈՐԴՈՐՈՒՄՆ ՊԱՀՈՑ *

ՊԱՀՔ յայտնիք ծածուկ պահօք բովանդակին. և որ արգելուն 'ի կերակրոց, արգելմամբ չարեաց կատարին. քանզի ոչ 'ի միոյ անդամոյ կայ մարմին, և ոչ միով քարիւ կատարի շինուած: Իսկ որք բարւոք պահեն, յա̃մ չարեացն կարճին. և որք 'ի չարեացն հեռանան, 'ի բարիսն ընթանան. և որք 'ի բարիսն ընթանան, ընդ ա̃յ հաղորդին. և որք ընդ ա̃յ հաղորդին, փառօք վերանան: Մովսիսին 'ի պահոցն շըքեղացան դէմք երեսացն, և իջոյց օրէնս ժողովըրդեանն, և անուանեցաւ ա̃ծ Փարաւոնի: Եղիա յետ պահոցն ետես զփառսն ա̃յ. յարոյց զմեռեալն, և հրեղէն կառօք յափշտակեցաւ յերկինս: Եւ դանիէլեանքն որ պահեցին, ապրեցան 'ի հրոյն և 'ի բերանոյ առիւծոցն, և արժանի եղեն յայտնութեան ա̃յ. զի պահք որ հաւատով են, շիջուցանեն զզօրութիւն հրոյ, և խնուն զբերանս առիւծուց: Պահք պարծանք մարգարէից և գրգանք առաքելոց և պարիսպ վկայից. պահք զէն բարեաց և վահան ընդդէմ չարին. պահք սանձք ցանկութեան մարմնոց և զօրացուցիչ հոգւոյն ընդդէմ մեղաց. պահք նմանութիւն հրեշտակաց և հալածիչ դիւաց. պահք պատարագ ա̃յ և բուրուալի հաշտութե̃: Ի պահոց բազում առաքինութիւնք, և 'ի կերակրոց բազում վ̃նասք: Կերակուր զԱդամ եհան 'ի դրախտէն, և զԵւա մերկացոյց 'ի փառացն: Ըմպելի զարդարն մերկացոյց, և պահքն զտիեզերս լուսաւորեաց: Կերակուր զԵսաւ հեռացոյց յանդրանկութենէ, և պահքն Յակոբայ զգեցուցին զօրութիւն: Փոխեաւ յԵսաւայ անդրանկութիւն վասն որկորստութե̃ նորա, և հանգեաւ 'ի Յակոբ վասն պարկեշտութե̃ նորա: Պահեաց և տէր մեր, զի տացէ մեզ օրինակ. և յաղթեաց սատանայի 'ի ձեռն պահոցն, զի հատուսցէ զպարտսն Ադամայ՝ որ 'ի ձեռն պահոցն զոր

* Օրինակն գրեալ է 'ի Թուխ Պլս :

պատուիրեաց նմա ած, 'ի ձեռն ուտելոյն պարտեցաւ։ Եւ տալ օրինակ ծննդոց նորա կամեցաւ՝ թէ որպէս կարասցեն յաղթել։ Վասն մեղաւորաց մերձեցաւ 'ի կերակուրս ուրեք. և յաղթութիւն չարեաց 'ի ձեռն պահոց։ Եղև մարդ, զի օգնեսցէ մարդկան. և յայտնի պահք նորա յօգնականութիւն մեզ, և կերակուր նորա 'ի շահ օգտի մեր. պատուիրանք նորա 'ի կեանս մեր, և խոստմունք նորա 'ի խրախուսն մեզ։

Պահեսցուք այսուհետև ըստ հրամանաց նորա յամ ժամ յամ չարեաց, և կերակրեսցուք յամ բարութեց։ Զամ ինչ ըստ կամաց նորա արասցուք, և զամ գործս մեր ըստ հաճոյից նորա գործեսցուք. Նմա միայն կեցցուք, զի նա է փրկիչ մեր. և զնա միայն պաշտեսցուք, զի նա է թագաւոր մեր. Նմա միայն պահեսցուք և մի մարդկան. Նմա պահեսցուք և մի երկրաւորաց. Նմա միայն պահեսցուք և մի մսեղինաց. Նմա կացցուք յաղօթս և մի մահկանացուաց։ Ի նմանէ խնդրեսցուք և մի 'ի չարեացս. Նմա սրբեսցուք զսիրտ մեր, զի բնակեսցէ 'ի մեզ. Նմա մաքրեսցուք զմարմինս մեր, զի հանգիցէ 'ի մեզ. սիրեսցուք զնա, զի սիրեսցէ զմեզ։ Երթիցուք զհետ նորա, զի տարցէ զմեզ յիւր բարութեան հանգիստն զոր խոստացաւ սիրելեաց իւրոց. որ արժանի եղաք անուան նորա, զճշմարտութիւն նորա պաշտեսցուք։ Եւ զի առաւել ունիմք զնշան նորա, զինուորք նորա եղիցուք. զի յորժամ գայցէ որոշել զազգս, ընդ աջմէ իւրմէ կացուսցէ զմեզ։ Պահք զէն առաքինութեան, որով հարքն մեր առաքինացան։ Ահա ետ զնա մեզ տէր գթութեամբ իւրով, զի մարտիցուք և յաղթեսցուք նովաւ։ Բայց ոչ եթէ հարքն միայն առաքինացան նովաւ, այլ և տէր մեր պսակեցաւ նովաւ. զի նովաւ մարտեաւ ընդ սատանայի յանապատին, և կործանեաց զհպարտութիւն նորա զինու առաքինութեան իւրով։ Զի եկն 'ի գրգռել զԱդամն հոգևոր, որպէս և պատրեաց կերակրովն զԱդամն մարմնաւոր։ Եւ ոչ գիտէր թէ լինիցի ծաղր խորամանկութիւն նորա յայնմանէ՝ որ զգեցոյց զմերկութիւն Ադամայ զրահիւն պահոցն որ ոչ պարտի։ Բայց բարուք կոչէ զպահսն յաղթող, քան որպէս պահէ զէն զայնոսիկ՝ որ զգեցեալ են զնա 'ի պա-

տերազմին, 'ի հրեղէն նետից չարին չար ցանկութեանց՝ որ են նորա սլաք խոցոտիչք ։ Զի թէպէտ և ծանր է նորա լուծն 'ի վերայ վատիցն և անպիտանեացն՝ որ չեն նմա կիրթ և սովոր, այլ ժիրք և առաքինիք որք իմացան զշահս նորա, ցնծան յոյժ ոգիք նոցա 'ի զբօսանս նորա ։ Զի փորձեցին ճշմարիտքն՝ թէ որպէս ապաւինեցան 'ի նա և օգտեցան նովաւ. և որք հեռացան 'ի նմանէ, մերձեցաւ 'ի նոսա զեղջ ոգւոց բազում ։

Արդ աղէ ասա, զի՞նչ օգտեցաւ Ադամ 'ի կերակրոյ ծառոյն. զի 'ի պատճառս ուտելոյն տիրեաց մահ 'ի վերայ ազգի մարդկան ։ Եւ կամ զի՞նչ օգտեցան ազգն հեբրայեցւոց ցանկութիւքն իւրեանց յանապատին. զի ահա վասն որկորստութեանն իւրեանց եղեն կերակուր օձից խարամանեաց ։ Կամ զի՞նչ օգտեցաւ Եսաւ վասն կերակրոյն. զի ահա և զանդրանկութիւն կորոյս վասն նորա ։ Կամ մարգարէն ծեր զի՞նչ շահ ժողովեաց. զի 'ի պատճառս կերակրոց յանցոյց զճշմարիտ մարգարէն, և պատեաց զնա առեւծն ։ Ուսցուք և այժմ 'ի քահանայից մանկանց սրբութեան, և ասասցեն մեզ՝ թէ որպէս ետուն պահք փառս ստացողաց իւրոց ։ Գիտէք՝ զի 'ի պահոց շքեղացան երեսքն Մովսէսի, և սփռեցան 'ի վերայ երեսաց նորա պատմուճանք ճառագայթից ։ Դարձեալ պահօքն զօրացան ջիլք մարմնոյն Եղիայի, և արժանի եղև զի խօսեցաւ ընդ նմա փառաւորեալն 'ի յայրին 'ի Քորեբ լերինն ։ Պահքն մանկանցն որք 'ի Բաբելոն փոխեցին զսովորութիւն հրոյն և զառեւծուցն. զի մի առեւծքն բեկցեն ըստ սովորութեան իւրեանց, և մի հուրն այրեսցէ ըստ բնութեան իւրոյ ։ Եւ նինուէացիքն ապաւինեցան 'ի պահս, և եղև նոցա ջատագով խօսելով առաջի դատաւորին. և դարձոյց 'ի նոցանէ զդատավճիռ ստուգութեան, զի մի ապականեսցին ։ Եւ կանայք որ յուսացան 'ի պահս, խցին և նոքա զբերանս խարամանեաց ։ Եսթեր և Յուդիթ և այլք նմանք նոցին՝ որք զգեցան զպահս որպէս զզէն, և յաղթեցին թշնամեացն Իսրայելի, և ամրածածուկ պահեցին պարսպաւ պահոցն զժողովուրդն Յակոբայ ։

Արդ եթէ հարքն պսակեցան նովաւ, և տէր մեր նովաւ յաղթեաց չարին յանապատին, որչափ և մեք

տկարքս կարօտիցիմք ապաւինել յօգնականութ՟ պահոց, զի կերակրիցուք նոքօք փոխանակ մարմնոյս ։ Քանզի ասաց տէր մեր՝ թէ "Ոչ հացիւ միայն կեցցէ մարդ, այլ ա՟մ բանիւ՝ որ ելանէ 'ի բերանոյ ա՟յ,, ։ Եւ ոչ եթէ վասն տանջելոյ զմարմինս ձեր քարոզեսցուք ձեզ պահս, ով սիրելիք. այլ որպէս զի ուրախ արացուք զոգիս ձեր վարդապետութ՟ն Ք՟ի ։ Զի կերակուր պարարէ զմարմին, և գինի գունեղ առնէ զդէմս երեսաց մարմնոյ և ժանկոտէ զմիտսն՝ զի մի տեսցեն, և հեղձուցանէ զհոգին քաղցումն ցանկութ՟ ։ Զոր օրինակ ստանան զմեզ պահք՝ միշտ ընդ հրեշտակս զուարճանալ, զի 'ի պատճառս նորա պաշտեմք զա՟ծ յերկրի որպէս և նոքայն յերկինս, այնպէս կերակուր և ըմպելի խոնարհեցուցանեն զմարդիկ յաստիճանս անասնոց՝ որք զրկեալ են 'ի յուսոյ յարութ՟են ։ Գիտէք, սիրելիք, զի յոյս անասնոց որովայնն իւրեանց է, և կատարումն նոցա մահն իւրեանց, և որ նման նոցա են ։ Այսպէս ասէ և երանելին Պաւղոս, եթէ "Որոց ա՟ծ որովայնն իւրեանց է, և փառք ամօթն,, ։ Բայց մեք ոչ ուսաք այնու զՔ՟ս. քանզի այսպէս քարոզեաց մեզ՝ եթէ "Երանի որ քաղցեալ և ծարաւի իցեն այժմ, զի նոքա յագեսցին,, ։ Զի եթէ չէր քարոզեալ յաշխարհի, թերևս կարծեօք լինէին ։ Եւ թէ բարիօք է՝ որք ոչն լծէին 'ի լուծ պահոց, ըստ այնմ որ ասէ՝ կերիցուք և արբցուք զի վաղիւն մեռանիցիմք, և մեռանելոց եմք ։ Ոչ ինչ 'ի յաշխարհիս յայսմիկ օգտեն որկորստութիք և արբեցութիք ստացողաց իւրոց ։ Զի ա՟յ որովայն որ շիջուցանէ զխլրտումն մտաց, և բազում չարք փոխանակ արբեցութեան ։

Իսկ թէ զիարդ իջանէ մարդ յաստիճան արբեցութե՟, այս ինքն անասնոց, քանզի անասունն ճանաչէ զստացիչ իւր, և արբեցողն ոչ ճանաչէ զծանօթ իւր ։ Զգլուխ իւր ցաւեցուցանէ յըմպելն, և զգնացս ոտիցն խանգարէ. աստանդէ զբան բերանոյն. այլայլէ զուղիղ տեսիլ բբացն. անկանի 'ի խորխորատ 'ի տուէ. յածի յերազս առելեաց 'ի գիշերի. քայքայէ զմիտս 'ի հաստատուն իւրմէ. մերկանայ զմարմինն 'ի հանդերձից իբրև զդիւահար. բառնայ զամօթ յերեսաց. տարածի 'ի վերայ ոգւոց իբրև զմէգ մոլորութ՟ նման ապականիչ չար դիւի, և գործէ զոր ինչ ոչ կամի ։

Բայց գործք հաստատուն պահողաց յայտնին ստացողաց իւրեանց՝ թէ զիարդ յայտնէ զտեսիլ ծածուկ ականն, և սանձէ զարտևանունսն 'ի զգաստութի . բանայ զաչսն 'ի վարդապետութիւն Քսի . զուարճացուցանէ զլեզուն 'ի քաւիչ յաղօթսն . զարթուցանէ ըզմիտսն 'ի խնդրուածսն , և ընդոստուցանէ զհոգին 'ի սէրն այ . ուսուցանէ ոտից 'ի տես երթալ հիւանդաց . կարկառէ զձեռս 'ի տուրս աղքատաց . հրեշտակ առնէ զանձն վարուք իւրովք . թէ և մարմինն Ադամայ որդի է, կերպարանն հոգեղինաց նմանեցուցանէ զնա : Զայս ամ ստանան պահք սիրողաց իւրեանց : Եւ յայսպիսի բարի արմատաց ժողովեն և լնուն զշտեմարանս մարմնոյ : Զճշմարիտ պահողացն ասեմ՝ որ պահեն 'ի հացէ և 'ի գինւոյ վասն ճնշելոյ զմարմինսն , և արգելուն 'ի վնասակար չարեաց վասն օգտին շահի : Բայց են և անխտիր պահողք՝ որ պահեն 'ի հացէ և 'ի գինւոյ , և միտք իւրեանց արբեալ են 'ի նախանձուէ և յարբեցութենէ հպարտութէ : Եւ են՝ որ կարճեալ են 'ի խորտկաց կերակրոց , և ուտեն ժանեօք ագահութե իւրեանց զորբս և զայրիս : Եւ որք այսպէս վարին՝ լուիցեն , զի ոչ միայն վարձս 'ի պահոցն չառնուն , այլ և պարտաւորելոց ևս են յաւուրն դատաստանի : Զի պահողք որ են այսպիսիք՝ փոխանակ բարեաց շահեցան իւրեանց բեռինս չարեաց , որչափ ևս առաւել այն՝ որ բնաւ ոչ պահեաց :

Արդ աղաչեմ , սիրելիք , պահեսցուք 'ի կերակրոց , զի մի մնասցեն յորովայնս մեր . և պահեսցուք յամ չարեաց , զի մի ծնցին 'ի սիրտս մեր և վնասեսցեն զմեզ . պահեսցուք ծածկապէս և 'ի յայտնի չարեաց : Զի այն որ տեսանէ զարտաքին կերպարանս մեր , գիտէ և զներքին խորհուրդս մեր . զի ամքն մերկապարանոց կամք առաջի նորա , և չիք ինչ արարած՝ որ կարէ թաքչել 'ի նմանէ : Նմա միայն պահեսցուք , և նա ընկալցի բարերարութբն իւրով : Զի որպէս հանգեաւ 'ի պահս սրբոց և արդարոց , հանգիցէ և 'ի ձեր պահս . և ընդ աղօթս և ընդ վարս պարկեշտութե պահոցն առատապէս հատուսցէ ձեզ յարքայութեն երկնից : Որոց լիցի ամցն մեզ հասանել շնորհօք և մարդասիրութբ ան մերոյ և փրկչին Յսի Քսի . որում փառք յաւիտեանս յաւիտենից . ամէն :

## ՅՈՐԴՈՐՈՒՄՆ ԱՊԱՇԽԱՐՈՒԹԵԱՆ *

ՀՈԳԵՒՈՐԱՊԷՍ նորոգեցարուք, եղբարք. մի՛ մարմնով ըստ մարմնոյ, այլ մարմնով ըստ հոգւոյ. 'ի վեր ամբարձեալ 'ի մարմնականաց աստի՝ մաքրեսցուք ըզմիտս և զխորհուրդս. շնորհողին զաւանդն ստասցուք սրբութիւն, և պահեսցուք զգուշութիւն: Զառաջինն զոր ընկալաք զմկրտութիւն մի՛ դարձեալ 'ի նոյն մեղս յարեսցուք: Զհատեալն և զորոշեալն 'ի մէնջ մի՛ դարձեալ 'ի մեզ ձգեսցուք: Յորոց հրաժարեալն եղեաք 'ի սատանայական գնացիցն և 'ի հրեշտակաց նորա և 'ի պաշտամանէն և 'ի խաբէութենէ նորա, զոր հատանողական սուրն աստուածային որոշեաց յանզգամ գնացից մարդկան. և մերկեաց զհին մարդն զապականեալն և զտարժամնեալն ժանգով պղծալից պոռնկութեամբ և կռապաշտութեամբ: Փախիցուք 'ի վայրենեացն յորոց հրաժարեցաք. ցուցցուք պտղաբեր զառաքինութիւն և զմաքրութիւն. արասցուք ողորմութիւն, որք ողորմութեանց եմք ցանկացողք. զսէր առ ամենեսեան հաստատեսցուք, որք մարդասիրութեանն Աստուծոյ կարօտանայք. 'ի բարիս մերձեցարուք, որով մերձենայք առ Աստուած. 'ի չարեաց գործոց մերկացարուք, և մերձեցարուք յանձեռագործ թլփատութիւնն՝ որ նկարէ 'ի ձեզ զՔրիստոս: Երկուս ունիմ ասել թլփատութիւնս, երկուս և մկըրտութիւնս. և երկոսեան կենագործողք և յոյժ մաքրողականք: Իսկ միւսն առաւել ևս պայծառագոյն և հրաշագոյն զգաստութեան գործ, իմաստութեան ճանապարհ, արթնութեան հսկող, հանճարեղ խորհուրդ, երգք պարգեւագիւտք. որ զառաջինն նորոգեաց ինքեամբ պայծառս, որ զկորուսեալ և զանջատեալ

* Ի ճառընտրաց ԺԳ. ԺԲ. և յայլ երից թերակատար օրինակաց: Կայ ճառս այս և 'ի Հարանց վարուց երեւելի այլայլութեամբ զեղչեալ և ընդարձակեալ ուրեք ուրեք, ոչ 'ի յետին գրչաց, այլ առ ժամանակօք կիլիկեցւոց զոյգ ընդ բովանդակ մատենին Հարանց վարուց պատրաստելոյ և յայլ կերպարան փոխելոյ 'ի հին շարագրածոյ նախնի թարգմանութեան, որոյ պատառիկքըն ևեթ գտանին առ մեզ:

շնորհն նորոգէ, որ զգլորեալսն կանգնէ և զվիրաւո-
րեալսն վերստին բժշկէ : Վասն զի առաջին Թլփա-
տութիւն 'ի տղայական և օտար լեզուաւ հրաւիրե-
ցաւ հատանել հրաժարել 'ի բաց ընկենուլ զհեթա-
նոսական չար ախտիցն զկատարութ՟ի . ընդ մէջ ան-
ցուցանել զազդողական ուղին, որ հատանէ անցու-
ցանէ մինչև յորոշումն շնչոյ և մարմնոյ յօդից և ուղ-
ղոց, և զայն 'ի բաց հանելով ապա 'ի մաքուրն մեր-
ձենալ, հաւատ յանձին ունել զերրեակ Թիւ Երրոր-
դութ՟են՝ 'ի Հայր և յՈրդի և 'ի Հոգին սբ՟ դաւա-
նեալք : Յառաջին Թլփատութ՟են հրաժարեալք յա-
ռաջին մկրտութ՟ի մաքրեցի, աւազանաւն սրբեցի,
զգեցցի զանձեռագործ հանդերձն դրոշմեալ հօտ,
նկարեալ խաչն, կենդանի ջրովն մաքրեալ 'ի հուր և
'ի Հոգին սբ՟ լուսաւորեալ 'ի յանուանէ կոչեցի, իւ-
ղոյն օծութ՟բ զՀոգւոյն ներգործութ՟ի 'ի մարմնի տպա-
ւորեալ, չուեալ յարօտ 'ի դալար կերակուրս 'ի մար-
մինն ա՟յ . 'ի ջուր հանգստեան 'ի գինի փոխարկեալ
յարիւն անմահին . բարեծնունդ լինելով ժառանգ
ա՟յ և ժառանգակից Ք՟սի . բաժանորդ շնորհաց փա-
ռացն, զոր 'ի Հօրէ ընկալեալ արժանացեալք Հայր
կոչել զա՟ծ, յարեալք 'ի մարմինն Ք՟սի : Երանելիք
էաք, եթէ 'ի սմին յամէաք և 'ի սոյն աճէաք : Ո՛վ
բարեբախտութ՟եցն և առաւել շնորհին, և 'ի սոյն
ննջեաք, և զարթուցեալք յոր հրաւիրեցաքն՝ մերձե-
նայաք : Բարիոք է պահել զաւանդն զոր ընկալաք,
և զշնորհսն զոր ընկալաք, զպարգևս յոր մերձեցաք :
Երանելիք են որ պահեն զպատուիրանս նորա, և առ-
նեն զարդարութ՟ի յա՟մ ժա՟մ . երանեալ է այր որ երկն-
չի 'ի տեառնէ, և գնայ 'ի ճանապարհս նորա :

Արդ բամբասեցաք զխորայէլ և հրաժարեցաք .
լուացաք զհեթանոսս և մեկնեցաք . յազնուակա-
նութ՟ի անդր կոչեցաք . պատուիրան ընկալաք և հեղ-
գացաք . զհաւատսն պահեցաք, և զգործսն մոռացաք .
'ի յոյսն հաստատեցաք, և զկեանս արձակեցաք . զփե-
սայն ընկալաք, և 'ի հարսանեացն հրաժարեցաք .
զշնորհսն առաք, և զորդեգրութ՟իւն կորուսաք . բաժա-
նեցաք 'ի հայրենեացն, և զոր առաքն վատնեցաք .
տարաշխարհիկք եղեաք, սովեալք և ծարաւեալք

յանջրդութե՛ն ։ ՈՀ, զկնի խոզից ընթացաք, խոզս արածեցաք. զդեւս տանուտերս պաշտեցաք. զքաղաք ընդ ագարակի փոխանակեցաք ։ Աւաղ զմեզ. կերակրոյ խոզից քաղձացաք. ընդ վայր գարշեցաք. աղտեղացաք. 'ի վարձկանէ անգամ ոչ հրաժարեցաք. ջնջեցաք զորդեգրութե՛ն գիրն ։ Արտաքոյ լլկեալ, և մատչել առ Հայրն կորացուցանէ ամօթ ։ Արբաք ջուր, և զաղբեւրն պղտորեցաք. զպարգեւաւ գինին վաճառեցաք, և հեղձեալ մզձկիմք 'ի դառնութենէ մրրոյն ։

Ո՛վ թշուառութե՛ս և առաւել հիգութե՛ս. մարգարէ ոմն ելեալ 'ի դիտանոց ձայնէ. "Մահ մեղաւորին չար է, զի 'ի պատուի էր և ոչ իմացաւ. վասն այնորիկ ա՟ծ կործանեսցէ զնա իսպառ. խլեսցէ և հանցէ զնա յարկաց իւրոց և զարմատս նորա յերկրէն կենդանեաց. զի եկաց նա յա՟մ Ճանապարհ՞ որ ոչ է բարի, և 'ի չարէ նա ոչ ձանձրացաւ. և որպէս հալի մոմ առաջի հրոյ, այնպէս և կորիցեն մեղաւորք յերեսաց ա՟յ. բաժին տանջանք են մեղաւորաց, և տէր արդար է և խորտակէ զուլն մեղաւորաց" ։ Ո՛վ տաղտկութե՛ս և առաւել հեղգութե՛ս. այլ ոմն 'ի դիտանոցէն ձայնէ. "Բարձցի ամբարիշտն յերկրէ, և մի տեսցէ նա զփառս ա՟յ. և տեսցեն զոսկերս մարդկան առ իս յանցուցելոց. և որդն նոցա ոչ մեռանի, և հուրն նոցա ոչ շիջանի. և եղեն տեսիլ ա՟մ մսեղէնաց. քանզի ոչ գոյ խաղաղութի ամբարշտաց՝ ասէ տէր" ։

Իսկ արդ զի՞նչ է մեզ նոցա բարձրաձայնութիւն. յորժամ և ապա եկեալ տէրն՝ որում ստուգանեցաք, պէսպէս առակօք զաստն անձեցուցանելով կամի զգուշացուցանել ։ Երբեմն սերմն 'ի մէջ փշոցն աճէ զոր 'ի յորոմն. դարձեալ երբեմն տաղանդ առեալ և ծրարեալ. երբեմն զբազմականօքն դիտելով զաղտեղեալ հանդերձն զգեցեալ 'ի հուրն արկանելով. երբեմն զհեծանոցն 'ի ձեռն առեալ մեկնէ զցորեանն, և զյարդն այրել. և կամ զօդիս յայծեացն բաժանել, կամ զձախակողմանքն յուղարկել ընդ խաւարամոլար Ճանապարհն, ուր լալ աչաց է և կրճել ատամանց. կամ անպտուղ բարունակին հատանիլ և 'ի հուր արկանիլ. ծառային կտրել ընդ մէջ և զբաժինն ընդ անհ

հաւատոմն դնել։ Եւ ոչ եթէ այսու շատացեալ վճարեաց, այլ իւրում հաղարապետին Պաւղոսի հրամայեաց գրով առ ամենն բողոքել. “Մի խաբիք, ոչ շունք, ոչ գողք, ոչ պոռնիկք, ոչ կռապաշտք, ոչ իգացեալք, ոչ արուագէտք, ոչ ագահք, ոչ քամբասողք, ոչ արբեցողք, ոչ յափշտակողք զարքայութիւն այ ոչ ժառանգեն„։ Եւ մեք յայսմանէ ոչ ինչ թողաք արտաքոյ. այլ յամ չարեաց այսոցիկ եղաք գործողք։

Արդ զինչ հնարեսցուք ամօթոյ և կորստեան մերոյ. զի մահ յափշտակել ընթանայ առ ամենն, և ոչ գոյ հնար զերծանել ՚ի նմանէ. այլ ըմբռնեալ հգէ և տանի ՚ի տիեզերական հրապարակն՝ ՚ի յատեանն ահաւոր, առ դատաստանն անաչառ, առ դատաւորն արդար։ Ուր հատուցումն ըստ գործոց և յանդիմանութիւն ըստ մեղաց, և համարն սաստկապահանջ, և տանջանքն անվախճան, և ժամանակն անապաշխար, և արտասուքն անօգուտ, և զկաշառսն որ բազում աշխատութբ և անիրաւութբ ժողովեալ աշխարհս բռնադատեալ կողոպտէ և ընդ մեզ ոչ թողու, այլ մտեալ ասէ. մերկ եկիք առ իս և ունայն, դարձեալ մերկ յուղարկեցից և թափուր. և մինչ զայդ ընդ ձեզ տանիցիք, զայլս ևս խաբեցից չերկնչել ՚ի մահուանէ և չածել զմտաւ զվախճանն։ Արդ զայս ամ յաճախագոյն մատուցանել ՚ի լսելիս ձեր, ուրեմն տրտմեցայք և ճմլի սիրտք ձեր հոգոց հանելով և զիս քամբասէք. թերևս ծանր օրէնք համարիցիք և դըժուարակիր անձանց, և վհատեալ ՚ի վայր անկանիք յանյուսութի և ՚ի հեղգութի. և պատճառ այսոցիկ զսաստ պատուիրանացն այ վարկանիք, և ոչ զծուլութիւն ձեր։

Ոչ կամիմ զձեզ տգէտ լինել, եղբարք, զի բժշկի նման են վարդապետք եկեղեցւոյ. նախ տեսանելով զուսումն զայրացեալ ախտին շառագունեալ խաղաւարտոյն զեռացումն և զսաստիկ ջերմութեացն բորբոքումն՝ սկսանին այնուհետև աճեցուցանել զերկիւղն, ցուցանել լր. դառնութբ զկատարածն ՚ի կորուստ։ Մահաբեր է, ասէ, քանզի և է իսկ. աւաղս արկանէ, եղուկս կոչէ, թերևս առ ահին սաստկութե դեղոցն համբերեսցէ, ինքն փութասցի, ինքնին ճեպեսցի.

զանձն առաջի դնէ, խոստանայ համբերել, յանձին ունի զտոկալն. զձեռս և զոտս կապանաց մատուցանէ. զաչս պատանաց տայ և դժնեայ կսկծութեանց դառնաբարոյց դեղոցն և հրացեալ երկաթոյ խարանացն: Սկսանի այնուհետև և զբժիշկն բամբասել, որպէս այսօր 'ի ձէնջ բամբասեցայ ես վասն ձերոյ փրրկութեան: Այլ յորժամ հետևեալ յառողջութիւն տեսանիցեմ, բամբասանքն որ 'ի ձէնջ, ինձ 'ի փառս համարեալ լիցի: Որպէս կինն յորժամ ծնանի, զցաւս դառնութեան առ ոչ ինչ համարի վասն խնդութեան, զի ծնաւ մարդ յաշխարհ: Այլ ես ոչ դադարեցից վերստին երկնելոյ մինչև նկարեսցի 'ի ձեզ Քս̄: Եւ որո՞վ օրինակաւ, և կամ որպիսի՞ ինչ հնարիւք լինիցի. դարձեալ կոչեցից զձեզ յերկրորդ Թլփատութիւն, և հօսեցից 'ի ձեզ զերկրորդ մկրտութիւն՝ որ լուսաւորագոյն է և պայծառ քան զարեգակն: Ոչ սուսերաւ հատանել զմարմինն, այլ՝ բանիւ խոստովանել զյանցանսն. ոչ կտրութիւն անդամոց, այլ յանառակ գործոցն հրաժարութիւն. ոչ ըստ ծանր օրինօքն Մովսէսի՝ որ գիրն սպանանէր, այլ ըստ ամենահեշտ լծոյն Քս̄ի՝ որ զծանրաբեռնեալսն և զտարժանեալսն մեղօք հանգուցանէ: Խզեսցուք զտառուսն մեղաց բանիւք խոստովանութեան, որ յանձեռագործ Թլփատութիւն սրտից մերոց. մի՛ վհատեսցուք 'ի մեղացն սաստկութենէ, այլ յուսով խնդրեսցուք զթողութիւն:

Ելեալ դարձեալ 'ի դիտանոցն, որ առաջնում նուագին զսաստ ահարկու հրամանացն հնչեցուցանէր, Դաւիթ է անուն նորա ա̄ծահայր՝ ըստ սրտին ա̄յ նուիրեալ 'ի բարեպաշտութիւն՝ պատմէ զիւրոյ գլորմանն վերականգնութիւն, զուր սպանմանն և զագահապետ շնութեան: Եւ զի՞նչ է այն առ մեզ զփորձ մեղացն առեալ Դաւթի, և արագ բժշկել: Ոչ 'ի բացէ 'ի բաց կայ և քարոզէ, այլ առ ինքն կոչէ 'ի մօտոյ և խօսի բերան 'ի բերան և բարբառի և ասէ. “Եկայք լուարուք ինձ, և պատմեցից ձեզ զոր ինչ արար անձին իմոյ„: Արդ զի՞նչ արար, Դաւիթ. աղէ պսա, աւետարանէ, լոյծ եթէ հնար իցէ զտարակուսանս մեր: Ասա եթէ զո՞ հնար սպանողաց և շնացողաց ապրել 'ի պատուհասիցն ա̄յ և 'ի տանջանացն: “Ա՛ռ նա բե-

բանով իմով կարդացի, և բարձր արարից զնա լե-
զուաւ իմով։ Եւ զմեղս զոր տեսանէի 'ի սրտի իմում,
հայէի և մաշէի հանապազ. այլ լուաւ տէր աղօթից
իմոց, և նայեցաւ 'ի ձայն խնդրուածաց իմոց։ Օրհ-
նեալ է այնպիսի բարերարութիւն ա̃ծ՝ որ ոչ 'ի բացեայ ա-
րար զաղօթս իմ յիւրմէ, և ոչ արգելեաց զողորմու-
թի̃ իւր յինէն. զի գթած ողորմած է տէրն երկայ-
նամիտ և բազում ողորմ։ Ոչ ըստ մեղաց մերոց առ-
նէ, և ոչ ըստ գործոց հատուցանէ. այլ քաւէ զմեղս
մեր և բժշկէ զհիւանդութիւնս։ Մերձ է առ ամենե-
սեան՝ որ կարդան առ նա ճշմարտութ̃բ։ Զանօրէնու-
թիւս ժողովրդեան իւրոյ թողու, և ծածկէ զմեղս
նոցա. և մերձ է առ երկիւղածս փրկութի̃ նորա։ Ես
պատմեցի յինձէն զմեղս իմ, և նա եթող զամբարշտու-
թիւս մեղաց իմոց. զի քաղցր է տէր առ ամենեսեան,
և գթութի̃ նորա 'ի վերայ ա̃մ երկիւղածաց իւրոց»։

Այլ ոմն 'ի դիտանոց ելեալ պատմէ, Եսայի անուն
նորա, սովորական համարձակախօս. և նշան ևս ըղ-
ձամանակեայս տայ մինչ մեռաւ Ոզիա արքայ։ "Տեսի
զտէրն նստեալ սրովբէիւք, և զարհուրեցայ և ասեմ. վայ
ինձ, ես այր տառապեալ զիա̃րդ կամս հիացեալ. զի
պիղծ շրթունս ունիմ և 'ի մէջ պղծաշուրթն ժողո-
վրդեան բնակեալ եմ, և զտէր զօրութեանց տեսի։ Եւ
առաքեցաւ առ իս մի 'ի սրովբէից, և առեալ ունելեօք
'ի սեղանոյ անտի եբեր մերձեցոյց 'ի բերան իմ և ա-
սէ. ահա մերձեցի այդ 'ի շրթունս քո, և հանցէ
զանօրէնութիւս քո, և զմեղս քո սրբեսցէ 'ի քէն։
Հաշտեալ եմ ընդ քեզ տառապեալդ մինչև մխիթա-
րեսցիս. զճանապարհս սրտի քո տեսի, և բժշկեցի
զքեզ ճշմարտապէս։ Արդ եթէ պատմես ժողովր-
դեան իմոյ զմեղս նոցա. գոչեա զօրութ̃բ և մի խնայեր.
բարձրացո իբրև զփողս զբարբառ քո, և ասասցես
ցնոսա. արդ լուացարուք, արդ սրբեցարուք, արդ ըն-
կեցէք զչարիս ձեր առաջի աչաց իմոց. և ես զեղծեալ
և զժահահոտեալ զաղտեղութի̃ ձեր իբրև զձիւն սպի-
տակ արարից։ Ասացէք զանօրէնութիւս ձեր, զի ար-
դարասջիք։ Զձեռս ձեր պարզեցէք. զհաց ձեր այ-
լում բրդեցէք. զմերկս զգեցուցէք. զտառապեալ
աղքատականն մի արհամարհէք։ Եւ մինչ դու խորհիցիս՝

թէ աղաղակեմ, ես վաղվաղեալ գտանիմ առ քեզ, և կամաւն լոյս իմ զքև փարեսցի, և զանօրէնութիւնս քո այլ ոչ ևս յիշեցից. զի աՀաւասիկ ջնջեմ իբրև զամպ զանօրէնութիւնս քո և զմեղսն քո»:

Նոյն ոճն եկեալ 'ի դիտանոցէն ձայնէ, Եզեկիէլ անուն նորա. «Անօրէնն եթէ դարձցի յանօրէնութեանց իւրոց զոր արար, և արասցէ արդարութիւն և ողորմութիւն, կենօք կեցցէ և մի մեռցի. ամենայն յանցանքն իւր զոր յանցեալ իցէ, և անօրէնութիւնք իւր զոր անօրինեալ իցէ՝ մի յիշեսցին. այլ ողորմութեամբ իւրով զոր արար՝ կեցցէ»: Վասն որոյ զբազմօք զանց արարեալ փութասցուք Հասանել յընչաւէտ առատ Հօր Որդին, որոյ անունն կեանք է և լոյս և փրկիչ՝ յոր Հաւատացաք և լուսաւորեցաք. որ զՀայր կողոպտէ, և զիւրսն զգեցուցանէ. «Զփառսն զոր ետուր ինձ, ետու նոցա»: Որ զձեռանէ առեալ զիւրոց 'ի ծոց Հօր մուծանէ. «Կամիմ՝ զի ուր եսն եմ, և սոքա ընդ իս իցեն»: Որ լանջակից և գրկախառն Հօր կացուցանէ. «Զի որպէս դու Հայր՝ յիս, և ես 'ի քեզ». և սոքա ընդ իս և ընդ քեզ 'ի միջի իցեն: Ո՛վ սքանչելեացն, ո՛վ երջանիկ աւետեացն, ո՛վ անչափ մարդասիրութեան. Մատթէոս որ երբեմն մաքսաւոր կողոպտիչ[1] անողորմ, այսօր եկեալ 'ի ծոց Հօր բազմի. Պետրոս որ ուրացաւ զտէրն, այսօր գայ 'ի վեր անցեալ բազմի 'ի ծոց Հօր. Պաւղոս որ Հայհոյիչ և Հալածիչ եկեղեցւոյ, այսօր յանձաւան մտեալ 'ի վերայ սրտի Հօր Հանգչի:

Ո՞վ կայք ափշեալք, ընդէ՞ր ծուլանայք, Հի՞մ անապաստանիք. արիք փութացարուք առ այնպիսի ողորմած տէրն. մի յապաղեսցուք, մի Հեղգասցուք. եթէ զբազում աշխարՀօք և զգաւառօք պիտոյ է անցանել, առաւել փութալի էր երագ ելանել առաջի նորա գթութեան և անչափ մարդասիրութեան: Այլ նորա ծանուցեալ զՀեղգութիւնս մեր և զանփութալի ծուլութիւնս՝ առ դուրս եկեալ, առ սեամս մատուցեալ ձայնէ առ մեզ և գոչէ ուժգին. եկայք առ իս

1 Մի օր. յաւէլու. պրակտորաւ, անիծակուած... Պօղոս Հայհոյիչն, մեծահալածիչն, ոսկեփառնատարդանն:

ա̃մ վաստակեալք և բեռնաւորք, և ես հանգուցից զձեզ՝ վարանեալքդ և ձանձրացեալքդ, և գտջիք հանգիստ անձանց ձերոց. զի լուծ իմ քաղցր է և բեռն իմ փոքրոգի: Չէ պահանջող, ոչ կշտամբիչ, ոչ յանդիմանիչ. միայն զլեզուդ շարժեա և խոստովանեա զոր գործեցեր: Բեռն իմ փոքրոգի, թեթև, անաշխատ. զոր եթէ կամիցիս, դիւրաւ տանիցիս:

Իսկ դու ընդէ՞ր տարակուսիս և դանդաղիս և վախ վախես. որպէս զի 'ի մեծամեծ տանջանս ես 'ի մըտանել, կամ 'ի նեղութիւս և 'ի վտանգս, և ոչ յուղղութի գալ: Այլ նորա ցուցեալ զհեզգութիւս մեր՝ զամենապետութի ցուցանէ. և հարցանէ՝ զի՞նչ կամիս, ո՞ւմ բաղձաս. հիւա՞նդ ես, ես ճարտար բժիշկ եմ. ոչ պիտոյ է բժիշկ ողջոց, այլ հիւանդաց. ձրի բժշկեմ, չպահանջեմ ինչ 'ի քէն, բայց միայն զդեղն. ոչ առ վաճառականսն առաքեմ, ոչ ինչ ծախել, ոչ յումեքէ աղերսեմ: Մուտ 'ի սենեակ սրտի քո, բեր ինձ արտասուս որչափ ձեռնհաս իցես. եթէ մի կաթիցէ, բաւական իցէ մկրտել զքեզ երկրորդ անգամ և յառաջին առողջութի ածեալ հաստուցանէ: Եթէ մեղաւոր ես, ես ողորմած տէր եմ. ոչ եկի կոչել զարդարս, այլ զմեղաւորս յապաշխարութի: Որք առ իս դարձան, ոչ ամաչեսցեն. և ոչ ոք 'ի նոցանէ կորեաւ, բայց միայն թիւրեալքն 'ի ճշմարտութէն: Զմաքսաւորն միով բանիւ արդարացուցի. զպոռնիկն իւրով արտասուօքն սրբեցի. զբժշկութե ողորմութի ամենեցուն պարգևեցի: Պետրոսին ընդդէմ ուրացողին զիս երիցս անգամ արտասուացն ողորմեցայ, առ իս կոչեցի, և 'ի կարգի առաքելութե պահեցի, և զբանալին ոչ հանի 'ի նմանէ: Զիս ձաղանօք 'ի խաչին դատապարտէին. արարածք դողային և սարսէին, և ես խաչահանուացն աղօթս առնէի: Նոքա բարկութե և սրտմտութե զգլուխս իւրեանց շարժէին. ես քաղցրութե և ողորմութե թողուն խոստանայի:

Արդ ապա զի՞նչ կատարումն. զա̃մ հեթանոսս ողորմութե կոչեցի. յորդեգրութի ածի զտարրատի ոչխարն 'ի գաւիթս սրբութե իմոյ, և եղև մի հօտ և մի հովիւ: Ես նոյն եմ և ոչ փոփոխիմ. երեկ և այսօր նոյն և յաւիտեանս: Ծարաւի՞ ես, ես եմ աղբիւր

կենաց քաղցրաբուղխ և անուշաճաշակ. եթէ որ ծա-
րաւի է, եկեսցէ առ իս և արբցէ. և որք արբցենն՝
մի՛ ծարաւեսցեն յաւիտեան. այլ և գետք յորովայնէ
նորա բղխեսցեն ջրոց կենդանութեան: Քաղցեա՞լ ես,
ես եմ հացն կենաց յերկնից իջեալ. եթէ որ ուտիցէ
'ի հացէ յայսմանէ՝ կեցցէ յաւիտեան: Մերկացա՞ր,
ես պատմուճան քեզ և վերարկու. միայն 'ի չարեացդ
արտաքսեա, և ես զգեցուցից քեզ զառաջին համ-
դերձն [1]. որք 'ի Քս մկրտեցարուք, զՔս զգեցեալ էք:
Եթէ կարօտացար կօշկաց, ես կարեցից քեզ կօշիկս
լաւագոյնս, որով կոխեսցես զօձս և զկարիճս և զամ
զօրութիւս թշնամոյն: Ծառա՞յ գտար մեղացն, ես ա-
զատեմ զքեզ. զի ամ որ զմեղս գործէ, ծառայ է մե-
ղաց. իսկ եթէ Որդին զձեզ ազատեսցուսցէ, ճշմարիտ
ազատք լինիջիք: Խորշի՞ս [2] յիմ յահեղ և 'ի հրաշա-
տեսիլ զօրութենէս, չեմ օտար, քո ազգակից եմ, որ-
դին եմ Դաւթի, թոռն Աբրահամու. խօսակից և
մարմնակից եմ քո:

Իսկ արդ զի՞նչ կամիցիս, ծառայեմ զքեզ. զի զոր
ինչ բարի կամիցիս վասն քո, դու հրամայեա տիրա-
բար, և ես առնեմ ծառայաբար. քանզի ոչ եկի պաշ-
տօն առնուլ, այլ պաշտել, և տալ զանձն փրկանս փո-
խանակ բազմաց: Կամիս զի զոտս լուացից. ասա
ինձ, ոչ գարշիմ, զի սովոր եմ առնել. զի թէ մատնի-
չին իմոյ զիս 'ի մահ զոտսն լուացի և ոչ տաղտկացայ,
ապա և զքոյդ լուացից առանց դանդաղանաց: Ոչ
զայլ ինչ մաքրեմ, այլ 'ի մեղաց սրբեմ և վերստին
նորոգեմ. մի՛ շիթ յարտասուաց աչաց քոց հեղ 'ի կոն-
քըս, և քան զհոսանսն Յորդանանու յորդագոյն հե-
ղում 'ի քեզ, և քան զառաջին մկրտութիւն պայծա-
ռագոյն լուսաւորեցից: Յաճախ մեղար զազրացար,
երկեար 'ի քննողէս. մի՛ կասկեր զխոստովանութիւդ, և
ես արձակեմ զքիմ բարերարութեւս: Որպէս Պետրոսին
սահմանեցի զկէան, դարձեալ քեզ սահմանեմ. չա-
փով առնում և յոլով հատուցանեմ: Մեկնեա 'ի չար
սովորութենէդ, և ես մեկնիմ 'ի սրտմտութենէս [3]. դու

1 Մի օրինակ խիլայն:
2 Մի օր. խորթի՞ս . . . 'ի հրաթեսիլ:
3 Մի օրինակ 'ի չիմարմթու-թենէս:

հարց վասն մեղաց քոց զեօթն անգամ թողութիւն, և ես պատասխանեցից քեզ եօթանասնեկին եօթն, զոր քեզ շնորհեմ թողութիւն. զի զոր ինչ ելանէ ընդ շրթունս իմ, զայն ոչ ստեցից։ Քննեա զչափդ, իմացիր զթիւդ և զհամարդ. և մի տրտնջեր զտանուտեռնէս։ Զեմ ժլատ, առատ եմ, ընչաւէտ Հօր մեծատան Որդի եմ. չտոկոսեմ զպարտապանն, չպահանջեմ զպարտսն, չարկանեմ խեղդ. միայն յանձին կալ, խոստովանեա զոր գործեցեր, և ես չորեքհարիւր և իննսուն քանքար թողում քեզ, և ուրախ արձակեցից զքեզ։ Սիրեա զիս, որ սիրեմս զքեզ. հրաւիրեա առ քեզ զբաղձալիս հրեշտակաց և զցանկալիս արդարոց. չգարշիմ 'ի հողեղէն յարկացդ, չընտաղտկամ յաղքատութենէդ, չխոտեմ զամայութիդ։ Սրբեա ինձ զմուտդ, մաքրեա զառագաստ սրտի քո, սկսիր հոտ անուշութեան բուրել զաղօթսդ. պատրաստեա սեղան զվարսդ, պարզեա գինի զողորմութիդ, սփռեա պաստառակալ զխոստովանութիդ, փթթեա վարդ զսէրդ, արկ բազմական զապաշխարութիդ. լարեա տասնաղի զմատուռնսդ ընդդէմ իմ 'ի քնարահարութիւն. կոչեա զմրս քեզ 'ի բարեխօսութիւն և ինձ հիւրամեծար։ Բաւական է ճաշդ. առատ է սեղանդ. պայծառ է կոչունքդ։ Եթէ ախորժես, զՀայր իմ ընդ իս ածեմ. ես և Հայր իմ առ քեզ եկեսցուք և օթեվանս առ քեզ արասցուք։ Զայս այսպէս արասցես, և զիս Հօր իմոյ երախտաւոր կացուսցես. զի խորհուրդ գալստեան իմոյ յաշխարհ ոչ ունայն երևեսցի։ Այլ ծանիցի մարդկային բնութիւն առաւել քան զհրեշտակաց և գեր 'ի վերոյ քան զհրեշտակապետաց. և խրախացեալ Հայր օրհնեսցէ զքեզ բերանով իւրով զօրհնութիւս որ ոչ անցանէ, և պատրաստեսցէ փոխարէն զծոց իւր 'ի վեր քան զմնակութիւս [1] հրեշտակաց։ Ուր եսն եմ, անդ և պաշտօնեայն իմ եղիցի. և կեանք ձեր ծածկեալ են ինև առ ա̃ծ. և ես 'ի միւսանգամ գալստեան իմում զօրհնեալսն 'ի Հօրէ իմմէ մերձեցուցից առ Հայրն իմ և ասացից. ահաւասիկ ես և մանկունք իմ զորս ետուր ինձ։

1 Մի օրինակ ըզնմանութիւնս ։

Օ այս ա՜մ լսելով և իմանալով զի՞նչ կամին 'ի պատասխանիսն լինել պատրաստ. յորժամ զաղերս ողոքանաց և զգութ անյիշաչարութեան առաջի արկեալ յա՜մի՝ և ինքն լինի պարտապան պարտեացն մերոց 'ի գութ և 'ի գորով մտեալ. և դարձեալ փարի զմեօք, աղաչէ, պաղատի, խնամ արկանէ, խանդաղատի, պարգևս խոստանայ, որպէս Հայր 'ի վերայ աղեաց խարշի, և առաւել ևս քան զչափսն անցուցանէ զխնամսն: Որպէս որք զարտուցեալ որդիսն տեսանիցեն, 'ի գիրկս առեալ գգուեն, համբուրեն, զերեսսն 'ի վերայ դնեն, խանդաղատական[1] ձայնիւ գորովեն, զբարբառն գեղուն, զծափս հարկանեն. այնու հնարին զհաշտութիւն մանկանն, զի զլալն և զհեկեկալն կտրեսցեն. թէպէտ և նոքա խաղապատեալ զերեսսն այսր անդր դարձուցանիցեն, լեզուագարեն, զերեսսն մաքլցեն[2]: Սակայն և ոչ ինչ յայսցանէ ցասուցանեն զծնօղսն. այլ և պարգևս տան մանկանն զախորժակս իւրեանց՝ խաղալիկս անօթս պատուականս. եթէ բեկանէ՝ չցաւէ, եթէ կորուսանէ՝ չտրտմի. բայց եթէ 'ի հաշտութիւն տեսանիցեն զիջեալ զմանուկն: Զայս և առաւել քան զսոյն ցուցանեն մեզ գութք ա՜ծային խնամոցն. զորոյ զփորձ առեալ հոգերգողին Դաւթի զսաստիկ սիրոյն ա՜յ առ մարդիկ՝ ասէ. "Որպէս գթայ հայր 'ի վերայ որդւոց իւրոց, այնպէս գթասցի տէր յերկիւղածս իւր": Նա ևս առաւել զանչափական[3] և զանեզրական սիրոյն զանպատմելի և զանիմանալի գգուանսն ինքնապատում արարեալ 'ի ձեռն Ղուկայ աւետարանչին աւանդէ մեզ ասելով. "Ո՞ 'ի ձէնջ որդի՝ որ խնդրիցէ 'ի հօրէ իւրմէ հաց՝ միթէ քա՞ր տայցէ նմա. կամ խնդրիցէ ձուկն՝ միթէ օձ տայցէ նմա: Իսկ եթէ դուք որ չարդ էք՝ գիտէք պարգևս բարիս տալ որդւոց ձերոց, ո՞րչափ և Հայրն ձեր երկնաւոր տացէ ձեզ զանձառ և զանբաւ ուրախութիւնս": Տեսէք որպիսի՞ գեղեցիկ են պարգևք սիրոյ նորա առ իւր արարածս: Եթէ ախորժէք, և դուք լինիք արժանի սիրելոյ 'ի նմանէ, որ կայ հանապազ

1 Մի օրինակ սիրական:
2 Երկու օրինակ մոգլէն:
3 Մի օրինակ փան դչափականն:

'ի բողոքել և 'ի թօթել զգազանացեալ ազգս մարդկան ։ Մինթէ քան զվէմս ապառաժ իցեմք, որ դեղօք բրբրեալ թուլանան, և սրով[1] տաշին 'ի պէտս գործելեացն. եթէ երկաթ, և զայն եւս հուրն կակղէ, և անօթ պիտանացու 'ի ճարտարացն գործին. և եթէ գազան, և նա ձեռնընդել լինել[2], և հարկադրեալք պապանձեալ կան առ դրունս թագաւորաց առ պատրաստ 'ի ծառայութիւն և 'ի հնազանդութիւն նոցա ։ Զչարամտութիւն վիշապաց և զցասկոտ բարս թունաւոր օձից 'ի հնազանդութիւն ածեն բանք ողոքականք թովչի ճարտարի, և ընդելական ընտանութիւն առ միմեանս ճարակեն ։

Այս արդ ասացն և խօսուն և իմացական բնութիւն մարդկան զիարդ ոչ գիտէ նմանին նոցա՝ թողուլ զանզգամութիւն և կեալ ։ Եւ այն զի պատգամք սաղմոսերգողին կշտամբեալ յանդիմանէ, և տարեալ մերձ առ օձսն և քարբսն և կարիճսն կացուցանէ ասելով. "Սրտմտութիւն նոցա ըստ նմանութեան օձի, որպէս իժի և քարբի. զի խցեալ է զականջս իւր, զի մի լուիցէ զձայն թովչի ճարտարի, և մի առցէ դեղ 'ի դեղատուէ իմաստնոյ„ ։ Այլ որ ունիցի ականջս լսելոյ՝ լուիցէ և իմանայցէ, և վայելեսցէ 'ի բարութեանցն 'ի ձեռն ապաշխարութեան պարգևացն, որ փառօք պսակէ և 'ի գահոյս համբուցանէ, 'ի Քն Յն 'ի տէր մեր. որում փառք հանդերձ Հարբ և ամենասուրբ Հոգւոյն այժմ և միշտ և յաւիտեանս յաւիտենից. ամէն ։

1 Մի օրինակ սրամահին ։ 2 Մի օրինակ ձեռնընդելեալ ։

## ՑԱՑՆ ՃԱՌԷՆ

## ՈՐ ՎԱՍՆ ԵՐԱՇՏԻ ԵՒ ՎԱՇԽԱՌՈՒԱՑ

ՎԱՍՆ քո եղև սովս. ոչ եթէ յաւելեաց իւիք յայդմանէ, որպէս ասէիր. եթէ ոչ էր բաւական քեզ անգորովութիւն, այլ և կռապաշտութիւն յանձն առնուս. զի պատասխանի տայցես վասն չարութեան. Ամբաստանես վասն աստուածութեան, զի փախիցես յամբարտաւանէ. զաստեղս ասես նախախնամիչս, և ոչ զԱստուած. Աւելի վասն քո է սովս. զի ընդ թշնամանելոյդ և ընդ Աստուծոյ մարտնչել յանդգնիս. Բազում սովք եղեն վասն յայտնի պատճառանաց. ընթերցիր զգիրս, և պարսաւէ զամբարշտութիւնս քո. Եղև սով զեւթն ամս առ Յովսէփաւ. այլ բազում ինչ 'ի նոսա ուղղեցաւ. Խրատեցաւ Եգիպտոս վասն արհամարհելոյ զօտարս. կերակրեցաւ Յակոբ վասն առ 'ի յԱստուած բարեպաշտութեան. Հրամանն վասն Աբրահամու գլուխն էառ, զի 'ի պատարագին թերահաւատեաց. Յովսէփ յայտնեցաւ թագաւոր և մարգարէ. և եղբարք նորա յամօթ եղեն վասն նախանձողական և սպանողական համարձակութեան. Եղև սով առ Սահակաւ վասն այլազգեացն ամբարշտութեան. վասն որոյ մոլեգնութիւն անօրէնութիւն գործէին. Այլ զարդար երկիրն ոչ ուրացաւ, զի հարիւր չափ հատոյց նմա 'ի Սերմնի. Եւ առ Աբրահամու սով տիրեաց յերկիրն քանանացւոց. այլ արդարն յԵգիպտոս իջեալ՝ աղքատն մեծութիւն դարձաւ. ետ զփորձ համբերութեան, և ընկալաւ ըզշնորհն պատուի. եցոյց եգիպտացւոց զառ 'ի յԱստուած կամաց իւրոց զխորհուրդ, և եղև երևելի 'ի ձեռն իմաստութեան. երկեաւ 'ի բռնաւորէն, և զՍառա իւր քոյր անուանեաց. աղօթեաց առ Աստուած, և ծանեան եգիպտացիքն թէ վասն բարեպաշտութեան բազում հոգ է Աստուծոյ. Խրատեցաւ Փարաւոն 'ի ցանկասիրութիւն, և վասն անարժան յանդգնութեան՝ որոյ ոչ եւս էր գործեալ՝ իբրև գործեալ դատիւր. ոչ եւս էր

շնացեալ, և հրամանն արածէր նորա զստացուածս։ Յառաջ քան զաղքատութիւն եցոյց զտանջանսն. քանզի թէ գործեալ էր, ոչ ևս կարէր կեալ. վասն զի դատաւորն ոչ ևս յապաղէր զհարցումն։ Սուր յանդիմանող երևեցաւ, և զիա՞րդ ոչ սուր դատաւոր լինէր։ Եթէ ոչ ատէ այր զպոռնկութ՟ի, ոչ զայրանայր ՚ի վերայ նորա. և եթէ ոչ արդար էր, ոչ ևս թողոյր կեալ զմահուն արժանի։ Եթէ ոչ երկուցեալ էր եգիպտացին, Սառա շնայր. եթէ ոչ էր խրատեալ զբռնաւորն, ա՟ծ ոչ էր վրէժխնդիր։ Եթէ եղև սուր յանդիմանիչ, և դատաւոր լինէր յանդիմանելով ըղփարաւոն, եթէ գործեալ էր։

Իմացայք՝ զի և այժմ զաւետարանս առ Աբրահամու ա՟ծ եցոյց. զի որ շնալն խորհեցաւ, իբրև ըղշուն պատուհասեցաւ։ Ի միտ առէք զվասն պարկեշտութ՟ե ա՟յ զվրէժխնդրութ՟ի, և երկերուք շնացեալք ընդ օտար կանայս. զի թէ առ բարբարոսովք և առ անա՟ծ մարդկաւ և բռնաւորօք հարուածէ, զի՞նչ ևս եղիցի առ բարեպաշտովք և առ այնոսիկ՝ որ գիտեն զկամս ա՟յ։ Եւ թագաւորք՝ խրատեցարուք Փարաւոնաւ. որոց ոչ իշխանութ՟բ, այլ բարեպաշտու՟բ կիրք։ Եւ բռնաւորք՝ եգիպտացւո՟վ դատիք՝ մի՛ ունել զբռնութ՟ի գործակից անօրէնութ՟ե։ Եւ բարբարոսք՝ ուսարուք զճշմարտութ՟ի և զպարկեշտութ՟իւն զվրէժխնդիրն. և մի՛ անմտութ՟բ զկենակից թշնամանէք։ Թագաւոր արդար էր Դաւիթ, և վասն շնութ՟ե իբրև զոգէտ դատիւր։ Կայր դատաւորն, և իշխանութ՟ին ապականեալ լինէր. յանդիմանէին մեղքն, և պատիւն խափանեալ լինէր. հրաման տայր ա՟ծ, և թագաւորն իբրև զծառայ հարցանիւր։ Որպէս ՚ի բաղանիսն ամենեքեան մերկ են որք լուանանն, այսպէս և ՚ի դատաստանին պահանջին իբրև մարդիկ, և ոչ իբրև պատուաւորք. ոչ գոյ քահանայ, ոչ թագաւոր ՚ի դատաստանին. ոչ գոյ տէր, ոչ զօրաւոր. քանզի յա՟մ մարդիկ արդարութ՟ի հասարակաց հայի։ Առ իշխանովքն՝ որ յայլում աշխարհի դատաւորք էին, իբրև ծառայք կանգնեալ կան. նոյնպէս առաջի ա՟յ թագաւորքն ինքեանք իբրև զա՟մ մարդիկ լինին։

Զայս ասեմ ցուցանելով զի վասն շնութ՟ե սով

լինի, միանգամայն ամ անօրէնութ զդատաւորն յարուցանէ 'ի բարկութ։ Քանզի եթէ յարդարն Դաւիթ ոչ խնայեաց, ո՞րչափ ևս առաւել յայլ անզգայս։ Խոստովանեաց զմեղսն, յանձն էառ զհրամանսն, և սակայն զսուրն 'ի տուն իւր մինչև յաւիտեան սահմանեաց. զիա՞րդ դուք և գործելով և ոչ զղջանալով թագչել ակն ունիք։ Զնա դատաստանն հաստատեաց 'ի տանջանս. և ընդէ՞ր զսովս ոչ համարիք վասն ձեր ազդել 'ի վերայ երկրի։ Իսկ ուրեմն ոչ աստեղք առնեն զսով, այլ դատաստանն ած զնա 'ի վերայ մեր։ Մեղար, և յաստեղա՞ց վերայ դնես զազդումն. անօրինես, և զերկնից ամբաստա՞ն լինիս. ամպարշտես, և զբոլորութի հաստատութե՞ն թշնամանես։ Ոչ դադարեմ վասն տարացուցիս այսորիկ. քանզի ոչ համբերեմ թշնամանացս այնչափ անզգայութե։

Ցուցի զպատճառ սովոյս. ցուցի զդատաստանին արժնութին. ցուցանեմ ասելով և զգործ մեղաց պատճառս եղեալ երաշտիս։ Եղիա վասն առ 'ի յած ամբարշտութեն Իսրայէլի աղօթեաց, և զերիս ամս և զկէս ոչ անձրևեաց։ Խնդրեաց զվրէժ Բահաղայ դիւին, կորուստ ածեալ 'ի վերայ սպասաւորաց նորա։ Եւ դարձեալ անդրէն աղօթելով ետ երկրի զանձրև։ Ընդէ՞ր աստեղք Եղիայի աղօթիցն ոչ յաղթեցին։ Ընդէ՞ր բնութիւն բոլորակին խափանեցաւ միոյ առն աղօթիւք։ Եթէ բնութի աստեղացն էր ազդող, զիա՞րդ մարգարէն ասէր՝ եթէ ոչ եղիցի անձրև, բայց եթէ 'ի բերանոյ իմմէ. հնազանդեալ էին աստեղքն բերանոյ մարգարէին։ Իսկ ոչ ուրեմն գոյ բնութի, ուր տիրէ իշխանութի. քանզի ոչ է լսել բնութեն։ Ո՞ լուաւ՝ թէ մարդ աստեղաց հրաման տայ. իսկ ո՞ երբէք գիտաց՝ եթէ աստեղք ծառայեն մարդոյ։ Եթէ աստեղք յօժարութե հնազանդին, ապա և մեղս գործեն. և նոքա արդեօք որո՞ց աստեղաց հընազանդեալ են որք ազդեն 'ի նոսա զմեղսն։ Ոչ ունին յօժարութի աստեղք, քանզի ոչ իսկ են մարդիկ. ոչ ազդեն զմեղս, քանզի ոչ են 'ի չարիս. ոչ առնեն անձրևք, քանզի ոչ ունին իշխանութի ջրոց. ոչ ունին իշխանութի յարմարական 'ի սովս և 'ի հրկիզումն, քանզի ոչ կարգեցան մարդկան դատաւորք։

Եթէ դատաւորք են մարդկան, ընդէ՞ր Եղիայի հնազանդեցան. եթէ կամովք յօրինեն զառ 'ի վերայ երկրիս, առ ի՞նչ մարգարէին կամացն ընդդիմանալ ոչ կարացին. եթէ բնութի՟ ունէին 'ի միմեանս, գործակից ոչ ունէին յօժարութե՟, զի ոչ առնեն իւրաքանչիւր ոք զոր կամին 'ի ձեռն միմեանց առնելով. յանդիմանութի՟ են զրպարտութե՟ն, քանզի բաղայս դնեն մարդիկ 'ի վերայ նոցա : Զոր ինչ ոչ ունին, փնասեն. և զի առ ինքեանս զայս ոչ առնեն, իսկ ուրեմն ոչ յառաջագոյն իմանան չգիտելով զոր գործեն բնութե՟ գործելով զփնասակարսն : Իսկ է 'ի նոսա այլ ազդումն, որպէս 'ի մարդիկ նոքա. որ փնասէ արտաքս զկամս որպէս զգինի շրջեալ է, կամ որպէս զերկաթ որ յայլմէ սրի : Իսկ ուրեմն ոչ և բնութի՟ ունի փնասակար, և ինքեանք անկանելով ընդ ակամայ փնասու : Զգինին կամ խառնուած, կամ տեղի, կամ ժամանակ այլափոխեաց. աստեղաց արդեօք զի՞նչ 'ի սոցանէ փնասեաց : Զսուր կիրք իմացան, և միտք առ 'ի սպանութի՟ սրեսցին. իսկ աստեղք արդեօք ո՞ր իցեն սուր, կամ ո՞ զնա սրեաց առ 'ի փնաս :

Այդպէս անմիտք էք, մարդիկ, զի չգիտէք զինչ ասէք : Վասն ձեր աստեղք կորուսին զիւրեանց գոյաւորութի՟ն. քանզի ահաւասիկ ցուցաւ՝ զի ոչ բնութի՟ ունին զփնասակար, ոչ յօժարութիւն փնասակար, ոչ նախախնամութի՟ ընտրողական, ոչ ժողովումն առ 'ի մեղս մարդկան գործակից : Ասաց գիրն զինչ է բնութի՟ նոցա, կամ զինչ է ազդողականութի՟ն՝ յայտնեաց : Ընթերցիր զԱրարածս աշխարհիս, և գիտասցես ըզզօրութի՟ն նորա. լուսաւոր կոչէ զնոսա և աստեղս, զի ասէ. “Լուսաւորք եղիցին 'ի հաստատութեանս„ : Ապա ուրեմն բնութիւն ունին լուսաւորելոյ տուընջեան և գիշերոյ բնաւորականք, զի եղիցին 'ի հաստատութե՟ն 'ի ժամանակս և 'ի տարեկանաց յեղյեղմունս և յամիսս և 'ի յաւուրս : Ապա ուրեմն ազդողութի՟ նոցա 'ի ժամանակաց են շրջապատիկք. քանզի նոքօք գիտեմք որչափ ժամանակ էանց, և զապառնին համբաւելով յարակցեմք. իմանամք որչափ ինչ պիտոյ է 'ի տարին, և որչափ 'ի յիսուն ամն, և որչափ ինչ պակաս է 'ի նոցանէն, և կամ թէ զինչ է

ընտրութեն լուսոյ արեգական, և կամ զինչ ամսոց տարւոյ առ լուսին և այլոց մոլորականաց հնգից առ այլ մոլորակսն ։ Քանզի ամենեքին ոքա ժամանակաց ոմանց հաստատուն ունին. և կայանք հաստատութեան նոցա յերկարաւոր և կարճժամանակեայ զլրմունս ցուցանեն, որպէս լուսին առ շաբաթուց, և ամիսք առ տարիս ։

Այս ցուցից քեզ, ով անյագ, զի վասն քո լինի սովս, և ոչ է ըստ երկնից ինչ ազդման ։ Ասէ Մովսէս յերկրորդ օրէնսն. "Եթէ ոչ երկիցես և պահիցես զպատուիրանս նորա, առաքեսցէ քեզ Տր կարօտութի և զսով. և եղիցին քեզ երկինք պղնձի, և երկիր ոչ տացէ քեզ զպտուղ իւր,,։ Ասացին և մարգարէքն՝ եթէ Տր տայ հրաման ամպոց, զի մի տեղասցեն 'ի վերայ երկրիս ։ Աստուած հրամայէ, ոչ եթէ աստեղք ազդեն. Տր արգելու, ոչ եթէ ժողովք աստեղաց առնեն զերաշտս ։ Եւ առ Եղիշայիւ եղև սով բազում ամս, այլ զպատճառս մշտացն յայտնեաց. յանդիմանեաց զժողովուրդն, և զգլխաւորն. պատուհասեաց. կամեցաւ լինել լիունի[1], և յանկարծակի եղև դատապարտեալ զհայհոյիչն՝ տեսանել զնա և մի ճաշակել ։ Բաւական եղիցի ձեզ առ 'ի յաղքատման Թշնամունի ։

Գիտէ Տր և առանց անձրևացն կերակրել զմարդըն ։ Տեղացին երկինք զհաց Իսրայէլի ամարանի, և ձմերայնի զմանանայն ։ Ամպք ոչ յանդընդոց բերէին, այլ 'ի ձեռն բանին Տյ պտուղ քաղցրութեան բերէին, ընդ գինջս զչորն, և ընդ Թուլի զհաստատուն տեղային. և ոչ իբրև զջուր հեղոյր, և ոչ իբրև զձիւն հալէր. մածուցեալ էր իբրև պտուղ, առ 'ի պէտս աղացեալ հաց լինէր ։ Ո՜վ մեծ խորհրդոցն, ո՜վ Տծային զօրութեն. երկին երկիր եղև՝ ցորեան պտղաբերելով. երկիրս երկին ցուցաւ՝ ներքոյ 'ի վեր ցօղելով. վէմք էին փոխանակ ամպոց, զի անձրևս յաւիտենականս տային. հաստատութին իբրև զերկիր սերմանեալ եղև, զի տայր զհաստատուն կերակուրս. ամանք ջրոցն էին վէմք յաւիտենականքն լինելով. և կալ լինէր երկինն, քանզի հօսեալ առաքէր

1 Յօրինակին ընթութէ ։

'ի խոնարհ զպտուղն. երկիրս ունէր ցօղել բնութբ, և երկինն պտղաբերել. ոչ 'ի ձեռն չորից ամսոց հատուցանէր զսերմն, այլ իբրև յաւուրս ամարանոյ զպտուղն տայր։ Իսկ ո՞ թերահաւատայցէ գոլ դրախտ, համապազորդ պտղովք պայծառացեալ։ Փոխանակ ջրոյն գալ աւազանացն եղև, քանզի դիւրագոյն քան զշտեմարանս ունէին զմատակարարութիւն բազմութիքն. զի էր որ չափէր զշնորհս, զի և չափն յաւելուած առնոյր զօրութե ըստ ուժոյ իմացողին։

Հան զցորեանդ, ով վաշխառու. մի պէտս եղիցի քեզ ապառնին. բաշխեա կարօտացելոցն. մի տանիր հոգ անյագութեցդ. բեկ զփականդ, զի բացցի քեզ դրախտն. խզեա զկնիքսդ, և զդատաստանին մերժեսցես զարձակումն։ Հաւատա զի զերկինս կարող է առնել անդունդս, և զանդունդս փոխել յերկինս. ոչ ինչ է նմա անհնարին։ Չարագոյն քան զհմայս և քան զպէսպէս քուքս լինիս։ Աղքատին զի՞ առաջի դնես զվաշխն. և նորա անձն թառամի։ Քերես զնա յառողջութենն, և դեռ ևս 'ի կենդանութենն իբրև զդի պատես զնա. կորուսանես զամենայն զգայութի վասն տանջանացն։ Թոյնս չնչէ վաշխն չարագոյն քան զթագաւորական իժն։ Զի եթէ տեսանէ զձեռագիրն, մեռանի. իբրև զհրեշտակ մահու տեսանէ զքեզ. զի նոյնժամայն իբրև մահու գիր առնէ վասն ստացուածոց իւրոց։ Զորդիս վասն քո ուրացաւ, զի զքո զորդիս ա՟ծ ուրասցի։

Իսահակ յանապատացեալ արգանդէ բխեցաւ տունկ բազմապտուղ, և յամուլ կնոջէ աղբիւր մարդկան բխեաց։ Առաւ 'ի խոստմանէ, և բազմացոյց զխոստումն։ Բազում յայլս շնորհեցաւ Աբրահամու որդի. բայց ինքն հեթանոսաց պահէր, զի զՈրդին ա՟յ 'ի նմանէն առաք։ Յարդարոյն ծնանի արդար տունկ, զի զարդարութիւն ք՟ի յառաջագոյն քարոզեսցէ։ Յառաջ քան զերիս հազար ամաց կարապետ եղև Իսահակ Ք՟ի, զի ամենայն ազգք փրկիչ գիտէ զնա։ Ծնաւ բնութեն, զի ծնցին և կամքն բնութեն։ Յարակից եղեն միաբանութբ երկոքին շնորհին. և կատարեալ լինի սրբութբն։ Իսահակ արդարն երիս օրինակս ունի, զանկութիւն, զգործն, զշնորհսն. զանու-

թեն՝ զի յամլոյն երևեցաւ, որպէս և քս 'ի կուսէն եղև ծնեալ. զգործն զիւր անչար և թշնամեաց իւրոց քաղցր, որպէս և Քս խաչեալ 'ի վերայ թշնամեաց իւրոց աղօթս առնէր. զշնորհն՝ զի թէպէտ և զենլի եղև՝ ոչ մեռաւ, որպէս և Քս մեռեալ՝ և դարձեալ յարեաւ 'ի մեռելոց:

Ո՜ինչ արդեօք էած զմտաւ Աբրահամ. այ ցանկալ 'ի նմանէ պատարագին. և չկատարեալ՝ զի՞նչ կարծէր զխորհուրդ կամեցողին. զղջացա՞ւ, եթէ ատեաց, թէ յարուցանել զԻսահակ ոչ կարէր. զի և յայ այդպէս հաւատացեալ էր: Ոչ սկսանէր պատարագելոյն, որպէս և ասաց Առաքեալն: Ոչ թերահաւատեաց, և ոչ անկաւ ընդ գայթագղութբն. քանզի ետես զՔս տպաւորեալ, իմացաւ զելս տնտեսութեն, ետես յիւրում որդւոջն զայ Որդին, և իմացաւ զմարգարէութեն զելս: Զիւր զփորձն ետես բազմաց դիւրագործութի. զի մինչև ցայսօր Իսահակայ նմանութե հաւանին հեթանոսք ևս, մանաւանդ առաւել վասն Քի: Վասն այսր աւուր ասաց տէր՝ եթէ “Ետես զօրն զայն և ուրախ եղև Աբրահամ„: Զի եթէ չէր տեսեալ 'ի յառաջ ասացեալ գայթագղութեցն ոչ վրիպէր. վասն այսորիկ մանաւանդ ուրախ եղև, զի արժանի գտաւ կրկնակի շնորհացն: Եւ զի ետես զած, և զի Քի տպաւորութեն սպասեալ ձեռնարկեաց, ելոյծ զթագուցեալն 'ի ձեռն երևելոյս. զի զորդին անդրէն ընկալաւ անվթար: Եցոյց զխաչին յառաջագունէն եղեալ. ոչ 'ի բնութեն ածութէն, զի զբնութե զիւր զորդին առանց հպելոյ չարչարանաց ընկալաւ. չարչարակից եղև, և ածութեն Որդոյն ոչ չարչարեալ: Քանզի Սահակ կապեցաւ՝ ոչ ինչ չարչարեալ. և 'ի խաչին և ածութին ընդ Որդոյն ոչ չարչարելով: Եւ Իսահակ 'ի վերայ բագնին սեղանոյն հանեալ եղաւ. բագինն էր տեղին Գողգոթա, և փայտն նմանութի խաչին. Աբրահամ էր միահաւանութի Հօր, և սուրն լեառն սահմանեալ, յորում հրամայեաց չարչարել զորդի նորա: Ասէ Իսահակ. “Ահաւասիկ հուր և փայտ, արդ ո՞ւր է ոչխարն, հայր„: Ասաց և Յս. “Հայր, եթէ հնար իցէ, անցցէ յինէն բաժակս այս„: Լռեաց որդին՝

գիտացեալ զկամս հօրն. լուեաց և Քս՝ ասացեալ քո կամքդ եղիցին, Հայր։

Տեսցուք զխաչս, և իմասցուք զզօրութիւն պատարագիս։ Բագինն էր որպէս տեղիս խաչիս, զի եղիցի սեղանն որպէս ասաց ած առնել յանկոփ քարանց վասն սեղանոյ Որդւոյն իւրոյ։ Օրէնքն հրամայեցին կոփեալ քարինս մի մատուցանել 'ի սեղանն. քանզի գիտէր եթէ Քս 'ի վերայ անգործ սեղանոյ մատուցանելոց էր։ Իսկ զի այսպէս կամեցաւ ած, զի ցուցցէ զպատարագն՝ եթէ զայս ոչ է պարտ առնել մարդկան ձեռաց. բայց զայն սեղանս արասցեն մարդիկ, ուր զանբան ոչխարսն մատուցանեն։ Իսկ զՔսի սեղանս ած արասցէ, զի զիւր զՈրդին մատոյց վասն ազգի մարդկան։ Այս է և Առաքեալն՝ եթէ զերկնայինն Երուսաղէմ ած շինեաց և ոչ մարդ. նոյնպէս և զՔսի սեղանն ած արար և ոչ մարդ։ Գիտեմ հարս կամեցողս խրատել զորդիս. այլ ոչ հաւատայ օտարաց զխորհուրդն։ Այսպէս և ած զիւր Որդին ոչ 'ի մարդոյ շինուածոց, այլ ինքնարար սեղանով սահմանեաց լինել զպատարագն։ Բանք և նմանութիւնք օրինակք եղեն. քանզի որ ինչ վասն Քսին է, 'ի վեր է քան զամենայն բանս։ Ասացեալքս իբրև օրինակ առան. ոչ զի գայթագղեսցիս, այլ զի իմասցիս՝ թէ և առակքս ոչ առ 'ի վատարումն ածուէն առին, այլ առ 'ի յաճումն։ Լուր իսկ 'ի լոյս, և մի խօսիր խաւարինս. իմացիր զլուսոյն, և մի խաւարեցուցաներ 'զմիտսդ։

Գտի և զխաչն 'ի տեղւոջ միում նշանակեալ, զոր և տունդ անուանեաց սաբեկ։ Տունդ զնա կոչէ, զի ոչ էր յերկրէ, այլ յերկնից այսր տնկեալ փոխեցաւ։ Տունդ անուանէ զնա, զի 'ի վերայ երկրիս մճարեաց զհարկն. իսկ յերկլինս արմատացեալ եղիցի. ուր էր ոչխարն 'ի սկզբանէ, անդ և տունդն։ Իսկ եթէ յանկարծ ծագեցին երկոքին, յայտ է զի ոչ էր յերկրիս տունդն։ Ո՜վ փառաւոր մշակին. զի ոչ միայն մշակ և հովիւ է, այլ և արարիչ և մեծ այցելու, Արդարև յերկնից եբեր զտունդն, զոչխարն արդեօք ուստի՞ եած. իսկ երկի՞ր արդեօք ունի՞ն երկինք։ Եւ զի տունդ արասցէ, անասունս բոտէ, զի և ոչխար տացէ։ Եւ զի՞արդ է ած հովիւ և մշակ բանաւոր անձանց. զի

յայտնապէս այս իբրև մեծագոյն ինչ կարացեալ։ Հովիւ է՝ ճարակս շնորհելով անձանց զօրինացն արդարութեան և զաւետարանին զպարգևս, այլ և պահպանելով 'ի դիւաց նենգութենէ և բռնութենէ․ յայտ է թէ և յախտիցն մարմնոյ։ Իսկ ուստի՞ եթէ զտունկն և զոչխարն։ Թերևս ասիցէ ոք՝ եթէ 'ի դրախտէն․ բայց ես զայս ոչ ասեմ։ Քանզի ոչ տուաւ դրախտն յօրինակ տպաւորեալ, այլ 'ի ճշմարտութի․ և ոչ յօրինակ տարաբերի, այլ 'ի համարձակութի վայելչութեան պահել։ Զի նա որ ասացն 'ի սկզբանն՝ հանցէ երկիր փայտ պտղաբեր, և զամենայն անձն երկրիս կենդանի ասաց լինել, և երևեցաւ՝ քանզի զբազմութի ազգաց արար յական քթթման, ոչ առնոյր ոչխար փոխ 'ի մարդոյ․ և ոչ են պէտք մայրոյ մշակեն, զի տեղափոխեալ տնկեսցէ զտունկս զայս սաբեկ։

Բայց թերևս ոչ հաւատաս բանիս մերում․ 'ի մարգարէէն Յովնանու ուսիր զճշմարտութիւն։ Զի ած հրամայեաց դդմենոյն բուսանել 'ի վերայ գլխոյ նորա․ և յանապատին ասաց ցվէմն, և հոսեալ ջուրս։ Քանզի ոչ եթէ պատճառովք ինչ կարօտ է, ոչ զետեղեաւ, ոչ ժամանակով․ հրամանաւն այ։ Ուսցին յայսցանէ որք զմայրի պատճառս ասեն մասանց աշխարհիս այսորիկ տեսլեանց և ազգաց։ Ոչ մայրի որոշեաց առ Յովնանու, զի զնորայն ցամաք երկիր արասցէ, իսկ զգէջն օդ, և զանօսր գէջ ջուր, զանօսր ցամաք հուր․ յորոց 'ի շարժման և 'ի գնացից թեթևն լինի թռչունն, իսկ բուռն՝ գազանք և այլ անասունք․ իսկ ծանրն՝ սողունք․ իսկ թոյլն՝ զեռունք․ իսկ անշարժ զօրութեացն և չորից կողմանցն զցամաքն բաժանել 'ի ցամաք պտուղս, իսկ զջերմ և զցամաք 'ի գէջ պտուղս․ զծանր գէջն յերկոսին դալարիս, իսկ զթեթև զգէջն 'ի կենդանաբերացն յերկաքանչիւր զօրութեցն զընտրութիւս չորիցն, և զգիջոցն, զբանջարեղինացն, և զդալարեղինացն, և արմատեղինացն տեսիլս։ Որպէս թէ ցամաք է միայն ընտրել զմաքրագոյնն 'ի հաղիկա, կամ 'ի ծնունդս ցորենոյ։ Իսկ գէջն 'ի դալարոյ և 'ի կորեկանէ․ զծանրագոյնան ըստ իւրաքանչիւր սերմանցն։ Իսկ 'ի գիջոյն և 'ի թեթևէն՝ որ ըստ մասանց ջերմին է, պրաս․ իսկ հողանման

ջերմ կաղամբ և այլ ա՟մ կծու. իսկ թեթևագոյնսն 'ի դդումսն և 'ի սեխս և 'ի մեղրապոպս: Քանզի բազում է բանս, եթէ կամիս ըստ իւրաքանչիւր պատմել:

Եթէ մաշեալ էր 'ի սկզբանէ զմայրի ա՟յ, ով հեթանոսք, 'ի կողմանս և 'ի տեսիլս և յազգս ուստի՞ առնէր այժմ ծառ և ոչխար. ուստի՞ դալարի, ուստի՞ դդում, և յայլում ժամանակի սաստիկ բազմութիւնն թռչնոց՝ մինչև յագեցուցանել զվեց հարիւր հազար 'ի բազում ժամանակս. ուստի՞ էր 'ի վեմէն ջուր, և 'ի կզակէ իշորդոյն աղբիւր: Իսկ որպէս զայս 'ի չգոյից արար: Քանզի ոչ ժամանակով յեղափոխեալ է ա՟ծ զայս, զի ասիցէք եթէ 'ի բնութենէ փոխ եառ: Սոյնպէս և զամենայն ինչ 'ի չգոյութե՟ արար: Քանզի ոչ դատաւորաց է մարմին ամենայն սքանչելի կարգին: Զի եթէ զլաւագոյնս զօրութե՟ և երագ իմաստութե՟ խորհրդովք 'ի չգոյից արար, ո՞վ հակառակ յամառեսցէ վասն տկարագունացն և երագալուծիցն: Եւ Պաւղոս ասաց զտեսանելիսս առժամանակեայս և զաներևոյթքն յաւիտենականք: Քանզի գիտէր իսկ ուրեմն յերկնային էութենէն յոյժ ընտրութի՟ն առ երկրայնովքս:

Իսկ ասասցուք այսուհետև զինչ էր բանս Սահակայ, զի ուսցուք զա՟յ խորհուրդն: Լռէր չարչարելով, և նենգելով համբերէր զայն յայտնի առնելով որ զրպարտեալն լինէր, և առ Հօրն վասն ա՟ծամարտիցն բարեխօսէր: Այլ ոչխարն ոչ եղև ծնեալ 'ի սերմանէ վասն որ առ յապայն 'ի կուսէն ծնանելոց էր: Կախեալ էր խոյն զեղջերացն տարևոր. վասն զի և որ խաչելոցն էր վասն ազգի մարդկան, կամեցող կապանօք մատուցեալ էր: Ոչ ոք էր որ կապեաց զայն ոչխար, բայց եթէ ա՟ծ. և զՔ՟ս մարդ ոչ խաչէր, եթէ ոչ էին կամք Հօրն: Ընդ առաջին ոտս ոչխարին պատատեալ կայր. զի ցուցցէ եթէ զնմանութի՟ խաչին ամենալից բերէ: Քանզի եղջերքն ոչխարին են շնորհքն, և առաջին ոտքն ձեռացն ձգումն. քանզի 'ի ձեռն ա՟յ և յառաջինի գործոցն կատարեցաւ խաչին խորհուրդ: Ո՜վ մեծ խորհրդոյ թագուցելոյ 'ի փոքր օրինակս. ո՞վ ա՟ծային կամաց, որ հալածական առնես զմահ մեղացն. ո՜վ մեծի զօրութե՟դ, որ ծի-

ծաղիս զյանդգնութիւն բանսարկուին ։ Սահակ հանեալ լինէր 'ի վերայ սեղանոյն , և ոչխարն զենեալ լինէր , և պատանեակն բարբառէր․ ոչխարն աներևոյթ էր , երիտասարդն վշտանայր , և ոչխարն պակէր ։ Ճգնէր Սահակ , զի պատահեսցէ այնչափ շնորհին․ իսկ յառաջ անցեալ խոյին՝ զայսքան պատճառս օրինակիս միաբանեաց ։ Եւ երևեցաւ ոչխարն , և խորհուրդն Խոսհակայ Թագեաւ․ սպանաւ գառնն , և նա պատարագն կենդանացաւ․ կապեցաւ Խոսհակ ընդ կապանօք ոչխարին․ ընթանէր խոյն , և մանուկն արձակիւր ։ Իսկ այս ամենայն լինէր վասն յապաղման խորին օրինակին ։ Ապա կատարեալ լինէր խաչին խորհուրդ․ քանզի եթէ մերձենայր հասանել , թերևս արդեօք և Սահակ չարչարիւր առ 'ի վկայութիւն անհաւատից ։

Յորժամ եկն Քս, փոխանակ միոյ Խոսհակայ , բազում Խոսհականց մանգունք սպանան․ զի կատարեսցի Սահակայ խորհուրդն ։ Զարչարեալքս վասն Քսի զդժոխս սարսեցուցին․ զի անպարտք գոլով վասն Քսի ակամայ չարչարեցան ։ Ետես մահ և սքանչացաւ․ զի ոչ կամք վասն բարեպաշտութեն , այլ բնութեն անճառ բանիւ վկայեաց ։ Իմացաւ զի բնութեն գործն յառաջ մատոյց զանփորձ բնութեն վասն իւր ճգնել․ և կարծեաց թշնամին յոմանց պատահարաց եղեալ զբնութիս ։ Գիտէր արարիչն զբնութեն զխոստովանութիւն , և ընկալաւ զվկայութիւն ած՝ որ ասացն մատուցանել պատարագ զանփորձն Խոսհակ , և յօրինակին կատարել զողջակէզսն իւր ։ Նա և զմանկունսն որ առ Քսիւ սպանան , 'ի վկայութիւն աւընկալաւ․ վս զի ոչ որպէս լսեն մարդիկ , լսէ ած ։ Յովհաննէս դեռ ոչ էր ծնեալ՝ մարգարէացաւ , վազեալ անպատումն խնդութիւն ըստ Առաքելոյն․ և մանգունքն լսեալ վասն Քսի վկայեցան , քանզի ոչ էին անբերան քան զՄկրտիչն ։ Յակոբ և Եսաւ կռուէին վասն բնութեն , զիւրաքանչիւր զկամս ցուցանելով․ և զիմրդ Քսի վկայքն՝ թէպէտ և տղայք էին , ոչ արդեօք ճգնէին վասն նր ։ Նոքա վասն իւրեանց մարգարէացան․ և սաքա վասն Քսի վկայեցին ։ Յակոբ զգարշապարէն կալեալ զԵսաւայ , զոր բնութիւնն յառաջագոյն ու-

տոյց[1]. զայս կամքն գործեցին: Այսպէս և 'ի տղայսն բնութիւն չարչարեցաւ, բնութիւն վկայեաց. Հետևեցին նմա և կամքն, զի մի մարդ ըստ բնութեանն ունի զկամս, ոչ կամքն տան զբնութիւն մարդոյն, այլ բնութեանն լռութիւն խօսեցեալ, և յինքեան շրջապատեալ ունելով զվասն ապառնեացն: Քանզի և եթէ մնացեալք էին տղայքն, թերևս վկայէին վասն Քսի. վասն զի զՅակոբ եցոյց կատարեալ ըստ կամաց, զոր բնութիւն իսկ արար:

Յերկրորդ աւուր էլ Աբրահամ 'ի նոյն տեղին զյարութիւն նշանակելով, զոր ետես 'ի մահու որդւոյն. զի ըստ նորա կամացն մեռաւ և յարուցեալ եղև: Յերրորդ յաւուրն եհան 'ի տեղին պատուական պատարագին այնորիկ. վասն որոյ ետես զգաղտնի խորհուրդն 'ի միում տեղւոջ[2] զխաչին և զյարութեանն, որպէս առ Քսիւ եղև: Փոխանակ գերեզմանին եղև Սահակայ սեղանն. զի անդ 'ի մահ եդեալ 'ի վերայ կենդանւոյն, և առ ծառովն զխաչն ետես՝ զի դառնն զնմանէն կախեալ լինէր: Եղև և խաչն հարկատուր՝ որ փրկելոցն էր զազգս մեր, զի զՍահակ փրկեաց այսր. թերևս և Քս 'ի գերեզմանէն փրկեաց զՍահակ: Այսպէս և զմեզ 'ի դժոխոց փրկեաց. քանզի բազում խորհուրդս ունի որ ինչ եղև առ Սահակաւ: Ո՜վ նոր սքանչելեաց. զի անդ սեղան և դիրք[3] եղեն, և առ Քսիւ դիրք և սեղանն կանգնեցաւ. և յարութեան դիրքն, անդ և սեղանն, զի կատարեսցի Եսայեայ ասացուածն. «Զի եղիցին դիրքն նորա 'ի պատիւ»: Զի՞նչ ակնարկէ դիրքն լինել զսեղանն, և զսեղանն դիրս: Ոչ այլ ինչ, բայց եթէ զերկիր երկինս, և զերկինս երկիր: Քանզի ինքն Քս փոխանակեաց ընդ երկնայնոցն զերկրայինս, և ընդ երկրայնոցս զերկնայինսն. վասն այսորիկ հրեշտակք իջին յերկնից յերկիր: Ե՞րբ եղև այս. յորժամ երևեալ երկնային հրեշտակացն՝ գոչեցին փառք 'ի բարձունս այ, և 'ի

1 Ի լուսանցս օրինակին տաոյ:
2 Ի լուսանցս օրինակին Եփէղ:
3 Յօրինակին 'ի լուսանցս 'ի վերայ բառին դ. և որ զկնի գան 'ի վերայ տեղիս եա նշանակի Գ. գուցէ զայլոյ օրինակի ընթերցուածն կամի ցուցանել, և կամ ԻՒր օրինակն ունէր Գիր., և ինքն փոխեալ իցէ. զի առէ անդէն. Գիտոջիր ԲԻԷ ՏԻՐ, ԷԲԷ ԳԻՐ:

վերայ երկրի խաղաղութի̃. և յորժամ առեալ Քսի 'ի յերկինս եհան զոգիս սրբոցն. քանզի "Յորժամ բարձրացայց, ասէ, զամենեսեան առ իս ձգեցից ,,: Տեսեր որպէս յերկաքանչիւրումն երկաքանչիւր, յերկինս երկիր, և 'ի վերայ երկրի երկինք:

Նչլին Աբրահամ և Իսահակ միայն, քանզի Թողին զէշն և զմանկունսն. քանզի 'ի յարութեան երկու եղիցին յերկանին, մին ընդ ինքեանց առեալ լինի, և միւսն թողեալ: Ծառայք մեղաց թողեալ լինին 'ի վերայ երկրի, դատաստանին ակն ունելով. և ամենայն ընդունայնական գնացք և վարք ընդունայնութե̃, որոյ զնմանութի̃ ունի էշն' ոչ ինչ ընդ ինքեան ունելով ապրելի, քանզի միանգամայն հանդերձ մարմնովն իւրով կորնչի: Քանզի ասէ Պաւղոս' եթէ "Ամբովք յոգս յափշտակեսցուք, և հանապազ ընդ տն եղիցուք ,,: Իսկ ապա ուրեմն յիսահակեան լեառնն յափշտակեսցին, անդ տեսցեն զխաչն և զյարութիւն: Ես զայս լեառն ասեմ գոլ դրախտն, քանզի նա է երկիրն կենդանեացն զոր ասացեալ է ժառանգել. և զի բարձրագոյն է. քան զերկիրս զայս դրախտն, ասէ Առաքեալն."Զի յափշտակեցաւ 'ի դրախտն ,,. զի յափըշտակեալն բարձրունի ցուցանի: Վյ իբրև դժուար գոլով մարդկան առ վերելանել, 'ի ձեռն յափշտակութեանն ած կատարել տայ: Եւ 'ի Ծնունդսն ասէ' եթէ չորք գետք անդի ելանեն. զի ոչ կարեն իսկ 'ի խոնարհագոյն տեղւոջէ ելանել ջուրքն յայն տեղի: Իսկ Գեհոն ընդ Թեբայիթ լեռնային երկիրն անցանէ իջանելով յԵգիպտոս, որպէս յայտնի է. Թեբայիթ յեթիոպացոց 'ի բարձրագոյն տեղւոջէ իջանէ:

Անտի գան սուրբքն[1] թողեալ զամենայն կենացս բաջաղմունս և զընդունայնութիւնս. քանզի ծառայքըն են բաջաղմունքն սպասաւորութե̃ աշխարհիս այսորիկ. և զհուրն և զփայտն կրեալ բերեն, զգործս և զբանս և զխորհուրդս: Երեք են զորս ընդ ինքեան ունել ասէ, զհաւատոյն երրորդութի̃ն: Երիս առեալ կրեն նքք, քանզի լիակատար ընկալցին 'ի յարութեան զոգի և զմարմին և զշունչ: Բայց ասեմ

1 Յօրինակին սուրբն:

զերեսին 'ի միաբանութի եկեալ. քանզի վկայքն զիւ-
րեանց չարչարանս յանձին ունել երթան առ Քն.
վասն զի փայտն և հուրն և սուրն՝ հալածչացն են
տանջանք ։ Եթէ ոք տեսցէ զգործ իւրաքանչիւր
յանձին կրելով, նա և Առաքեալ ասէ՝ թէ "Իւրա-
քանչիւր ոք զիւր բեռն յանձին կրեսցէ" ։ Եւ ահա-
ւանիկ մարդ և գործք իւր ։ Ասաց և Տէրն. "Հուր ե-
կի արկանել յերկիր" ։ Յայլում տեղի ասէ. "Ոչ եկի
արկանել խաղաղութի 'ի վերայ երկրի, այլ սուր" ։
Այլ ասաց Առաքեալն՝ եթէ երկոքին են. զսուրբ ըզ-
Հոգին ասաց առնուլ, և զսուրն զոր Հոգոյն, որ է
բանն Այ ։ Իսկ արժանիքն Սբ Հոգոյն ինքեանց ունին
զշնորհն ընդ փայտին, և զկեանս Թողլով զխաչն կրեն ։
Հոգոյն եղանեն յաշխարհէս 'ի ձեռն պարկեշտութեն ։

Ասացաք վասն Սահակայ ըստ կարգի, և վասն
տնգոյն ասել պարտիմք ։ Անուն տնգոյն սաբեկ ասի.
բայց ոչ ինչ Աճայլին դիրս ունի սովորութի անուա-
նել ծառ, ոչ մայր, ոչ կիւպարիս, ոչ սարդ, ոչ ստրո-
բողին, ոչ սարոն, ոչ կաղնի, ոչ բարտի, ոչ սուսոյ, ոչ
այլ ինչ յայսպիսեացս ոչ արդեօք իցէ ։ Եւ ուստի՞ է
այս և ընդէ՞ր ունի օտար անուն ։ Տեսցուք զայս սա-
բեկս զինչ Թարգմանի. Թէպէտ կարասցուք զհետովք
անկանել առ 'ի Թարգմանութիւն ։ Երկդիմի միտս
ունի. արդ Թողութիւն անսացեալ, արդ զօրութի ։
Այլ երկոքեան յիրաւի են. քանզի և Թողութի մե-
ղաց շնորհեալ է մեզ խաչիւն, և զօրացոյց զմեզ առ
'ի մարտնչել ընդդէմ Թշնամոյն ։ Բայց զի փայտ է՝
հաւատամք. բայց օտար գիտեմք զծառս ։ Եւ մեե-
Թէ ա՞յնր նման իցէ երկդիմի փայտին. զի և այս երկ-
դիմի, և խաչս երկդիմի զօրութի ունի՝ օրինակ հա-
ւատացելոցն կենդանութե, իսկ անհաւատիցն մա-
հու ։ Որ 'ի վերայ Սահակայս, է Թողութի մեղաց. իսկ
որբոցն զօրութի առ 'ի պատերազմել ընդ դևս ։ Եւ
դարձեալ Թողութին հաւատացելոց, իսկ զօրութի
անհաւատիցն. զի վրէժխնդիր լինի յաւուր դատաս-
տանին ։ Եւ որ 'ի դրախտին է, երկդիմի զօրութի ու-
նի. ոմանց բարոյ և չարոյ առ 'ի յորոշել զանձինս
իւրեանց. իսկ ոմանց գիտութի, հպարտութի գիտու-
Թեան ընդդէմ Այ և մարդկան ։ Զսաբեկ տունկ

Աբրահամ ետես. քանզի 'ի ձեռն նորա յառաջագոյն ցուցանէր ա̄ծ ; եթէ Թողցի Սահակայ չմեռանել. և ծանեաւ իսահակ եթէ 'ի մահու 'ի կենդանութի̄ն հաճի ա̄ծ ։ Եւ 'ի ձեռն լռուե̄ն կատարեալ առնու զվարձն ։ Անդրէն դառնան առ ծառայսն, և գտանեն զէշն ընդ նոսա. քանզի դեռ ևս յերկայն ժամանակս էր տեսիլն ։ Եւ Դանիէլի ասաց 'ի յայտնութե̄ն. զի նոքա դարձան իբր 'ի տաճարէն անդէն յիւրեանց տուն, կատարեալ զխորհուրդն ։

Աբրահամ եղև քահանայ. Սահակ նմանատիպ գառինն. խոյն կատարեաց զձեռն քահանային, զի Սահակ նախատիպ եղեալ մարգարէացի վասն հանդերձելոյն. մեռեալ և յարուցեալ, սպանեալ և ոչ ապականեալ, և յերկրի ոչ մնացեալ ։ Երանելի ես, Աբրահամ, զի 'ի քեզ և յորդոջ քում Ք̄ս նախատպեցաւ. երանելի ես, վասն զի այր քաղդէացի առաքեցար 'ի Քանան, զի քարոզեսցես զա̄ծպաշտութի̄ այնոցիկ՝ որք անդ հեթանոսք էին ։ Եղեր առաքեալ 'ի ձեռն ունկնդրուե̄. եղեր մարգարէ 'ի ձեռն շնորհի. եղեր քահանայ 'ի ձեռն հոգևոր պատարագին. եղեր հայրապետ, զի 'ի ձեռն ա̄ծպաշտութե̄ն եղեր նախապտուղ. եղեր կատարեալ՝ 'ի բազում փորձութի̄ս փորձ գտեալ ։ Եղիցի և մեզ ուրախանալ ընդ քեզ, յորժամ եկեսցէ Ք̄ս և բնակեսցէ 'ի մեզ փառօք Հօր իւրոյ հանդերձ սուրբ Հոգւո̄ն. որում փառք յաւիտեանս. ամէն ։

# ՎԱՍՆ ՔՆՈՅ ԵՒ ԱՐԹՆՈՒԹԵԱՆ*

Մի՛ տայք իշխանութիւն քնոյ թագաւորել յանդամս ձեր։ Լուարուք զաղէտն զոր գործեաց 'ի յերկրի. քաղքնեցէք և փախերուք 'ի նմանէ։ Զի կողոպտեցաւ 'ի քուն Ադամ կողիւն՝ որ առաւ 'ի նմանէ. յարթնութեան մի էր. իբրև ննջեաց, բաժանեցաւ և եղև յերկուս։ Նոյ ծանր այպանեցաւ քնովն՝ որ ծնաւ 'ի նմանէ. յարթնութեան զգաստ էր և պարկեշտ, և 'ի քունն մերկացաւ և առակեցաւ։ Ղովտ դարձեալ 'ի ձեռն քնոյ իւրոյ կողոպտեցաւ և ոչ զգաց։ Մեծացան արթունքն 'ի գանձէ նորա, և եղեն յազգս բազումս։ Զի եթէ ընդ արդարս զայն գործեաց քուն, և ոչ զգաց 'ի գողանալ զնոսա, քանի՞ ևս երկիւղ մեք մեղաւորքս 'ի քնոյ, զի մի՛ տիրիցէ մեզ։ Ի քուն մեռան անդրանիկքն Եգիպտոսի, և ոչ զգաց թշուառականն այն. բայց իբրև զարթեաւ և յարեաւ, ապա զգաց հարուածին իւրում։ Սիսարա որ սկայութբ իւրով ջարդեաց զազգն եբրայեցւոց, որչափ մեծացաւ յարթնութեան իւրոյ, նոյնչափ տկարացաւ 'ի ձեռն քնոյ. զի Յայէլ հարաւ 'ի վերայ նորա և վարեաց ցից ընդ ծամելիս. քուն նախատինս արար զնա, զի 'ի ձեռն կնոջ սպան զնա։ Սամփսոն ուխտաւորն՝ որ յորովայնէ զգեցեալ էր զհսկայութի, 'ի ձեռն կնոջ որ այրեաց զՓղիշտ, կուրացուցին փղշտացիք զաչս նր։ Նա սպան զառեւծն, և աղուեսօքն այրեաց զՓղիշտ. քունն նենգեաց և եգերծ զնա, և 'ի տուէ ընդ երկանս կապեաց զնա։

Գիշերի Մադիամ աւարեցաւ. արթունքն որ էին ընդ Գեդէոնի, 'ի ձայն փողոյն ընդոստեաւ և զարթեաւ. յարեաւ և ընդ սուր եհան զանձն իւր։ Ոչ շաղախեցան ձեռք արթնոցն յարիւն ծանրարթուն քնեածիցն։ Ջահիւք և բարբառովք արթնոցն պղծեցաւ յարիւն անձին իւրոյ։ Գեդէոն հսկումն էր յա-

*Ի Ճառընտրէն Գ։

ղօթս, և զՄադիամ երազքն սահէին. մարգարէացան նմա յաղթութիւք, և պատահեաց նոցա պարտութիւք: Կողոպտեցաւ 'ի քուն Սաւուղ, զի կորոյս զտուտն լօդկի իւրոյ. զի 'ի ձեռն տանոյն զոր եհատ, առ զթագաւորութիւն առ 'ի նմանէ, և ոչ քաւքնեաց նա յայսմանէ. և յաւել միւսանգամ ննջեաց, մերկ մնաց 'ի զինուէ իւրմէ. զի առաւ 'ի նմանէ գեղարդն տէգն իւր. և զկեանսն որ յետ քնոյ՝ շնորհաւեա նմա Դաւիթ. զի յայն քնոյ որ յայրի անդ՝ քուն յաւիտենից ննջեաց նա: Եւ զի հայհոյեաց Ռափսակ և ննջեաց, կոտորեաց հրեշտակն զզօրս նորա. և սերմըն զոր սերմանեաց 'ի տուէ, հնձեաց 'ի գիշերի. զի Ռափսակ ննջէր 'ի գահոյս իւր, և Եզեկիէլ արթուն էր յաղօթս: Էջ զուարթունն յաղօթս արթնոյն, և սատակեաց զբանակս ննջեցելոցն: Սիոն լի էր աղօթիւք, և բանակն Ասորեստանի մեռելովքն: Հսկողքըն որ 'ի քնէածիցն հայհոյէին, ննջեցուցին քուն յաւիտենից: Գիշերաւ աւերեցաւ Բաբէլ 'ի Մարաց, որ հսկայութիւքն էին. քանզի 'ի մատնել եա զհոյակապըն ընդ ամենայն երկիր: Զի այն որ ննջեն՝ հանդերձ արթնովն՝ մի են. և չեն մի նոքա. հանգիստ քնոյ ոչ մնայ. և պահեալ է հատուցումն աղօթից: Այս վաստակ՝ որ յանդամս մեր յաճախէ, մեզ շահ 'ի բարձունս անցանէ վաստակ այս մեր, և կայ մնայ վարձուն յաւիտեան:

## Ի ՆՈՅՆ ԳՐՈՑ ՎԱՍՆ ՀՍԿՈՂԱՑ *

ՅՈՒԺԵՑԱՑՔ փոքր մի, առաքինիք, բառնալ ընդ-ծանրութն խաւարի. զի ահա փոքր մի և կատարեաց զժամն իւր. և գայ առաւօտ ուրախ առնէ զմեզ: Գիշերի հսկեցին աշակերտքն. և զի նիրհեցին 'ի տրտմութէ, եպերելով եպերեաց վարդապետն զնոսա: Հաստատարիչ բնութեցս ոչ բռնադատէր զտկարս՝ եթէ ով է մարդկութիս որ յաղթէ քնոյն, և ոչ պատուիրանադրէր դարձեալ թէ ոչ զի յաղթեալ լինէր: Եղերուք, ասէ, հսկեցողք՝ պահել զժամ փեսային որ գալոցն է: Զորս պահս եա մեզ պահել զամենայն գիշերս կենաց մերոց. զի յորում 'ի նոցանէն եկեսցէ փեսայն, գտցէ արթուն զեկեղեցի իւր: Թէպէտ ծածկեաց զժամն և զօրն իւր, և ոչ յայտնեաց զժամ ծագմանն իւր, այլ զի 'ի գիշերի առնի յայտնութին իւր, ահա գուշակեաց ընդ չորս կողմանս: Պահեսցուք այսուհետև զժամ փեսային, որպէս ուսաք մեք պատուիրան. Զի թէ յաւուրս մեր ոչ եկեսցէ, ոչ զլանայ զմեզ ստուգութի նորա: Որպէս գտջիք, վարեսջիք ասաց վարդապետն ցաշակերտսն իւր: Հալածեսցուք զքուն յաչաց մերոց՝ պատրաստ լինել գալըստեան նորա: Յանկարծուստ փայլատակէ փայլակն, ճայթէ ճայթիւն և ընդոստուցանէ. յանկարծուստ խաղաղայ անդրանիկն, և շարժէ զզօրութիս երկնից: Սաստկութիս ամենայն փայլատականց և արհաւիրք ամենայն որոտմանց իբրև զհագագ և զոչ ինչ են յաչըս յայտնութեն Քնի: Խաւարի արեգակն յերեսաց նր, և լուսինն խափանի. և ընջի խաւար և պակասի 'ի ձեռն ծագման մեծի նշանին. և սփռի քուն և նիրհ յաչաց. և խափանի ցանկութի անդամոց, և միաբանութի տարածի, որոյ ոչ առնի պակասումն: Ամենայն որ պահէ զժամ փեսային, ուրախ առնէ զնա 'ի յայտնութէ իւրում. զի իրաւունք են հանգուցանել զանդամսն՝ որ բարձին զծանրութն 'ի կեանս իւրեանց:

* Ի Ճառընտրէն Գ.:

Սկեսցուք ըստ կարի մերում . ապա թէ ո՛չ քան ըզ-
կար մեր : Ժիրք որ վաստակին 'ի միջի մերում , նոքօք
կշտամբի վատութին մեր , զի ոչ սկեցաք յերեկօրեայ :
Մի՛ լքցուք բնաւին ծանրարթունք . զի է որ սկէ զգի-
շերս ողջոյն , մեք սկեսցուք գոնէ զկէսն : Զի՞նչ օ-
գուտ է զի ննջեցաքն երէկ , յաւելցուք ննջեսցուք
այսօր : Յաճախեն սկեցողքն յաղօթս , և քնեածքն
համարին երազովք : Գտի շունչ հսկեցողաց , և պար-
կեշտ լինի միտք նց . և 'ի շունչ քնեածաց ժողովեալ
է խաբէութի մոլորութե տեսլեանց : Փառաւորի
շունչ հսկեցողաց զբաղմամբ իւրով՝ որ ընդ նմյ . և
շունչ քնեածաց լինի խաղ չարի . յերազս իւրեանց
աղտեղին 'ի ձեւսն տեսլեանց իւրեանց , և տիրեն կա-
րիք 'ի վերայ նոցա . և քուն՝ որ կարծեցին թէ հան-
գիստ է , և եղև ամենևին աշխատութի . և թափա-
ռին ընդ բազում տեղիս , և ցնծան և վշտանան յան-
օգուտս . ընդ ամենայն կողմանս սլացան և դարձան :
Իբրև ոչ փոխեցան 'ի մարմնոց իւրեանց , զի ոչ եղեն
հսկման նմյ , տիրեաց սատանայ 'ի տեսիլս նոցա . զի
ոչ ժողովեցան 'ի դաւան ածն իւրեանց : Հսկեցողաց
յաճախեցին շահք իւրեանց , և քնեածից յաճախե-
ցին երազք իւրեանց : Պահեալ է վաստակ հսկե-
ցողաց , և դառնայ յոչ ինչ ժողով երազոց : Եղիցի ինձ
յիշատակ 'ի միջի ձերում , հսկեցողք , որ բարձէք
զծանրութի . ահա զբաղումս յօրդորեմ , զի եղիցին
արթունք 'ի Քս Յս 'ի տր մեր . որում փառք յա-
ւիտեանս . ամէն :

## ՑԱՂԱԳՍ ԽՈՆԱՐՀՈՒԹԵԱՆ *

Արդ որպէս ասէ Առաքեալն, ամ̃ խոնարհութեամբ զմիմեանս լաւ համարել քան զանձինս։ Արդ ամ̃ասեռ՝ յայտ է թէ բազում մասունք են խոնարհութեան. են ոմանք որ սակաւ ինչ մասն ունին խոնարհութեան, և են ոյք բազում, և այլք զամենեսեան։ Արդ է նախ առաջին խոնարհութիւն, որ քան զամ̃ ոք զինքն անարժան համարեսցի. որպէս մաքսաւորն 'ի տեառնէ գովեցաւ։ Խոնարհութիւն է և հնազանդութիւն, որ զինքն 'ի ծառայի կարգի ունի, և սպասաւորէ ընկերին. որպէս ասէ Առաքեալն. “Հնազանդ լերուք միմեանց երկիւղիւն Քր̃ի”։

Խոնարհութիւն է և սուգ և արտասուք, որ ոչ համարի զինքն 'ի վարձկանի կարգի, թէպէտ և առնէ առաքինութիւնս. որպէս և տէրն ասէ՝ թէ “Յորժամ զամ̃ ինչ առնեսջիք, ասասջիք եթէ ծառայք անպիտանք եմք, զոր պարտ էաք առնել՝ արարաք”։

Խոնարհութիւն է, որ համբերէ եղբօրն 'ի ժամ բարկութեան, և զինքն համարի յանցաւոր. քանզի զայրանալ և ընդդէմ դառնալ հպարտութիւն է. որպէս և ասէ Սողոմոն. “Այր ամբարտաւան ոչ կարէ համբերել պատժոյ”։

Խոնարհութիւն է և լռութիւն. որ ոչ համարի զինքն յառաջ կալոյ արժանի և խօսել առաջի բազմաց. որպէս և տէրն ասէ. “Որ յանձնէ խօսի, զփառս անձին իւրում խնդրէ”.

Խոնարհութիւն է, յորժամ զընկերն մեծարեն, և զքեզ անտես առնեն, դու չտրտմիս և ոչ տրտնջես, այլ ասես խոնարհութեամբ՝ թէ ես այսմ չեմ բաւական զոր ունիմս. որպէս և ասէ Սողոմոն. “Մի՛ ձգտիր ընդ մեծամեծս, այլ 'ի չափոյ կալ զանձն քո, և առաջի տեառն շնորհս գտցես”։

* Ի չորից նոր և անթուական օրինակաց. յորոց 'ի միումն Անանիայի շիրակացւոյ ընծայի։

Խոնարհութիւն է, որ ոչ ունի զընկերսն 'ի ծառայական կարգի, այլ ինքն նմա սպասաւորէ. որպէս և ասէ տէրն. “Որդի մարդոյ ոչ եկն պաշտօն առնուլ, այլ պաշտել„:

Խոնարհութիւն է, յորժամ տեսանես զյանցանսն ուրուք և մի՛ քամբասես, այլ զայս ասես՝ թէ ես յանցաւոր եմ, զայլ ոք ոչ կարեմ դատապարտել. որպէս և տէրն ասէ. “Մի՛ դատիք և ոչ դատիցիք„:

Խոնարհութիւն է սիրել զընկերսն, քանզի սիրոյ պատուիրանն են այսոքիկ՝ խոնարհելն ընկերին, հիւանդութեան ցաւակից լինել, 'ի տրտմութեան մխիթարել, զանձն 'ի ծառայութիւն տալ. Իսկ հպարտն զայս ոչ առնէ, և ոչ համարի զեղբայրն արժանի խոնարհել 'ի նա և սպասաւորել նմա. այլ անարգ համարի, և զինքն գեր 'ի վերոյ քան զնա: Վասն այնորիկ գրեալ է՝ եթէ սէր իբրև զաղ համեմիչ է ամենայն առաքինութեանց. և 'ի բաց ընկեցեալ է ամենայն առաքինութիւն որ առանց սիրոյ:

Խոնարհութիւն է, որ զառաքինութիւն մինչև առնես, ոչ ածես զմտաւ և հպարտանաս որպէս փարիսեցին. այլ զոր մեղանչես՝ զայն ածես զմտաւ, և զքեզ յանցաւոր համարիս և խոնարհեցուցանես զանձնդ. որպէս Առաքեալն յանցաւոր համարէր զինքն և ասէր. “Հայհոյիչ էի և թշնամանիչ„. և դարձեալ՝ եթէ “Ջա՛ 'ի յետոյսն զառաքինութիւնսն մոռացեալ եմ, և յառաջադէմսն նկրտեալ„:

Խոնարհութիւն է, յորժամ փառաւորեն զքեզ մարդիկ և պարգևս տան, դու ոչ համարիս քո անձինդ արժանեաց. այլ զԱստուած փառաւորես և գոհանաս զարարչէն՝ թէ այս 'ի քո յողորմութենէդ եղև, և ոչ ըստ իմում արժանեացս. որպէս ասէ Սողոմոն. “Որչափ 'ի մեծութիւն անկանիս, 'ի խոնարհութեան կալ զանձն քո, և առաջի տեառն գտցես շնորհս„:

Խոնարհութիւն է, յորժամ վշտի հանդիպիս կամ նեղութիւն հասանէ 'ի վերայ քո, և անարգէ ոք զքեզ և դու ոչ տրտմիս, այլ գոհանաս զԱստուծոյ՝ թէ ես ոչ այսչափ միայն, այլ բազում պատժոց արժանի եմ ըստ իմում մեղացս. և օրհնեալ է Աստուած՝ որ արժանի արար զիս նեղութեան յանցաւոր կեանքս և 'ի մահկանացու մարմինս. որպէս ասէ Առաքեալն. “Հաճեալ եմ ընդ

նեղութիւնս և ընդ վիշտս և ընդ չարչարանս . յորժամ տկարանամ, յայնժամ զօրանամ„ :

Խոնարհութիւն է և գծուծ հանդերձ, որ ոչ համարի զինքն արժանի պատուական զգեստի . քանզի փառս մարդիկ 'ի հանդերձից որսան . որպէս և գրեալ է, մի՛ զգեստիւք խնճռչեսցուք կակղովք և շուրջ պճնեսցուք, որոց գեղեցկութիւն է ապաշնորհ :

Խոնարհութիւն է, յորժամ յերեկն հասանիս, գոհանաս զայս՝ թէ բազումք 'ի մարդկանէ 'ի սրբոց իսկ՝ հալածեալք և կարօտ և անհանգիստ են . իսկ ես՝ որ զհող ոչ արժանի կոխելոյ՝ հաց ուտեմ և կերակուր և սէր յեղբարց, և զօրս խաղաղութեամբ անցուցեր, այդ քո ողորմութիւն է, և ոչ ըստ իմում արժանեացս . որպէս և մարգարէն ասէ . “Ո՞վ եմ ես, տէր իմ տէր, որ այսչափ սիրեցեր զիս„ :

Խոնարհութիւն է, յորժամ կամիս առաքինութիւն առնել, ոչ համարիս զքեզ բաւական սկսանել և կատարել . այլ նախ յԱյ խնդրեա օգնականութիւն՝ թէ օգնեա տկարութեանս իմոյ, զի կարացից առնել զհաճոյս քո . որպէս և տէրն ասէ . “Որ հաստատեալ է յիս և ես 'ի նա, նա բերէ պտուղ յոյժ . առանց իմ ոչ ինչ կարէք առնել„ :

Խոնարհութիւն է, յորժամ զայրանայ սիրտդ, և դու արգելուս զցասումն, և ոչ համարիս զքեզ ընդդէմ դառնալ եղբօրն . որպէս ասէ Սողոմոն . “Ցողոք բանի եւեթ կայ խոնարհամիտն . իսկ հպարտն և յանդուգն տայ պատասխանի„ :

Խոնարհութիւն է, որ ոչ միայն զայնոսիկ սիրես՝ որ երևելիք և փառաւորք են 'ի մարդկանէ, այլ յաղքատն խոնարհիս, և զանարգն մեծարես, և զպանդուխտն մխիթարես . որպէս և տէրն առնէր . Պիղատոս խօսէր, և նա չտայր ինչ պատասխանի . իսկ ընդ աւազակին բազում քաղցրութեամբ խօսէր և պարգևս տայր . և յորժամ կոյրքն աղաղակէին, զտեղի առնոյր և հրամայէր կոչել, և մերձեցեալ յաչս նոցա բանայր :

Խոնարհութիւն է, որ ոչ վարիս համապատ քո[1] կամօք, և զոր դու իմանաս՝ զայն միայն գիտես զորդ .

1 Մի օրինակ ունի կամօք . . . խորափ ասելու :

այլ խոնարհիս և հարցանես և խրատ առնուս յառաջնորդաց և 'ի գիտնականաց . որպէս Մովսէս՝ որ խրատուն Յոթորայ ոչ անլուր եղև, և ոչ ասաց՝ եթէ ես մարգարէ եմ, և չեմ քո բանիցդ կարօտ:

Խոնարհութիւն է, որ յա՟մ գործոց իւրաց զարհուրիս և պատրաստիս, և ոչ հպարտանաս և ասես՝ եթէ ինձ ո՞վ կարէ յաղթել. վասն այսորիկ ասէ Սողոմոն. “Փշրեն զսիրտս իմաստնոց սպառնալիք. իսկ հպարտն յանձն ապաստան՝ յորոգայթ անկանի „:

Խոնարհութիւն է, յորժամ կատարես առաքինութիւն, եթէ աղօթք, եթէ պահս, եթէ ողորմութիւն, եթէ այլ ինչ, ոչ խորհիս և ասես՝ թէ զայս յիմ զօրութենէ կատարեցի, այլ ա՟յ յօգնականութենէն. ո՟պ ասէ Առաքեալն. “Ոչ ես, այլ շնորհքն ա՟յ որ ընդ իս „:

Խոնարհութիւն է, որ ոչ դու քեզէն մատչիս յառաջ և առնես ստիպման առաւել քան զոր ունիսդ, այլ կոչեալ յառաջնորդաց կայցիս. վասն այսորիկ ասէ Առաքեալն. “Ոչ որ զանձն ընծայեցուցանէ „. և դարձեալ գրէ. “Անձամբ առեալ պատիւ, և ոչ յա՟յ „. և մարգարէն ասէ. “Ես ոչ առաքեցի, և նոքա ընթանային „: Արդ հի՟մն առաքինութե՟ խոնարհութի՟ է:

Իսկ յորժամ զա՟մ տեսակ առաքինութեն 'ի գլուխ հանիցէ, յայնժամ կատարեալ լինի մարդն. և ա՟մ ս՟րբքն խոնարհութե՟ հաճոյ եղեն ա՟յ. որպէս Աբրահամ խոնարհէր և ասէր. “Հող եմ և մոխիր „. և վասն այսորիկ գլուխ նահապետացն եղև: Եւ Դաւիթ ասէր. “Ես որդն եմ և ոչ եմ մարդ, նախատինք մարդկան և արհամարհանք ժողովրդեան „. վասն այսորիկ ընտրեցաւ յա՟յ: Այսպէս ասէ և Եսայի. “Վայ ինձ, զի մարդ եմ և պիղծ շրթունս ունիմ „. և վասն այսորիկ ա՟ծաբան կոչեցաւ 'ի մարգարէսն: Այսպէս և Պետրոս ասէր. “Ի բաց գնա յինէն, տէր, զի այր մեղաւոր եմ ես „. և վասն այսորիկ վէմ կոչեցաւ և զփականս երկնից ընկալաւ: Այսպէս և Յովհաննէս ասէր. “Չեմ արժանի լուծանել զխրացս կօշկաց նորա „. վասն այսորիկ մեծ կոչեցաւ 'ի մարգարէսն, և արժանի եղև զՔ՟ս մկրտել: Այսպէս և Պաւղոս ասէր. “Ես եմ տրուպն առաքելոց „. և վասն այսորիկ յերկինս թռեաւ, և դրախտին եղև տեսող:

Արդ խոնարհութիւն է գլուխ առաքինութեան. վասն այսորիկ մարգարէն ասէ. “Պատարագ այ հոգի խոնարհ „. և “Մերձ է տէր առ այնոսիկ՝ որ մաշեալ են սրտիւք, և զխոնարհս հոգւով կեցուցանէ „: Եւ Սողոմոն. “Ած ամբարտաւանից հակառակ կայ, տայ շնորհս խոնարհաց „: Եւ Եսայի ասէ բանիւ տեառն. “Ես յո՞ հանգեայց. 'ի հեզս և 'ի խոնարհս, և յայն որ դողան 'ի բանից իմոց „: Եւ նոյն ինքն տէրն ասէ. “Որ բարձրացուցանէ զանձն՝ խոնարհեսցի, և որ խոնարհեցուցանէ զանձն՝ բարձրասցի „: Եւ Առաքեալն ասէ. “Մի ամբարտաւանիք, այլ ընդ խոնարհս զիջանիցիք „: Եւ 'ի վարդապետացն այնչափ կայ վկայութիւն վասն խոնարհութեան. զի չիք այնպիսի սիրելի այ, որպէս սիրտ 'նք և հոգի խոնարհ:

## ՎԱՍՆ ԽՈՐՀՐԴՈՑ ՄԱՔՐՈՒԹԵԱՆ*

ԱՐԴ նախ և առաջին քան զամ̃ առաքինութի̃ խորհրդոց մաքրութե̃ ջանա․ վասն այսորիկ ասէ մարգարէն․ “Ած̃ փառաւորեալ է ՚ի խորհուրդս սրբոց իւրոց„։ Զոր օրինակ ծառայն սպասէ հրամանի տն̃ իւրոյ, այսպէս ա̃մ զգայարանքն ՚ի ձեռն խորհրդոցն կառավարին․ քանզի զբարին յառաջ խորհին և ապա առնեն․ որպէս և մարգարէն ասէ․ “Յղացաք և ծնաք զհոգի փրկութե̃ մերոյ„։ Նոյնպէս և զմեղսն յառաջ խորհի և ապա առնէ․ որպէս ասէ դարձեալ մարգարէն․ “Յղացաւ զցաւս և ծնաւ զանօրէնութի̃„։ Այսպէս յառաջ սիրէ խորհրդովքն, և ապա տայ պարգևս․ և յառաջ ատէ խորհրդովքն, և ապա սպանանէ․ որպէս ատեցին եղբարքն Յովսէփայ; և ապա վաճառեցին։ Եւ յայտ է՝ թէ ա̃մ զգայարանք ՚ի ձեռն խորհրդոց ներգործին։ Վասն այսորիկ դու յա̃մ զօրութե̃ ջանա դիր, և զխորհուրդ մաքրեա, և զաներևոյթ չնչական ախտն մաքրեա ՚ի քէն։ Եւ առաւել զգուշացիր ՚ի պոռնկական խորհրդոցն․ վասն որոյ ասաց տէրն՝ թէ շնացաւ ՚ի սրտի իւրում։ Եւ պատրաստեա ՚ի տեսանելոյ, ՚ի լսելոյ․ քանզի տեսանելն և լսելն դուռն է խորհրդոց․ վասն այսորիկ ասէ Առաքեալն․ “Այլ պոռնկութի̃ և ա̃մ պղծութի̃ մի̃ անուանեսցի ՚ի միջի ձերում, որպէս ոչ վայել է սրբոց„։ Զոր օրինակ քաղցեալ լինի մարդ, և քաղցն ՚ի մտաց անկանի․ իսկ յորժամ տեսանէ սեղան ամենալից, յայնժամ բորբոքի քաղցն, և ստիպէ ուտել։ Դարձեալ ծարաւի լինի, և ծարաւն ՚ի մտաց անկանի․ իսկ յորժամ տեսանէ աղբեր անոյշ, ծարաւն ստիպէ ըմպել։ Այսպէս և ցանկութի̃ առ մարդն լինի, և լռեալ դադարէ․ իսկ յորժամ լսէ բանս պոռնկականս, կամ տեսանէ դէմս գեղեցիկս, յայնժամ բորբոքի ցանկութի̃ն, և ստիպէ մեղանչել։ Վասն

* Ի միոյ նոր և յընտիր օրինակէ․ անտի և յաշխարհ կցկցին հատուածքն։

այսորինկ դու ստիպէ զտեսանելիսդ և զլսելիսդ, որ ոչ յառնէ 'ի վերայ քո պատերազմ խորհրդոյ։ Արդ զոր օրինակ արծուք թռուցեալ 'ի բարձունս և տեսանիցէ կերակուր յորոգայթի, և իջանիցէ հանդերձ ամ՟ զօրութ՟ իւրով, 'ի բաց ձգեալ զկերակուրն, և անկանիցի ծայր մագլին յորոգայթն, և յաղագս նուազ մասինն այնորիկ խոնարհի ամ՟ զօրութ՟ նորա, այսպէս և մարդն դէպ լինի յաղագս փոքր տեսուէ և ըմբռնի։ Ոչ եմք զգուշագոյն քան զԴաւիթ, որ միանգամ տեսութ՟ն զԲերսաբէէ ըմբռնեցաւ ցանկութ՟ն և կատարեցաւ մեղքն, թէպէտ և յետոյ ապաշխարեաց։ Ապա որչափ ևս առաւել մեզ պարտ է զգուշանալ 'ի տեսանելոյ և 'ի լսելոյ. քանզի տեսանելն և լսելն գործոյն ճանապարհ է։

Նաև դարձեալ թէ կամիս որ յաղթես պոռնկական խորհրդոցն, 'ի փափկութ՟է և յաւելորդ կերակրոց հրաժարեսցես. վասն այսորիկ ասէ Երեմիա մարգարէն. "Յագեցուցի զքեզ, Իսրայէլ, և դու յամ՟ քաղաքս պոռնկանոցս կազմեցեր"։ Լինի դարձեալ պատճառ խորհրդոց աղտեղեաց, յորժամ չարախօսես զեղբօրէն, կամ բամբասես և ատես, և լինիս հպարտ և բարձրամիտ և անողորմ և անպութ. ցասկոտ և բարկացող, յայնժամ թոյլ տայ ա՟ծ խորհրդոցն 'ի վերայ քո յառնել. և խաւարեցուցանէ զմիտս քո։ Իսկ եթէ լինիս հեզ և խոնարհ, մարդասէր և ողորմած, խաղաղարար և համբերող, յայնժամ թէպէտ և արկանէ սատանայ խորհուրդս աղտեղիս, և դու աղօթես և խնդրես յա՟յ օգնականութ՟ի, յայնժամ ա՟ծ գործակից լինի, և հալածէ զխորհուրդսն խաւարարս, և միտքդ լուսաւորին։

Դարձեալ լինի պատճառ խորհրդոց աղտեղեաց, յորժամ զբաղեալ լինիս 'ի հոգս աշխարհիս, յայնժամ խառն ընդ այլ խորհրդոցն պոռնկական խորհուրդն մտանէ։ Իսկ եթէ զուսք և անփոփոխ ունիս զխորհուրդս քո յերկրաւոր հոգոցս և հոգևորացն միայն պարապես, յայնժամ խորհուրդք քո ոչ կարեն յաղթահարել զքեզ, այլ հալածին, և միտքդ լուսաւորին։

Դարձեալ լինի պատճառ խորհրդոց աղտեղեաց,

# ՎԱՍՆ ԽՈՐՀՐԴՈՑ ՄԱՔՐՈՒԹԵԱՆ*

Արդ նախ և առաջին քան զա̃մ առաքինութի̃ խորհրդոց մաքրութե̃ ջանա. վասն այսորիկ ասէ մարգարէն. "Ա̃ծ փառաւորեալ է 'ի խորհուրդս սրբոց իւրոց": Զոր օրինակ ծառայն սպասէ հրամանի տ̃ն իւրոյ, այսպէս ա̃մ զգայարանքն 'ի ձեռն խորհրդոցն կառավարին. քանզի զբարին յառաջ խորհին և ապա առնեն. որպէս և մարգարէն ասէ. "Յղացաք և ծնաք զհոգի փրկութե̃ մերոյ": Նոյնպէս և զմեղսն յառաջ խորհի և ապա առնէ. որպէս ասէ դարձեալ մարգարէն. "Յղացաւ զցաւս և ծնաւ զանօրէնութի̃": Այսպէս յառաջ սիրտ խորհրդովքն, և ապա տայ պարգևս. և յառաջ ատէ խորհրդովքն, և ապա սպանանէ. որպէս ատեցին եղբարքն Յովսէփայ; և ապա վաճառեցին: Եւ յայտ է՝ թէ ա̃մ զգայարանք 'ի ձեռն խորհրդոց ներգործին: Վասն այսորիկ դու յա̃մ զօրութե̃ ջանս դիր, և զխորհուրդս մաքրեա, և զաներևոյթ չնչական ախտն մաքրեա 'ի քէն: Եւ առաւել զգուշացիր 'ի պոռնկական խորհրդոցն. վասն որոյ ասաց տէրն՝ թէ շնացաւ 'ի սրտի իւրում: Եւ պատրաստեա 'ի տեսանելոյ, 'ի լսելոյ. քանզի տեսանելն և լսելն դուռն է խորհրդոց. վասն այսորիկ ասէ Առաքեալն. "Այլ պոռնկութի̃ և ա̃մ պղծութի̃ մի՛ անուանեսցի 'ի միջի ձերում, որպէս ոչ վայել է սրբոց": Զոր օրինակ քաղցեալ լինի մարդ, և քաղցն 'ի մոռաց անկանի. իսկ յորժամ տեսանէ սեղան ամենալից, յայնժամ բորբոքի քաղցն, և սաստիկ ուտել: Դարձեալ ծարաւի լինի, և ծարաւն 'ի մոռաց անկանի. իսկ յորժամ տեսանէ աղբեր անոյշ, ծարաւն սաստիկ ըմպել: Այսպէս և ցանկութի̃ առ մարդն լինի, և լռեալ դադարէ. իսկ յորժամ լսէ բանս պոռնկականս, կամ տեսանէ դէմս գեղեցիկս, յայնժամ բորբոքի ցանկութիւն, և սաստիկ մեղանչել: Վասն

* Ի միոյ Նոր և յընտիր օրինակէ. անտի և յաջորդ կրկին հատուածքն:

այսորիկ դու ստիպէ զտեսանելիսդ եւ զլսելիսդ, որ ոչ յառնէ 'ի վերայ քո պատերազմ խորհրդոյ։ Արդ զոր օրինակ արծուի թռուցեալ 'ի բարձունս եւ տեսանիցէ կերակուր յորոգայթի, եւ իջանիցէ հանդերձ ա՟մ զօրութ՟բ իւրով, 'ի բաց ձգեալ զկերակուրն, եւ անկանիցի ծայր մագլին յորոգայթն, եւ յաղագս նուաղ մասինն այնորիկ խոնարհի ա՟մ զօրութ՟ն նորա, այսպէս եւ մարդն դէպ լինի յաղագս փոքր տեսութէ եւ ըմբռնի։ Ոչ եմք զգուշագոյն քան զԴաւիթ, որ միանգամ տեսութ՟ն զԲերսաբէէ ըմբռնեցաւ ցանկութ՟ն եւ կատարեցաւ մեղքն, թէպէտ եւ յետոյ ապաշխարեաց։ Ապա որչափ եւս առաւել մեզ պարտ է զգուշանալ 'ի տեսանելոյ եւ 'ի լսելոյ. քանզի տեսանելն եւ լսելն գործոյն ճանապարհ է։

Իսկ դարձեալ թէ կամիս որ յաղթես պոռնկական խորհրդոյն, 'ի փափկութ՟է եւ յաւելորդ կերակրոց հրաժարեա. վասն այսորիկ ասէ Երեմիա մարգարէն. "Յագեցուցի զքեզ, Իսրայէլ, եւ դու յա՟մ քաղաքս պոռնկանոցս կազմեցեր"։ Լինի դարձեալ պատճառ խորհրդոց աղտեղեաց, յորժամ չարախօսես զեղբօրէն, կամ բամբասես եւ ատես, եւ լինիս հպարտ եւ բարձրամիտ եւ անողորմ եւ անգութ; ցասկոտ եւ բարկացող, յայնժամ թոյլ տայ ա՟ծ խորհրդոցն 'ի վերայ քո յառնել. եւ խաւարեցուցանէ զմիտս քո։ Իսկ եթէ լինիս հեզ եւ խոնարհ, մարդասէր եւ ողորմած, խաղաղարար եւ համբերող, յայնժամ թէպէտ եւ արկանէ սատանայ խորհուրդս աղտեղիս, եւ դու աղօթես եւ խնդրես յա՟յ օգնականութ՟ի, յայնժամ ա՟ծ գործակից լինի, եւ հալածէ զխորհուրդսն խաւարարս, եւ միտքդ լուսաւորին։

Դարձեալ լինի պատճառ խորհրդոց աղտեղեաց, յորժամ զբաղեալ լինիս 'ի հոգս աշխարհիս, յայնժամ խառն ընդ այլ խորհրդոցն պոռնկական խորհուրդն մտանէ։ Իսկ եթէ զուսք եւ անփոփոխ ունիս զխորհուրդս քո յերկրաւոր հոգոցս եւ հոգեւորացն միայն պարապես, յայնժամ խորհուրդք քո ոչ կարեն յաղթահարել զքեզ, այլ հալածին, եւ միտքդ լուսաւորին։

Դարձեալ լինի պատճառ խորհրդոց աղտեղեաց,

յորժամ ծուլանաս 'ի պահոց և յաղօթից և յաշխատութէ, և քնոյ տաս զքեզ և հանգստասէր լինիս ։ Իսկ սատանայ թշնամի է . և յորժամ տեսանէ զքեզ 'ի ծուլութե, յայնժամ զօրօքն խորհրդոցն 'ի վերայ քո յարուցանէ և խաւարեցուցանէ զմիտսդ ։ Իսկ եթէ լինիս արթուն և զուարթուն, պարկեշտ և մտախոհ աղօթական, յայնժամ խորհուրդքն հալածին 'ի քէն ։ Եւ լինի պատճառ խորհրդոցն՝ որ թոյլ տայ ա̄ծ և փորձէ զքեզ, զի թէ հանապազ դիւրաւ լինէր սրբութի̄ և մաքրութի̄, յայնժամ քո քաջութի̄դ և պիտանութի̄դ ո՞ւր երևէր . զայն կամի ա̄ծ որ դու մարտնչիս և յաղթես . որպէս և ասէ Առաքեալ . "Զբարիոք պատերազմ պատերազմեցայ, զընթացսն կատարեցի, զհաւատսն պահեցի"։ Եւ յորժամ գան խորհուրդքն, դու զարհուրեա, և արտասուօք զա̄ծ աղաչեա, և յայնժամ ա̄ծ 'ի քո փոյթն տեսանէ, և օգնէ քեզ . յայնժամ խորհուրդքն հալածին և միտքդ լուսաւորին . վասն այսորիկ ասէ Առաքեալ . "Զխորհուրդս քակեմք, և զա̄մ բարձրութի̄ հպարտացեալ 'ի վերայ գիտութեցն ա̄յ, և գերեմք զա̄մ միտս 'ի հնազանդութի̄ Ք̄սի"։ Որպէս գող՝ որ զխաւարն իւր զէն ունի 'ի գիշերի, և մտանէ 'ի տունն գողանայ, յայնժամ երբ լոյս բերեն, նա զարհուրէ հալածի 'ի լուսոյն, այսպէս սատանայ գող է, յորժամ տեսանէ զմիտքդ խաւարեալ, արկանէ խորհուրդս գարշելիս և աղտեղիս . յայնժամ դու զլոյսն 'ի միտսդ ծագեա զՔ̄ս, և յօգնութի̄ կոչեա, և գողն սատանայ հալածի 'ի լուսոյն . որպէս և ասաց . "Ես եմ լոյս աշխարհի"։ Եւ ոչ սակաւ մի ժամ մի տար տեղի պոռնկական խորհրդոցն յամել առ քեզ . ապա թէ ոչ՝ սովորիս և մեղկիս, և խորհուրդքն պատկերանան և տեղի առնեն և բոյն դնեն 'ի սիրտդ, և այնուհետև բազում նեղութի̄ հասուցանեն քեզ ։

Որպէս զոր օրինակ քաղաքին պարիսպք յառաջագոյն ածեն նախ քան զգալ թշնամեացն, այսպէս և դու զքո միտսդ յառաջ քան զգալ խորհրդոց ամրացո արտասուօք և պարկեշտութ̄բ . քանզի 'ի խորհուրդն մեղանչեն դիւրաւ, և մեղքն մեծամեծք են . որպէս ասաց տէր՝ թէ շնացաւ 'ի սրտի իւրում ։ Եւ դար-

ձեալ ատելութի̅ և ամբարտաւանութի̅ և ոխակալութի̅ և նախանձ և կեղծաւորութի̅ և մնափառութի̅ խորհրդովք գործին, և առաւել մեղք են։ Եւ դարձեալ զոր օրինակ մինչ դեռ թշնամին արտաքոյ իցէ ամրոցին, դիւրաւ մարթի զգուշանալ 'ի նմանէ. իսկ եթէ մարտուցեալ յաղթահարիցէ զտէր ամրոցին և առնու զամրոցն և մտանէ 'ի ներքս, այնուհետև դըժուարաւ ոք կարիցէ հանել զնա անտի։ Այսպէս և դու զպատերազմ խորհրդոց մինչ դեռ արտաքոյ է մտաց քոց, մարտիր և հալածեա 'ի քէն. իսկ եթէ մարտուցեալ յաղթահարէ զքեզ և մտանէ 'ի սիրտդ, այնուհետև բազում աշխատութե̅ պիտանայ՝ որ կարասցէ հալածել զնա 'ի քէն։ Դարձեալ որպէս մեռելոտի գարշ համարեա զխորհուրդս պոռնկականս, որ ոչ քաղցրանայ 'ի քիմս քո. որպէս և ասէ Առաքեալն. «Ի բաց եղերուք 'ի մեռելոտի գործոց անտի պաշտել զա̅ծ կենդանի»։

Նաև վասն խորհրդոց մաքրութե̅ ա̅մ գիրք վկայեն. որպէս և մարգարէն ասէ. «Զսիրտ ո̅ր ա̅ծ ոչ արհամարհէ»։ Եւ Երեմիաս ասէ. «Ընդէ՞ր բերէք ինձ խունկ 'ի Թարսսէ, և կինամոն յերկրէ հեռաստանէ. նախ լուա 'ի չարէ զսիրտ քո, և ապա ընկալայց զայդ 'ի ձեռաց քոց»։ Եւ Եսայի ասէ. «Լուացարուք սրբեցարուք, ընկեցէք զչարիս յանձանց ձերոց առաջի աչաց իմոց»։ Եւ նոյն ինքն տէրն ասէ. «Երանի որ ո̅րն են սրտիւք, զի նոքա զա̅ծ տեսցեն»։ Եւ Առաքեալն ասէ. «Մի՛ զայս խորհիք՝ որ յերկրի աստ է, այլ զվերինն խորհեցարուք՝ ուր Ք̅ս նստի ընդ աջմէ»։ Եւ 'ի վարդապետաց անչափ կայ վկայութիւն վասն խորհրդոց մաքրութեան։ Արդ դու զայս ա̅մ 'ի միտ առ և զգուշացիր. և Ք̅ս պահեսցէ զմիտս քո, և լուսաւորեալ 'ի լոյսն վերին, և յարքայութեան Հօր և Որդւոյ և Հոգւոյն սրբոյ։

### Վասն պահոց ։

Եւ ոչ ինչ է որ արգելու զքեզ յայսպիսի երկնային բարձրութենէն եւ 'ի խոնարհ ձգէ, բայց միայն հեղգութիւն պահոց եւ ծանրութիւն որովայնի. զի որք ծանրացեալ են որովայնիւ եւ ատեցողք են պահոց, այնպիսեացն անհնար է ելանել 'ի վեր ։ Զոր օրինակ անծեղք յորժամ յագեալ լիցին 'ի գիշոյ եւ ծանրացեալք որովայնիւ, յայնժամ երագութիւն թեւոցն նոցա տկարանայ՝ ոչ ունելով զթեթեւութիւն որովայնի, այնպիսիքն ոչ կարեն թռչել, դիւրաւ ըմբռնելին յորսողացն. այսպէս եւ մարդիկ յորժամ ծանրացեալ լինին որովայնիւ, եւ յերկիր քարշեալ եւ ընդ հեշտութեան կենցաղոյս բեւեռեալ, ոչ ունելով զթեթեւութիւն որովայնին եւ զթեւ առաքինութեան, այնպիսիքն ոչ կարեն վերանալ 'ի վեր, դիւրաւ որսալիք լինին սատանայի ։ Իսկ որք պահօք ամրացեալ են եւ հեշտութեան կերակրոց յաղթեալ, նա եւ զանձինս իւրեանց ճնշել պարկեշտութեամբ, եւ թեթեւ թեւօք թռուցեալ յերկրայնոցս յերկնայինսն. անդ ոչ հասանեն մեքենայք չարին ։

### Վասն աղօթից ։

Արդ գիտելով զայս ամենայն սատանայի, եթէ այս ամենայն մեծութեան պարգեւս 'ի ձեռն աղօթիցն շնորհի մարդկան յԱստուծոյ, յայնժամ կարեվէր խոցի յոգի իւր, եւ խորհի 'ի միտս իւր՝ թէ որով հնարաւ կարասցէ խափանել զաղօթսն աղօթականին ։ Եւ ապա երթեալ 'ի գիշերային ժամու առ այն՝ որ աղօթելն կամիցի, եւ նախ յանկողինս պատերազմի ընդ նմա, զի թերեւս կարասցէ խափանել զաղօթսն ։ Քանզի զանկողինս հեշտացուցանէ, զքուն թանձրացուցանէ, զմարմինն ծանրացուցանէ, եւ զերկարութիւն գիշերոյն փոքր ցուցանէ. երբեմն զտկարութիւն մարմնոյն առաջի կացուցանէ, եւ երբեմն զժամն անցուցանէ,

երբեմն հայեցուցանէ 'ի լուսարանն, և տեսանէ զմըթութիւն գիշերոյն. և այնչափ առաւել ծանրացուցանէ զմարմինն, որպէս թէ ոչ իցէ մասն մի յա̃մ մարմինն որ իցէ 'ի նմա կենդանութիւն. և կամ թէ յոյժ աշխատեալ իցէ 'ի տօթագին ժամանակի յաւուրս ամառայնոյ 'ի մէջօրէի 'ի տապ խորշակի ։ Եւ յորժամ կամիցի ընթանալ յեկեղեցին, յայնժամ յառնէ բեկբեկելով և մանչելով, յորանչելով և ձգտելով և թանչելով և փշտացեալ ա̃մ անդամօքն ընթանայ յեկեղեցին ։ Յայնժամ դարձեալ պատերազմի ընդ նա սատանայ. քանզի զծունկսն ցաւեցուցանէ, զմէջսն ընդարմացուցանէ, զսիրտն դողացուցանէ, զգլուխն դանդաչեցուցանէ, զմիտսն յիմարեցուցանէ, և զօրհնութիւնս ա̃յ ոչ տայ լսել. քանզի առաջի արկանէ նմա սատանայ զհոգս տան իւրոյ, և զհամարս ստացուածոցն, և զա̃մ մարմնական ցնորս, և ոչ կարէ յիշել զյանցանս իւր ։ Եւ Ք̃սի փառք յաւիտեանս յաւիտենից. ամէն ։

ՍՐԲՈՅՆ

# ԱԲԲԱՅ ԵՓՐԵՄԻ

ԽՈՐԻՆ ԱՍՈՐՒՈՅ

## ԱՂՕԹՔ*

### Ա

Ա. ՏԷՐ, տէ՛ր, զտառապանս իմ և զցաւս հոգւոյ իմոյ բազմամեղիս. դարձ, ներեա և 'ի քեզ առաջնորդեա. որ ասացեր՝ դարձարուք առ իս, և ես դառնամ առ ձեզ: Ինձ լքելոյս ողորմեա. ինձ եղկելոյս օգնեա. ինձ մոլորելոյս առաջնորդեա. ինձ խաւարելոյս ճառագայթեա, որ լի եմ մեղօք և անբաւ յանցանօք: Յորձանս անօրէնութեան տարաբերեալ ծփիմ, և առ քեզ ապաւինիմ. որպէս Պետրոսի ձեռնարկեա ինձ: Գոչեմ որպէս զմաքսաւորն արդարանալ. շնորհեա զյանցանս իմ որպէս զաւազակին. բաց ինձ զդուռն կենաց ճանապարհին, և մոյծ[1] զիս յարքունական բուրաստանին:

Բ. Ո՛վ խորք մեծութեան և իմաստութեան, փրկեա զըմբռնեալս՝ որ 'ի խորս մեղաց ծովու անկեալ կամ. զերծո և զօրացո զիս առնել զկամս քո. սգալ և լալ անդադար 'ի տուէ և 'ի գիշերի:

Գ. Աղբիւր կենդանութեան և անմահութեան, արբո զծարաւեալ զհոգիս իմ, որ պասքեալ տոչորիմ 'ի բազում անօրէնութեանց իմոց. խթեա 'ի քարացեալ

* Յինն օրինակաց. որոց չորք ամբողջ, այլք 'ի մասնէ:

1 Մի օրինակ Դէծ արքունական առագաստին:

սիրտ իմ, և հան ինձ արտասուս ապաշխարութեան։

Դ. Վանձդ. Տ՟մ բարութ՟եց, շնորհեա ինձ դանկի միոյ չափ 'ի քո բազմառատ բարեաց, որ չարաչարս եմ աղքատացեալ և քաղցեալ. զգեցո և կերակրեա զիս արտասուօք ապաշխարութ՟ե։

Ե. Լոյսդ Ճշմարիտ, որ լուսաւորես զա՟մ մարդ, լուսաւորեա զխաւարեալս մտօք. բաց զաչս սրտի իմոյ, և հաստատեա յերկիւղ և 'ի սէր պատուիրանաց քոց։

Զ. Մի դատապարտեր զիս, Տ՟ր, ընդ անբաւ զազիր խորհրդոց իմոց, և մի կացուցաներ զիս ընդ ուլսն որք զայրացուցին զքեզ. այլ ընդ փառաւորեալսն փառաւորեա, և ընդ պսակեալսն [1] պսակեա, և ընդ բերկրեալսն ուրախացո։

Է. Շատ է ինձ, Տ՟ր իմ. բայց յուսամ յողորմութի քո, զի և շունք կերակրին 'ի փշրանաց սեղանոյ տ՟ն իւրեանց. շուն կոչես զիս, գամ զկնի քո։ Հովիւ բարի, խնդրեա զիս զմոլորեալս. Նաւապետ իմ Յ՟ս, փրկեա զիս 'ի բազմութ՟է ալեաց մեղաց իմոց, և տուր ինձ նաւահանգիստ խաղաղութ՟ե։

Ը. Տուր ինձ, Տ՟ր, սուգ և արտասուս. կարօղացո զմարմին իմ, և ժողովեա զմիտս իմ 'ի քեզ. Ջնջեա զբազմութի յանցանաց իմոց, և շնորհեա ինձ զօգուտն իմ. ընկալ և մի անտես առներ զհառաչանս սրտի իմոյ։

Թ. Տնկեա, Տ՟ր, զահ և զերկիւղ քո 'ի սիրտ իմ. լուսաւորեա զխորհուրդս իմ. կարօղացո զմարմին իմ ժուժկալութ՟բ կալ 'ի պատուիրանի քում յամենայն ժամ։

Ժ. Բաց, Տ՟ր, զաչս սրտի իմոյ. լուսաւորեա զմիտս իմ, և պարգևեա ինձ առողջ խորհուրդս և առաքինի վարս՝ ողբալ հանապազ, ահիւ և դողութ՟բ կալ առաջի քո յա՟մ ժամ անզբաղ։

ԺԱ. Ով բարերար Տ՟ր և մարդասէր, առանց չարչարանաց և ժուժկալութ՟ե զիա՟րդ ազատեցայց 'ի բազմութ՟է մեղաց իմոց. զի մարմնով տկար եմ, և հոգւով խաւար. ողորմեա, և ո՟պ կամիս օգնեա ինձ։

1 Երկու օրինակք ընդ պարփակեալս անապականս։

ԺԲ. Ամենակալ Տէր, մի՛ վասն բազում չարեաց իմոց անտես առներ զիս. այլ դարձիր յիս և դարձո զամենայն ցանկութիւնս իմ 'ի քեզ, սիրել զքեզ միայն 'ի բոլոր սրտէ 'ի նուազ և յանպաճոյճ մտաց[1] իմոց:

ԺԳ. Պատկերացո, Տէր, զանհրաժեշտ գալուստ քո առաջի աչաց իմոց. և դողացո զմարմինս իմ սգալ և լալ անդադար յերկիւղէ ահեղ[2] դատաստանաց քոց. մի՛ փակեր զդուռն արարչական սիրոյ քո 'ի ստեղծուածոյս քո՝ որ մեղօքս եմ մեռեալ:

ԺԴ. Տուր ինձ, Տէր, զբարիս գործել յամենայն ժամ, և խափանեա զամենայն չարիս 'ի չար մտաց իմոց. 'ի պիղծ և յանուղղայ գնացից 'ի սովորութենէ զոր ունիմ 'ի չարս, դարձո զիս և հաստատեա յերկիւղ և 'ի սէր պատուիրանաց քոց.

ԺԵ. Արեգակն արդարութեան Քրիստոս, 'ի լոյս քո ապաւինիմ. լուսաւորեա և ջերմացո զսիրտ իմ. հրակիզեա զչար խորհուրդս իմ, և հալեա զսառնամանիս մեղաց իմոց. շնորհեա զգարուն հոգւոյ իմոյ, ծաղկել և պտղաբերել զարդարութեան պտուղն:

ԺԶ. Ազատիչ Քրիստոս, ազատեա զիս 'ի դառնաշունչ օդոյ մեղաց ձմերայնոյ. զխաւարեալ և զսառուցեալ հոգի իմ պայծառացո և ջերմացո, և ցօղեա զցօղ շնորհի ջերմութեան քո յանդս մտաց սրտի իմոյ:

ԺԷ. Շնչեա, Տէր, զհարուստ քաղցրաշունչ Հոգւոյդ սրբոյ 'ի խստացեալ և 'ի թանձրացեալ սիրտ իմ, և զարթո որոտընդոստ փայլատակմամբ քո զսառնացեալ և զցամաքեալ միտս իմ:

ԺԸ. Բաց, Տէր, զփակեալ դուռն սրտի իմոյ, և ծագեա 'ի ներքս զլոյս արդարութեան ճառագայթից քոց. սրբեա յաղտոյ մեղաց. զվէրս հոգւոյ իմոյ բժշկեա, և ամրացո զիս յերկիւղ քո. զօրացո առնել զարդարութիւնս քո յամենայն ժամ:

ԺԹ. Աղբիւրացո, Տէր, զգլուխ իմ 'ի բղխումն արտասուաց. լուա զթարախ հոգւոյ իմոյ, և սրբեա զզգայարանս իմ. զգործս չարեաց փոխարկեա 'ի զղջումն, ջերմն սիրով և զգաստ մարմնով կեալ 'ի պատուիրանս քո:

1 Երկու օր. ձեռակերտ ամենողջ պահեա զմարմին իմ:

2 Երեք օրինակք ահի պատուհրանաց քոց:

Ի. Զդեա, Տէր, զձեռն քո 'ի նաւաբեկեալս՝ որ ընկղմեալս եմ 'ի խորս չարեաց, և փրկեա 'ի սաստիկ ծովածուփ բռնութենէ ալեաց մեղաց իմոց. սանձեա և կարկեա զխստերախ միտս իմ 'ի զբաղմանց ունայնութեանց կենցաղոյս:

ԻԱ. Արբո, Տէր, զծարաւ հոգւոյ իմոյ յառատաբուխ շնորհէ քումմէ. և մի՛ անտես առներ զտոչորումն սրտի իմոյ, որ պապակիմ 'ի տապոյ տօթոյ չարեաց իմոց. լուա զապականեալ և զհոտեալ շնութիւնս իմ ջրով ողորմութեան քոյ:

ԻԲ. Ծագեա, Տէր, առաւօտ խաղաղութեան սրտի իմոյ. և զցաւագին գիշեր և զխաւար մեղաց 'ի մտաց իմոց հալածեա. և մարմնոյ իմոյ շնորհեա զարփիական վարս՝ առաքինութեան կեալ 'ի հաճոյս կամաց քոց:

ԻԳ. Սրբեա, Տէր, զփուշ մեղաց իմոց 'ի սրտէ իմմէ, զի հոգի իմ հանապազ խոցոտեալ վիրաւորի. և սերմանեա զսերմն բարի 'ի սրտի իմում, աճեցուցանել և պտղաբերել զարդարութեան պտուղս:

ԻԴ. Հալածեա, Տէր, զխաւար հոգւոյ իմոյ, և ըզգեցո զլոյս արդարութեան ճառագայթից քոց. զարդարեա երկիւղիւ և ողջմամբ արտասուաց զսիրտ իմ երկնչել 'ի դատաստանաց քոց, և պահել զպատուիրանս քո:

ԻԵ. Զարթո զիս, Տէր, յահագին խորութենէ քնոյ մեղաց իմոց. և զտկարացեալ զմարմինս իմ զգաստացո յամ գործս բարիս խորհել միշտ, և մեծաւ երկիւղիւ առնել զհաճոյս քո յամ ժամ:

ԻԶ. Ազատեա զիս, Տէր, 'ի ծառայութենէ մեղաց իմոց, և խառնեա 'ի թիւս ծառայից քոց՝ որք սիրեցին զքեզ և զպատուիրանս քո պահեցին. տուր նոցա զերկիւղն 'ի սրտի իմում, և ուսո զիս գնալ 'ի շաւիղս գնացից նոցա:

ԻԷ. Թեթեւացո, Տէր, զկարիս մարմնոյ իմոյ. և յաճախեա յիս զշնորհս Հոգւոյդ սրբոյ՝ լինել տաճար և բնակարան ա̃ծային փառաց քոց. անյագ սիրով սիրել զքեզ, և ատել զա̃մ ցանկութիւն և զսէր աշխարհիս այսորիկ, որով եղև յանցումն և կորուստ հոգւոյ իմոյ:

ԻԸ. Ողորմեա, Տէր, բնակողիս յանբնակ անապա-

տիս, և 'ի ձեռն սորա արժանաւորեա զիս խառնիլ ընդ առաջին սուրբս հարանցն, արի և զգաստ ժուժկալութք ժառանգել զխոստացեալ պարգևսն:

ԻԹ. Առաջնորդեա ինձ, Տէր, զնեղ և զնուրբ ճանապարհն, որպէս առաջնորդեցեր սրբոց քոց. և զօրացո զտկարութիւնս իմ ժուժկալութք գնալ 'ի ճանապարհս քո ջերմեռանդ սրտիւ:

Լ. Այրեա, Տէր, 'ի նեխեալ և 'ի թարախեալ հոգի իմ, և լուա ամենայն ջրովդ, և հոգևոր աղբեր համեմեա, և անուշահոտ Տր խնկովք օծեա, և զկատարեալ առողջութիւն ընձեռեա:

ԼԱ. Նօսրացո[1], Տէր, զքուն աչաց իմոց, և թօթափեա զնիրհումն 'ի գլխոյ իմոյ, զի զանդաղեալ և ծանրացեալ պաշտօնէ զմարմին իմ. արա զիս արթուն և պատրաստ յամ ժամ, զի զգաստութք և արդարութք վարեցից զկեանս իմ:

ԼԲ. Տես, Տէր, զլքումն[2] ոգւոյս իմոյ՝ որ զօրացեալ է 'ի վերայ իմ, և հանապազ ցանկայ կերակրոյ և ըմպելեաց և համեղութեան խորտկաց. այլ դու, Տէր, ամենակարող, կտրեա զցանկութիւն մարմնոյս անկշտանաց:

ԼԳ. Եւ քանզի միտք իմ ցնդեալ պղտորեալ բանդագուշեալ շրջի 'ի հոսանս երկրաւոր կենցաղոյս, այլ դու, Տէր, լուսաւորեա զաչս հոգւոյս առանց ըղ-բազմանց և երկմտութեանց, արի և զգաստ ամենայոր-դոր փութով գալ զհետ ամենայն սիրոյ քո:

ԼԴ. Հալածեա, Տէր, զամ չար մտածմունս յերկրաքարշ խորհրդոց մտաց իմոց. արմատ բարեաց տնկեա հաստատութք 'ի սրտի իմում. պտուղ շնորհաց 'ի հոգիս իմ նկարեա:

ԼԵ. Աղաչեմ զքեզ, բարերար և ողորմած Տէր, արթուն և զուարթուն պատրաստեա զիս. և ուսո ինձ գնալ 'ի ճանապարհս քո բարիս, զի արժանի եղէց մեծի փառաց քոց:

ԼԶ. Եւ քանզի ցանկութիւնք ճաշակման ամենիւ զբազմեցուցեալ զմեղս իմ խռովէ, արդ հալածեա զորկորստութիւն[3] յինէն՝ յորմէ խաւարեցայ միշտ.

1 Երեք օրինակք Նօսրացո ... զի ծանրացեալ դանդաղանօք պաշտօնէ:

2 Երկու օրինակք զցանկումն:

3 Մի օրինակ զորկորստութիւն ... խռովեցայ:

և կերակրեա զիս երկիւղիւդ քով սրբով։

ԼԷ. Առաքեա, Տ̃ր, զմի 'ի սերովբէից քոց, զի բերելով զկայծակն հրոյ՝ մերձեցուսցէ 'ի շրթունս իմ, և հանցէ 'ի բաց զանօրէնութիւն և զմեղս իմ, և սրբեսցէ զխորհուրդս իմ, և մաքրեսցէ զաղտեղութիւն իմ, և լուսաւորեսցէ զմիտս իմ ժառանգել նովաւ զկեանսն յաւիտենից։

ԼԸ. Առաքեա[1], Տ̃ր, զբաժակ ուրախարար հոգւոյդ սրբոյ յեղկելիս՝ որ ծարաւիմս առ քեզ. արբո և զուարթացո յեռանդն[2] սիրոյ քո. լոյծ 'ի բաց և ջնջեա զմրուր դառնութեան յանցանաց իմոց։

ԼԹ. Առաքեա, Տ̃ր, զլոյս քո և լուսաւորեա զմիտս իմ և զխորհուրդս իմ լուսով գիտութեան քո. զխաւար մեղաց 'ի մտաց իմոց փարատեա, և զտկարութիւն անձին իմոյ կարողացո 'ի ջան և 'ի վաստակ հոգւոյ իմոյ։

Խ. Առաքեա, Տ̃ր, զհրեշտակ խաղաղութեան քո վերակացու և պահապան անձին իմոյ. և որպէս եսուր իշխանութիւն գնալ 'ի վերայ իժի և քարբի և կոխել զա̃մ զօրութիւն թշնամոյն, աներկիւղս արասցես ըզ-մեզ յերևելի և յաներևոյթ թշնամոյն, և պահեսցես որպէս բիբ ական ընդ հովանեաւ թևոց քոց։

ԽԱ. Յորժամ երթայցեմ, Տ̃ր, 'ի ճանապարհի, մի թողուր զիս միայն. այլ առաքեա զօգնութիւն քո զհետ իմ, պահել զիս յամենայն փորձութեանց սատանայի 'ի տուէ և 'ի գիշերի; և մի տալ թոյլ մեղանչել յողդողդ և թոյլ մտաց իմոց. այլ կոծել զկոծ մեծ 'ի վերայ մեղաց և անօրէնութեանց իմոց։

ԽԲ. Պահեա զիս, Տ̃ր, 'ի բանից և 'ի գործոց և 'ի տեսութեանց գերիչ խորհրդոց. և զերկիւղ դատաստանի քո տպաւորեա 'ի սրտի իմում, անզբաղ յօժարութեամբ փութալ պահել զպատուիրանս քո։

ԽԳ. Փակեա, Տ̃ր, զդուռն մեղաց իմոց, և բաց ինձ զդուռն լուսոյ արդարութեան. զի երկիւղալից սիրով եկից զհետ կոչողիդ՝ իմոյ արարչիդ. որ ասացեր "Եկայք առ իս ա̃մ աշխատեալք և ծանրաբեռնեալք, և ես հանգուցից զձեզ,,։ Եւ դարձեալ. "Որ խնդրէ՝

1 Երկու օր. Արբո, փո, զբա- ժակ ... զեղելոյ։

2 Երեք օր. զեռանդն։

առնու, և որ հայցէ՝ գտանէ, և որ բախէ՝ բացցի նմա։

ԽԴ. Նայեա, Տէր, ՚ի մերկութիւն անձին իմոյ զոր կողոպտեաց թշնամին. և այժմ խայտառակ և ամօթալի կամ առաջի քո, մարդասէր։ Զգեցո ինձ հանդերձ հարսանեաց. մոյծ և ուրախացո ՚ի կոչումն բազմելոց քոց։

ԽԵ. Զգեցո ինձ, Տէր, զպատմուճանն առաջին զոր մերկացայ մեղօք իմովք. ցոյց զանոխակալութիւն քո յիս, և լուսափայլ ողորմութեամբ քո զարդարեա զմերկութիւնս իմ։

ԽԶ. Լուր, Տէր, աղաղակի անառակիս՝ որ ամօթով կամ առաջի քո. զգանձս հայրենիս վատնեալ և սովամահ կորնչիմ. կերակրիլ հաւատար եղէ խոզից անասնոց և անբանից և նմանեցայ նոցա։

ԽԷ. Մի՛ զրկեր զիս, Տէր, ՚ի հայրական[1] գթոյ քո. համարձակիմ ՚ի գութ[2] աղեաց քոց. ՚ի ծնողէդ մերժեցայ և զորդիութիւն իմ ուրացայ։ Մեղայ յերկինս և առաջի քո. չեմ արժանի կոչիլ որդի քո, արա զիս իբրև զմի ՚ի վարձկանաց քոց։

ԽԸ. Զարդարեա զիս, Տէր, մեծաւ երկիւղիւ քո, և դարձո յանառակութենէ յարդարութիւն, յաղտեղութենէ ՚ի սրբութիւն, ՚ի ծուլութենէ ՚ի զգաստութիւն, ժուժկալութեամբ և համբերութեամբ գնալ զճանապարհս քո անդադար։

ԽԹ. Պահպանեա զիս, Տէր, ՚ի չարաչար խորհրդոց իմոց և յառնելոյ զկամս մտաց իմոց. զահաւորն օր գալստեան քո նկարեա առաջի աչաց իմոց, դողալ և սարսել ՚ի դատաստանաց քոց։

Ծ. Պայծառացո, Տէր, զլապտեր հոգւոյ իմոյ ընդ զիմաստուն կուսանացն. և շնորհեա պատրաստել արթնութեամբ ընդ առաջ ելանել երկնաւոր փեսայիդ, զի մի մնացից արտաքս որպէս զյիմար կուսանսն։

ԾԱ. Ցոյց ինձ, Տէր, զճանապարհս քո, և ուսո ինձ զարդարութիւնս քո. հեռացո, Տէր, զմարմինս իմ ՚ի խորհրդոց չարեաց, և հաստատեա յերկիւղ բարեաց՝ որ և անպարտ կալ առաջի քո յամ ժամ։

1 Երկու օր. ՚ի հայրենական։ մի օր. ՚ի գութ ողէփէաց քոց։
2 Հինգ. օր. ՚ի խնամս սիրոյ քո.

ԾԲ. Զանօրէնութիւն իմ ջնջեա, Տէր, և 'ի յոյս բարեաց և յերկիւղ քո զմիտս իմ բևեռեա, լցեալ սիրով և հաստատուն հաւատով սպասել և ակն ունել մեծի գալստեան քո։

ԾԳ. Զօրացո զիս, Տէր, 'ի սէր պատուիրանաց քոց, անսալ երկիւղիւ հրամանաց քոց, սարսել և դողալ 'ի դատաստանաց քոց, խնդրել զարդարութիւն և զիրաւունս յերեսաց քոց, և առնուլ զպարգևս շնորհաց քոց։

ԾԴ. Արձակեա զիս, Տէր, 'ի կապանաց մեղաց իմոց, և զհնացեալս մեղօք վերստին նորոգեա, և զխաւարեալս 'ի ցանկութենէ մարմնոյ լուսաւորեա, գնալով 'ի ճանապարհս խաղաղութեան, զի տեսցեն աչք իմ զփրկութիւն քո զոր պատրաստեցեր սրբոց քոց։

ԾԵ. Բժշկեա, Տէր, զանբժշկելի հիւանդութիւն իմ որ կարկամեալ դնիմ 'ի մահիճս մեղաց, և դեգերեալ կամ 'ի դրունս երկրորդի Սելովմայ՝ սպասել և ակն ունել մեծի գալստեան քո։

ԾԶ. Հրամայեա ինձ, Տէր, որպէս անդամալուծին՝ առողջանալ, խորտակել զանկողինս ցաւոց իմոց, շրջել ընդ կամարարս քո, 'ի տուն Տեառն և 'ի գաւիթս Աստուծոյ մերոյ ծաղկել և ոչ մեղանչել։

ԾԷ. Խորտակեա, Տէր, զգոռոզութիւն սատանայի, և հար ընկեա 'ի բաց զզօրութիւն նորա. արգել զարձակումն նորա 'ի վերայ իմ, զի մի տարապարհակ վարեալ զմարմին իմ տանիցի ընդ արձակուն ճանապարհին՝ որ տանի 'ի կորուստ և յապականութիւն։

ԾԸ. Յիշեցո, Տէր, զպաղեալ և մոռացեալ միտս իմոց զահաւոր և զասոսկալի գալուստ քո, և զդատաստանն անաչառ. զպատիժ և զփառս արդարոցն, և զանհնարելի տանջանս մեղաւորացն. և նոքօք զարհուրեալ դողացո զմարմին իմ տեսանել զմահ հանապազ առաջի աչաց իմոց։

ԾԹ. Բևեռեա, Տէր, յերկիւղ քո զմարմին իմ, և զհոգի իմ 'ի սէր պատուիրանաց քոց, և զասացեալսն 'ի նմա երկիւղիւ լսել, և առանց դանդաղանաց կատարել միշտ. մերկանալ 'ի մեղաց և 'ի ցանկութեանց կենցաղոյս, և պայծառանալ վարուք առաքինութեան։

Ի. Փրկեա զիս, Տէր, ՚ի գաղտաձիգ նետից սատանայի, որ բազում մեքենայիւք պատեալ պաշարէ զիս. աւար առեալ զմիտս իմ վարէ ՚ի գերութիւն և ՚ի ցանկութիւն մեղաց, առնելով ծառայ և այպն կատականաց թշնամեաց իմոց:

ԻԱ. Ամրացո զիս, Տէր, յերկիւղ քո, և զօրացո զտկարացեալս զօրութեամբ քով. զհիւանդութիւն հոգւոյ իմոյ առողջացո, և զցաւս մարմնոյս բժշկեա, և զջերմութիւն սիրոյ քո հաստատեա ՚ի սրտի իմում չարչարակից լինել սրբոց քոց:

ԻԲ. Դարձո, Տէր, զգերեալս ՚ի սատանայէ, և ընդ մեղօք վաճառեալս յեգիպտական դառն և ՚ի խիստ տանջանացն. փրկեա ՚ի բռնակալ չար սպասաւոր դիւացն, և յեղէգնական կաւոյ մեղացն հանցես և տարցես յերկիրն աւետեաց:

ԻԳ. Ընկղմեա, Տէր, զթշնամիս իմ՝ զզօրութիւն փարաւոնի. որ սպառնացեալ ՚ի վերայ իմ խորոխտայ, հետամուտ եղեալ զկնի իմ դարձուցանել զիս յառաջին յանցանսն ընդ իշխանութեամբ իւրով ծառայել մեղաց և անօրէնութեանց:

ԻԴ. Խաղաղացո զիս, Տէր, ՚ի ծփմանց ալեաց խռովութեանց խորհրդոց, և զբազմութիւն յորձանս մեղաց իմոց ցածո, և կառավարեա զմիտս իմ ժամանել յանքոյթ և ՚ի խաղաղ նաւահանգիստն Հոգւոյդ Սբյ:

ԻԵ. Օերծո զիս, Տէր, ՚ի լերինս քարանձաւի կամ ՚ի տեղի անապատի, ուր և ողորմութիւն քո առաջնորդեսցէ ինձ՝ հանդիպել մեծի փառաց անուան քո, տալ ինձ զթևս աղաւնական Հոգւոյդ սրբոյ, թռչել վերանալ խառնիլ յերամս արդարոցն:

ԻԶ. Բնակեցո զիս, Տէր, յօթևանս սրբոց քոց, և զհանգիստ աշխատութեան որ հարցն պարգևեա ինձ. անտես արա զյանցանս իմ, և դասաւորեալ պայծառացո զիս ընդ նոսա և ընդ սիրելիս անուան քո:

ԻԷ. Հաստատեա, Տէր, զխաղաղութիւն և զպայծառութիւն լուսոյ կենաց յանձինս մեր, զի մի խոտորեսցուք յաջ կամ յահեակ, և դատապարտեսցուք յաւուր գալստեան քո, պահանջելով ՚ի մէնջ զյետին նաքարակիտն:

ԻԸ. Մի մերժեր զիս, Տէր, ՚ի բազմագութ ողոր-

մութենէց քոց . զապաւինեալս 'ի քեզ ամրացո և ան-երկիւղ պահեա յամ որոգայթից սատանայի, զի մի գերի վարեալ տանիցի զմիտս իմ 'ի զբաղումն և 'ի չար ծառայութիւն :

ԿԹ. Ուսո զիս, Տէր, առնել զարդարութիւն և խօսել զճշմարտութիւն, սիրել զբարութիւն և ատել զանօրէնութիւն, խոտորել 'ի չարեաց և գնալ 'ի ճանապարհս բարեաց :

Հ. Նորոգեա զիս, Տէր, յորսողացն ախտից իմ՝ որ գան 'ի վերայ իմ ըմբռնել զիս 'ի մեղս և 'ի ծուլութեան անժուժկալութեան, մոռացումն առնել յանցանաց իմոց . և ոչ տան յիշել զօրն հատուցման և զսարսափելի պատասխանին՝ որ ասէ . "Երթայք յինէն, անիծեալք, 'ի հուրն յաւիտենից" :

ՀԱ. Կանգնեա զիս, Տէր, 'ի գլորմանէս, և 'ի բազմամեղ անդնդային խորութենէս վերացո և բարձրացո թեւօք Հոգւոյդ 'ի պարապումն աղօթից և 'ի խոր-դրուածս հաճոյից, 'ի ընջումն մեղաց, և 'ի նորոգումն կենաց, և 'ի լուսաւորութիւն մտաց, և 'ի կատարումն սուրբ պատուիրանաց քոց :

ՀԲ. Խնդրեա, Տէր, զեղծեալ և զկորուսեալ պատկերս, որ 'ի մէջ աղբի և 'ի տղմի մեղաց թաւալեալ կամ . գիւրածեալ[1] աւելաւ շնորհի քո, և դիր 'ի գանձանակ անմեղութեան յորմէ անկայ :

ՀԳ. Եկ, Տէր, 'ի տեսութիւն հիւանդացեալ հոգւոյ իմոյ . դիր զձեռն քո 'ի վերայ իմ և բժշկեա զիս ասելով զօրացիր և առ զմահիճս քո, և երթ 'ի ճանապարհն արդարութեան :

ՀԴ. Ել, Տէր, 'ի խնդիր մոլորելոյս՝ որ յածեալ շրջիմ արտաքոյ հօտի[2] պատուիրանաց քոց, և գազանաբեկ եղեալ քարավէժ մեղօք՝ կառափնատիմ 'ի դիւաց . ըմբռնեա և ած 'ի փարախն հայրենի, և խառնեա ընդ գառինս հօտի քո :

ՀԵ. Հետեւեա, Տէր, ճողոպրելոյս 'ի քէն . արագապէս փութացիր, հաս ըմբռնեա զապստամբեալս 'ի

1 Մի օր. Գիւտ աւելաւ շնորհի քո. Երկու օր. Գիւտ ածեալ աւաւելեալ շնորհի քո:

2 Երկու օր. Գառինն . . . Գազանաբեկեալ:

ձայնէ կոչման քո, և դիր 'ի բանտ կապանաց անխզելի սիրոյ քո :

ԺԶ. Մ՛ի թողուր զիս, Տէր, հեռանալ 'ի սիրոյ պատուիրանաց քոց և 'ի վարուց առաքինութ՟եց. այլ յորդորեա առաւելուլ յա՟մ գործս արդարութ՟ե առանց մեղաց և առանց իրիք խափանուածոյ պաշտել զքեզ սրբութ՟բ և արդարութ՟բ զա՟մ աւուրս կենաց իմոց :

ԺԷ. Մ՛ի մատներ զիս, Տէր, 'ի ցանկութ՟ի մեղաց և 'ի հեշտութ՟ի[1] կամաց, 'ի քուն աչաց և 'ի դատարկութ՟ի մտաց. այլ պարսպեա յերկիւղ քո, և ապրեցո յամենահնար չար դիւաց և յաշխարհական զբօսանաց :

ԺԸ. Մ՛ի յապաղեր, Տէր, տալ ինձ զփրկութ՟ի հոգւոյ և զջերմութ՟ի սիրոյ, զպարկեշտութ՟ի կերակրոյ և զժուժկալութ՟ի մարմնոյ, զզղջումն արտասուաց և զանդադար աղօթելոյ, զխոնարհութ՟ի և զհնազանդութ՟ի և զհամբերութ՟ի յուսոյ :

ԺԹ. Յաղթեա, Տէր, հակառակամարտին իմոյ, և զօրացո զիս ընդդիմակաց լինել պատերազմողին 'ի վերայ իմ. և զգեցո ինձ զզրահ հաւատոյ, պահօք և աղօթիւք սրբել զախտ ցանկութեան և զխորհուրդս մարմնական, և առնուլ զշնորհս փրկական :

Ի. Տուր ինձ, Տէր, տեղի ապաշխարութ՟ե, աշխատութ՟ե հանդիստ, խաղաղութ՟ե հոգի և արդարութ՟ե Ճանապարհ, ամրութեան զէն և պահապան փրկութ՟ե, հաստատութ՟ե յոյս և պնդութ՟ե երկիւղ :

ԻԱ. Անցո զիս, Տէր, ընդ հուն անցից մեղաց խարաթափիչ ծովահեղձ ցանկական կենցաղոյս 'ի լոյս աչաց, 'ի տեսութ՟ի մտաց, 'ի հանգիստ կենաց, 'ի հանդիպումն շնորհաց, և 'ի շաւիղս Ճանապարհացն արդարութեան :

ԻԲ. Շնորհեա ինձ, Տէր, լալ աչաց, արտասուաց հոսումն, մեղաց սուգ, մտաց սրտի երկիւղ, ոսկերաց իմոց սարսափումն և դողումն վասն տանջանաց, կենաց Ճանապարհ, և անդադար պաղատանս :

ԻԳ. Արիացո զիս, Տէր, 'ի պատուիրանաց պահպանութ՟ի, որովայնի ժուժկալութ՟ի, 'ի մարտ պա-

1 Երկու օր. 'ի հեշտութ՟ի կենաց :

տերազմի բանսարկուին յաղթութն, 'ի մարմնի մեռա-նել, և պայծառանալ 'ի հանդիսի ։

ԶԴ. Լցո զիս, տէր, երկիւղիւ և զղջմամբ, ար-տասուօք և հառաչանօք, սիրով և սրբութբ, շնորհօք և ճշմարտութբ, գիտութբ և ամ առաքինութբ ։

ԶԵ. Մնջեա, տէր, զբազմութին յանցանաց իմոց, և թափեա զմրուր դառնութեն անօրէնութեն իմոյ, և պարարեա զսիրտ իմ արբմամբ Հոգւոյդ սբյ, և զփշաբեր[1] մարմին իմ լցո շնորհօք, զարգացո և 'ի պտղաբերութին փոխարկեա ։

ԶԶ. Սփռեցո, տէր, զշնորհս քո 'ի ծառայս քո, զգութ քո 'ի ստեղծուածս քո, զողորմութին քո 'ի պաշտօնեայս քո. և տաճարացո բնակարան լինել Հոգւոյդ սրբոյ, մի ևս ծառայել մեղաց և անօրէնութե ։

ԶԷ. Բժշկեա զիս, տէր, 'ի հպարտութե և յամ-բարտաւանութե, 'ի սնափառութե և 'ի փառասիրութե, 'ի մարդահաճութե և յոխակալութե, 'ի բարկութե և 'ի սրտմտութե, յատելութե և 'ի դատելոյ զոք ։

ԶԸ. Փրկեա զիս, տէր, 'ի մարդկան գովեստից, 'ի փառաց և 'ի մեծարանաց. զխաւարս[2] լոյս առնե-լով համբաւեն 'ի վերայ իմ զբարի, զեղկելիս երա-նելի, զողորմելիս առաքինի, զարտասուելիս ցանկա-լի, և ես բազում մեղօք 'ի լի ։

ԶԹ. Ծածկեա զիս, տէր, 'ի լրոյ սուտ գովեստից և երանութեց, զի ոչ գիտեն զմեղս իմ, և ոչ ճանա-չեն զխաբէութիւս[3] իմ. երևիմ սրբութբ, և լի եմ աղտեղութբ. կերպարանիմ առաքինութբ, և կեամ անառակութբ. փայլեմ երկիւղածութբ, և վարիմ մարդահաճութբ. ճանաչեմ զճշմարտութին, և խօ-սիմ զստութին. գիտեմ զարդարութին, և գործեմ զանօրէնութիւն ։

Լ. Քաւեա զիս, տէր, 'ի մեղաց և 'ի բամբասա-նաց, 'ի մոռացեալ յանցանաց և յամ սխալանաց. և թող ինձ զմեղս ծուլութե և զանժուժկալութե, զոր-կորստութե և զդատարկաբանութե, զցանկութե և զաղտեղութե, զհայհոյութին և զամ բիծս չարեաց ։

1 Մի օրինակ՝ զփշաբերս ։
2 Մի օրինակ՝ զխաւար 'ի լոյս ածելով բերելով 'ի վերայ իմ ։
3 Մի օրինակ՝ զխաբէութիւնս ։

ՂԱ. Կեցո զիս, Տէր, հաստատուն և անշարժ 'ի պատերազմի փորձութեանց՝ առանց երկեղանաց քաջապինտ հաւատով և յորդորական սիրով զօրավիգ լինել ընդդէմ եկելոց դիւացն 'ի վ՟ր իմ. զինեա զիս ամրակուռ զինուք քո տալ պատերազմ և յաղթել հակառակամարտ թշնամոյն, որ կամի 'ի մահ զիս որսալ։

ՂԲ. Զընկղմեալս, Տէր, 'ի խորոց մեղաց հանցես և 'ի լոյս պատուիրանաց քո բերցես. զհեռացեալս 'ի քէն առ քեզ կոչեսցես, և զանառակութե զվարս իմ թողցես. զապաւինեալս 'ի քեզ ամրացուսցես, և զդաւանեալս 'ի քեզ մխիթարեսցես. զարձակեալս 'ի կապոյ պատուիրանաց քոց ըմբռնեսցես, և 'ի սէր ծառայութե քո բերեսցես։

ՂԳ. Զգութ սիրոյ քո միաւորեա յիս, Տէր, և զարգելեալս 'ի բանտի յանցանաց արձակեա. զկապ մեղացն խզեա, և զարդարութե ճանապարհն ինձ առաջնորդեա. զտեղի յարկի քո պատրաստեա, և ընդ սրբոց վկայիցն զիս պսակեա։

ՂԴ. Հաղորդս արա զիս, Տէր, ածային սիրոյ քո սիրել զպատուիրանս քո, գնալ 'ի ճանապարհս քո, չարչարիլ մինչև ցմահ վասն անուանդ քո, մտանել 'ի փառս քո, և դասիլ ընդ սրբս քո, և ուրախանալ միշտ ընդ կամարարս քո։

ՂԵ. Գթա, Տէր, 'ի մեղուցեալ և յեղկելի անձն իմ. խափանեա զանառակ ցանկութիս իմ. սրբեա զաղտեղութի մեղաց իմոց, և քաւեա զանօրէնութիս իմ. բժշկեա զվիրաւորեալ հոգի իմ, և առողջացո զհիւանդացեալ մարմին իմ. ցրուեա զչարիս իմ, և ժողովեա յիս զբարիս, և լից զպակասութիս [1] իմ։

ՂԶ. Ընկանիմ առաջի քո, Տէր, և խնդրեմ ըզթողութի յանցանաց իմոց. ընկալ զպաղատանս իմ, և քաւեա զանթիւ յանցանս իմ, պայծառացո զմիտս իմ, լուսաւորեա զխորհուրդս իմ, կարողացո զմարմին իմ, առաւելեալ անդադար և կալ յաղօթս։

ՂԷ. Զանկեալս մեղօք կանգնեա, Տէր, և զխոցեալս 'ի թշնամոյն դեղատուեա. բարձ զցաւս մեղաց, և վերացո զկսկիծ յանցանաց. յափշտակեա 'ի

1 Մի օրինակ զպատուհասն։

դառն մահճաց[1], և ազատեա յանողորմ տանջանաց, և 'ի մարմնական յղփանաց հեռացո, և 'ի դասս ճգնաւորաց դասեցո :

ՂԸ. Լեր, տէր, վերակացու և պահապան անձին իմոյ. պահեա 'ի գիւաց, և փրկեա 'ի մարդկային փորձանաց, և յաղթեա հակառակողաց, և կացո զիս քաջ և ընտիր լինել 'ի մէջ պատերազմաց. գործակցեա ինձ լինել քաւարան մեղաց, և առաքինագործ քաջութեամբ համբերել վշտաց, և հանդիպել քո աստուածային շնորհաց :

ՂԹ. Վայ ինձ, տէր, վայ ինձ, զի մեղօք կործանեցայ, և մտօք իմովք աղտեղեցայ. 'ի բարեաց ունայնացայ, և 'ի սիրոյ ցամաքեցայ. 'ի լուսոյ խաւարեցայ, և 'ի գնալոյ դադարեցայ. ոչ ունիմ աչս լալոյ և արտասուաց. ծփիմ[2] տարաբերեալ, զի յոյս և ակն բարոյ ոչ ունիմ :

Ճ. Օգնեա, տէր, տարակուսեալ անձին իմոյ՝ որ լի եմ մեղօք և անբաւ յանցանօք, ամենայն անդամօք իմովք խարշեալ և տոչորեալ. յոտից մինչև ցաւարտունն գլխոյս ապականեալ, չիք հնար բժշկութեան, եթէ ոչ 'ի քէն. խոնարհեա 'ի դեղատուութիւն վիրաւորելոյս, և մի գարշիր 'ի չարահոտ ախտացելոյս :

ՃԱ. Լուեցո, տէր, զբերան իմ 'ի բամբասելոյ, և զլեզու իմ 'ի չար խօսելոյ. զաչս իմ յարատ հայելոյ, և զականջս իմ 'ի չարալուր լսելոյ. զձեռս իմ յափըշտակելոյ, և զոտս[3] իմ յանառակ գնացից. և զերկատասան անդամս իմ պարսպեա զգաստացո միշտ զհաճոյս քո կատարել :

ՃԲ. Մեղայ քեզ, տէր մեղայ, զի զպատուիրանաւ քո յանցեայ. 'ի լուսոյ կենաց ելայ, և 'ի խաւար մեղաց մտայ աղտեղութեան ցանկանալով. 'ի սիրոյ քո հեռացայ. ըմբռնեցայ 'ի չարէն, և եղէ որդի կորստեան. ողորմեա ինձ, տէր, ողորմեա, զի դու միայն ես մարդասէր :

ՃԳ. Ի քեզ, տէր, ապաւինիմ՝ որ մեղաց ես քաւարան և բարւոյ շտեմարան, հալածելոյս լինիս դա-

1 Երկու օրինակք դահճաց :

2 Երեք օրինակք փոփոխէին 'ի ծփեալս, զի յոյս լքանիմ ակն բարոյ :

3 Երկու օրինակք զոտս իմ յանառակագնաց երթալոյ :

րան, զԹշնամիս անձնես փախստական. ոչ ունիմ այլ օգնական, բայց միայն զքեզ ունիմ ինձ պահապան. 'ի վտանգից փրկեա, յորոգայԹից ապրեցո, և արա զիս արժանի լինել որդի յաւիտենից :

ՃԴ. Ողորմեա ինձ, Տէր կենաց և քաւիչ մեղաց, կատարիչ խնդրուածոց և արձակիչ կապանաց, բաշխօղ պարգևաց և տուօղ ամ՟ շնորհաց :

ՃԵ. Լուր, Տէր, զաղաչանս իմ և ընկալ զպաղատանս իմ. քաւեա զյանցանս իմ և կատարեա զխնդրուածս իմ. արձակեա զկապանս իմ և բժշկեա զհոգի իմ. առողջացո զմարմինս իմ և ուղղեա ընԹացս իմ. փուԹացո զիս ժամանել յօԹևանս սրբոց քոց :

ՃԶ. Հալածեա, Տէր, զբազում ախտաժէտութիւնս իմ, զցաւ մարմնոյ և զախտ հոգւոյ, զքուն 'ի գլխոյ և զյագումն յորկորոյ. և պահեա զխորհուրդս իմ անզբաղ, զսիրտ իմ սուրբ, և զմիտս իմ լուսաւոր և զգաստ, զցանկութիւնս իմ առ քեզ, և զյօժարութիւն իմ յաղօԹս 'ի տուէ և 'ի գիշերի :

ՃԷ. Բղխեցո, Տէր, 'ի գլխոյ իմմէ աղբիւրս վըտակաց, և ոռոգեա զանդս [1] մտաց իմոց. լուա զախտ յանցանաց և սրբեա զԹարախ վիրաց իմոց. խլեա յինէն զփուշ մեղաց և տնկեա յիս զբոյս կենաց. աճեցո զարդարութիւն և նուաստացո զանօրէնութիւն. մեռո զմարմնոյ ցանկութիւն և նորոգեա զհոգւոյս կենդանութիւն :

ՃԸ. Կոչեա, Տէր, զմեղապարտ անձն իմ 'ի քեզ, զի մերձենալ առ քեզ չիշխեմ. պատկառիմ յամօԹոյ և զարհուրիմ 'ի յիմ գործոյս. համարձակութիւն առ քեզ չունիմ, զի ես ինձէն եմ մեղուցեալ. 'ի նք պատուիրանաց եմ հեռացեալ և 'ի փառաց եմ մերկացեալ : Այլ դու, Տէր, գԹա յիս և ողորմեա, զի ստեղծուած եմ անարատ ձեռաց քոց :

ՃԹ. Ոչ իշխեմ, Տէր, անյոյս լինել, զի ողորմած ես և գԹած. բազում ինչս խոստանաս վասն դարձի մեղաւորաց. այլ ես զարհուրեալ դողամ և երկնչիմ 'ի բազում և յանԹիւ մեղաց իմոց, զի խաբեցայ 'ի

[1] Երկք օրինակք զանդաստանս :

պատրողէն և գերեցայ յորսողէն. և արդ զի՞նչ լինիմ ես եղկելիս, որ տարագիրս եմ 'ի կենաց։

ՃԺ. Արա զիս, տէր, 'ի սուգ և յարտասուս վասն մեղաց իմոց, զի ծանրաբեռնեալ եմ ես մեղօք և յագեցեալ պիղծ խորհրդով. շատ ինձ ներեցեր, զի ոչ խրատեցեր զիս 'ի մարմնի. 'ի յահէ քումմէ դո-ղամ, եթէ չմնան ինձ այսպիսի չարիքս։ Աղաչեմ զքեզ, բարերար տէր, մի՛ կոչեր զիս յատենի, և տանջանաց զիս մի՛ մատներ. այլ փրկեա զիս 'ի գե-հենէն և ապրեցո 'ի վտանգէն. ողորմեա և ազատեա, զի դու միայն ես մարդասէր։

ՃԺԱ. Վայ ինձ, տէր, զի ծփանք տարակուսանաց պատեն զիս, և զսիրտ իմ խռովեն. զի աղօթեմ և ոչ գիտեմ, սաղմոսեմ և ո՛չ իմանամ. շրթունքս մի-այն բարբառին, և միտք իմ ձողոպրեալ յածին այսր և անդր, և զկայութիւն ոչ ունին, և 'ի պէտս իմ ոչ գը-տանին, և ուր կամիմ զի իցէ՝ ոչ դադարէ. ոչ տեսա-նի և ոչ երևի, շրջի և ոչ ըմբռնի. աշխատիմ և ոչ օգտիմ, որպէս ձայն հնչեալ պղնձի և ծնծղայի, թա-փուր և ունայն դատիմ և անպտուղ գտանիմ ա̃մ բարեաց։

ՃԺԲ. Ընկալ, տէր, զմոլորեալս՝ որ փախուցեալ կամ 'ի լերինս. որպէս ծառայ չար 'ի տեառնէ հա-լածեալ եմ 'ի մեղաց, և հրաժարեալ եմ 'ի բազմաց. որոշեալ եմ յեղբարց, և հեռացեալ եմ 'ի պաշտմանց, զի սիրող եմ մեղաց և նախատինք եմ 'ի կարգաց. անյագ 'ի զրկանաց և խափանիչ պատուիրանաց. ան-գութ էի աղքատաց և հակառակ սպասաւորաց. ան-ողորմ հիւանդաց և անմխիթար աշխատողաց, և չէի իսկ արժանի կալ 'ի մէջ ձգնաւորաց։

ՃԺԳ. Հանգո տէր, զշնորհս Հոգւոյդ ս̃բյ 'ի վե-րայ իմ, որ միայն եմ 'ի պատերազմի առանց օգնա-կանի. սրբեա, տէր, զտաճար հոգւոյ իմոյ, և առ-իս լեր ընդ երեկոյս. բաց զաչս հոգւոյ իմոյ, և լու-սաւորեա զմիտս և զխորհուրդս իմ. տուր ինձ զօ-րութի̃, տէր իմ, և ընկալ զօրհնաբանութի̃ս բերա-նոյ իմոյ. 'ի խոր քնոյ գիշերոյ զարթո զիս գոհանալ և օրհնել զքեզ, որով զմեղս իմ քաւեցից. շնորհեա ինձ, տէր, սուգ և արտասուս լալոյ և սգալոյ և ան-

դադար աղօթելոյ առաջի քո ։

ՃԺԴ. Դատեա, տէր, զդատապարտողն իմ՝ որ յանդգնի 'ի վերայ իմ. մարտ եդեալ ընդ իս ցանկութիւնք և անժուժկալութիւնք, ծուլութիւնք և որկորստութիւնք, փառասիրութիւնք և մարդահաճութիւնք, բարկութիւնք և սրտմտութիւնք, ատելութիւնք և չարաչար[1] հայհոյութիւնք, սնափառութիւնք և սնապարծութիւնք, հպարտութիւնք և ամբարտաւանութիւնք, բանիւք և գործովք, մտօք և խորհրդովք զօրաժողով լինել 'ի վերայ իմ, և ընկղմել զիս 'ի խորս չարեաց ։

ՃԺԵ. Սփռեա, տէր, զշնորհս քո 'ի վերայ մտաց անդամոց իմոց. և լից զմարմինս իմ զօրութեամբ և ժուժկալութեամբ, զհոգի իմ երկիւղիւ և դողութեամբ, զսիրտ իմ սիրով և սրբութեամբ, զմիտս իմ լուսով և իմաստութեամբ, զխորհուրդս իմ հանճարով և գիտութեամբ, և զոտս իմ ուղղելով 'ի շաւիղս արդարութեան, զձեռս իմ շօշափելով[2] 'ի գործ ապաշխարութեան, և զբերան իմ սաղմոսելով գոհութեամբ և օրհնութեամբ. զաչս իմ արտասուելով յորդաբուխ առատութեամբ, և զհոտոտելիս իմ հոտոտելով ոչ հոտ մահուանէ 'ի մահ, այլ հոտ անոյշ կենաց 'ի կեանս. զլսելիս իմ լսել զձայն աւետեաց՝ որ ասէ, “Թողեալ լիցին քեզ մեղք քո ,,. և թէ “Այսօր եղև փրկութիւն տանս այսմիկ ,, ։

ՃԺԶ. Մինչև յերբ, տէր, անսաստ չարագործին՝ որ ոչ յագի կորստեամբ իմով, այլ հանապազօր սկիզբն առնէ չարեաց, և 'ի բաց կորզեալ խափանէ զիս 'ի բարեաց, հեռացուցանէ 'ի սրբութեանց, և յաւիտենական կենացն արտաքս հանէ զիս. խաւարեցուցանէ զլուսաւորութիւն աչացս, և ապականելով գերէ զմիտս իմ և վարէ զիս 'ի չար ծառայութիւն յանցանաց. մատնէ 'ի ձեռս դահճաց, տանի 'ի տեղի չարչարանաց, արկանէ 'ի բանդ մահու և կապանաց, կացուցանէ 'ի մէջ խաւարասէր սպասաւորաց, և 'ի տոռունս մեղաց կապէ զիս ։ Եւ արդ ես եղկելիս զի՞նչ լինիցիմ, եթէ ոչ դու տէր՝ օգնեսցես ինձ ։

ՃԺԷ. Տես, տէր, զլալիս և զողբալիս, զպաղատելիս և զեղկելիս. ինձ ողորմեա անօրինիս, և շնոր-

1 Մի օր. չարահատանութիւնք ։ 2 Մի օր. շարժելով 'ի գործս բարութեան ։

հեա ինձ յորդ արտասուս 'ի գիշերի, ծագեա գթութեամբ զնշոյլ շնորհաց, և պարգևեա ողորմութեամբ առաւօտ խաղաղութեան. բաց զխաւարեալ աչս սրտի իմոյ, և բժշկեա զհիւանդ հոգիս իմ. ընկալ զդարձ մեղաւորիս, և մի բարկանար բազմամեղիս տէր իմ. և քանզի անթիւ ունիմ զչարիս, ջնջեա յինէն և տուր ինձ զշնորհս բարեաց։

ԾԺԸ. Համարձակիմ, տէր, աղօթել, և ոչ գիտեմ զհաճոյսն քո. խնդրեմ և ոչ իմանամ զօգտակարն իմ և զհաճոյսն քո. ցոյց ինձ, յայտնեա ինձ զկամս քո բարիս, և ուսո ինձ առնել զպատուիրանս քո։ Զբարիս զոր ոչ իմանամ և խնդրեմ, տուր ինձ. և եթէ ոչ գործեմ զբարիս, բարի արա ինձ. եթէ ոչ խնդրեմ զողորմութիւն, ողորմութիւն արա ինձ. և եթէ հեռանամ 'ի քէն, կոչեա զիս. և թէ ոչ լսեմ գալ, բռնադատեա 'ի քեզ կորզել զիս. և թէ կամիմ և եթէ ոչ կամիմ, դարձո զիս. և եթէ ըմբռնիմ յումեքէ, զերծո զիս. և եթէ զբաղիմ յիրս երկրաւորս, զբաղեցո զիս յիրս հոգևորս. և եթէ ցնդիմ այսր անդր, մի թողուր զիս գնալ մինչև ըմբռնեալ տարցես զիս 'ի տեղի յարկի փառաց քոց։

ԾԺԹ. Տէր իմ և ա͞ծ իմ Յ͞ս Ք͞ս, դու ես իմ օգնական. 'ի ձեռս քո եմ. դու գիտես զօգուտն իմ, օգնեա ինձ. մի թողուր զիս մեղանչել քեզ, զի մոլորական եմ 'ի չար դիւաց. մի թողուր զիս հետևել կամաց իմոց. մի թողուր զիս կորնչել 'ի մեղս իմ. այլ գթա յիս 'ի ստեղծուածս ձեռաց քոց. մի ընկենուր զիս յերեսաց քոց և զհոգիդ ս͞բ մի հաներ յինէն։

ԾԻ. Առ քեզ ապաւինեցայ, բժշկեա զանձն իմ զի մեղայ քեզ. առաջի քո են ա͞մ նեղիչք իմ, և ոչ գոյ ինձ հանգիստ բաց 'ի քէն, տէր. կեցո զիս վասն բազում ողորմութեան քո, քանզի ամենեքեան յարուցեալ են 'ի վերայ իմ, որք խնդրեն զանձն իմ կորուսանել զնա. և զի դու կարող ես և հզօր յա͞մի, փրկեա զիս։

ԾԻԱ. Ո՛վ հայր, տէր, 'ի մեղկեալ սրտոս և 'ի զազրասէր մարմնոս իմ, զի հող եմ և մոխիր. սիրեմ զերկիրս և որ 'ի սմա, և ոչ փափագեմ նայել

յերկինս և որ 'ի նմա . այլ միշտ հեշտանամ 'ի չարիս, և ոչ տեսանեմ զանվախճան զփառսն, և ոչ յիշեմ զառաջինք հարսն զերանելիսն, այլ ընդ տիղմն աշխարհիս թաւալիմ . և ոչ մաքրեալ վերանամ դասիլ ընդ առաքինիս . մոռանամ զերկիւղ դատաստանին, և ոչ դողամ յահագին և դառն տանջանացն՝ որ կայ և պահի մեղաւորաց . և ես ծուլանամ անհոգլինելով 'ի փրկութենէ կենաց : Շնորհեա ինձ, տէր, սուգ և կոծ անհանգիստ և առատ արտասուս ապաշաւանաց :

ԾԺԲ . Մի՛ յանդիմաներ զիս, տէր, յաւուրն յահեղ մեծի ատենին, և մի՛ յայտնի կացուցաներ ամօթալի 'ի հրապարակին, և 'ի տեղի յատենին մի՛ խայտառակեր զիս, և մի՛ կշտամբեր յատեան դատաստանին, և մի՛ թողուր լսել ինձ զոչ գիտեմն՝ զահաւոր բարբառն ահաքեկի՝ եթէ երթայք յինէն 'ի հուր գեհենին, և մի՛ 'ի բաց մերժեր ընդ վատ և ընդ չար ծառային, և 'ի ձեռն անողորմ կապողի մի՛ մատներ զիս, և մի՛ տաս կերակուր որդանցն թունաւորացն 'ի մէջ բորբոքեալ բոցոյն, և մի՛ արկաներ զիս 'ի խաւարն սառամանեաց տարտարոսի : Այլ փրկեա զիս 'ի սաստիկ կայծականց հրոյն, 'ի բոցեղէն գետոց արշաւանաց, 'ի սաստիկ լալագին և 'ի խիստ տանջանացն և յողբոց տարակուսանաց և 'ի կափկափելոյ ատամանցն, և 'ի սառուելի կսկծանացն և 'ի տոչորմանէ խաւարային բոցոյն և 'ի դժնդակ դառնաղէտ խորովելոյն 'ի բոցածաւալ և 'ի շրջապատ հրոյն և 'ի կողկողաձայն և անդադար վայոյն :

ԾԺԳ . Բազմացան, տէր, անօրէնութիւնք 'ի վերայ իմ իբրև զբեռն ծանր աղի և կապարի . բազում ախտ է 'ի հոգիս իմ, և անխտիր եմ 'ի մեղս մարմնոյ, և զանազան չարեօք լցեալ եմ : Բայց այլ ինչ ունիմ վատթարագոյն՝ զանզղջութիւն մարմնոյ իմոյ, որ քան զամենայն չարիս է դառնագոյն . զի յաղօթելն իմում ձանձրանամ, և սաղմոսերգութիւն իմ ոչ իմանամ . խընդրել զերանութիւն պղերգանամ, և յերկիւղէ շնորհաց դատարկանամ . տկարանամ մարմնովս, և արձան աղի սիրտ իմ լինի, և ոչ ծագէ 'ի ներս լոյսն անշիջանելի, և յաւուրն չարի ոչ սարսեալ դողամ :

ՃԺԴ. Շնորհեա ինձ, տէր, երկիւղ սգոյ, և յորդեա առ իս աղբերս արտասուաց, և թեթևացո 'ի ծանր բեռանց իմոց, և աճեցո առ իս վճռ աղօթս : Փութացիր, տէր, և եկ 'ի խնդիր մոլորելոյս՝ որ մերձեալ եմ 'ի վախճան կորստեան. վասն զի խաւարեցայ 'ի լուսոյ, և 'ի սիրոյ պատուիրանաց քոց խափանեցայ. 'ի չար թշնամոյն յաղթեցայ, և նուաղեցայ յերկեղէ քումմէ : Տապալեցայ 'ի չար խորհրդոց չարին, և ցամաքեցայ 'ի շնորհաց արտասուաց սիրոյ քո. խաբեցայ յունայն բանից, և 'ի լուսաւորութ̃է միտաց մոլորեցայ. աղտեղացայ ցանկութ̃ք մեղօք, և զօր վախճանին մոռացայ :

ՃԺԵ. Տարակուսիմ անյոյս լինելով, որ ոչ գոյ հնար ապաշխարութ̃ե. զի մարմնով տկար եմ պակասեալ 'ի զօրութ̃է. ծերացեալ նուաղեցայ, սակայն 'ի քեզ ապաւինիմ, տէր իմ, հասիր յօգնութ̃ի ծանրաբեռնեալ ընկղմելոյս, և ազատեա զիս 'ի չարեաց. որ ազատիչդ ես 'ի յանցանաց :

ՃԺԶ. Ընկալ, տէր ա̃ծ իմ, զդոյզն և զչաղփաղփ աղօթս իմ, որ կամ առաջի քո դատապարտեալ յոյլ և ծոյլ 'ի զգաստութ̃է. մոլորեալ եմ 'ի միտաց լուսաւորութ̃է, և յերկիւղէ ունայնացեալ եմ. բերան իմ այլ ընդ այլ բարբանջէ. աչք իմ պշնու, և միտք իմ զբաղնու. ոչ անզբօս աղօթեմ, և ոչ սրտի մտօք խնդրեմ. ոչ հաւատով առ քեզ գոչեմ, և ոչ երկիւղիւ կարդամ. ոչ արտասուօք հայցեմ, և ոչ դողամ և ոչ սարսեմ յաւուրն պատասխանատուութ̃եց : Եւ արդ, տէր իմ, մի՛ անսար պղերգութ̃ես իմոյ, այլ փութապէս արկ յապաշխարութ̃ի 'ի բովս մաքրութ̃ե հրոյ սրբեալ և զատեալ 'ի մեղաց. մեծաւ ջերմութ̃ք եռացո և յորդորեա յարտասուս և 'ի պաղատանս և 'ի խնդրուածս, և տպաւորեա յիս զառաջին լուսաւորութ̃ե կերպարանն :

ՃԺԷ. Ողորմեա, տէր, մեղաւորիս և բացադիմի յանցաւորիս անթիւ բազմութ̃ե, և դարձո յապաշխարութ̃ի զզերիս վտարանդեալ, և մոյծ զիս յարքունական 'ի փառսն, և առաջնորդեա ինձ զվերին ճանապարհն գալ առ քեզ. զի եթէ ոչ առաջնորդեսցես, ոչ կարացից գալ առ քեզ, զի դու իսկ հրա-

մայեցեր՝ եթէ «Ոչ ոք գայ առ իս, եթէ ոչ Հայր իմ ձգեսցէ զնա»։ Եւ տէր իմ գթած, մի՛ յիշեր զմեղս իմ յաճախ լրբութեանս, և զանց առնես 'ի ծառայէ քումմէ. մի՛ թողուր զիս մնալ 'ի նոյն չարիս և 'ի կայ աշխարհիս պատաղիլ. այլ որպէս տէր ընթացեալ զկնի փախուցեալ ծառայի՝ այսպէս դարձուցանելով զյանցանս իմ թողցես, և արասցես զիս հաղորդս նոցա կամարարաց քոց։

ՃԺԸ. Դարձո, տէր, զցասումն բարկութեան քո յինէն՝ որ բազում մեղօք իմովք տրտմեցուցի զքեզ. ողորմեա ապստամբելոյս 'ի քէն. զանհնարին կոյտս մեղաց իմոց ցրուեա, և ընդ քաղցր լծով ծառայութեան քո բևեռեա զմիտս իմ։

ՃԺԹ. Պարգևեա ինձ, տէր, զլալումն Դաւթի և զողբումն Երեմիայի և զլալումն Պետրոսի և զյորդառատ վտակս արտասուաց կնոջ պոռնկին. զի նստեալ լացից անդադար 'ի տուընջեան և 'ի գիշերի, զի թերևս արժանի եղէց սրբիլ յաղտոյ մեղաց, և 'ի թարախոյ և յորդնալից հոտարձակ վիրաց մեղաց զերծանիլ, և 'ի բազմաբեան չարեացս թեթևանալ և դասիլ ընդ սուրբս քո։

ՃԻ. Ողորմեա ինձ, տէր, մի՛ յամենար. զի առանց վաստակելոյ քո յիս՝ ոչ երբեք գործի առ իս բարի, և ոչ սերմանեալն յանդս հոգւոյ իմոյ բուսանի. զի սերմն քո բարի՝ որ յիս սերմանեցաւ, 'ի չար թշնամոյն քաղեցաւ. և բուսեալն ոմն 'ի տապոյ ջերմութեան չորացաւ, և ոմն 'ի մէջ փշոցն անկեալ հեղձեալ ցամաքեցաւ. մշակելով քո յիս, տէր, լծեա զերկուս եզանց արտասուագոչ ձայնիւ պաղատել առ քեզ յարաժամ, զի արժանի գտայց ողորմութեան քո։

ՃԻԱ. Շնորհեա, տէր, զխաղաղութիւն եկեղեցւոյ քում սրբոյ և ամենայն հաւատացելոց, թագաւորաց և իշխանաց, զօրաց և զօրավարաց, 'ի ճակատու պատերազմաց յաղթել անօրէն բռնաւորաց։

ՃԻԲ. Ողորմեա, տէր, առաջնորդաց եկեղեցւոյ, հայրապետաց և վարդապետաց, երիցանց, սարկաւագաց, դպրաց և ամենայն ուխտի մանկանց եկեղեցւոյ, առնել զիրաւունս և զարդարութիւն յամենայն ժամ, հովուել զժողովուրդս քո, և տքնել վասն հոգւոց նո-

յա սպեղով աՀա ես և մանկունք իմ զոր ետուր ցիս ։

ՃԼԳ. Ողորմեա, Տէր, կարօտելոց և նեղելոց, վտանգելոց և տարակուսելոց, որբոց և այրեաց և տանց Հաւատացելոց, կենդանեաց և ննջեցելոց, և որք ընդ ծայրաբերք են եկեղեցւոյ. աղքատաց, կերակրողաց, ողորմածաց, երկիւղածաց, տնանկաց և Հիւանդաց, նաւորդաց ճանապարՀորդաց, խոստովանողաց, ապաշխարողաց, և անդարձ մեղաւորաց. ողորմեա, Տէր, և դարձո զնոսա յապաշխարութիւն ։

ՃԼԴ. Ողորմեա, Տէր, եղբարց մերոց, ծնողաց և ա̃մ արեան մերձաւորաց իմոց, կրօնաւորաց և միաբանից ճգնաւորաց, և որք ողորմութիւն պարգևեցին մեզ, և որք յանձն արարին զինքեանս յաղօթս մեր յիշել ։ Ողորմեա, Տէր, բարերար բարեաց, և ըստ իւրաքանչիւր պիտոյից բաշխեա առատապէս զշնորՀս Հոգւոյդ սրբոյ 'ի վերայ ամենեցուն ոցա. զարդարեա և միացո 'ի սէր ա̃ծութե̃ քո ։

ՃԼԵ. Աղաչեմ, Տէր, և անկանիմ առաջի սրբոյ խաչի քո. բարեխօսութե̃բ սորա զաղաչանս իմ ընկալ, և զխնդրուածս իմ կատարեա, և զօրութե̃բ սորա զօրացո զիս 'ի կոչումն յոր կոչեցայ և 'ի պատուիրանս քո զոր ուսայ. տուր ինձ զսա 'ի զօրութիւն և 'ի ժուժկալութիւն, 'ի զգաստութիւն և առողջութիւն և պաՀապան անձին իմոյ 'ի տուընջեան և 'ի գիշերի և յա̃մ ժամու, 'ի ննջել և 'ի յառնել, 'ի գնալ և 'ի դադարել, 'ի գործել և 'ի վաստակել, յաղօթել և 'ի պաՀել, և զՀաճոյս կամաց քոց կատարել ։ Սա եղիցի ինձ բերդ ամուր և աշտարակ Հզօր երեսաց թշնամւոյն. զարդարեա զիս սովաւ 'ի զարդ Հոգեղէն և 'ի լոյս իմանալի ։ Եւ յաւուրն յաՀեղ 'ի բարբառ Գաբրիէլի յերևել սրբոյ խաչիդ՝ լուսաւորեա զխաւարեալ Հոգիս, վերանալ լուսով ընդ առաջ քո, խառնել յերամս Հայրապետաց և 'ի դասս մարտիրոսացն և 'ի գունդս Հրեշտակացն ։

ՃԼԶ. Բարեխօսութե̃բ սբ̃ Աստուածածնին և ՅովՀաննու կարապետին և սբ̃յն Ստեփաննոսի նախավկային, և սրբոյն Գրիգորի լուսաւորչին և ա̃մ սբ̃ց վկայիցն, որք միացեալ են 'ի սէր ա̃ծութե̃դ քո, լուր ինձ եղկելոյս և մեղուցելոյս ողորմեա. խնդիր արա ինձ կա-

ըուսնելոյս, և գլորելոյս ձեռնասուն լեռ., և մոլորելոյս առաջնորդեա, և 'ի խաւարէ հանցես զիս 'ի լոյս, և հոգւոյ իմոյ ազատութիւն շնորհեա: Հաստատեա 'ի սէր քո, և բնակեա յերկիւղ քո. զտաճար հոգւոյ իմոյ մաքրեա; և առ իս օթեվանեա: Փակեա զդուռն մեղաց իմոց, և պարսպեա շուրջանակի. պահեա յասոխէ իմմէ, և 'ի մարդոյ չարէ փրկեա, և զարդարեա զիս գործովք առաքինութեան, և պարգևեա ինձ զանձառ երանութիւն քո: Կենդանեաց մերոց ողորմեա, և զհոգիս ննջեցելոց մերոց լուսաւորեալ պայծառացո յարքայութեան երկնից:

ԾԼԷ. Բարեխօս առ քեզ ունիմ զառաքեալսն և զմարգարէսն, զհայրապետս և զվարդապետս և զամ նը մարտիրոսս. լուր աղաչանաց նոցա, և ազատեա զիս 'ի մեղաց իմոց. ընկեա յիս հոգի շնորհաց, և յորդորեա զիս բարիս գործել: Ի ծուլանալն իմում բանաւորեա, և ողորմութեամբ 'ի քեզ կոչեա. խափանեա զիս 'ի չար գործոց, և սերմանեա յիս պտուղ բարեաց. քաջալերեա զիս 'ի նեղութեան, և 'ի վշտի իմում մխիթարեա: Արժանի արա զիս, Տէր, խաչակից լինել քեզ և չարչարակից մինչև ցմահ. որպէս զի 'ի հեշտութենէ աշխարհիս հրաժարեցից, և եղէց երանելեացն դասակից, և աւազակին եղէց հաղորդ, և 'ի դրախտին վայելեցից զկեանս անմահս:

ԾԼԸ. Յօրն իմ վախճանի հրեշտակ բարի ինձ առաքեա՝ քաղցրութեամբ աւանդել զհոգի իմ. ընդ ուղղոյ ճանապարհին գնացից սրբոցն հոգւոյ իմոյ առաջնորդեա, և զգազանն դարանակալ կործանեա. անցո զիս անխռով ընդ օդս խաւարինս, և զերծո 'ի չարաժանիք գազանէն, և ապրեցո աներկիւղ. 'ի կայանս սրբոցն հանգո սպասել և ակն ունել գալստեանն քո:

ԾԼԹ. Յորժամ գաս, Տէր, յերկնից ահեղ փառօք և անթիւ դասուք հրեշտակօք, և զարհուրեալ դողան առհասարակ երկնայինքն և երկրայինքս, ակն արկեալ քո զօրութեանդ՝ սարսեն առհասարակ տարերք ամ յահեղ փառաց դատաւորիդ և անաչառ դատաստանիդ և յանհնարելի պատուհասիդ, յայնմ աւուր և զիս ընկալ, Տէր, ընդ արդարս քո և ընդ կատարեալս, և կարգեա ընդ աջմէ դասուն և պսա-

կեա ընդ ս՟բս քո, և շնորհեա ինձ զկեանսն յաւիտենից, և զանձառ բարիս քո պարգևեա ինձ. և քեզ փառք արարողիդ և պարգևողիդ իմոյ բարեաց։

ՃԽ. Յիշեա, Տէր, զհոգիս ննջեցելոց մերոց յաւուր մեծի քում գալստեանդ, յորժամ գաս յերկնից անճառ փառօք, ահեղ և սոսկալի զօրօք հրանիւթ և հոգեղէն զուարթնօք։ Ահաւոր հուր առաջի քո ընթացեալ տարածանի, կիզէ զլերինս և հալէ զբլուրս, և զարարածս ամ՟ առհասարակ տապալէ. յայնմ աւուր ահեղի ողորմեա ինձ, մարդասէր, զի գինն սուրբ արեան քոյ եմ։ Յորժամ զաղբիւրս ցամաքեցուցանես, զգնացս գետոց դադարեցուցանես, զծովուն անքաւութիւն սպառեսցես, զլուսաւորսն խաւարեցուցանես, փողն ահագին ընդ տիեզերս ամ՟ հնչի և զմեռեալսն զամ՟ զարթուցանէ և զաշխարհս ամ՟ դողացուցանէ, և արարածք ամ՟ յարուցեալ կան առաջի ա՟ծութեդ քո. յայնժամ դնես զդատողական աթոռն, և ընդ քեզ բազմեցուցանես զերկոտասան առաքեալսն. անաչառ դատաստանաւ դատիս և յամենեցունց զարդարութի՟ պահանջես, զկամարարս քո պատուես և զապստամբեալսն 'ի ձայնէ կոչման քո պատուհասես, և զարդարսն փառաւորես. զմարտիրոսս և զոբ վկայսն պսակես. զիմաստունն ս՟բ կուսանսն զարդարես, և յիմար կուսանացն զառագաստին դուռն փակես, և 'ի փառաց երանութեացն հալածես. զօդիսն քո ընտրես, և զայծիսն 'ի քէն 'ի բաց մերժես և 'ի գեհենն առաքես՝ ուր լալումն է արտասուաց և դառնագոյն կսկիծ խիստ ահեղ տանջանացն և հրեղինաց չար որդանցն թունաւորաց կտտողացն գազանաց և կրճումն ատամանց։ Արդ գթա և յիս յայնժամ, մարդասէր Տէր և բարերար փրկիչ. և ողորմութեամբ քով գթասցիս 'ի հոգիս ննջեցելոց մերոց, որք հաւատով 'ի քեզ ննջեցին, զորս յարուցեալ կացուսցես առաջի ահաւոր քո մեծի դատաստանիդ յայնմ տիեզերական ահեղ հրապարակին։ Յորժամ յայտնին ամ՟ գործք բարւոյ և չարի անթաքչելի 'ի մէջ ատենին, յայնմ աւուր ահեղի թողութի՟ շնորհեա յուսացելոց քոց, որք յանուն քո ս՟բ ննջեցին յերկրի, զորս գնեցեր պատուա-

կան արեամբ քո։ Ջնջեա զձեռագիր ամ̃ մկրտելոցս 'ի քեզ, և թող զպարտիս յանցանաց ամ̃ հաւատացելոց զկամայից և զակամայից. ընդ աջմէ քումմէ դասեա, և զերանական զձայնն 'ի լսելիս ամ̃ հաւատացելոց աւետաբերեա ասելով. Եկայք օրհնեալք Հօր իմոյ, ժառանգեցէք զյաւիտենից բարութիւնս։

ԺԽԱ. Որդի, որ բարերար, ընկալ զաղօթս և զխնդրուածս իմ, որ պաղատիմ և հայցեմ 'ի քէն վասն իմ և վասն ամ̃ հաւատացելոց։ Մի՛ դարձուցաներ զերեսս քո 'ի ժտողէս. այլ խոնարհեա յաղաչանս իմ և լուր ինձ, մարդասէր տ̃ր, և ցոյց յիս զսովորական քո մարդասիրութ̃եդ զողորմութ̃ի, և խնայեա 'ի մեղուցեալ ծառայս քո. և կարգեա զիս ընդ աջմէ դասուն, և մի՛ կացուցաներ ընդ ձախմէ ընդ ուլսն՝ որք զայրացուցին զքեզ։ Եւ մի՛ պահանջեր յինէն զանհամար պարտիս յանցանաց իմոց, և մի՛ դատապարտեր զմեղաւորս յայնժամ, և մի՛ յայտնեսցին ծածուկ գործք ամբարշտութեան իմոյ յանցանաց յանաչառ քո յատենին առաջի հրեշտակացն տեսողաց և հրեշտակապետաց և ամենայն սրբոց քոց սիրողաց։ Այլ յաղթեալ 'ի քումմէ մարդասիրութ̃էդ, արասցես այցելութ̃ի և ողորմութ̃ի մեղուցեալ ծառայիս քո, և մի՛ ըստ չար գործոց իմոց հատուցաներ ինձ, և մի՛ հրամայեր ինձ կապեալ ոտիւք և կապեալ ձեռօք հանել 'ի խաւարն արտաքին, ուր լալ աչաց է և կրճտել ատամանց. այլ ըստ քում գթութ̃էդ և բարերարութ̃էդ և անյիշաչարութ̃էդ ողորմեա ինձ բազմամեղիս։ Յայնմ աւուր զերծո զիս յամօթոյն յաւիտենից, և փրկեա զիս յանվախճան տանջանացն, և ապրեցո յաններելի պատուհասէն. և բաց ինձ զդուռն ողորմութ̃ե քո, և մի՛ փակեր զդուռն արքայութ̃ե։

Տէր իմ տէր իմ, ած̃ իմ ած̃ իմ, արժանի արա զիս զանարժանս յաւուրն յայնմիկ երանութ̃եյ և անպակաս պարգևաց լուսոյ և անսպառ յաւիտենից ուրախութ̃եցն և բարեացն հատուցմանցն սրբոց և արդարոցն, զփառս երանելեացն վայելել միշտ։ Զի մտից արժանապէս յառագաստ յանմահ փեսայիդ, և ժառանգեցից զանսպառ բարիսն ընդ ամ̃ սրբս քո.

մաքուր յստակ և 'ոք սրտիւ և համարձակ երեսօք անհատ տեսից զքեզ ընդ հրեշտակս, և ընդ 'ոք սիրողս քո վայելեցից զանհատ զանձառ զերանելի լոյս Երրորդութեդ. և գոհանալով զուգահաւասարեցես զիս ընդ սուրբս քո յօրհնաբանութիւն արժանապէս. միշտ ամենայնին անստուեր լուսով քո պայծառացայց, և անդադար երգով փառաւորեցից և բարեբանեցից և վերօրհնեցից զամենաօրհն զԵրրորդութիւնդ յաւիտենանս յաւիտենից. ամէն:

Բ *

Տէր երկնի և երկրի, իշխան մահու և կենաց, դատաւոր կենդանեաց և մեռելոց, Քս ած, յոյս և ապաւէն հոգւոյս իմոյ. քեզ խոնարհեցուցանեմ զերկրպագութի և մատուցանեմ փառաբանութեամբ մաղթանս: Լուր, պարգևիչ, հայցուածոց իմոց, որ միայնդ ես առանց մեղաց. որ միայնդ ես 'ոք և 'ի 'ոքս հանգուցեալ. որ միայնդ ես գթած և ողորմած: Ողորմեա ինձ ած ըստ մեծի ողորմութե քում, և ըստ բազում գթութե քաւեա զանօրէնութիս իմ: Ստեղծիչ իմ, ողորմեա ինձ և օրհնեա զիս. երևեցո զերեսս քո առ իս և հաշտեա ընդ իս: Աղբերացուցիչ իմ դարձ առ իս, երևեցո զերեսս քո և յիշեա զիս յարքայութե քում: Դարձ առ իս, ած փրկիչ իմ, և դարձո զբարկութիս քո յինէն. մի յաւիտեան բարկանար ինձ, և մի դարձուցաներ զերեսս քո յինէն. մի բարկութե խրատեր զիս, և մի սրտմտութե քով յանդիմաներ զիս. մի յաւիտեան բարկանար ինձ, և մի յիշեր զչարիս իմ, և մի պարտաւորեր զիս ըստ անօրէնութիս իմ. մի յաւիտեան պահեր ոխս, և մի 'ի սպառ բարկանար ինձ: Մի ըստ մեղաց իմոց առներ, և մի ըստ անօրէնութե իմում հատուցաներ ինձ: Մի ընկենուր զիս յերեսաց քոց, և մի խնդրեր զգէր յանցանաց իմոց. մի դատապարտեր զիս, զի ես ինձէն գիտեմ զի անուղղայ եմ և յանցաւոր 'ի մանկու-

* Ի չորեց օրինակաց:

թենէ իմմէ , և անպատասխանի յամենայնի :

Այլ դու դատաւոր հզօր և անօխակալ, որ զպանցանս մեղացն թողեր զանառակ որդւոյն, թող ինձ ըղպարտիս մեղուցեալ և անարժան քո ծառայիս . քանզի քո առատ բարերարութիւդ յորժամ յիս ցուցցես, յայնժամ երևեսցի բարեգթութիւն քո , որ արժանի եմ բիւր տանջանաց . զի զա՜մ զկեանս իմ անառակութեամբ անցուցի , և ոչ կացի 'ի հրամանի քում : Այլ քաղցրացիր ինձ քաղցրութեամբ , քաղցր և բարի Թագաւոր , և հաշտեա ընդ բազմամեղիս : Մի՛ հայիր յիմ անհնազանդութիւնս և 'ի ծուլութիւնս . մի՛ անարգեր զիս և մի՛ թողուր զիս և մի՛ ընդ վայր հարկաներ զիս : Զի թէպէտ և զտաճար Հոգւոյդ սրբոյ ապականեցի իմով ծուլութեամբս և անառակ գնացիւքս , այլ դու գթա յիս ստեղծիչ իմ ողորմած և անյիշաչար : Մի՛ ապականեր զհոգի իմ գեհենաժառանգ այրմամբն յաւիտենականաւ . այլ գթացեալ մարդասիրապէս երկայնամիտ լեր առ իս, և ներեա յանցանաց իմոց , և շնորհեա ինձ ժամանակ զղջմամբ արտասուաց և ապաշխարութեան : Եւ տուր զօրութիւն և իմաստութիւն խորհել զօրէնս քո 'ի տուէ և 'ի գիշերի , գործել զբարի և առնել զարդարութիւն առաջի երեսաց քոց :

Համբառնամ առ քեզ, տ՜ր , զաչս իմ բոլորով սրտիւ իմով . կարդամ առ քեզ , Ք՜ս ա՜ծ միածին Որդի ա՜յ : Որ կամաւոր խոնարհեցար յանձառ փառաց , առեր զկերպարանս ծառայի . և անպարտականդ յաղագս դատապարտութեան մերոյ համբերեցեր մինչև 'ի չարչարանս խաչի և մահու յանձն առեր վասն փրկութեան ստեղծուածոց քոց : Արդ որ այսպիսի սէր ունիս առ ազգս մարդկան , և կամիս զի ա՜մ մարդ կեցցէ և 'ի գիտութիւն ճշմարտութեան եկեսցէ , գթա 'ի բազմամեղս , գթած և մարդասէր տ՜ր , և կամեաց ընդ իմ փրկութիւն , և արա ողորմութիւն ինձ եղկելույս և թշուառականիս , որ առաւել վիրաւորեալ եմ և ողորմելի քան զա՜մ մարդիկ : Զի ոչ մի օր սիրեցի զքեզ 'ի բոլոր սրտէ իմմէ, և ոչ մի ժամ յա՜մ զօրութենէ իմմէ պահեցի զպատուիրանս քո . այլ պղերգութեամբ և զբօսանօք անցուցի զա՜մ ժա-

մանկակս իմ, և աղտեղի խորհրդովք անցուցի զկեանս իմ ։ Աւուրք իմ պակասեցան, և անօրէնութիւնք իմ բարձրացան, և ոչ գոյ ինձ յոյս փրկութեան և տեղի ապաւինի․ բայց միայն յուսացեալ եմ և ապաւինեալ յառատ ողորմութիւն քո, Քս̃ ա̃ծ․

Եւ արդ անկեալ բխմամբ արտասուօք աղաչեմ զքեզ, և հառաչմամբ սրտիւ առ քեզ պաղատիմ․ մինչչև եմ կորուսեալ և մինչև չէ ժամանակ դարձի իմոյ հասեալ՝ շնորհեա ինձ ժամանակ ապաշխարութեան, և յառաջ քան զվախճանն արձակեա զիս 'ի կապանաց մեղաց իմոց, և անտես արա զանթիւ անօրէնութիւնս իմ ։ Որ ա̃մ բարութեանց ես տ̃ր, և իշխանդ ես թողուլ զմեղս, ծածկեա և արա անտեսութիւն անօրէնութեան իմոյ յա̃մ մեծութեան քումմէ ։ Մխիթարեա զվշտացեալ և զտառապեալ զհոգիս իմ․ և արժանի արա զիս յայսմ հետէ ըստ կամաց քոց քաղաքավարել զայլ ևս պանդխտութեան իմոյ ժամանակս։ Եթէ կամիս և եթէ ոչ կամիս՝ բռնադատեա զիս, և մի թողուր զիս 'ի կամս անձին իմոյ, մինչև տարեալ հասուսցես յօթևանս արքայութեանդ երկնից։

Լուր, տ̃ր, աղօթից անարժան ծառայիս քո, և պաղատանաց իմոց ունկն դիր․ որ ասացեր՝ թէ հայցեցէք և գտջիք, բախեցէք և բացցի ձեզ, և այժմ բաց ինձ, տ̃ր, զդուռն ողորմութեան՝ որ ողբալով կարդամ առ քեզ ։ Եւ մի անտես առներ զաղաչանս զմեղուցեալ անձին իմոյ։ Որ ոչ եկիր կոչել զարդարս, այլ զմեղաւորս յապաշխարութիւն ։ Արդ խոնարհեալ անձամբ և բեկեալ սրտիւ և ամօթալից երեսօք անկանիմ առաջի քո և աղաղակեմ առ քեզ․ Հայր, մեղայ յերկինս և առաջի քո․ թէպէտ և ոչ եմ արժանի կոչիլ որդի քո յաղագս ապականեալ վարուց իմոց, և ոչ անուանել զանուն քո պարշելի բերանով իմով, այլ համարձակիմ 'ի գթութիւն քո․ զի գիտեմ զքեզ քաղցր և անոխակալ, բազմախնամ և երկայնամիտ առ արարածս քո ։ Եւ յաղագս այնորիկ ժտելով պաղատիմ առ քեզ․ և յառաջ քան զդնել ատենին աղաչեմ, և նախ քան զփակել դրանն ապաշխարութեան և հատանել անդարձ վճռին զարտասուս իմ արկանեմ առաջի անոխակալ գթութեանդ քո ; ողոր-

մած տէր երկայնամիտ, քաղցր և անյիշաչար. մի՛ ընդ քանքարաթաքոյցսն դատապարտեր զիս, և մի՛ ընդ յիմար կուսանացն փակեր զդուռն արքայութե՟ քո. մի՛ ընդ չար և ընդ վատ ծառայիցն լծակցեր զիս, և մի՛ ընդ անհաւատսն և ընդ հերձուածողսն դներ զբաժին իմ. մի՛ ընդ պոռնիկսն և ընդ չարագործսն կորուսաներ զիս, և մի՛ ընդ ախտաւորսն և ընդ շաղախեալսն հոգւով հաներ զիս 'ի կենացն: Այլ զերծո զիս յանեզրական[1] տանջանացն, և ապրեցո յանհանգիստ ալէկոծութեց, և փրկեա յանմահ մահուանէն, և ազատեա յաւիտենական ամօթոյն. զերծո 'ի միշտ լալոյն և հանապազորդ ողբալոյն: Մի՛ տարագիր առներ և մի՛ մերժեր զիս 'ի քո դասուցն և յերանաւէտ կենացն. մի՛ անբաժին հաներ զիս 'ի հայրենի ժառանգութենէն, և մի՛ զրկեր զիս յերկնաւոր հարսանեացն, և մի՛ կարօտ պահեր զիս 'ի քո անճառելի տեսլենէդ: Այլ շնորհեա ինձ ընդ արժանաւորսն և ընդ կատարեալ ոգիսն վերանալ լուսեղէն ամպովք ընդ առաջ քո յօդս, և պարզ երեսօք և աչալրջութե՟ կալ առաջի քո, տ՟ր: Եւ վասն քո փառաւորեալ և հզօր և ահեղ թագաւորութեդ մի՛ մոռաներ 'ի դատաստան ընդ ծառայիս քո, և մի՛ հատուցաներ ինձ ըստ անօրէնութես, և մի՛ ամաչեցուցաներ զիս առաջի անթիւ և ահեղ բանականաց քոց. այլ ողորմեա ինձ զի ոչ ոք է հակառակ քեզ. և պարգեեա ինձ զքո արքայութիդ: Ընդ ն՟րս քո դասեա և ընդ արդարսն պսակեա. ընդ սիրելիսն քո օրհնեա և ընդ կամարարս կամաց քոց յարազուարճ ուրախութիսն ուրախացո. և առատապարգև փառօք փառաւորեա զիս, տէր, 'ի լուսեղէն երամս արդարոց՝ ընդ նոսին հանգչել 'ի վերինդ Երուսաղէմ յանստուեր և յա՟ծակեաց ուրախութիդ. զի ընդ նոսին համաձայնեալ փառաւորեցից զամենանա՟ք զԵրրորդութիդ յաւիտեանս յաւիտենից. ամէն:

1 Մի օրինակ յանէզր. երկու օր. յանղլէզծ:

Գ. *

Տէր իմ Յս Քս, մի մտանէր 'ի դատաստան ընդ ծառայիս քո, և մի տար այլում զդատաստանս իմ. այլ 'ի փառաւոր բեմին մերձենալ զիս արժանաւորեա. քանզի զոր ած դատի, ողորմութեան արժանի լինի. Լսելով զայս 'ի հանձարեղաց և յիմաստնոց և 'ի սրբոց առաքելոցն զայսոսիկ ասեմ. զի ամ ոք որ զթագաւոր տեսանէ, թէպէտ և մեղուցեալ է՝ ոչ մեռանի. Աղաչեմ զքեզ, ստեղծիչ իմ և փրկիչ իմ, մի զիս 'ի նեղելն իմում թշուառացուցաներ. մի խորտակելով չարչարեր զիս. Քանզի եթէ արժանապէս ըստ գործոց այց արասցես ինձ, յերկոցունց կողմանց կազմի ինձ որոգայթ կորստեան. զի յորժամ յիշեմ զգործս իմ զանըմբերելի, դողումն 'ի վերայ իմ անկանելով խորտակեն զիս, և սառսուռ դժնեայ ունի զիս յորժամ վստահանամ հատուցումն ընդունել'ի հանդստեանն՝ որ առաջի կայ, և ոչ կարեմ համբերել. Եւ յառաջագոյն յայտ առնէ ատամանց իմոց կրճտումն, որ անդ առաջի կայ ինձ ցաւքն և սառսուռքն. Տես, տր, զխոնարհութիւն իմ և գթա յիս. Աղաչեմ զքեզ, միածին Որդի այ, արժանի արա զիս թողութեան մեղաց, և մի հատուցաներ ինձ ըստ վարձուց վաստակոց իմոց. քանզի եթէ զանօրէնութիւն իմ պահեսցես, ո՞վ տևեսցէ քեզ. և եթէ ըստ մեծութեան քում հատուցանես մեզ [1] ողորմութիւն, արժանի գտանիմք 'ի դատաստանի քում. քանզի ամ բերան խցցի և դատապարտեսցի ամ աշխարհ առաջի այ. Արդ ոչ եթէ զքո շնորհսդ արհամարհելով յառաջ բերեմ զայսոսիկ, այլ զգրեալսն խօսիմ, երկայնամիտ Քս. Զի՞նչ օգուտ իցէ քեզ 'ի մարմնոյ իմոյ, եթէ 'ի բորբոքեալ հուրն առաքեսցես. արա ընդ իս ըստ ողորմութեան քում զգթութին քո, և ծանիցի

* Ցերից օրինակաց.

1 Երկու օր. ինչ. ողորմութիւն փոխանակ է ստ. ամենեւեան. և գիր արժանի արա փառնել 'ի դէմ 'ի դատաստանի.

ամենեցուն շնորհք քո և երկայնմտութիւն քո։ Եթէ զդատաստան ամենայն երկրի առնես, ո՞չ պատուիրանք քո յայտնեցին, ոչ ապրեցի մի 'ի հազարաց, և 'ի բիւրոց ոչ փրկեցին։ Այլ զի՞նչ հոգալով խօսիմ զայս ես տառապեալս. աղաչեմ, փրկիչ, ոչ զի զուգեսցես զմեղաւորսն ընդ արդարսն. քեզ մաղթեմ, բարերարութեան Որդի, զի արժանի արասցես զգթութիւն քո սփռել 'ի մեզ, յիս և 'ի մերձաւորս իմ։ Դարձեալ աղաչեմ և ոչ դադարեցից երբէք յայսցանէ. զի թէ ոչ զգուշութիւն քո ձգեսցես 'ի մեզ, ոչ ոք կարող է տեսանել զկեանս։

Աստուած, գթութեամբդ քո աղաչեմ զքեզ, մի կացուցաներ զիս ընդ ուլսն 'ի ձախմէ քումմէ՝ որք զայրացուցին զքեզ, և մի ասիցես թէ ոչ գիտեմ զքեզ. այլ տուր ինձ յաղագս գթութեան քո մշտնջենաւոր ողբումն և զղջումն. նուաստացո զսիրտ իմ և սրբեա զսա, զի լիցի տաճար շնորհաց քոց։ Զի թէպէտ մեղաւոր եմ և ամբարիշտ, սակայն հանապազ զդրունըս քո բախեմ. զի թէ դանդաղկոտ եմ և պղերգ, սակայն զճանապարհս քո կամիմ գնալ։ Տէր իմ և փրկիչ, ընդէ՞ր զիս լքանես. գթա յիս, վասն զի դու միայն ես աւանդ մեղաց. հան զիս 'ի տղմոյ անօրէնութեան իմոյ, զի մի ընկլայց յաւիտեան։ Փրկեա զիս 'ի բերանոյ թշնամոյն իմոյ, զի ահա իբրև զառիւծ մռնչէ կամելով կլանել զիս. զարթո զզօրութիւն քո, և եկեսցէ կեցուցանել զիս. փայլատակեա զփայլատակունս քո, և քայքայեա զզօրութիւն նորա. երկիցէ և զարհուրեսցի յերեսաց քոց, քանզի տկար է և ոչ ունի զօրութիւն կալ առաջի քո։ Եւ արժանաւորեա զիս ընդ փրկեալսն խաչիւ և արեամբ քով գոհանալ և փառաւորել զքեզ ընդ Հօր և ընդ սուրբ Հոգւոյն այժմ և միշտ և յաւիտեանս յաւիտենից. ամէն։

Դ

Տէր ա̃ծ զօրութեանց, աղաչեմք զքեզ՝ որ մեծդ ես և ահաւոր, ահեղ և սքանչելի, անեղ և անհասանելի, անբաւ և անբովանդակելի և ամենևին անքննե-

լի և անիմանալի և անհաս, 'ի վեր քան զա̃մ և ամենեցունց օրհնեալ գովեալ և փառաւորեալ, անյիշաչար գթած և մարդասէր: Քանզի դու միայն ես Հայր ամենակալ և արարիչ ա̃մ լինելութեց, զորս 'ի չգոյէ գոյացուցեր, և ունիս 'ի հաստատութեան. և դու, տ̃ր, որ տէր ես ա̃մի, և ա̃մ արարածք քոյով հրամանաւդ կառավարին: Դու ես ամենեցուն օգնական և պահապան. դու բժշկես զվիրաւորեալսն 'ի բանսարկուէն, և առողջացուցանես զհիւանդացեալս մեղօք. ընդունիս զխոստովանողսն և զապաշխարողս, և քաւես և սրբես զյանցանսն մեղուցելոց. Վ̃ս որոյ ես կարի լի եմ մեղօք, առ քեզ անկանիմ յարաժամ, աղաչեմ և մաղթեմ և խնդրեմ 'ի քէն զթողութի̃. դու նայեա յիս, փրկիչ, մարդասիրութե̃ քով, և ընկալ գթութե̃ քով զգերեալս 'ի չար թշնամոյն: Խոնարհեա, տ̃ր, 'ի մաղթանս իմ, և բժշկեա զհոգւոյս իմոյ զխոցոտուածս յաներևոյթ նետից սատանայի:

Տես, տ̃ր, զտառապանս քո ծառայիս, և շնորհեա զթողութի̃ անթիւ յանցանաց իմոց զոր մեղայ: Լուր, տ̃ր, ձայնի ողբալոյս և ցաւագին պաղատանացս. զի կարօտ եմ շնորհի քո և ողորմութե̃դ: Թող, տէր, զյանցանս իմ բազմամթեր և զմեղս իմ զանհամարս մինչ չև հասեալ իցէ դատաստանի քո. փարատեա յինէն զանզեղջութե̃ խաւարն՝ որ տարածեալ կայ 'ի սիրտս, և զեղջ հաստատեա. յորդորեա զիս յարտասուս, և 'ի զեղջ ապաշխարութե̃ հանապազ: Շնորհեա ինձ, փրկիչ, զղջումն արտասուաց մարգարէին՝ որով զմահճիճս թանայր. զի և ես զվէր հոգւոյս իմոյ լուացից հեծեծանօք և պաղատանօք և ողբագին արտասուօք: Գիտեմ, տ̃ր, զի յանցանք իմ անթիւ են առաջի քո, մարդասէր. այլ և անչափ են ողորմութի̃ք քո 'ի վերայ ապաշխարողաց: Ընդ որս և ինձ ողորմեա, ինձ որ առաւել եմ անօրինեալ քան զա̃մ մարդ: Եւ չեմ արժանի առ քեզ 'ի վեր հայել, բարերար, 'ի բազմութենէ պատահեալ յանցանացն զոր գործեցի: Այլ դու, տ̃ր, հայեաց 'ի վարանումն տարակուսանաց իմոց յերկեղէ գեհենին, և մի անզեղջ և անապաշաւ հաներ զիս յաշխարհէս լի յանցանօք:

Այլ 'ի վայրս տարժանելի վաստակոց և 'ի ջան կա-տարեալ ապաշխարութեան առ զհօգի իմ յինէն, և խառնեա 'ի թիւ ճշմարիտ ապաշխարողացն արդա-րացելոցն՝ որ 'ի փառս քո վայելեն ։ Ոչ վասն իմ ինչ վարուց եմ արժանի ողորմութեան քո, մարդասէր. այլ վ՟ն գթութեան քո, տ՟ր, շնորհեա ինձ թողութիւն յանցանաց իմոց, և օգնեա 'ի մարտի թշնամւոյն ծուլացելոյ ծառայիս քո, բարերար. քանզի բազում անգամ խոստովանեցայ և ապաշխարեմ, և անօրէն թշնամին ժամ 'ի ժամ ձգելով կորոյս զկարողութեան ժամանակն ապաշխարելոյ ։

Եւ արդ եթէ ոչ դու, տէր, օգնեսցես և շնոր-հիւ քո զօրացուսցես, չէք ինձ 'ի գործոց իմոց 'ի փրկութի՟. զի թէպէտ և բանամ զբերան իմ յաղօթել, և զձեռս իմ առ քեզ 'ի վեր համբառնամ յաղա-չանս, անդրէն զսիրտ իմ սատանայ պատրուակէ, և զմիտս մերժէ յա՟ծային յերկեղէ, զանազան և զազիր խորհրդովք զբաղեցուցանէ և ընդունայն հանէ յա-ղօթիցն ։ Վ՟ն որոյ զփրկիչդ իմ աղաչեմ, փրկեա զիս 'ի պատերազմէս յայսմանէ. քանզի կարի նեղեալ եմ 'ի նենգութէ թշնամւոյն՝ որ երբեմն 'ի հաւատս յոր-դորէ յօժարամիտ սրտիւ խնդութբ՟, և երբեմն 'ի մեղս ընկենու ոչ յիշելով զբոց գեհենոյն. զոր ոչ զգա-ցի, և ոչ լալով լուացի զմիրաց յանցանաց իմոց փր-տութիւս ։ Որ չարախոցս եմ վիրաւորեալ յանթիւ մեղացս բազմութէ, և ոչ բաւեմ ապրել ծուլացելով անձամբս. այլ յողորմութի քո յուսալով համար-ձակիմ առ քեզ յաղօթել բարերարիդ և մարդասի-րիդ տ՟յ ։ Ընկալ զաղաչանս մեր ցաւագինս, և պաղա-տանս իմ աղերսաբերս. և շնորհեա ինձ զզջումն ար-տասուաց ապաշխարութեան, որով զմեղս իմ քաւե-ցից, և զարարիչդ իմ հաշտեցուցից մաղթանօք ։ Ահա, տ՟ր, սիրտ իմ գելու յանթիւ մեղացս վարա-նաց, և որովայն իմ հեծէ առ քեզ ողբալով. անձն իմ հեծէ և աչք իմ բաղձայ արտասուաց յիշելով զմեղաց իմոց զբազմութիւն ։ Զի լի եմ անթիւ յան-ցանօք և անհամար գործովք անօրէնութբ՟. և առ-քաւիչդ իմ խոստովանիմ ողբալով, քանզի մ՟ծ են գթութեց և տ՟ր ողորմութեց, գթա յամենայն մե-

ՃԺԴ. Շնորհեա ինձ, տէր, երկիւղ սգոյ, և յորդեա առ իս աղբերս արտասուաց, և թեթևացո 'ի ծանր բեռանց իմոց, և ածեցո առ իս վնք աղօթս : Փութացիր, տէր, և եկ 'ի խնդիր մոլորելոյս՝ որ մերձեալ եմ 'ի վախճան կորստեան. վասն զի խաւարեցայ 'ի լուսոյ, և 'ի սիրոյ պատուիրանաց քոց խափանեցայ. 'ի չար թշնամոյն յաղթեցայ, և նուաղեցայ յերկեղէ քումմէ : Տապալեցայ 'ի չար խորհրդոց չարին, և ցամաքեցայ 'ի շնորհաց արտասուաց սիրոյ քո. խաբեցայ յունայն բանից, և 'ի լուսաւորութենէ մտաց մոլորեցայ. աղտեղացայ ցանկութ̃ք մեղօք, և զօր վախճանին մոռացայ :

ՃԺԵ. Տարակուսիմ անյոյս լինելով, որ ոչ գոյ հնար ապաշխարութեան. զի մարմնով տկար եմ պակասեալ 'ի զօրութենէ. ծերացեալ նուաղեցայ, սակայն 'ի քեզ ապաւինիմ, տէր իմ, հասիր յօգնութիւն ծանրաբեռնեալ ընկղմելոյս, և ազատեա զիս 'ի չարեաց. որ ազատիչդ ես 'ի յանցանաց :

ՃԺԶ. Ընկալ, տէր ա̃ծ իմ, զդոյզն և զշաղփաղփ աղօթս իմ՝ որ կամ առաջի քո դատապարտեալ յոյլ և ծոյլ 'ի զգաստութենէ. մոլորեալ եմ 'ի մտաց լուսաւորութենէ, և յերկիւղէ ունայնացեալ եմ. բերան իմ այլ ընդ այլ բարբանջէ. աչք իմ պշնու, և միտք իմ զբաղնու. ոչ անզբօս աղօթեմ, և ոչ սրտի մտօք խնդրեմ. ոչ հաւատով առ քեզ գոչեմ, և ոչ երկիւղիւ կարդամ. ոչ արտասուօք հայցեմ, և ոչ դողամ և ոչ սարսեմ յաւուրն պատասխանատուութեանց : Եւ արդ, տէր իմ, մի՛ անսար պղերգութեանս իմոյ, այլ փութապէս արկ յապաշխարութիւն 'ի բովս մաքրութեան հրոյ սրբեալ և զատեալ 'ի մեղաց. մեծաւ ջերմութ̃ եռացո և յորդորեա յարտասուս և 'ի պաղատանս և 'ի խնդրուածս, և տպաւորեա յիս զառաջին լուսաւորութեան կերպարանն :

ՃԺԷ. Ողորմեա, տէր, մեղաւորիս և բացադիմի յանցաւորիս անթիւ բազմութեան, և դարձո յապաշխարութիւն զգերիս վտարանդեալ, և մոյծ զիս յարքունական 'ի փառսն, և առաջնորդեա ինձ զվերին ճանապարհն գալ առ քեզ. զի եթէ ոչ առաջնորդեսցես, ոչ կարացից գալ առ քեզ, զի դու իսկ հրա-

մայեցեր՝ եթէ «Ոչ ոք գայ առ իս, եթէ ոչ Հայր իմ ձգեսցէ զնա»։ Եւ տէր իմ գթած, մի յիշեր զմեղս իմ յաճախ լրբութեանս, և զանց առնես 'ի ծառայէ քումմէ. մի թողուր զիս մնալ 'ի նոյն չարիս և 'ի կայ աշխարհիս պատաղիլ. այլ որպէս տէր ընթացեալ զկնի փախուցեալ ծառայի՝ այսպէս դարձուցանելով զյանցանս իմ թողցես, և արասցես զիս հաղորդս սրբոց կամարարաց քոց։

ԾԻԸ. Դարձո, տէր, զցասումն բարկութեան քո յինէն՝ որ բազում մեղօք իմովք տրտմեցուցի զքեզ. ողորմեա ապստամբելոյս 'ի քէն. զանհնարին կոյտս մեղաց իմոց ցրուեա, և ընդ քաղցր լծով ծառայութեան քո բևեռեա զմիտս իմ։

ԾԻԹ. Պարգևեա ինձ, տէր, զլալումն Դաւթի և զողբումն Երեմիայի և զլալումն Պետրոսի և զյորդառատ վտակս արտասուաց կնոջ պոռնկին. զի նստեալ լացից անդադար 'ի տուընջեան և 'ի գիշերի, զի թերևս արժանի եղէց սրբիլ յաղտոյ մեղաց, և 'ի թարախոյ և յորդնալից հոտարձակ վիրաց մեղաց զերծանիլ, և 'ի բազմաբեռն չարեաց թեթևանալ և դասիլ ընդ սուրբս քո։

ԾԼ. Ողորմեա ինձ, տէր, մի յամենար. զի առանց վաստակելոյ քո յիս՝ ոչ երբէք գործի առ իս բարի, և ոչ սերմանեալն յանդս հոգւոյ իմոյ բուսանի. զի սերմն քո բարի՝ որ յիս սերմանեցաւ, 'ի չար թշնամոյն քաղեցաւ. և բուսեալն ոմն 'ի տապոյ ջերմութեան չորացաւ, և ոմն 'ի մէջ փշոցն անկեալ հեղձեալ ցամաքեցաւ. մշակելով քո յիս, տէր, լծեա զերկու աչս եզանց արտասուագոչ ձայնիւ պաղատել առ քեզ յարաժամ, զի արժանի գտայց ողորմութեան քո։

ԾԼԱ. Շնորհեա, տէր, զխաղաղութիւն եկեղեցւոյ քում սրբոյ և ամ հաւատացելոց, թագաւորաց և իշխանաց, զօրաց և զօրավարաց, 'ի ճակատու պատերազմաց յաղթել անօրէն բռնաւորաց։

ԾԼԲ. Ողորմեա, տէր, առաջնորդաց եկեղեցւոյ, հայրապետաց և վարդապետաց, երիցանց, սարկաւագաց, դպրաց և ամ ուխտի մանկանց եկեղեցւոյ, առնել զիրաւունս և զարդարութիւն յամ ժամ, հովուել զժողովուրդս քո, և տքնել վասն հոգւոց նո-

ցա տեսելով ահա ես և մանկունք իմ զոր ետուր ցիս։

ՃԼԳ. Ողորմեա, Տ̃ր, կարօտելոց և նեղելոց, վտանգելոց և տարակուսելոց, որբոց և այրեաց և տանց հաւատացելոց, կենդանեաց և ննջեցելոց, և որք ընդ ծայրաբերք են եկեղեցւոյ. աղքատաց, կերակրողաց, ողորմածաց, երկիւղածաց, տնանկաց և հիւանդաց, նաւորդաց ճանապարհորդաց, խոստովանողաց, ապաշխարողաց, և անդարձ մեղաւորաց. ողորմեա, Տէր, և դարձո զնոսա յապաշխարութիւն։

ՃԼԴ. Ողորմեա, Տէր, եղբարց մերոց, ծնողաց և ա̃մ արեան մերձաւորաց իմոց, կրօնաւորաց և միաբանից ճգնաւորաց, և որք ողորմութի̃ն պարգևեցին մեզ, և որք յանձն արարին զինքեանս յաղօթս մեր յիշել։ Ողորմեա, Տէր, բարերար բարեաց, և ըստ իւրաքանչիւր պիտոյից բաշխեա առատապէս զշնորհս Հոգւոյդ սրբոյ 'ի վերայ ամենեցուն սոցա. զարդարեա և միացո 'ի սէր ա̃ծութե̃ն քո։

ՃԼԵ. Աղաչեմ, Տէր, և անկանիմ առաջի սրբոյ խաչի քո. բարեխօսութե̃բ սորա զաղաչանս իմ ընկալ, և զխնդրուածս իմ կատարեա, և զօրութե̃բ սորա զօրացո զիս 'ի կոչումնս յոր կոչեցայ և 'ի պատուիրանս քո զոր ուսայ. տուր ինձ զսա 'ի զօրութի̃ն և 'ի ժուժկալութի̃ն, 'ի զգաստութի̃ն և առողջութի̃ն և պահապան անձին իմոյ 'ի տուընջեան և 'ի գիշերի և յա̃մ ժամու, 'ի ննջել և 'ի յառնել, 'ի գնալ և 'ի դադարել, 'ի գործել և 'ի վաստակել, յաղօթել և 'ի պահել, և զհաճոյս կամաց քոց կատարել։ Սա եղիցի ինձ բերդ ամուր և աշտարակ հզօր երեսաց Թշնամոյն. զարդարեա զիս սովաւ 'ի զարդ հոգեղէն և 'ի լոյս իմանալի։ Եւ յաւուրն յահեղ 'ի բարբառ Գաբրիէլի յերևել սրբոյ խաչիդ՝ լուսաւորեա զխաւարեալ հոգիս, վերանալ լուսով ընդ առաջ քո, խառնիլ յերամս հայրապետաց և 'ի դասս մարտիրոսացն և 'ի գունդս հրեշտակացն։

ՃԼԶ. Բարեխօսութե̃բ Ս̃բ Ա̃ծածնին և Յովհաննու կարապետին և Ս̃բյն Ստեփաննոսի նախավկային, և սրբոյն Գրիգորի լուսաւորչին և ա̃մ Ս̃բց վկայից, որք միացեալ են 'ի սէր ա̃ծութեն̃դ քո, լուր ինձ եղկելոյս և մեղուցելոյս ողորմեա. խնդիր արա ինձ կա

ըստանելոյս , և գլորելոյս ձեռնտու լեր , և մոլորելոյս առաջնորդեա , և 'ի խաւարէ հանցես զիս 'ի լոյս , և հոգւոյ իմոյ ազատութիւն շնորհեա ։ Հաստատեա 'ի սէր քո , և բեւեռեա յերկիւղ քո . զտաճար հոգւոյ իմոյ մաքրեա , և առ իս օթեվանեա ։ Փակեա զդուռն մեղաց իմոց , և պարսպեա շուրջանակի . պահեա յասախէ իմմէ , և 'ի մարդոյ չարէ փրկեա , և զարդարեա զիս գործովք առաքինութեան , և պարգեւեա ինձ զանձառ երանութիւն քո ։ Կենդանեաց մերոց ողորմեա , և զհոգիս ննջեցելոց մերոց լուսաւորեալ պայծառացո յարքայութեան երկնից ։

ԾԼԷ . Բարեխօս առ քեզ ունիմ զառաքեալսն և զմարգարէսն , զհայրապետս և զվարդապետս և զա͞մ նս մարտիրոսս . լուր աղաչանաց նոցա , և ազատեա զիս 'ի մեղաց իմոց . անկեա յիս հոգի շնորհաց , և յորդորեա զիս բարիս գործել ։ Ի ծուլանալն իմում բանաւորեա , և ողորմութիւն 'ի քեզ կոչեա . խափանեա զիս 'ի չար գործոց , և սերմանեա յիս պտուղ բարեաց . քաջալերեա զիս 'ի նեղութեան , և 'ի վշտի իմում մխիթարեա ։ Արժանի արա զիս , տէր , խաչակից լինել քեզ և չարչարակից մինչև ցմահ . որպէս զի 'ի հեշտութեանց աշխարհիս հրաժարեցից , և եղէց երանելեացն գաւակից , և աւազակին եղէց հաղորդ , և 'ի դրախտին վայելեցից զկեանս անմահս ։

ԾԼԸ . Յօրն իմ վախճանի հրեշտակ բարի ինձ առաքեա՝ քաղցրութեամբ աւանդել զհոգի իմ . ընդ ուղղոյ ճանապարհին գնացից սրբոցն հոգւոյ իմոյ առաջնորդեա , և զգազանն դարանակալ կործանեա . անցո զիս անխռով ընդ օդս խաւարինս , և զերծո 'ի չարաժամնի գազանէն , և ապրեցո աներկիւղ . 'ի կայանս սրբոցն հանգո սպասել և ակն ունել գալստեանն քո ։

ԾԼԹ . Յորժամ գաս , տէր , յերկնից ահեղ փառօք և անթիւ դասուք հրեշտակօք , և զարհուրեալ դողան առ հասարակ երկնայինքն և երկրայինքս , ակն արկեալ քո զօրութեանդ՝ սարսեն առ հասարակ տարերք ա͞մ յահեղ փառաց դատաւորիդ և անաչառ դատաստանիդ և յաննկարելի պատուհասիդ , յայնմ աւուր և զիս ընկալ , տէր , ընդ արդարս քո և ընդ կատարեալս , և կարգեա ընդ աջմէ դասուն և պա-

կեա ընդ Տ̃ր քո, և շնորհեա ինձ զկեանսն յաւիտենից, և զանձառ բարիս քո պարգևեա ինձ. և քեզ փառք արարողիդ և պարգևողիդ իմոյ բարեաց։

ԾԽ. Յիշեա, Տ̃ր, զհոգիս ննջեցելոց մերոց յաւուր մեծի քում գալստեանդ յորժամ գաս յերկնից անձառ փառօք, ահեղ և սոսկալի զօրօք հրանիւթ և հոգեղէն զուարթնօք։ Ահաւոր հուր առաջի քո ընթացեալ տարածանի, կիզէ զլերինս և հալէ զբլուրս, և զարարածս ա̃մ առհասարակ տապալէ. յայնմ աւուր ահեղի ողորմեա ինձ, մարդասէր, զի գին սուրբ արեան քոյ եմ։ Յորժամ զաղբիւրս ցամաքեցուցանես, զգնացս գետոց դադարեցուցանես, զծովուն անքաւութիւն սպառեսցես, զլուսաւորսն խաւարեցուցանես, փողն ահագին ընդ տիեզերս ա̃մ հնչի և զմեռեալսն զա̃մ զարթուցանէ և զաշխարհս ա̃մ դողացուցանէ, և արարածք ա̃մ յարուցեալ կան առաջի ա̃ծութեանդ քո. յայնժամ դնես զդատողական աթոռն, և ընդ քեզ բազմեցուցանես զերկոտասան առաքեալսն. անաչառ դատաստանաւ դատիս և յամենեցունց զարդարութիւն պահանջես, զկամաբարս քո պատուես և զապստամբեալսն 'ի ձայնէ կոչման քո պատուհասես, և զարդարսն փառաւորես. զմարտիրոսս և զս̃բ վկայսն պսակես. զիմաստունն ս̃բ կուսանսն զարդարես, և յիմար կուսանացն զառագաստին դուռն փակես, և 'ի փառաց երանութեացն հալածես. զօդիսն քո ընտրես, և զայծիսն 'ի քէն 'ի բաց մերժես և 'ի գեհենն առաքես՝ ուր լալումն է արտասուաց և դառնագոյն կսկիծ խիստ ահեղ տանջանացն և հրեղինաց չար որդանցն թունաւորաց կտտողացն գազանաց և կրճումն ատամանց։ Արդ գթա և յիս յայնժամ, մարդասէր Տ̃ր և բարերար փրկիչ. և ողորմութեամբ քով գթասցիս 'ի հոգիս ննջեցելոց մերոց, որք հաւատով 'ի քեզ ննջեցին, զորս յարուցեալ կացուսցես առաջի ահաւոր քո մեծի դատաստանիդ յայնմ տիեզերական ահեղ հրապարակին։ Յորժամ յայտնին ա̃մ գործք բարւոյ և չարի անթաքչելի 'ի մէջ ատենին, յայնմ աւուր ահեղի թողութիւն շնորհեա յուսացելոց քոց, որք յանուն քո Տ̃ր ննջեցին յերկրի, զորս գնեցեր պատուա-

կան արեամբ քո։ Ջնջեա զձեռագիր ամ մկրտելոցս 'ի քեզ, և թող զպարտիս յանցանաց ամ հաւատացելոց զկամայից և զակամայից. ընդ աջմէ քումմէ դասեա, և զերանական զձայնն 'ի լսելիս ամ հաւատացելոց աւետաբերեա ասելով. Եկայք օրհնեալք Հօր իմոյ, ժառանգեցէք զյաւիտենից բարութիւն։

ՃԽԱ. Արդ, տր բարերար, ընկալ զաղօթս և զխընդրուածս իմ, որ պաղատիմ և հայցեմ 'ի քէն վասն իմ և վասն ամ հաւատացելոց։ Մի դարձուցաներ զերեսս քո 'ի ժտողէս. այլ խոնարհեա յաղաչանս իմ և լուր ինձ, մարդասէր տր, և ցոյց յիս զսովորական քո մարդասիրութեանդ զողորմութիւն, և խնայեա 'ի մեղուցեալ ծառայս քո. և կարգեա զիս ընդ աջմէ դասուն, և մի կացուցաներ ընդ ձախմէ ընդ ուլուն՝ որք զայրացուցին զքեզ։ Եւ մի պահանջեր յինէն զանհամար պարտիս յանցանաց իմոց, և մի դատապարտեր զմեղաւորս յայնժամ, և մի յայտնեսցին ծածուկ գործք ամբարշտութեան իմոյ յանցանաց յանաչառ քո յատենին առաջի հրեշտակացն տեսողաց և հրեշտակապետաց և ամենայն սրբոց քոց սիրողաց։ Այլ յաղթեալ 'ի քումմէ մարդասիրութենէդ, արասցես այցելութիւն և ողորմութիւն մեղուցեալ ծառայիս քո, և մի ըստ չար գործոց իմոց հատուցաներ ինձ, և մի հրամայեր ինձ կապեալ ոտիւք և կապեալ ձեռօք հանել 'ի խաւարն արտաքին, ուր լալ աչաց է և կրճտել ատամանց. այլ ըստ քում գթութեանդ և բարերարութեանդ և անյիշաչարութեանդ ողորմեա ինձ բազմամեղիս։ Ցայնմ աւուր զերծո զիս յամօթոյն յաւիտենից, և փրկեա զիս յանվախճան տանջանացն, և ապրեցո յաններելի պատուհասէն. և բաց ինձ զդուռն ողորմութեան քո, և մի փակեր զդուռն արքայութեան։

Տէր իմ տէր իմ, ած իմ ած իմ, արժանի արա զիս զանարժանս յաւուրն յայնմիկ երանութեանց և անպակաս պարգևաց լուսոյ և անսպառ յաւիտենից ուրախութեանցն և բարեացն հատուցմանցն սրբոց և արդարոցն, զփառս երանելեացն վայելել միշտ։ Զի մտից արժանապէս յառագաստ յանմահ փեսայիդ, և ժառանգեցից զանսպառ բարիսն ընդ ամ սրս քո.

մաքուր յստակ և նոր սրտիւ և համարձակ երեսօք անհատ տեսից զքեզ ընդ հրեշտակս, և ընդ նոր սիրողս քո վայելեցից զանհաս զանճառ զերանելի լոյս Երրորդութե̃դ. և գոհանալով զուգահաւասարեսցես զիս ընդ սուրբս քո յօրհնաբանութի̃ս արժանապէս. միշտ ա̃ծայինն անստուեր լուսով քո պայծառացայց, և անդադար երգով փառաւորեցից և բարեբանեցից և վերօրհնեցից զամենասուրբ զԵրրորդութի̃դ յաւիտեանս յաւիտենից. ամէն :

# Բ *

Տէր երկնի և երկրի, իշխան մահու և կենաց, դատաւոր կենդանեաց և մեռելոց, Ք̃ս ա̃ծ, յոյս և ապաւէն հոգւոյս իմոյ. քեզ խոնարհեցուցանեմ զերկրպագութի̃ն և մատուցանեմ փառաբանութեամբ մաղթանս : Լոյս, պարգևիչ, հայցուածոց իմոց, որ միայնդ ես առանց մեղաց. որ միայնդ ես նոր և 'ի նորս հանգուցեալ. որ միայնդ ես գթած և ողորմած : Ողորմեա ինձ ա̃ծ ըստ մեծի ողորմութե̃ քում, և ըստ բազում գթութե̃ քաւեա զանօրէնութի̃ս իմ : Ստեղծիչ իմ, ողորմեա ինձ և օրհնեա զիս. երևեցո զերեսս քո առ իս և հաշտեա ընդ իս : Ապրեցուցիչ իմ՝ դարձ առ իս, երևեցո զերեսս քո և յիշեա զիս յարքայութե̃ քում : Դարձ առ իս, ա̃ծ փրկիչ իմ, և դարձո զսրտմտութի̃ս քո յինէն. մի յաւիտեան բարկանար ինձ, և մի դարձուցանէր զերեսս քո յինէն. մի բարկութե̃բ խրատեր զիս, և մի սրտմտութե̃բ քով յանդիմաներ զիս. մի յաւիտեան բարկանար ինձ, և մի յիշեր զչարիս իմ, և մի պարտաւորեր զիս ըստ անօրէնութի̃ս իմ. մի յաւիտեան պահեր ոխս, և մի 'ի սպառ բարկանար ինձ : Մի ըստ մեղաց իմոց առներ, և մի ըստ անօրէնութե̃ իմում հատուցաներ ինձ : Մի ընկեներ զիս յերեսաց քոց, և մի խնդրեր զգիր յանցանաց իմոց. մի դատապարտեր զիս, զի ես ինձէն գիտեմ զի անուղղայ եմ և յանցաւոր 'ի մանկու-

* Ի չորից օրինակաց :

թնեէ իմմէ , և անպատասխանի յամենայնի ։

Այլ դու դատաւոր հզօր և անոխակալ , որ զյան-
ցանս մեղացն թողեր զանառակ որդւոյն, թող ինձ ըզ-
պարտիս մեղուցեալ և անարժան քո ծառայիս · քան-
զի քո առատ բարերարութիւն յորժամ յիս ցուցցես ,
յայնժամ երևեսցի բարեգթութիւն քո , որ արժանի
եմ բիւր տանջանաց · զի զա՟մ զկեանս իմ անառա-
կութ՟բ անցուցի , և ոչ կացի 'ի հրամանի քում ։ Այլ
քաղցրացիր ինձ քաղցրութ՟բ , քաղցր և բարի թա-
գաւոր , և հաշտեա ընդ բազմամեղիս ։ Մի՛ հայիր
յիմ անհնազանդութիւնս և 'ի ծուլութիւնս · մի՛ ան-
արգեր զիս և մի՛ թողուր զիս և մի՛ ընդ վայր հար-
կաներ զիս ։ Զի թէպէտ և զտաճար հոգւոյդ սրբոյ
ապականեցի իմով ծուլութեամբս և անառակ գնացիւքս ,
այլ դու գթա յիս ստեղծիչ իմ ողորմած և անյիշա-
չար ։ Մի՛ ապականեր զհոգի իմ գեհենաժառանգ
այրմամբն յաւիտենականաւ · այլ գթացեալ մար-
դասիրապէս երկայնամիտ լեր առ իս, և ներեա յան-
ցանաց իմոց , և շնորհեա ինձ ժամանակ զղջման
արտասուաց և ապաշխարութեան ։ Եւ տուր զօրութիւն
և իմաստութիւն խորհել զօրէնս քո 'ի տուէ և 'ի գի-
շերի , գործել զբարի և առնել զարդարութիւն առաջի
երեսաց քոց ։

Համբառնամ առ քեզ, տ՟ր , զաչս իմ բոլորով
սրտիւ իմով · կարդամ առ քեզ , Ք՟ս ա՟ծ միածին Որ-
դի ա՟յ ։ Որ կամաւոր խոնարհեցար յանճառ փա-
ռաց , առեր զկերպարանս ծառայի · և անպարտա-
կանդ յաղագս դատապարտութեան մերոյ համբերե-
ցեր մինչև 'ի չարչարանս խաչի և մահու յանձն ա-
ռեր վասն փրկութեան ստեղծուածոց քոց ։ Արդ որ
այսպիսի սէր ունիս առ ազգս մարդկան , և կամիս
զի ա՟մ մարդ կեցցէ և 'ի գիտութիւն ճշմարտութեան ե-
կեսցէ , գթա 'ի բազմամեղս , գթած և մարդասէր տ՟ր ,
և կամեաց ընդ իմ փրկութիւն , և արա ողորմութիւն
ինձ եղկելոյս և թշուառականիս , որ առաւել վիրա-
ւորեալ եմ և ողորմելի քան զա՟մ մարդիկ ։ Զի ոչ
մի օր սիրեցի զքեզ 'ի բոլոր սրտէ իմմէ , և ոչ մի
ժամ յա՟մ զօրութենէ իմմէ պահեցի զպատուիրանս
քո · այլ պղերգութ՟բ և զբօսանօք անցուցի զա՟մ ժա-

մանկաս իմ, և աղտեղի խորհրդովք անցուցի զկեանս իմ ։ Աւուրք իմ պակասեցան, և անօրէնութիւնք իմ բարձրացան, և ոչ գոյ ինձ յոյս փրկութեան և տեղի ապաւինի. բայց միայն յուսացեալ եմ և ապաւինեալ յառատ ողորմութիւն քո, Ք͞ս ա͞ծ ։

Եւ արդ անկեալ բխմամբ արտասուօք աղաչեմ զքեզ, և հառաչմամբ սրտիւ առ քեզ պաղատիմ. մինչ չև եմ կորուսեալ և մինչև չէ ժամանակ դարձի իմոյ հասեալ՝ շնորհեա ինձ ժամանակ ապաշխարութեան, և յառաջ քան զվախճանն արձակեա զիս 'ի կապանաց մեղաց իմոց, և անտես արա զանթիւ անօրէնութիւնս իմ ։ Որ ա͞մ բարութեանց ես տ͞ր, և իշխանդ ես թողուլ զմեղս, ծածկեա և արա անտեսութիւն անօրէնութեան իմոյ յա͞մ մեծութեան քում ։ Մխիթարեա զվշտացեալ և զտառապեալ զհոգիս իմ. և արժանի արա զիս յայսմ հետէ ըստ կամաց քոց քաղաքավարել զայլ ևս պանդխտութեան իմոյ ժամանակս ։ Եթէ կամիմ և եթէ ոչ կամիմ՝ բռնադատեա զիս, և մի թողուր զիս 'ի կամս անձին իմոյ, մինչև տարեալ հասուսցես յօթևվանս արքայութեանդ երկնից ։

Տուր, տ͞ր, աղօթից անարժան ծառայիս քո, և պաղատանաց իմոց ունկն դիր. որ ասացեր՝ թէ հայցեցէք և գտջիք, բախեցէք և բացցի ձեզ, և այժմ բաց ինձ, տ͞ր, զդուռն ողորմութեան՝ որ ողբալով կարդամ առ քեզ ։ Եւ մի անտես առներ զաղաչանս զմեղուցեալ անձին իմոյ ։ Որ ոչ եկիր կոչել զարդարս, այլ զմեղաւորս յապաշխարութիւն ։ Արդ խոնարհեալ անձամբ և բեկեալ սրտիւ և ամօթալից երեսօք անկանիմ առաջի քո և աղաղակեմ առ քեզ. Հայր, մեղայ յերկինս և առաջի քո. թէպէտ և ոչ եմ արժանի կոչիլ որդի քո յաղագս ապականեալ վարուց իմոց, և ոչ անուանել զանուն քո գարշելի բերանով իմով, այլ համարձակիմ 'ի գթութիւն քո. զի գիտեմ զքեզ քաղցր և անոխակալ, բազմախնամ և երկայնամիտ առ արարածս քո ։ Եւ յաղագս այնորիկ ժտելով պաղատիմ առ քեզ. և յառաջ քան զդնել ատենին աղաչեմ, և նախ քան զփակել դրանն ապաշխարութեան և հատանել անդարձ վճռին զարտասուս իմ արկանեմ առաջի անոխակալ գթութեանդ քո ; ողոր-

մած տէր երկայնամիտ , քաղցր և անյիշաչար . մի՛ ընդ քանքարաթաքոյցման դատապարտեր զիս , և մի՛ ընդ յիմար կուսանացն փակեր զդուռն արքայութե՟ քո . մի՛ ընդ չար և ընդ վատ ծառայիցն լծակցեր զիս , և մի՛ ընդ անհաւատսն և ընդ հերձուածողսն դներ զբաժին իմ . մի՛ ընդ պոռնիկսն և ընդ չարագործսն կորուսաներ զիս , և մի՛ ընդ ախտաւորսն և ընդ շաղախեալսն հոգւով հաներ զիս 'ի կենացն ։ Այլ զերծո զիս յանեզրական[1] տանջանացն , և ապրեցո յանհանգիստ ալեկոծութեց , և փրկեա յանմահ մահուանէն, և ազատեա յաւիտենական ամօթոյն. զերծո 'ի միշտ լալոյն և հանապազօրդ ողբալոյն ։ Մի՛ տարագիր առներ և մի՛ մերժեր զիս 'ի քո դասուցն և յերանաւէտ կենացն . մի՛ անբաժին հաներ զիս 'ի հայրենի ժառանգութենէն, և մի՛ զրկեր զիս յերկնաւոր հարսանեացն , և մի՛ կարօտ պահեր զիս 'ի քո անճառելի տեսլենէդ ։ Այլ շնորհեա ինձ ընդ արժանաւորսն և ընդ կատարեալ ոգիսն վերանալ լուսեղէն ամպովք ընդ առաջ քո յօդս , և պարզ երեսօք և աչալրջութե՟ կալ առաջի քո, տէր ։ Եւ վասն քո փառաւորեալ և հզօր և ահեղ թագաւորութեդ մի՛ մտաներ 'ի դատաստան ընդ ծառայիս քո, և մի՛ հատուցաներ ինձ ըստ անօրէնութեա , և մի՛ ամաչեցուցաներ զիս առաջի անթիւ և ահեղ բանականաց քոց . այլ ողորմեա ինձ զի ոչ ոք է հակառակ քեզ . և պարգեւեա ինձ զքո արքայութիդ ։ Ընդ սրբս քո դասեա և ընդ արդարսն պսակեա . ընդ սիրելիսն քո օրհնեա և ընդ կամարարս կամաց քոց յարազուարճ ուրախութիւն ուրախացո . և առատապարգեւ փառօք փառաւորեա զիս , տէր , 'ի լուսեղէն երամս արդարոց՝ ընդ նոսին հանգչել 'ի վերինդ Երուսաղէմ յանստուեր և յանծակեաց ուրախութիդ . զի ընդ նոսին համաձայնեալ փառաւորեսցից զամենասուրբ զԵրրորդութիդ յաւիտեանս յաւիտենից . ամէն ։

1 Մի օրինակ յանէզր . երկու օր . յանդղէրծ ։

Գ. *

Տէր իմ Յիսուս Քրիստոս, մի մտաներ 'ի դատաստան ընդ ծառայիս քո, և մի տար այլում զպատաստանս իմ. այլ 'ի փառաւոր բեմին մերձենալ զիս արժանաւորեա. քանզի զոր ա͞ծ դատի, ողորմութեան արժանի լինի։ Լսելով զայս 'ի հանճարեղաց և յիմաստնոց և 'ի սրբոց առաքելոցն զայսոսիկ ասեմ. զի ա͞մ ոք որ զթագաւոր տեսանէ, թէպէտ և մեղուցեալ է՝ ոչ մեռանի։ Աղաչեմ զքեզ, ստեղծիչ իմ և փրկիչ իմ, մի զիս 'ի նեղելն իմում թշուառացուցաներ. մի խորտակելով չարչարեր զիս։ Քանզի եթէ արժանապէս ըստ գործոց այց արասցես ինձ, յերկոցունց կողմանց կազմի ինձ որոգայթ կորստեան. զի յորժամ յիշեմ զգործս իմ զանըմբերելի, դողումն 'ի վերայ իմ անկանելով խորտակեն զիս, և սառսուռ դժնեայ ունի զիս յորժամ վստահանամ հատուցումն ընդունել 'ի հանդստեանն՝ որ առաջի կայ, և ոչ կարեմ համբերել։ Եւ յառաջագոյն յայտ առնէ ատամանց իմոց կրճտումն, որ անդ առաջի կայ ինձ ցաւքն և սառսուռքն։ Տես, տ͞ր, զխոնարհութիւնս իմ և գթա յիս։ Աղաչեմ զքեզ, միածին Որդի ա͞յ, արժանի արա զիս թողութեան մեղաց, և մի հատուցաներ ինձ ըստ վարձուց վաստակոց իմոց. քանզի եթէ զանօրէնութիւնս իմ պահեսցես, ո՞վ տևեսցէ քեզ. և եթէ ըստ մեծութեան քում հատուցանես մեզ [1] ողորմութիւն, արժանի դտանիմք 'ի դատաստանի քում. քանզի ա͞մ բերան խցցի և դատապարտեսցի ա͞մ աշխարհ առաջի ա͞յ։ Արդ ոչ եթէ զքո շնորհսդ արհամարհելով յառաջ բերեմ զայսոսիկ, այլ զգրեալսն խօսիմ, երկայնամիտ Քրիստոս։ Զի՞նչ օգուտ իցէ քեզ 'ի մարմնոյ իմոյ, եթէ 'ի բորբոքեալ հուրն առաքեսցես. արա ընդ իս ըստ ողորմութեան քում զգթութիւն քո, և ծանիցի

* Ցերեկ օրինակաց։

1 Երկու օր. ինչ. ողորմութիւն փո- խարէն է առ ամենեսեան. և դիս արժանի արա փրկանել՚ի մէն ՚ի դա- տաստանի։

ամենեցուն շնորհք քո և երկայնմտութիւն քո։ Եթէ զդատաստան ամենայն երկրի առնես, ոչ պատուիրանք քո յայտնեցին, ոչ ապրեսցի մի 'ի հազարաց, և 'ի բիւրոց ոչ փրկեսցին։ Այլ զինչ հոգալով խօսիմ զայս ես տառապեալս. աղաչեմ, փրկիչ, ոչ զի զուգեսցես զմեղաւորս ընդ արդարս. քեզ մաղթեմ, բարերարութեան Որդի, զի արժանի արասցես զգթութիւն քո սփռել 'ի մեզ, յիս և 'ի մերձաւորս իմ։ Դարձեալ աղաչեմ և ոչ դադարեցից երբէք յայսցանէ. զի թէ ոչ զգուշութիւն քո ձգեսցես 'ի մեզ, ոչ ոք կարող է տեսանել զկեանս։

Աստուած, գթութեամբդ քո աղաչեմ զքեզ, մի կացուցաներ զիս ընդ ուլսն 'ի ձախմէ քումմէ՝ որք զայրացուցին զքեզ, և մի ասիցես թէ ոչ գիտեմ զքեզ. այլ տուր ինձ յաղագս գթութեան քո մշտնջենաւոր ողբումն և զղջումն. նուաստացո զսիրտ իմ և սրբեա զսա, զի լցցի տաճար շնորհաց քոց։ Զի թէպէտ մեղաւոր եմ և ամբարիշտ, սակայն հանապազ զդրունըս քո բախեմ. զի թէ դանդաղկոտ եմ և պղերգ, սակայն զճանապարհս քո կամիմ գնալ։ Տէր իմ և փրկիչ, ընդէր զիս լքանես. գթա յիս, վասն զի դու միայն ես աւանց մեղաց. հան զիս 'ի տղմոյ անօրէնութեան իմոյ, զի մի ընկլայց յաւիտեան։ Փրկեա զիս 'ի բերանոյ թշնամոյն իմոյ, զի ահա իբրև զառիւծ մռնչէ կամելով կլանել զիս. զարթո զզօրութիւն քո, և եկեսցէ կեցուցանել զիս. փայլատակեա զփայլատակունս քո, և քայքայեա զզօրութիւն նորա. երկիցէ և զարհուրեսցի յերեսաց քոց, քանզի տկար է և ոչ ունի զօրութիւն կալ առաջի քո։ Եւ արժանաւորեա զիս ընդ փրկեալսն խաչիւ և արեամբ քով գոհանալ և փառաւորել զքեզ ընդ Հօր և ընդ սուրբ Հոգւոյն այժմ և միշտ և յաւիտեանս յաւիտենից. ամէն։

Դ

Տէր Աստուած զօրութեանց, աղաչեմք զքեզ՝ որ մեծդ ես և ահաւոր, ահեղ և սքանչելի, անեղ և անանցանելի, անբաւ և անբովանդակելի և ամենեւին անքննե-

լի և անխիմանալի և անհաս, 'ի վեր քան զմ̃մ և ա-
մենեցունց օրհնեալ գովեալ և փառաւորեալ, անյի-
շաչար գթած և մարդասէր: Քանզի դու միայն ես
Հայր ամենակալ և արարիչ ամ̃ լինելութեց, զորս 'ի
չգոյէ գոյացուցեր, և ունիս 'ի հաստատութեան. և
դու, տ̃ր, որ տէր ես ամ̃ի, և ամ̃ արարածք քոյով
հրամանաւդ կառավարին: Դու ես ամենեցուն օգ-
նական և պահապան. դու բժշկես զվիրաւորեալսն 'ի
բանսարկուէն, և առողջացուցանես զհիւանդա-
ցեալս մեղօք. ընդունիս զխոստովանողսն և զապաշխա-
րողս, և քաւես և սրբես զյանցանսն մեղուցելոց. Վն̃
որոյ ես կարի լի եմ մեղօք, առ քեզ անկանիմ յա-
րաժամ, աղաչեմ և մաղթեմ և խնդրեմ 'ի քէն
զթողութի̃. դու նայեա յիս, փրկիչ, մարդասիրու-
թբ̃ քով, և ընկալ գթութբ̃ քով զգերեալս 'ի չար
թշնամոյն: Խոնարհեա, տ̃ր, 'ի մաղթանս իմ, և
բժշկեա զհոգւոյս իմոյ զխոցոտածն յանէրևոյթ նե-
տից սատանայի:

Տես, տ̃ր, զտառապանս քո ծառայիս, և շնորհեա
զթողութի̃ անթիւ յանցանաց իմոց զոր մեղայ: Լուր,
տ̃ր, ձայնի ողբալոյս և ցաւագին պաղատանացս. զի
կարօտ եմ շնորհի քո և ողորմութե̃դ: Թող, տէր,
զյանցանս իմ բազմամթեր և զմեղս իմ զանհամարս
մինչ չև հասեալ իցէ դատաստանի քո. փարատեա
յինէն զանզեղջութե̃ խաւարն՝ որ տարածեալ կայ 'ի
սիրտս, և զեղջ հաստատեա. յորդորեա զիս յար-
տասուս, և 'ի զեղջ ապաշխարութե̃ հանապազ: Շնոր-
հեա ինձ, փրկիչ, զղջումն արտասուաց մարգարէին՝
որով զմահիճս թանայր. զի և ես զվէր հոգւոյս իմոյ
լուացից հեծեծանօք և պաղատանօք և ողբագին
արտասուօք: Գիտեմ, տ̃ր, զի յանցանք իմ անթիւ
են առաջի քո, մարդասէր. այլ և անբաւ են ողոր-
մութի̃ք քո 'ի վերայ ապաշխարողաց: Ընդ որս և ինձ ո-
ղորմեա, ինձ որ առաւել եմ անօրինեալ քան զամ̃
մարդ: Եւ չեմ արժանի առ քեզ 'ի վեր հայել, բա-
րերար, 'ի բազմութենէ պատահեալ յանցանացն զոր
գործեցի: Այլ դու, տ̃ր, հայեաց 'ի վարանումն տա-
րակուսանաց իմոց յերկեղէ գեհենին, և մի անզեղջ
և անապաշաւ հաներ զիս յաշխարհէս լի յանցանօք:

Այլ 'ի վայրս տարժանելի վաստակոց և 'ի ջան կատարեալ ապաշխարութե առ զհոգի իմ յինէն, և խառնեա 'ի թիւ ճշմարիտ ապաշխարողացն արդարացելոցն՝ որ 'ի փառս քո վայելեն ։ Ոչ վասն իմ ինչ վարուց եմ արժանի ողորմութե քո, մարդասէր․ այլ վն գթութե քո, տր, շնորհեա ինձ թողութիւ յանցանաց իմոց, և օգնեա 'ի մարտի թշնամւոյն ծուլացելոյ ծառայիս քո, բարերար․ քանզի բազում անգամ խոստովանեցայ և ապաշխարեմ, և անօրէն թշնամին ժամ 'ի ժամ ձգելով կորոյս զկարողութե ժամանակն ապաշխարելոյ ։

Նա արդ եթէ ոչ դու, տէր, օգնեսցես և շնորհիւ քո զօրացուսցես, չիք ինձ 'ի գործոց իմոց 'ի փրկութի․ զի թէպէտ և բանամ զբերան իմ յաղօթել, և զձեռս իմ առ քեզ 'ի վեր համբառնամ յաղաչանս, անդրէն զսիրտ իմ սատանայ պատրուակէ, և զմիտս մերժէ յանձային յերկեղէ, զանազան և զազիր խորհրդովք զբաղեցուցանէ և ընդունայն հանէ յաղօթիցն ։ Վն որոյ զփրկիչդ իմ աղաչեմ, փրկեա զիս 'ի պատերազմէս յայսմանէ․ քանզի կարի նեղեալ եմ 'ի նենգութէ թշնամոյն՝ որ երբեմն 'ի հաւատս յորդորէ յօժարամիտ սրտիւ խնդութբ, և երբեմն 'ի մեղս ընկենու ոչ յիշելով զբոց գեհեննոյն․ զոր ոչ զգացի, և ոչ լալով լուացի զվէրս յանցանաց իմոց փրտութիւ ։ Որ չարախոցս եմ վիրաւորեալ յանթիւ մեղացս բազմութէ, և ոչ բաւեմ ապրել ծուլացելով անձամբս․ այլ յողորմութի քո յուսալով համարձակիմ առ քեզ յաղօթել բարերարիդ և մարդասիրիդ այ ։ Ընկալ զաղաչանս մեր ցաւագինս, և պաղատանս իմ աղերսաբերս․ և շնորհեա ինձ զղջումն արտասուաց ապաշխարութե, որով զմեղս իմ քաւեցից, և զարարիչդ իմ հաշտեցուցից մաղթանօք ։ Ահա, տր, սիրտ իմ գելու յանթիւ մեղացս վարանաց, և որովայն իմ հեծէ առ քեզ ողբալով․ անձն իմ հեծէ և աչք իմ բաղձայ արտասուաց յիշելով զմեղաց իմոց զբազմութիւն ։ Զի լի եմ անթիւ յանցանօք և անհամար գործովք անօրէնութբ․ և առ քաւիչդ իմ խոստովանիմ ողբալով, քանզի ած ես գթութեց և տր ողորմութեց, գթա յամենայն մե-

զըս որ 'ի քեզ եմ ապաւինեալ, բազմագութ։ Զի կարեվէր եմ մեղօք, և տագնապեալ ախտիւ յանցանօք, և խնդրեմ 'ի քէն բժշկել՝ որ բժիշկ ես հոգւոց և քաւիչ յանցանաց։ Եւ արդ բժշկեա, Տէր, զի լեզու իմ վիրաւորի դատարկաբանութ՟բ, և 'ի զրախօսու բամբասանաց։

Լուսաւորեա, Տէր, զաչս իմ յածողս 'ի չարաչար նայելոյ և յանդէպ տեսանելոյ։ Սրբեա, Տէր, զմիտս իմ 'ի խաւարային խորհրդոց սատանայի և յամ չար գործոց թշնամոյն, և լցո շնորհօք և ողորմութ՟բ քո։ Լուա, Տէր, զաղտ հոգւոյ և մարմնոյ իմոյ զոր ժանդահոտ մեղաց նեխութ՟բ զազրացուցի. և շնորհեա ինձ խորհել միշտ զխրոյդ քո, բաղձալ յարաժամ։ Հօրդ մարդասիրի և բարերարի կարօտիմ հանապազ, ընկալ զիս գթութ՟բ որպէս զորդին անառակ. լցո զքաղց իմ և զծարաւ յառատաբաշխ շնորհէդ, բարերար։ Եւ խնդրեմ առ քեզ մերձենալ, և միշտ շնորհաց քոց փափաքիմ, յարաժամ բերկրանօք ժըտիմ հայցել մաղթանօք։ Եւ դու, Տէր, ընկալ ըղվշտագնելոյս տառապանս, և ներեա քոյով մեծաներողութ՟բ յանցաւոր ծառայիս, բարերար։ Զի թէ առանց ներելոյ զյանցանս իմ դատես, ապա երանեմ չեղելոցն յորովայնի, զի հուր գեհեննին է ժառանգութ՟ի հանապազ։ Քանզի ոչ մնացին ճանապարհք մեղաց, ընդ որս ոչ գնացի. և 'ի շնորհաց Ս՟բ Հոգւոյդ մերկացայ։

Արդ անկեալ առ քեզ պաղատիմ, գթա 'ի ժտութիւն թախանձանաց մաղթողիս, և մի մերժեր զիս յողորմութ՟ն քումմէ, ողորմած Տէր։ Զի զքեզ խնդրեցի և զքեզ աղաչեմ, լից զփափաք իմ որում միշտ ոգի իմ կարօտի՝ մեղաց թողութ՟ն։ Զի ոչ թէ իբրև զբարեգործ ոք հայցեմ 'ի քէն համարձակ, այլ իբրև զմեծամեղ յանցաւոր աղերսիւ ժտեմ յարաժամ։ Ոչ զոգի իմ մաքուր ունելով ինչ մերձենամ առ քեզ, մարդասէր, այլ 'ի մաքրութ՟էդ քումմէ զժահահոտութ՟ի վիրաց մեղաց իմոց մաքրել աղաչեմ. զի դու միայն ես հայր իմ և Տէր բարերար, արարիչ իմ և փրկիչ իմ և կեցուցիչ իմ։

Ո՞ւր երթայց, մարդասէր. կամ յումմէ՞ խնդրե-

ցից օգնութիւն և վիրաց իմոց բժշկութիւն. այլ քեզ մաղթեմ ողորմածիդ այ և բազմագութ իմոյ արարչիդ։ Մի՛ բարկութեամբ խրատեր և մի՛ սրտմտութեամբ քո յանդիմաներ, բարերար. Մի՛ ընդ պատժեալսն պատժեր զիս, և մի՛ ընդ դատապարտեալսն դատեր զիս, գթած։ Մի՛ անողորմ պահանջմանօք պահանջեր, և մի՛ սոսկալի գեհենիւդ դողացուցաներ, մարդասէր։ Մի՛ յաւիտենական ամօթոյն ամաչեցուցաներ զիս, և մի՛ ՚ի մեծի յաւուրն սրբոցն պատկելոյ զիս պատուհասեր անողորմ և աններելի։ Այլ ապրեցո զիս, տէր, ՚ի հրահոսան հալոցացն և հրաբորբոք գեհենոյն, յանլոյծ կապանացն և յաննշոյլ խաւարէն, յանաչառ դատաստանացն և յաններելի տանջանացն ցաւոց։

Այո, տէր, յայտնեա առ իս զգթութիւն քո. զի սովոր ես ցուցանել զողորմութիւն քո, որ չարաչարս եմ վիրաւորեալ առաւել քան զՍոդոմայն. և միշտ երկիւղիւ դողամ հանապազ՝ եթէ կենդանոյն հրակիզեսցես իբրև զնա։ Վասն որոյ աղաչեմ զգթութիւն քո, մարդասէր, շնորհեա ինձ նման նինուէացւոցն՝ զսրտմտութիւն քո յողորմութիւն դարձուցանել, կանգնել ՚ի յանցանաց կործանմանս. զի ահա ծով մեղաց յանդունդս ընկղմէ զիս վասն անօրէնութեան իմոյ առաւել քան զՋրհեղեղն։ Այլ հրամայեա ինձ, տէր, զողորմութիւս քո տապան ամրութեան իբրև զՆոյի ապրել ապաշխարութեամբ ՚ի հրեղէն ծովէն անդնդոց։ Քանզի դու այն բարերար տէրն ես, որ վասն մարդասիրութեան քո ՚ի ծառայական կերպ իջեր՝ թագաւորդ. ազատեա և զիս ՚ի չար ծառայութենէ մեղաց իմոց և յանօրէնութեց։

Որ վասն իմ թուք ՚ի դէմս և ապտակս ՚ի ծնօտս և փուշ ՚ի գլուխս ընկալար, մարդասէր, հան ըզփուշ յանցանաց իմոց, որ չարաչար վիրաւորիմ հանապազ։ Որ վասն իմ փայտի խաչի և խոցման գեղարդեանն և ձեռաց կապանաց և բևեռացն համբերեցեր, բարերար, լոյծ և զիս ՚ի դառն կապանաց սատանայի, և բժշկեա զխոցուածս անբուժելի գեղարդեան թշնամոյն։ Եւ արդ որ այսր ամս համբերեցեր, ողորմած տէր, վասն իմ, և այժմ աղաչեմ վասն մե-

ղացս թողութ՟ն ։ Թէպէտ վասն անբաւ ծուլութեանս իմոյ չեմ արժանի ողորմութ՟ե քո, սակայն վասն ժըտութ՟ե իմոյ լուր, տէր, իբրև այրւոյն թախանձանաց առ անիրաւ դատաւորին ։ Եւ առ իս կատարեա զբան քո, տէր իմ, թէ ոչ եկի կոչել զարդարս, այլ զմեղաւորս ։ Եւ գիտեմ՝ եթէ արդարքն իբրև զարտս ընդունին 'ի քէն զարդարութ՟ն պարգևսն ․ բայց ինձ ողորմութ՟ն շնորհեա իբրև զմեծամեղի և բիւրապատիկ մահապարտի ։

Որ առ ամենեսեան ես գթած, լուր և իմ ողբալոյս առ քեզ, բարերար ․ և ունկն դիր գթութ՟բ պաղատանաց ծառայիս, ողորմած ․ դարձո զիս յուղիղ ճանապարհն իբրև զհայհոյիչն, և արդարացո որպէս զմաքսաւորն ․ ողորմեա ինձ որպէս քանանացւոյն ․ ընկալ զիս որպէս զանառակ որդին, և միւսանգամ դարձո յիս զշնորհն աւազանին սրբութ՟ե զոր զանազան մեղօք հալածեցի ։ Եւ մի ընդունայն առներ զաղաչանս ծառայիս քո, բարերար ․ այլ բաց զդուռն աղօթից իմոց առ քեզ, մարդասէր ․ և մի թագուցաներ զդուռն ողորմութ՟ե քո յամենամեղ ծառայէս, ողորմած ։ Զի դու, տէր, ասացեր՝ թէ չիք ինչ զոր խնդրիցէք յիմ, և ոչ առնուցուք ։ Վասն որոյ ամենամեղս ժտեմ հայցել 'ի քէն թողութ՟ն զոր անսուտ խոստացար ինձ, փրկիչ ․ զի դու, տէր, քաղցր և երկայնամիտ ես, վասն մեղաւորաց կոչեցար ողորմած ․ 'ի դառնալ անօրինին ոչ յիշես զա՟մ անօրէնութիւնն զոր արար ։ Արդ խնդրեմ 'ի քէն ողորմեա ինձ, քանզի դու միայն ես քաւիչ՝ որ զանթիւ յանցանս յանցելոյն քաւեցեր, բարերար ․ զմեռեալս մեղօք կենդանացուցեր ․ զմոլորեալս 'ի չար թշնամոյն դարձուցեր ․ զխաւարեալսն 'ի ճշմարտութէ լուսաւորեցեր, և բազմամեղս դարձին ներեցեր մինչև ցայժմ ։ Զի քոյ եմ և 'ի քո պատկեր հաստատեցեր զիս ․ ձեռօք ստեղծեր և շնչով կենդանացուցեր և ա՟մ իշխանութ՟բ փառաւորեցեր զիս ․ և ետուր ինձ պատուիրան, և ոչ պահելոյն անկայ 'ի փառացն ։ Եւ դարձեալ 'ի գալստեան քո նորոգեցեր զիս, ողորմած ․ լուացեր և սրբեցեր զիս աւազանին սրբութ՟բ, և դարձեալ վերըստին վիրաւորեցայ և բժշկեցեր ապաշխարութ՟բ ։ Եւ

արդ որ զայս ա̃մ բարութիւնս շնորհեցեր ինձ ողորմու-թբ̃ քով, քաւեա այժմ 'ի մեղաց և պահեա յայսմ հետէ սրբութբ̃, տէր. փրկեա 'ի թշնամոյն և 'ի ձե-ռաց դժոխոց. 'ի միշտ լալոյն և յանդադար ողբալոյն՝ յորում ոչ ոք լսէ և ներէ 'ի դառն աղետից[1] տանջա-նացն: Բայց միայն ես մարդասէր, քաղցր և երկայ-նամիտ, բարերար և բազում ողորմած, ընկալ զաղա-չանս իմ: Քեզ մեղայ և քեզ խոստովանիմ և առ քեզ պաղատիմ. զվէրս հոգւոյ իմոյ ցաւագին հա-ռաչմամբ ողբամ, և զանօրէնութիւնս իմ առաջի քո: Աղաչեմ հաշտեաց, տէր, ընդ աղաչանս իմ ողոր-մութբ̃ քով. ներեա և մարդասիրեա 'ի վերայ մեղու-ցելոյս, և ընկալ գթութբ̃ քո զաղաչանս իմ:

Ընկալ, տէր, զզղջումն խոստովանութե̃ իմոյ, ըղ-հառաչումն ապաշխարութե̃. և ջնջեա զանթիւ զա-նօրէնութիւնս տմարդութե̃[2] իմոյ: Զի տկարացայ իբրև զմարդ, մեղայ և անկայ 'ի խորս չարեաց: Գթա և քաւեա, և յարո իբրև զա̃ծ և թեթևացո, և կանգ-նեա յաներևոյթ գլորմանէ, և ընկալ զսուղ ապաշ-խարութի̃ ապաշխարութե̃ իմոյ, մարդասէր. և թեթե-ւացո զծանրութի̃ մեղաց իմոց զոր մեղայ քեզ, բա-րերար: Քո եմ գործ ձեռաց, մի անտես առներ զիս, ողորմած. որ առ քեզ զաչս 'ի վեր եմ ամբարձեալ 'ի մաղթել զձեռս մտացս տարածեալ աչացս, և ծունր իջեալ պաղատանօք զմեղս իմ խոստովանիմ առ քեզ և աղաչեմ ողբալով. Հայր, մեղայ յերկինս և առաջի քո, քաւեա զանօրէնութիւնս իմ, ողորմած: Եւ մի այլ ևս թողուր զիս 'ի պատուիրանս քո մե-ղանչել, բարերար. այլ շնորհեա ինձ առ քեզ պա-ղատել ապաշխարութբ̃, պաղատանօք և ջանիւ աղօ-թից, անդադար հառաչմամբ և գորովագութ ողորմ ողբալով առ քեզ հանապազ արտասուել, աղաչել և խնդրել մեղաց թողութի̃. զի կարող ես յա̃մի մար-դասիրութբ̃ քո:

Պահեա զիս գթութբ̃ քով. զօրացո զիս շնորհօք քո. օգնեա փրկեա և բժշկեա զվէրս մեղաց. նորո-գեա զիս և հաստատեա և ապրեցո 'ի չար թշնամւոյն.

1 Յօրինակին ողբերգից: 2 Յօրինակին մարդութեան:

ներեա քաւեա և արդարացո և լցո Հոգւովդ քով։ Եւ շնորհեա ինձ պահել հանապազ զվարս ուղիղս և հաւատս ճշմարիտս խոնարհութիւն և հեզութիւն, հնազանդութիւն, պատուիրանապահութիւն, և սէր կատարեալ. սրբութիւն սրտի, ճշմարտութիւն լեզուի, ցընծութիւն աչաց, պարկեշտութիւն մարմնոյ, պնդութիւն պահոց, յօժարութիւն աղօթից, յորդորումն ողորմութեան, զղջումն և արտասուս ապաշխարութեան, համբերութիւն և առաւել գոհութիւն ամենայն նեղութեանց։ Զի այսու ամենայնիւ քաւեալ զիս և սրբեալ՝ արժանի արա մարմնոյ և արեան քո սրբոյ և արքայութեանդ երկնից, մարդասէր ամի։ Գոհացայց զքէն հանապազ. երկիր պագից միանգամայն Երրորդութեանդ յարաժամ. օրհնեցից գովեցից և փառաւորեցից գոհութիւն անդադար զՀայրդ ողորմած և զՈրդիդ բարերար և զՀոգիդ Սուրբ կենդանարար այժմ և միշտ և յաւիտեանս յաւիտենից. ամէն։

Ե

Փառք քեզ Աստուած, փառք քեզ արարիչ յաւիտենից Աստուած, փառք քեզ։ Որ շնորհեցեր հանգիստ տկարութեանս մերում. որ զարթուցեր զարարածս զքեզ փառաւորել. որ 'ի յերկնից խոնարհեցար մարմնանալ վասն մեր, և 'ի Սուրբ Աստուածածնէն Աստուած յայտնեցար։ Որ 'ի մէջ գիշերի վասն մեր յանցանաց ծնար 'ի կուսէն և 'ի Սուրբ յայրին բազմեցար, զանարժան ծառայս քո որ յաղքատաց եմ ծնեալ՝ սրբեսցես 'ի մեղաց։ Որ 'ի մէջ գիշերի գալով 'ի տաճարն արձակեցեր զծերունին, զանարժան զքո ծառայս արձակեա 'ի մեղաց կապանաց և 'ի բանտից։ Որ 'ի մէջ գիշերի ճանապարհ հորդեցեր յԵգիպտոս ելանել, զանարժան քո ծառայիս զելանելն յաշխարհէս առաջնորդեսցես 'ի կեանս։ Որ 'ի մէջ գիշերի գնայիր 'ի վերայ ծովուն իբր 'ի վերայ ցամաքի, անարժան քո ծառայիս ձեռնտու լեր, տէր իմ, որպէս Պետրոսի։ Որ 'ի մէջ գիշերի լուացեր զոտս աշակերտացն զպատուական մարմին և զարիւնդ քո բաշխելով 'ի նոսա, զանարժան զքո ծա-

ռայիս լուացես զմեղս , և ընկալցիս հաղորդս մարդասիրապէս ընդ մետասանս բազմեալ 'ի սեղան խորհրդոյ ։ Որ 'ի մէջ գիշերի վասն մեր յաղօթս կայիր առ Հայր յառաջ քան զչարչարանս , զանարժան քո ծառայիս ընկալցիս զաղօթս 'ի ժամ գիշերիս ։ Որ 'ի մէջ գիշերի բժշկել կամեցար 'ի Պետրոսէ հատեալ զունկն Մաղքոսի , զանարժան զքո ծառայս բժշկեա՛ զվիրաւորեալս յանօրէն Թշնամոյն ։ Որ 'ի մէջ գիշերի կալով առաջի Կայիափայ դատապարտեցար և ապտակեցար , զանարժան զքո ծառայս յահագին քո դատաստանին մի դատապարտեր ։ Որ 'ի մէջ գիշերի վասն մեր հայեցար 'ի Պետրոս յիշեցուցանելով նմա զյանցանս իւր , անարժան քո ծառայիս շնորհեա զզջումն և արտասուս 'ի լուացումն մեղաց իմոց ։ Որ 'ի մէջ գիշերի կամաւոր խաչի և մահու ընդ մեռեալս համարեցար և 'ի զինուորաց պահեցար , անարժան քո ծառայիս զբանակս հրեշտակաց շնորհեսցես պահապան ։ Որ 'ի մէջ գիշերի յարեար 'ի մեռելոց կամաւ Հօր և Ո̃ր Հոգւոյն , զանարժան զքո ծառայս՝ որ մեղօքս եմ մեռեալ՝ կենդանացուսցես , տէր իմ ։ Որ 'ի մէջ գիշերի վասն մեր գալոց ես միւսանգամ նորոգել զարարածս , զանարժան զքո ծառայս յանուանէ կոչեսցես անապական նորոգմամբ և նորահրաշ փառօք ։ Որ 'ի մէջ գիշերի վասն քո մարդասիրութեդ զիմաստուն կուսանսն ընկալցիս յառագաստն , անարժան քո ծառայիս բաց զդուռն դրախտին զառագաստն լուսոյ . զի դու Ս̃բ Ս̃բ Ս̃բ ես , տէր զօրուե̃ց ։

Զ

Փրկեա զիս , Յս̃ Քս̃ Որդի Ա̃յ , 'ի բարկութենէն որ գալոցն է ։ Որպէս փրկեցեր զԱդամ 'ի դժոխոցն . որպէս փրկեցեր զՆոյ 'ի ջրհեղեղէն . որպէս փրկեցեր զԱբրահամ 'ի հալածչացն . որպէս փրկեցեր զՂովտ 'ի սոդոմայեցւոցն . որպէս փրկեցեր զԻսահակ յանհաւատիցն . որպէս փրկեցեր զՅակոբ 'ի ձեռացն Եսաւայ . որպէս փրկեցեր զՅովսէփ 'ի գբին . որպէս փրկեցեր զՄովսէս և զժողովուրդն 'ի Փարաւոնէ .

որպէս փրկեցեր զԴաւիթ 'ի Գողիաթու. որպէս փրկեցեր զԵղիա յԵզաբելայ. որպէս փրկեցեր զԵղիսէէ 'ի նախատանացն. որպէս փրկեցեր զՅովնան 'ի փորոյ կիտին. որպէս փրկեցեր զԵզեկիա 'ի հիւանդութենէն. որպէս փրկեցեր զԵրեմիա 'ի գբոյ տղմին. որպէս փրկեցեր զՇուշան 'ի ծերոցն. որպէս փրկեցեր զԴանիէլ 'ի բերանոյ առիւծուցն. որպէս փրկեցեր զերիս մանկունսն 'ի հնոցէն. որպէս փրկեցեր սուրբ զառաքեալն Պաւղոս 'ի բազում վշտացն. որպէս փրկեցեր զԹեկղի 'ի հրոյն և 'ի գազանացն: Որպէս փրկեցեր զնոսա, փրկեա և զիս, տէր. ողորմեա ինձ, ա̃ծ խաղաղութեան և լոյս աշխարհի, փրկիչ արարածոց:

Գթա, տէր, և ողորմեա ինձ. կանխեա առ իս և ողորմեա. լուր ձայնի աղօթից իմոց յա̃մ ժամ: Ծագեա զլոյս գիտութեան քո 'ի յիմարեալ միտս իմ և 'ի մահկանացու մարմինս իմ: Բարձ յինէն զամօթ նախատանաց թշնամոյն: Տուր զօգնականութիւն խաչի քո, և կանգնեա յիս զնշան յաղթութեան բազկի քո. զի գոհացայց զքէն պ̃րք քո, և փառաւորեսցի անուն մեծութեան քո: Ծագեա յիս զողորմութիւն քո 'ի յաղէ պ̃րք շնորհաց քոց. և բարձ յինէն զդատապարտութիւն անիծից պարտեաց իմոց 'ի ձեռն քաղցրութեան փրկութեան քո: Խնամարհեցո, տէր, զունկն քո և լուր աղօթից իմոց: Ողորմեա ինձ, տէր, զի նեղեալ եմ ես. մխիթարեա զիս 'ի զօրութիւն անուանդ քո. բժշկեա զիս ողորմութեամբ քո, զի դողաց սիրտ իմ և ոսկերք իմ 'ի բազմութենէ յանցանաց իմոց: Զի ո̃վ է իմ փրկիչ, եթէ ոչ դու, տէր, որ ամենեցուն գաղտնիք յայտնի են քեզ. չիք ինչ առաջի զօրութեանդ քո 'ի ծածուկ:

Տէր ամենակալ, ունկն դիր խնդրուածոց իմոց, և լեր իմ այցելու. զի պակասեցաւ 'ի վշտաց կեանք իմ, և տկարացաւ զօրութիւն իմ, և նուաղեաց լոյս աչաց իմոց. Ջեռաւ փոր իմ, և ոսկերք իմ ցամաքեցաւ 'ի բազում հոգոց մեղաց իմոց: Մի՛ տար զիս, տէր, նախատինս դրացեաց իմոց, և առաջի իմ մի՛ այպանեսցեն զիս: Մի՛ թողուր զիս, տէր, վասն ողորմութեան քո, և մի՛ մոռանար զիս, զի քեզ սպասէ անձն իմ. զի դու ես յոյս ժառանգութեան իմոյ: Յետս դարձցին հալածիչք իմ ընդդունայն, և առաջի իմ 'ի

տարապարտուց ։ Լուսաւորեա զիս , տէր , և դարձո զերեսս քո յիս ։ Մերկացո յինէն զխաւարն մոլորութե , և հաստատեա զիս 'ի կենդանութի բանի քո ։ Բեկ զհպարտութի թշնամոյն , տէր ամենակալ ․ խորտակեա զյամառութի նորա , զի մի կարասցէ փակել զդուռն լուսոյ քո՝ ելանել ինձ 'ի Ճանապարհս արդարութեան ։

Բազում են քաղցրութիք քո , տէր ․ ցողեա յիս զկամութիւն և զանազանն ։ Հալեա զսառն անհնազանդութե մտաց իմոց , և բարձ զմէգ թերահաւատութե 'ի խորհրդոց իմոց ։ Ցածո յինէն զուխտ մոլեկանս հարուածոց ցանկութե , և ցամաքեցո յինէն զաղբիւրն ստութե ։ Հեռի արա յինէն զձեռն ատելութե , որ անբոյս առնէ զսերմն արդարութե ։ Շնորհեա զարև քաղցրութե Հոգւոյդ սրբոյ՝ զքաւիչդ իմ և զարարիչդ , և ցօղով շնորհացն քոց լուա յինէն զամ թոյնս մնասակարս ։ Մշակեա յիս , տէր , մշակ բարերար՝ զսերմ արդարութե քո , և պահեա 'ի նենգութէ թշնամոյն , զի մի սերմանեսցէ յիս զսերմն չար ։ Ընդյարկաւ արա զիս , ապաւէն իմ և փրկիչ իմ , 'ի հակառակութէ թշնամոյն ։

Նադեա զնշոյլ Ճառագայթից Ճշմարտութե քո յիս , և առաջնորդեա ինձ մինչև 'ի քաղաքն սրբոց ։ Արժանաւորեա զիս , Տծ իմ , հաւատարել ընդ Դրս քո ․ փառաւորել զանունն քո , որ աղբիւրդ ես կենաց և փրկութե ։ Բան քո կենդանի լի է ամ երանութբ ․ տուր ինձ և լցո զիս , զի կարօտեալ եմ ․ օգնեա ինձ , զի տկարացեալ եմ ։ Արա զմեզ արժանի սրբութե Ճաշակել 'ի հոգևոր օրինացդ , զի ելցի մեզ պարիսպ յամ նեղութէ թշնամոյն ։ Մի տար գերել ըղտկար միտս մեր պղտոր խարդախութեամբք իւրովք ։ Արբո մեզ , տէր յոյս մեր , 'ի քաղցրութէ զօրութե Ճշմարտութեան քո , զի ապրեսցուք 'ի սատակագոյն ալեաց փորձութեց աշխարհիս ։ Տնկեա զմեզ , տէր տէր , 'ի վերայ անսխալ հաւատոց քոց 'ի մէջ ջուրց գնացից պատուիրանաց քոց ։ Ցաջողեա մեզ , տէր , 'ի բարի խորհուրդս 'ի տուէ և 'ի գիշերի , զի առանց զբաղման կացցուք 'ի զուարթութի լուսոյ քո , բարերար ։ Եւ բացցես մեզ զդուռն կենդանութեան

լուսոյ քո արժանի լինել մեզ սիրոյդ քում։

Աղաչեմք, տէր, զքաղցր և զգթած տէրութիւնդ քո. տուր մեզ 'ի սիրոյդ քումմէ, և յաւել 'ի մեզ 'ի շնորհաց քոց, զի արժանի եղիցուք լինել պաշտօնեայք կամաց քոց։ Բուրեսցեն շրթունք մեր որպէս խունկ զաղօթս մեր յամ ժամ առաջի մեծութեանդ քո։ Հաշտեա ընդ մեզ, տէր, զի բարի ես. և թագաւորեսցէ 'ի մեզ զյաղթութիւն քո, և տուր մեզ զնահատակութիւն քաջութեան խաչիւդ քո։ Յարդարեա զմեզ, տէր, 'ի սէր քաղցրութեան բանի քո. և հորդեա զճանապարհս առաջի ոտից մերոց։ Կարօղս արա զմեզ, տր, առ կոչումդ երկնաւոր կատարել ոտիւք։ Բաց մեզ, տէր, զդուռն հարսանեաց քոց. և զարդարեա 'ի զարդ սրբութեան հոգևոր պատմուճանիդ, և վայելուչ պայծառութեան կենդանի գեղոյդ պատուիրանաց քոց։

Զքեզ աղաչեմք, տէր ած մեր, յոյս փրկութեան մերոյ. զքէն գոհանամք բերանովք մերովք՝ տալ փառս և խոստովանութիւն և երկրպագութիւն ածութեանդ քում։ Առաւօտ մեծ ամ առաւօտուց և լուսատու ամ լուսաւորաց, ծագեա 'ի մեզ զլոյս ճշմարտութեան քո. 'ի բաց արա 'ի մէնջ զմէգն և զխաւարն ստուերական գիշերոյ, զի մի կուրացուսցէ զտեսիլս խորհրդոց մերոց. կանխեա առ մեզ զլոյս քո գիտութեան, զի գնասցուք 'ի ճանապարհս քո ուղիղս։ Յոյս մեր և փրկիչ, բաց մեզ զդուռն լուսոյ քո, և արժանի արա փառաւորել զքեզ 'ի ձայն ցնծութեան։

Մտցեն աղօթք իմ. առաջի քո, տէր. մի դարձուցաներ 'ի մէնջ զերեսս քո վասն մեղաց մերոց։ Փրկիչ հոգւոց մերոց և դարձուցիչ մոլորութեանց մերոց։ Ընկալ զմեզ, տր բարերար, և խլեա զխոչ չարին առաջի ոտից մերոց, և բարձ զգայթագղութիւն նորա 'ի գնացից մերոց։ Թագաւոր մեր և ած, թող մեզ ըզմեղս մեր և զյանցանս, զի դու ես քաւիչ մեր։ Լից զմեզ, փրկիչ, սրբութեամբ Հոգւոյդ սրբոյ բարերարի, զի դա է հաշտեցուցիչ մեր ընդ կամս քո. և փառաւորեսցի անուն քո սուրբ։ Տուր մեզ, տր, սիրտ նոր և հոգի նորոգ, և լից սիրով քով սրբով։ Բաց, տէր, զհրաման քաղցր անձրևաց քոց, և յորդեսցես ընդ ակօս ականջաց մերոց, զի զուարթասցին բոյսք սեր-

ման քո սրբոյ 'ի մեզ, որ արժանի արարեր զանարժանութիւնս մեր կարդալ զանուն քո սուրբ:

Ցանկեա, Տ՟ր, և ամրացո զա՟մ խրամատութիւնս թշնամոյն, զի մի՛ ճռաքաղ արասցէ զպտուղ կենդանութե՟ մտաց մերոց, և զրկիցիմք յօրհնութենէդ քումմէ: Զի չիք ոք նման քեզ, Տ՟ր, 'ի Տ՟րս. և բարերար և պարգևատու կարօտելոց և իրաւարար զրկելոց: Արծարծեա 'ի նուաղեալ յանձինս մեր զլոյս Ա՟ծութեդ քո, և օղն չարութե՟ մի՛ շնչեսցէ 'ի լոյս հաւատոց մերոց. այլ ամաչեսցեալ դարձցի յետս: Մի՛ կարօտ առներ զմեզ 'ի քո շնորհացդ, Ա՟ծ մեր. զի չիք ոք որ մխիթարէ զմեզ, և ոչ ոք է որ օգնէ, բայց աջ քո Տ՟ր՝ որ բացիչդ ես փակելոց, արձակիչդ ես կապելոց, անդորրիչ նեղելոց, տուիչ կարօտելոց, մխիթարիչ սգաւորաց, բժիշկ ախտացելոց, գտիչ կորուսելոց, քաւիչ յանցուցելոց և թողիչ մեղաց: Դու ես շտեմարան բարութե՟ 'ի յերկինս և 'ի յերկրի:

Աղաչեմ զքաղցրութիւնդ քո, Տ՟ր, մի՛ արգելուր 'ի մէնջ զողորմութի՟ քո վասն բազում յանցանաց մերոց: Այլ բաց մեզ, Տ՟ր, զի մտցուք. և տուր մեզ, զի առցուք: Վասն քո Տ՟ր անուանդ մի՛ յամօթ առներ զմեզ, և մի՛ բարկանար մեզ, Տ՟ր, և մի՛ յիշեր զանօրէնութիւնս մեր և զչարիս զոր գործեցաք: Կամեաց, Տ՟ր, զի կեցցուք. և ողորմեաց, զի ապրեսցուք: Ներեա մեզ, Տ՟ր, զի եկեսցուք 'ի գիտութի՟ ճշմարտութե՟, և մի՛ պահանջեր զմեզ ըստ մերում չարութեանս. այլ տուր ձեռն օգնականութե՟, զի մի՛ ոտնահար լիցին թշնամիք մեր 'ի վրիպել զմեզ 'ի փրկութենէ քումմէ: Կանգնեա, Տ՟ր, զգլորումն մեր, և մի՛ տար զմեզ 'ի նախատինս դրացեաց մերոց: Զի թէպէտ և մեղաք, սակայն դու բարերար փրկիչ Ա՟ծ, մի՛ անտես առներ. այլ գթա 'ի մեզ և առաջնորդեա մեզ 'ի նաւահանգիստ խաղաղութե՟ քո, և հաստատեա 'ի մեզ 'ի վերայ շինութե՟ 'ի կարգս արդարութե՟: Խափանեա, Տ՟ր, զթշուառացուցիչս մեր. և հալածիչք մեր դարձցին յետս իւրեանց: Եւ մեք հասցուք 'ի քաղցրութի՟ օթեվանաց պատուիրանաց քոց յա՟մ ժամ գոհանալ զքէն, և փառս տալ անուանդ քում սրբոյ:

Տէր փրկիչ և Ա՟ծ բազումողորմ, ողորմեա Տ՟ր և

մի՛ թողուր զիս վասն անուանդ քում սրբոյ։ Տէր գիտութեան և Աստուած ամենայն իմաստութեան, տուր մեզ Տէր զքո գիտութիւնդ և զքո կատարեալ իմաստութիւնդ. զի զդատապարտեցուք 'ի ցնորից մոլորութեանց, այնմ՝ որ եհան զմեզ 'ի դրախտէն փափկութեան, և մերժեաց ըզմեզ 'ի գիտութենէ սիրոյ քո կենդանութեան։ Հայեցի, տէր, ակն ողորմութեան քո 'ի ցաւագին վիշտս մեր առ 'ի բժշկել զմեզ յանհնարին տրտմութեանցս, որ խառնեալ ունի բազում խռովութիւս։

Հաշտեա, Տէր, ընդ մեզ վասն մեծազօր անուանդ քո, և ողորմեա մերոյ տկարութեանս։ Խափանեա 'ի մէնջ, Տէր, զվնասակար խորհուրդս և զձայնս՝ որ հեռի են 'ի քաղցրութենէդ քումմէ։ Տէր գթած, մի՛ թողուր զմեզ 'ի սպառ, զի քո եմք ստեղծուածք. և մի՛ բարկանար մեզ, զի դու գթած ես և մարդասէր։ Յիշեա, տէր, զուխտն որ ընդ սիրելիսն քո, և բարձ 'ի մէնջ զխաւարն ափշութեան թանձրամած ստուերին կորստեան, որ ընկղմէն զմիտս զգաստութեան մերոյ, և վարատէն 'ի քո խնամոցդ։ Տուր մեզ, տէր, զլոյս քո կենդանարար զուարթ և զխաղաղարար 'ի պահպանութիւն և 'ի սրբութիւն մտաց մերոց։ Վասն բարեխօսութեան հրեշտակաց քոց ընկալ զաղաչանս մեր. և արժանաւորեա դասիլ ընդ նոսին, օրհնել և փառաւորել զքեզ անդադար ձայնիւ։ Յիշեա և զիմ նուաստութիւս, և նայեա 'ի խնդրուածս իմ. և լուր ձայնի պաղատանաց մերոց, որպէս ուսուցեր՝ եթէ յաղօթս կայցէք և մի՛ ձանձրանայք։ Եւ դարձեալ՝ թէ յաղօթս կացջիք, զի մի՛ մտջիք 'ի փորձութիւն։ Դարձեալ հրամայեցեր՝ եթէ չիք ինչ զոր խնդրիցէք յԱստուծոյ, եթէ ոչ տացէ ձեզ։

Արդ այժմ մեք, Տէր, ոչ վասն հաճութեան գործոց մերոց կամ յարդարութիւս մեր ապաստան լինել աղաչեմք զքեզ, այլ վասն ողորմութեան և մարդասիրութեան քո. զի քաղցր ես և բարերար, և մեք իբրև ըզպարտականս և զմեծամեղս կամք առաջի քո։ Դու իբրև զհայր գթած, իբրև զՏէր քաղցր լուր աղօթից մերոց, զի զարթիցեն զգայութիւք մեր խնդրել համարձակ։ Բաց զականջս մեր լսել զձայն պատգամաց քոց. և բացցեն աչք սրտից մերոց հայել առ քեզ 'ի

բարձունս։ Լո՛ւր աղօթից մերոց և ընկալ զխնդրուածս մեր և արա զկամս մեր․ լո՛ւր ձայնի աղօթից իմոց, խնայեա՛ 'ի ժողովուրդս քո 'ի ժամանակի նեղութե̃, և փութա՛ առնել զգթութի̃ քո։ Մի՛ բարկութ̃բ քով խրատեր զմեզ, և մի՛ սրտմտութ̃բ քո ակն յանդիման առներ զմեզ․ զի ժողովուրդ քո եմք, և ձեռակերտք ձեռաց քոց, և ստեղծուած մատանց քոց։ Ի քո պատկեր հաստատեցեր զմեզ, և հոգի առ 'ի քէն փչեցեր 'ի մեզ․ մի՛ յաւիտեան բարկանար մեզ, և մի՛ 'ի բացէ առնիր 'ի ծառայից քոց։ Մինչ մոլորեալք էաք դարձուցեր զմեզ, չարչարեալք և փրկեցեր, ցրուեալք և ժողովեցեր, խաւարեալք և լուսաւորեցեր, արգելեալք և հաներ յանդորր, կապեալք և արձակեցեր 'ի կապանաց․ անյոյսք էաք և կոչեցեր զմեզ 'ի յոյս քո․ մեղաւոր էաք և կամեցար զի արդարասցուք․ ոչ խնդրեցաք և եկիր առ մեզ և արեամբ քո փրկեցեր զմեզ, և 'ի ձեռն քո ծանեաք մեք զմեզ․ ոչ ձանձրացուցաք մեք զքեզ խնդրուածովք, և իջեր 'ի դժոխսն․ մեք հանապազ բարկացուցանեմք զքեզ, և դու եկիր վասն մեր յանարգանս․ անչափ էին անօրէնութի̃ք մեր առաջի քո, և փրկեցեր զմեզ չարչարանօք քոյովք։ Եւ այժմ աղաչեմք զքեզ, Տ̃ր և Ա̃ծ մեր, երկիր պագանեմք և գոհանամք զքէն, և փառաւորեմք զողորմութիւն քո։ Ի ձեռն սիրելի Որդւոյ քո լո՛ւր աղօթից մերոց, և ընկալ զխնդրուածս մեր․ տե՛ս զնախատինս մեր․ նայեա՛ 'ի տառապանս մեր, և գթասցի սիրտ քո 'ի ժողովուրդ քո՝ որ մատնեցաւ յաւար և յափշտակութի̃։

Նայեա՛ և 'ի ս̃բ տաճարս քո՝ որ աւերեցաւ, և 'ի սեղանս քո՝ որ կործանեցաւ, և 'ի քահանայքս քո՝ որ կոտորեցան, և յուխտս քո՝ որ ցրուեցան, և 'ի կտակարանս քո՝ որ կնքեցան 'ի ցրուումն և 'ի յաւարումն։ Յաճախեաց ամօթ մեր, ցրուեցաւ ժողովուրդ քո, հեղաւ իբրև զջուր ուխտ քո սուրբ։ Խնայեա՛ 'ի մեզ, Տ̃ր, զի մատնեցաք 'ի նախատինս և 'ի չարչարանս և յամօթ։ Առ ո՞վ աղաղակեսցուք, զի լուիցէ աղօթից մերոց․ առ ո՞վ երթիցուք, զի ահա ծառայ քոյ եմք։ Խրատեցեր զմեզ բարկութ̃բ, արա առ մեզ զողորմութի̃ քո։ Կեղեցան կեանք մեր,

մի՛ յապաղեր՝ զի մի՛ վհատիցիմք։ Մի՛ երկայնամիտ լի-
նիր 'ի նեղութիւնս մեր և 'ի տառապանս. որպէս ա-
ղաչեաց զքեզ մարգարէն քո՝ որ նեղեալն էր իբրև
զմեզ և ասէր, մի՛ խրատեր զմեզ երկայնամտութ՟բ։
Լուր աղօթից մերոց, որպէս լուար Մովսէսի սիրելւոյ
քո. և մի՛ առցեն վրէժս թշնամիք մեր իբրև զՓա-
րաւոն, որ նեղեաց զժողովուրդ քո։ Ընկալ զխն-
դրուածս մեր, որպէս ընկալար զխնդրուածս Յե-
սուայ որդւոյ Նաւեայ, և սատակեցաւ Ամաղէկ և
բարձաւ յիշատակ նորա։

Դու ես ա՟ծ առաջնոցն, և տ՟ր և թագաւոր վերջ-
նոցս։ Լուար Մովսէսի, և ընկղմեցեր զՓարաւոն. լու-
ար Ահարոնի, և արգելաւ մահ բարկութե՟։ Դար-
ձուցեր զցասումն բարկութե՟ քո 'ի ձեռն նախանձա-
խնդրին քո Փենեհէսի. օգնեցեր Յեսուայ, և յամօթ
եղեն թշնամիք ն՟ր։ Լուար Սամփսոնի 'ի ժամանակի
նեղութե՟, և խնդրեցեր զվրէժս յայլազգեացն՝ որք
բարկացուցին զքեզ։ Առեր և զվրէժն Դաւթի 'ի
Սաւուղայ՝ որ հալածէր զնա, և հաներ նմա իրաւու-
նս յԱբիսողոմայ՝ որ խռովեցոյցն զնա։ Քաւեաց
զժողովուրդն քո Սամուէլ առաջի քո, և ցուցեր ըզ-
մեծութի՟ քո, փոխանակ զի անարգեցին զթագաւորութի՟
քո։ Արարեր իրաւունս Եղիայի հալածականի, և սա-
տակեր յաղագս նորա զմարգարէսն Բահաղու։ Պա-
հեցաւ Միքիէ բազում ողորմութ՟բ քո, և անկաւ կոր-
ծանեցաւ սատակեցաւ հալածիչն իւր 'ի պատերազմի։
Ցուցեր զսքանչելիս քո 'ի հալածիչսն Եղիսէի 'ի ժա-
մանակի իբրև մտին 'ի շիրմին՝ տեսին զմեծութի՟ քո։
Լուար Եզեկիայի 'ի ժամանակի իբրև արգելեալ պա-
շարեալ կայր 'ի նեղութե՟, և ցուցեր զզօրութի՟ քո 'ի
Սենեքարիմ և 'ի զօրս ն՟ր։ Լուար Եսայեայ և օգնեցեր
Յովսափաթու, և խնդրեցեր զվրէժս նեղչաց նոցա։
Լուար Յունանու 'ի խորոց անդնդոց ծովուն 'ի փորոյ
ձկանն և ալեացն, որ պաշարեցին զնա։ Լուար Դա-
նիէլի 'ի ժամանակի իբրև ընկեցին զնա 'ի գուբն, և
ապրեցուցեր զնա 'ի բերանոյ առիւծուցն։ Օգնեցեր
Անանիայի և ընկերաց նորա 'ի հնոցի հրոյն, և եկեր
բոցն բորբոքեալ զչարախօսս նոցա։ Լուար Մուրթքէի
և Եսթերայ 'ի նեղուե՟ իւրեանց. փրկեցեր զժողո-

փառըդ քո, և յամօթ եղև Համան հալածիչն ։ Հա-
ներ զԵրեմիա 'ի գբոյ տղմոյն, և ետուր զնա 'ի շնորհս
և յողորմութի առաջի արքային բաբելացւոց ։

Խնայեա, տր, 'ի ժողովուրդս քո՝ որ չարչարեցաւ . խնայեա, տր, և լուր աղօթից իմոց, զի տաճար սըրբութե աւարեցաւ, և տեղին քաւութեան պատարագաց կործանեցաւ ։ Քահանայք մեր կոտորեցան . և ձորձ 'ի գլուխ եղեն կուսանք մեր ։ Խնայեա 'ի մեզ, տէր մեր . խնայեա յաղքատս. և 'ի տնանկս և 'ի տառապեալս, զի չիք տեղի հանգստեան, ուր դիցեն զգլուխս իւրեանց ։ Ճանապարհք մեր թափուր են, և շաւիղք մեր անհետք . աչք մեր խաւարեցան, և սիրտք մեր մաշեցան ։ Լուր աղօթից մերոց և ընկալ զխնդրուածս մեր ։ Եւ թէ մեք անօրինեցաք և դառնացուցաք զքեզ, դու տր ըստ մեծի անուանդ քո խնայեա 'ի մեզ ։ Չիք մեր այլ յոյս և ոչ տուն ապաւինի և հանգստեան տեղի քան զքեզ արտաքոյ . զի քո են երկինք և քոյ է երկիր . քոյ է տիւ և քոյ է գիշեր . զարեգակն և զլուսինն դու հաստատեցեր ։ Զքեզ փառաւորեն ծովք ալեօք իւրեանց, և եդեր նոցա սահման, և ոչ ելանեն ընդ հրամանս քո ։ Կապեալ կայ ծով աւազով և կատարէ զհրամանս քո ։ Քեզ հայեցեալ սպասեն ամ բնութիք, և ձեռն քո բաւական է ամ արարածոց քոց . և չիք ինչ՝ որ կարէ հակառակ կալ կամաց քոց ։ Քո են լուսաւորք երկնից, և հողմք և մրրիկ զանուն քո փառաւորեն ։ Քեզ հայեցեալ սպասեն գազանք անապատի, թռչունք երկնից և ձկունք ծովուն ։ Արի օգնել մեզ մեծազօր զօրութբ քո . զի ծանիցեն ամ ազգք երկրի, զի չիք իբրև զքեզ, և չիք այլ ած բաց 'ի քէն ։ Ասաց Փարաւոն՝ ով է ած . և ընկղմեցեր զնա իբրև զպատերազմող 'ի ծովն ահագին ։ Համարեցաւ զքեզ Սենեքարիմ իբրև զդիսն հեթանոսաց . և արարեր զնա առակ նշաւակի, զի ցուցեր նմա զմեծութի քո ։ Օգնեցեր Մատաթիայի՝ որ եղև քինանախանձու օրինաց քոց ։ Լուար Յուդայի և Շմաւոնի և եղբարց նորա, և օգնեցեր նոցա սքանչելեօք 'ի մարտս պատերազմաց զոր արարեր 'ի ձեռն նոցա ։

Զարթիցեն գթութիք քո, տէր . թող զմնացուածս

ժողովրդեան քո՝ որ մատնեցաւ յաւար․ արա նորո-
գումն տաճարի քո յաւուրս մեր․ բարձրացո զգլուխս
մեր՝ որ կորացան յաւուրս մեր 'ի մեղս մեր․ ընկալ
զպատարագս ժողովրդեան քո, և քաղցրասցին քեզ
աղօթքս մեր ։ Բացցին դրունք փակեալք, և կանգ-
նեսցին դրունք կործանեալք ։ Ժողովեսցի ժողովուրդք
ցրուեալք, և ուրախ եղիցուք 'ի նորոգութի տաճա-
րի քո յաւուրս մեր ։ Գոչեսցէ առաջի քո արիւն ար-
դարոցն, և եղիցի քեզ 'ի հաճունի իբրև զբուրվառս
խնկոց ։ Խնայեա, տէր, 'ի ժողովուրդս քո և 'ի նը-
ուխտ քո՝ որ անկաւ 'ի ձեռս անօրինաց, և առն հա-
րին 'ի վերայ բեկմանս մերոյ ։ Սովոր իսկ ես, թագա-
ւոր մեր, ցուցանել զգթութի քո 'ի մեզ․ և սովոր իսկ
են ծառայք քո խնդրել հանապազ յողորմութեց քոց ։
Ի քաղցրութի մարդասիրութեդ ապաւինեալ աղա-
չեմք զքեզ, զի և 'ի չարաց ոչ արգելուս զբարերա-
րութի քո ։ Ծագես զարեգակն 'ի վերայ չարաց և
բարեաց, և ածես անձրև 'ի վերայ արդարոց և մե-
ղաւորաց ։ Քանզի հանապազ գիտեմք, եթէ սովոր
իսկ ես լսել նեղելոց․ օգնեցեր հալածականաց, զօ-
րացուցեր զտկարս, բարձրացուցեր զխոնարհս, ապ-
րեցուցեր զչարչարեալս, փրկեցեր զյափշտակեալս,
լուսաւորեցեր զխաւարեալս, լցուցեր զքաղցեալս,
մեծացուցեր զաղքատս, կանգնեցեր զտնանկս ։ Զայս
ամ արարեր յամ դարս ծառայից քոց՝ որք յուսա-
ցան 'ի քեզ ։ Դու ես որ ցուցեր մեզ՝ թէ ես եմ ա-
ռաջին և ես եմ յապայ ։ Դու ես ած առաջնոցն և
թագաւոր վերջնոցս․ քոյ է աշխարհ, և քոյ է աշ-
խարհն երկինք և ամ որ ինչ եղեն և որ լինելոցն է
առ յապայ ։ Առ ո՞վ երթիցուք, զի լուիցէ մեզ․ ո՞ւմ
հայեսցուք, զի եկեսցէ օգնականութի․ ո՞ւմ առն
կալցուք, զի փրկեսցէ զմեզ․ առ ո՞վ աղաղակեսցուք,
զի ընկալցի զաղօթս մեր ։ Քոյ եմք, և դու ես ած
մեր, և քեզ վայել է փառք իշխանութի և պատիւ
այժմ և միշտ և յաւիտեանս յաւիտենից․ ամէն ։

Է

Աղաչեմ զքեզ, Ք՟ս փրկիչ աշխարհի. նայեա յիս և ողորմեա ինձ. փրկեա զիս ՚ի բազմութենէ անօրէնութեանց իմոց, քանզի անարգեցի զբ՟մ զբարիս զոր արարեր յիս ՚ի մանկութենէ իմմէ: Զիս զտխմար և զանմիտ՝ արարեր անօթ լի գիտութ՟ք և իմաստութ՟ք: Յաճախեա յիս զշնորհս քո. լցո զքաղց իմ, և զծարաւ իմ զովացո, և լուսաւորեա զխաւարեալ միտս իմ, և ժողովեա ՚ի մոլորութենէ զխորհուրդս իմ: Եւ այժմ երկիր պագանեմ և աղաչեմ, անկանիմ և հայցեմ խոստովանելով քում բարերարութեանդ, դադարեցո յիս զհոսանս շնորհի քո, և պահեա ինձ զնա ՚ի գանձի քում, զի դարձեալ տացես ինձ զնա յաւուր յայնմիկ: Մի՛ բարկանար ինձ, մարդասէր, զի ոչ հանդուրժեմ սպառնալեաց քոց: Յաղագս այսորիկ աղաչեմ ժտելով, զի առաւել քան զչափ յաճախեա յիս. վասն զի լեզու իմ տկարացաւ՝ ոչ կարելով խօսել զշնորհեդ քումմէ: Հիացան և միտք իմ՝ ոչ բերելով զբազմութ՟ի ալեաց նորա: Կերպարան և ճառագայթ օրհնելոյ Հօր, դադարեցո առատ ՚ի յիս ՚ի հոսմանց նորա, զի իբրև զհուր բոցակիզեսցէ զերիկամունս և զսիրտ իմ. արդ դարձեալ պարգևեա ինձ զնա, և կեցո զիս յարքայութեան քում: Մի՛ յիշեր զանօրէնութիւնս իմ. յանդգնիմ հայցեմ, տուր ինձ զխնդրուածս իմ. ծածկեա զանօրէնութիւնս իմ յա՟մ գիտութենդ քումմէ. ընկալ զարտասուս. մերձեսցի առ՛ քեզ ողբումն իմ. յիշեա զարտասուս իմ զոր արտասուեցի առաջի սրբոց վկայից քոց, զի գթասցիս յիս յաւուր յայնմիկ, և ծածկեսցես ընդ հովանեաւ թևոց շնորհի քո: Քանզի թէ արասցես ինձ ըստ անօրէնութեան իմոյ, եղուկ ես թշուառականս, զի՞նչ ինձ լինիցի: Իսկ ես լալով և արտասուօք պաղատիմ քում մարդասիրութեանդ, փրկեա զիս ՚ի բազմութենէ անօրէնութեանց իմոց, և պարգևեա ինձ զարքայութիւնդ քո. յիս ՚ի մեղաւորս ցոյց զանճառ քո մարդասիրութիւնդ. արա զիս հաղորդ աւազակին, այնմ՝ որ միով բանիւ ժառանգորդ եղև

դրախտին. զոր կատարելոց է խոստացեալն, անդր զիս մուծցես։ Փառք Հօր արարչին մերում, և Որդւոյ փրկչին մերոյ, և Հոգւոյն սրբոյ նորոգողին մերում յանսպառ և յանեղծանելի յաւիտեանս։

## Ը

Տէր ա՟ծ զօրութե՟ց, աղաղեմ զքո բարերարութիւնդ. ժտեմ և հայցեմ 'ի քէն, տուր ինձ տապան ապրեցուցիչ որպէս Նոյին ապրել ինձ 'ի հրեղէն ծովէն և յանդնդային հրահոսանացն, յանշէջ արգելանէն և յանհնարին վտանգից։ Զի դու ես, տէր ա՟ծ, որ զբանդ ա՟ծային ծածկեցեր և 'ի ծառայական կերպս իջեր վասն մեր, և զլեղի 'ի քիմս առեր, և ապտակ 'ի ծնօտս ընկալար։ Եւ այժմ աղաչեմ զքեզ ազատեա զիս 'ի դառն ծառայութենէ սատանայի. զի յորժամ զձեռս իմ 'ի վեր ունելով աղօթեմ, անօրէն սատանայ խաբէ և ունայն հանէ զիս յաղօթից իմոց։ Լեր ինձ, ա՟ծ, բերդ ամուր և աշտարակ հզօր, և կորզեա զիս 'ի բերանոյ առիւծուն՝ որ հանապազ կամի կլանել զիս. զի ընդ պիտանիսն 'ի բարձունս փառաւորեցից զՀայր և զՈրդի և զս՟բ Հոգին այժմ և միշտ և յաւիտեանս յաւիտենից. ամէն։

# ՀԱՏՈՒԱԾՔ

## ՃԱՌ ՁՂՋՄԱՆ *

Լ՛ԿԱՑԵՔ, սիրելիք իմ. եկայք, հարք իմ, հօտ ընտրեալ փրկչին. եկայք մինչ դեռ կայ վաճառ։ Լցէք զաչս ձեր արտասուօք, և վաղվաղակի աչք սրտից ձերոց տեսանեն։ Խօսեցարուք զբանս կենաց, և նոյն ժամայն զզջանայ սիրտ ձեր։ Առէք զքարիոզ մտածութիւն յաղագս արքայութեան և դրախտին, և եբաց երագ արհամարհեցէք զերկրաւոր իրս։ Մի՛ ոք ծուլացեալ թուլասցի, և մի՛ ոք կարճամտելով զարհուրեսցի. մի՛ երկիցէ ոք, այլ ժտելով կարդասցուք առ ա̄ծ մեր, և յօժարութբ̄ ծառայեսցուք փրկչին մերոյ. փութով սրբեսցուք զսիրտս մեր Հոգւով նորա սրբով։ Աղաչեսցուք զմիմեանս և մխիթարեսցուք և հաստատեսցուք. թողցուք իւրերաց 'ի բոլոր սրտէ, քանզի ծառայ եմք անսուտ տեառն որ ասաց. "Ամէն ամէն ասեմ ձեզ, եթէ ոչ թողուցուք 'ի բոլոր սրտէ զյանցանս ձեր միմեանց, և ոչ Հայրն ձեր երկնաւոր թողցէ ձեզ զյանցանս ձեր"։ Եւ 'ի ձեռս առաքելոցն նշանակեաց մեզ բազում անգամ, եթէ պարտ է թողուլ եղբօր։

Ո՛վ ոչ սքանչասցի զի յաղագս արտասուաց սուղ ժամանակիս այսորիկ թողու մեզ զբիւր յանցանս. և վասն արտասուաց մետասաներորդ ժամու բժշկէ ըզվէրս. և դարձեալ բժշկելոյն ընձեռէ վարձս արտասուացն. քանզի այս է սովորութիւն նորա շնորհին. բժշկէ, և զվարձս բժշկութեան տայ։ Մի՛ հեղգասցուք

* Այս և յաջորդ հատուածն Ո՛վ ոչ սքանչասցի միահետ գրեալ էր 'ի մերում օրինակին. սակայն երկու հատուածք են այլ և այլ ճառից ըստ յոյն ամբողջ բնագրին։

այսուհետև, եղբարք. այլ փութասցուք բժշկել որպէս ասացին: Աստ ողորմի Աստուած և գթայ 'ի ձեռն շնորհին իւրոյ, բայց անդ ոչ ես. այլ արդար դատաստան և վրէժխնդրութիւն և հատուցումն գործելոցն: Անդ բազմագութն Աբրահամ անգութ և անողորմ լինի. որ յաղագս սոդոմացւոցն աղաչեաց զի ապրեսցին, անդ վասն միոյ մեղաւորի ոչ պաղատի և ոչ գթայ: Արդ մի կապեսցի միտք մեր յերկրաւոր իրս, սիրելիք. այլ ճեպեսցուք համարակորդ լինել ամ̃ սրբոցն և ժառանգակից նք հարցն մերոց: Մի վերջասցուք յառաքինութենէ նոցա, զի մի զրկիցիմք յերանելի փառաց նոցա: Երանի որ արժանի իցէ ձայնին այնմիկ որ ասէ. "Եկայք օրհնեալք Հօր իմոյ, ժառանգեցէք զպատրաստեալ ձեզ զարքայութիւն 'ի սկզբանէ աշխարհիս": Զի՞նչ պատասխանի ունիցիմք արդեօք եթէ ծուլայցեմք: Աշխարհականն թերևս բան ինչ պատճառս ունիցի որպէս կապեալ ընդ աշխարհի: Մեք զի՞նչ ասասցուք՝ եթէ ընդ ում կապեալ եմք: Երկնչիմ և դողամ, մի գուցէ որք գովեմն զմեզ աստ, անդ այպանիցեն. և որք երանեն զմեզ աստ, նմանապէս անդ թշնամանիցեն: Մի այսուհետև, սիրելիք, մի քաղցրասցի մեզ պղերգութի և հաղք աշխարհիս, զի մի դառնասցի մեզ հուրն յաւիտենական և անքուն որդն: Լացցուք սակաւիկ ինչ, զի ապրեսցուք 'ի յաւիտենական լալոյն: Հսկեսցուք փոքր ինչ, սիրելիք. ո՞չ հաւատայք բանի փրկչին՝ եթէ յանկարծակի իբրև զփայլակն որ երևի, այնպէս լինի գալուստ նորա: Ո՞չ զմտաւ ածէք՝ եթէ համբաւ ոչ լինի՝ ահա աստ կամ անդ է. ո՞չ զարհուրիք եթէ իւրաքանչիւր ըստ գործոց իւրոց ընդունի 'ի ժամուն յայնմիկ: Հայեցարուք 'ի ձեզ՝ մի գուցէ յանկարծակի ըմբռնիցէ և ատգանանիցեմք զանձինս. այնուհետև ոչ ինչ օգտելով ասիցէ՝ վայ ինձ, ընդէ՞ր յուլացայ, եղուկ ես թշուառական, հե՞մ արհամարհեցի զայսոսիկ. և յոլով քան զայն ասիցէ 'ի վտանգին իւրում ոչ ինչ օգտելով: Հաւատացէք, զի կատարած յաւիտենից այսօրիկ մերձեցաւ. Ճեպեսցուք, զի մի ինչ վտանգիցիմք իբրև զծառայն զայն զոր եկեալ տէրն՝ եգիտ զնա փափկացեալ և յուլացեալ:

Յաղագս որոյ աղաչեմ զՁեզ հսկեսցուք , զի մի այնպէս զտանիցիմք ժտելով ։ Փառաւորեսցուք զՔս պաղատելով առ նա , զի զմեզ փրկեսցէ 'ի խաւարէն և 'ի կրճտելոյ ատամանցն , և արժանի արասցէ արքայութեն իւրում ․ և նմա փառք յաւիտեանս . ամէն ։

## Ի ԿՏԱԿԷՆ *

ԵԹԷ ոք համարձակեսցի թաղել զիս 'ի ներքոյ սեղանոյն կամ 'ի նր տաճարի տեառն , մի տեսցէ նա զերկնային սեղանն քոյ , և մի լիցի արժանաւոր փառաց արքայութե . զի ոչ է օրէն որդւանցն՝ որ ապականութի ունի , դնել ընդ սեղանովն քոյ կամ 'ի սուրբ տաճար տեառն ։

Արդ մերձեցարուք առ իս , եղբարք , և պարզեցէք զոտս իմ , և կազմեցէք զիս առ վախճան . քանզի հոգի իմ նուաղեաց յինէն ։ Եւ ճանապարհակից ինձ եղերուք սաղմոսիւք և աղօթիւք ձերովք . և պատարագս ըստ սովորութե ձերոյ յաղագս իմոյ տկարութե արժանի արարէք մատուցանելոյ ։ Եւ յորժամ կատարեսցի քառասուն օր , արասջիք զյիշատակս իմ . և խառնեսջիք զյիշատակս իմ 'ի յիշատակս նոցին ։ Արդ տեսէք զօրինակն 'ի մարմնաւոր արարածոց . որպիսի ինչ է ծնունդ այգւոյ . ազոխ յայգի , և ճմլեալ գինի 'ի տան յամանի . յորժամ հասանիցէ ողկոյզն յայգւոջ , յայնժամ կացեալն շարժի որ 'ի տանն է եռացեալ գինին ։ Նմանապէս և վասն սոխոյ . քանզի տնկեալն յանդի և ցամաքն որ 'ի տան կայ , 'ի նմին ժամանակի բոյս արձակեն ։ Արդ եթէ ստացուածոյս ծնունդք զգան առ միմեանս , ո՞րչափ ևս առաւել մեռեալքն 'ի գերեզմանս իւրեանց զգայցեն Քի զենմանն ։ Եթէ տացես ինձ բան , ով հանճարեղդ , եթէ այնուքիկ բնութե արարածոց զհետ երթան , ծանիցես զնա 'ի սկզբանն լինել քոյ ստացուածովն ։ Եւ եթէ ոչ հաւանիս օրինակիդ , վկայութի քեզ 'ի մէջ ածից .

* Ի ճառընտրաց ծԳ . Գ ։

լուր զգրեալն իմաստութեամբ. Ծառայն այ Յակովբ յօրհնութիւն զՌոբէն մինչեւ յերրիս ազգ ոչ օրհնեաց։ Արդ եթէ ոչ փրկին մեռեալքն, որո՞վ բանիւ օրհնեաց մինչեւ յերրորդ ազգն Յակովբ, եթէ յարութիւն յիշատակ ոչ իցէ։ Լուր զինչ գոչէ Առաքեալ. եթէ բոլորովին մեռեալք ոչ յառնեն, ընդէ՞ր մկրտին յաղագս մեռելոց։ Քանզի որ ընդ օրինօքն էին յուսով յարութեան խորհրդով իսկ եկեալ կացեալ միայնին 'ի հանդերձեալ հաւատսն որ յայտնելոց էր. որպէս ընթերցաքն՝ եթէ պատարագօք պաշտամամբք մաքրէին քահանայքն։ Եւ որք անօրէնութեամբ 'ի պատերազմի վիրաւորեալ անկանէին պիղծ գործովք՝ գտանիցին լցեալ պարտիքն որ ընդ գրով անկանէին, որպէս եւ իցեն պարտիք, ո՞րչափ եւս առաւել քահանայք նորոյ ուխտիս 'ի բաց բառնալ կարեն յիրաւի զպարտս յանցանաց ՟նը պատարագօք եւ աղօթիւք լեզուաց։

## ՎԱՍՆ ՆՆՋԵՑԵԼՈՑ *

Մի՛ առաքէք զյուսահատութիւն ձեր առ դատաւորն, որ զգնացեալսն տրտմեցուցանէ եւ զձեզ չարչարէ։ Մի՛ մեռելովք ձերովք մեռանիք զմահն ծածուկ. եւ կատարի այն՝ եթէ թող զմեռեալսն թաղել զմեռեալս իւրեանց։ Մեռեալ որ թաղեալ է եւ ոչ սրբութիւ, եւ միւսն որ թաղեալ է անօրէնութիւ, մեռեալն զմեռեալն նստեալ լայ։ Մեռեալ որ թաղեալ է արդարութիւ, եւ միւսն սաղմոսերգութիւ, կենդանին զկենդանին յղարկէ խաղաղութիւ։ Մի՛ յիշէք զմեռեալս ձեր առ աշխարանս եւ զհրաժարեալս ձեր առ ողբս, որ է հաշուին հասարակաց. եւ դարձեալ սգան շունչքն եւ մարմինքն մեռեալ վասն աշխարանաց ձերոց. ձեզ եւ նոցա տրտմութիւն։ Յուղարկեցէք զարտասուս ձեր աղօթիւք վասն հրաժարելոց ձերոց. զի եւ ձեզ եւ նոցա լինիցի շահ յաւուրն կենդանանման։ Ընդունին շնորհս մեռեալքն այնուքիկ՝ որք յիշեցին զնոսա տրօք եւ աղօթիւք. ցնծայ ընդ առաջ նորա եւ օրհնէ զնա

* Ի Ճառընտրաց ՃԳ. Գ։

